# ԱՇԽԱՐՀԱԲԱՐ
# ՆԱՐԵԿ

ՆԱՐԵԿԱՑ ՎԱՆՔԻ ՎԱՆԱԿԱՆՆԵՐԷՆ

Ս. ԳՐԻԳՈՐ ՎԱՐԴԱՊԵՏԻ

## ԱՂՕԹԱԳԻՐՔԸ

ԳՐԱԲԱՐ ԲՆԱԳԻՐԷՆ ԹԱՐԳՄԱՆԵՑ

ՄԻՍԱՔ Ա. Մ. ԳՕՉՈՒՆԵԱՆ

(ՔԱՍԻՄ)

ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒՆ ՆՈՒԻՐԵՑ

"ՄԱՆՁՈՒՄԷԻ-ԷՖՔԵԱՐ" ԼՐԱԳՐԻ

ՏԷՐՆ ՈՒ ՏՆՕՐԷՆԸ

ՅՈՎՀԱՆՆԷՍ Գ. ԳԱՅՍԷՐԵԱՆ

1902

ՏՊԱԳՐ. Գ. ԳԱՅՍԷՐԵԱՆ

Կ. ՊՈԼԻՍ

ԱՅՍ ԱՂՕԹԱԳԻՐՔԸ ԿԸ ՁՕՆԵՄ

# ԾՆՈՂԱՑՍ



ՈՂԲԱՑԵԱԼ ՀՕՐՍ

## ԱՂԱ ՄԱՐՏԻՐՈՍ ԳՕՉՈՒՆԵԱՆԻ

1826 † 1866

ԵՒ

ՍԻՐԵԼԻ ՄՕՐՍ

## ՏԻԿԻՆ ՄԱՐԻԱՄ ԳՕՉՈՒՆԵԱՆԻ

ՄԻՍԱՔ Ա. Մ. ԳՕՉՈՒՆԵԱՆ




## Ա. ԽՕՍՔ



ՀԵԾՈՂ սրտի մը հառաչանքի ձայներն ու ողբագին աղաղակները կը վերընծայեմ Քեզ՝ որ գաղտնիքները կը տեսնես. ու չփաթած մտքիս իղձերը զոհելով անձս տոչո-

րող տրտմութեան կրակին մէջ, կամքիս բուրվառովը Քեզ կը մատուցանեմ։ Բայց Դուն բարդ ի բարդ մուխերով մատուցուած ողջակէզէ մը աւելի, իմ ընծայիս նայէ՛, հոտուըտա՛ զայն, ո՛վ Գթած, ու այս համառօտ բանահիւսութիւնս չէ թէ բարկութիւնով՝ այլ հաճութիւնով ընդունէ։ Այս կամաւոր նուէր, որ ինձ նման բանական զոհի մը կողմէ կը մատուցուի, չուտով քեզ հասնելու համար, զիս գիրցնող ճարպին զօրութեամբն ողջակիզուելո՛վ թող ելլէ սրտիս խորերէն։ Ու երբ թախանձագին աղաչանքներով անձիս պաշտպանութեանը ձեռնարկեմ Քու առջեւդ, իմ այս արարքս ամբարիշտ Ցակոբին ձեռքերը վերցնելուն նման տաղտկալի թող չթուի Քեզ, որուն համար բողոքեց Եսայի. և ոչ ալ եօթանասուն երկուերորդ Սաղմոսին առակին պէս Բաբելոնի անիրաւութեանը դառնայ, այլ ընդունելի թող ըլլայ քու առջեւդ այն հաճոյալի խունկին պէս, ծխուած Սելովայ խորանին մէջ, զոր Դաւիթ վերականգնեց զետեղելու համար տապանակը՝ գերութենէ վերադարձին, ինչ որ կորսուած հոգիներու փրկութիւնը կը պատկերացնէ։

Բ. Բայց այն ահաւոր ձայնդ, զոր պիտի հընչեցնես Վրէժխնդրութեան Զօրին մէջ դատ վարած ատենդ, հիմակուընէ իսկ սարսուռ կ'ազդէ վրաս, ու կ'զգամ որ երկու հակառակ յուզումներ

իրարու հետ կը բաղխին անձիս մէջ, երկու ներհակ զգացումներ — չարն ու բարին — կատղած ամբոխի մը նման սուրերով զինուած զիրար կը հարուածեն, և զիս գերի բռնելով կը մեռցնեն, ճիշտ այն հին գերութեան դէպքին նման, որուն ենթարկուած էի շնորհ ստանալէ առաջ, և որուն մասին առաքեալներու ընտրելագոյնը Պօղոս, օրինակ բերելով Մովսէսին, Քրիստոսի փրկութիւնը յաղթող կը հանդիսացնէ։ Որովհետև եթէ Ս. Գրոց ըսածին նման, մօտ է Տիրոջը ժամադրութեան օրն ու դատաստանի հանդէսն, որ տեղի պիտի ունենայ Կեդրոնի հեղեղատին ու Յովսափաթի ապարէզին նեղ հովիտին մէջ, և որ իր աշխարհիկ օրինակովը, ապագայ յաւիտենական կեանքը կը պատկերէ, ուրեմն շատոնց հասած է Աստուծոյ թագաւորութիւնը իմ վրայ որ զուտ մարմին եղած եմ, ու այլ և այլ արդարացի պատճառներով, շատ մը տոկոսներ վճարելու դատապարտուած՝ այն Եդովմացիներէն, Փղշտացիներէն ու զանազան (հին) բարբարոս ազգերէն աւելի, որոնց վրայ երբեմն ձեռք վերցուց Աստուած զիրենք հարուածելու համար։ Որովհետև անոնց տրուած պատուհասը տարիներու պայմանաժամ մը ունէր, իսկ իմ դատապարտութեանս պատիժը սահման չունի։ Մարգարէին ու առակախօսին ըսածին պէս, վիհը, սարսուռն ու վտանգն հիմակ-

ուրնէ դռներս պաշարած են, որպէս զի յաւիտենական ամօթն ու խայտառակութիւնը ճակտիս դրոշմեն, որոնցմէ այս վարանոտ հոգիս փրկելու և զայն ապրեցնելու համար, Դո՛ւն միայն կրնաս դարման մը ստեղծել, ով ամենուն ներող, Դուն՝ որ անսահման բարձրութեան անճառ փառքերովը մինչև վերջը գովուած ես։



Նոյն Հոչողէն [Սրբուն-Գրիգորէն] ողբերգալից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։ Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## Բ. ԽՕՍՔ



ի որովհետեւ չրթունքներով միայն բարձրեալ Աստուծոյ կ'աղաչես, ու միշտ Եգիպտոս դառնալ կը խորհիս, ու չես մտաբերեր երբեք թէ Աստուած գործքով միայն կ'գրաւուի ու բանաստեղծութիւնով չի կաշառուիր, ուրեմն ի՞նչ յարմար օրինակ բերեմ քեզ, ո՛վ պարտական անձս. ես՝ որ կործանած Սոդոմին պատ-

ժակից, Նինուէի դատախազին պէս պապանձած, Հարաւային տիկինէն աւելի անմիտ, վայրենի, Քանանէն աւելի վատթար, Ամաղէկէն աւելի յամառ, կուռքերու անուղղայ քաղաք, հին Իսրայէլի օրինազանցութենէն միացած նմոյշ, Յուդայի ուխտազանցութենէն պահուած յիշատակարան մ'եմ, (և որո՞ւ նմանցնեմ քեզ), որ Սուրէն աւելի յանդիմանուած, Սայտայէն աւելի տարամերժուած, Գալիլիայէն աւելի կոշտ, դժուարահաւատ Կափառնայումէն աւելի ներման անարժան, Քորազինին պէս պարսաւուած, Բեթսայիթային հետ քամբասուած եմ, ու Եփրեմի մօրուացը նման անպարկեշտօրէն ծաղկած, սիրուն աղաւնի մ'եմ, չէ թէ հանդարտութեան՝ այլ միշտ յիմարութեան տեսակէտով, առիւծի կորիւններէ սերած եղեռնագործ օձի մը և թոյնով լեցուն իժի հաւկիթներուն կը նմանիմ, տէրունական խօսքին ու մարգարէից ըսածին նըման՝ Երուսաղէմի վերջին հարուածներուն պատկերը կը ներկայացնեմ անձիս վրայ։ Մովսէսին, Դաւիթին ու Երեմիային կանուխէն գրածին պէս՝ լքուած ու քայքայման վիճակին հասած տաղաւար մը, կղպանքը կոտրտուած ու աղտեղութիւններով լեցուած խօսուն չէնք մը, երեսի վրայ ձգուած հարուստ ժառանգութիւն մը ու Աստուծոյ ձեռքով կառուցուած բայց մոռցուած տուն մ'եմ։ Ես որ ճորտութիւնով վարակուած հնչուն չէնք

մ'եմ, օրէնքին համեմատ քերուելու հարուածին ենթարկուեցայ, կակուղ կաւով մեղմօրէն ծեփուեցայ, ու երբ անկարելի դարձաւ մաքրութիւնս, շինողին ձեռքով քակուեցայ, ու Աստուծոյ հրամանովը դուրս հանուելով, իբր արդարացի փոխարինութիւն իմ գործերուս, առանց մազի չափ խնայուելու, հաղորդակցութենէ զուրկ բոլորովին անմաքուր տեղ մը նետուեցայ. ես որ Աւետարանին յիշատակած աւանդակորոյս ապերախտին նման, չարութեամբ գետնին տակ ծածկուած դրամ մ'եմ։

Բ. Բայց Դուն, ո՛վ Աստուած, Դուն որ աստուածաշնորհին դաւանութեանը համեմատ հոգիներուն և բոլոր մարմիններուն Աստուածն ես, Դուն որ սուրբ, համբերող ու ողորմած ես, ինչպէս կը գոչէր Սուրբն Յովնան, շնորհ ըրէ ինձ, որ սկսած այս աղօթագիրքս Քու կամացդ համեմատ աւարտեմ։ Ու ինձ հանգստարան մը պատրաստելու համար առաջին քայլիս մէջ լալով ցանած խօսքերս ա՛յնպէս պտղաբերին, որ հնձաքաղի ժամանակ բոլորովին քաւութիւն ստացած՝ առատ որաներով խնդումներես վերադառնամ։ Ո՛վ Ամենագութ, Իսրայէլին նման ամուլ արգանդ կրող սիրտ մի՛ տար ինձ, և ոչ ալ աղբիւրները ցամքած աչք։ Դո՛ւն երկնքին, երկինքն երկրին, երկիրը ցորենին, գինիին ու ձէթին, ու

այս երեքն ալ Իսրայէլին ականջ չտուած՝ լսէ՛ ինձ, ո՛վ զօրաւոր Ողորմած, ինձ՝ որ բանաւոր աղաչող մ'եմ, ու զՔեզ շրջապատող երկնաւորներուն աղօթքները՝ փոխանակ փտութեան ենթարկուած տարերքներուն նպաստելու, հոգւոյս փրկութեանը թող ազդեն, Դուն ստեղծող ես, ու ես կաւ, բա՛ց ինձ ողորմութեանդ դռները, որ չչուարիմ այս ողբագին աղօթքներու սկզբնաւորութեանը մէջ, ու հիմակուընէ զօրացո՛ւր զիս որ երբ երկնային դռները բացուին, լոյսը վայելելու անվարժ չգտնուիմ ու մոմի պէս չհատանիմ ու չոչնչանամ։

Ինչպէս որ մարգարէն իր աղօթքներուն մէջ կ'ըսէ, արդարեւ ոգեւորութիւն կուտաս ինձ որ զրկուած եմ, ոյժ՝ որ թալկացած եմ, և կեանք՝ որ մաշած եմ, չէ թէ կրքերուս յաղթելով ու զՔեզ փնտռելու համար յոգնելով, այլ խղճմտանքէս նեղուելով։ աղօթքներուս աւանդն ա՛ռ, ու Քու շնորհներուդ ողորմութիւնը տո՛ւր. ընդունէ՛ այս փոքրը տկարէս, ու շնորհէ՛ այն մեծը Հզօրէդ. այս գրքիս մէջ գրուած աստուածային պատգամներուն համեմատ, բարձրերէն հոգի ղրկէ՛ մեզ, ու ազդեցիկ ըրէ՛ մեր զղջման խօսքերը։ Եսայիին ճշմարտութիւնը պարզող առակին նման, իբր պղինձ համարուող անարժէք ձայնիս փոխարէն՝ շնորհաց ոսկի, ու իմ անզարդ երկաթիս սեւ

գոյնին տեղ՝ Լիբանանու կարմրափայլ ու զարդարուն պղինձին պէս առաքինութիւն պարգեւէ՛ ինձ նման մահապարտի մը, ո՛վ Բարերար։

Ինչո՞ւ թշուառ սիրտս կը խստացնես, որ Քեզմէ չվախնամ, ո՛վ Անճառ ու Անհաւոր։ Այս փոքրիկ աշխատութիւնս ապարդիւն թող չմնա՛յ, զուր տեղն անբարեբեր գետին հերկողի մը յոգնութիւններուն նման։ Չըլլայ որ ցաւ քաշեմ ու չծնիմ, ողբամ ու չարտասուեմ, խորհիմ ու չհառաչեմ, ամպեմ ու չանձրեւեմ, վազեմ ու չհասնիմ, ես կանչեմ ու Դուն չլսես, պաղատիմ ու կարեկցութիւն չարուի, թախանձեմ ու ողորմութիւն չառնեմ, աղաչեմ ու բան մը չշահիմ, մատաղ ընեմ, ու հոտը չելնէ, Քեզ տեսնեմ ու պարապ ելնեմ։ Դեռ ես չկանչած՝ լսէ՛ ինձ, ո՛վ Զօրաւոր. անտանելի տանջանքի մի՛ դատապարտեր ինձ նման չարագործ մը, որ սահմանափակ կեանքս մեղքի մէջ կ'անցընեմ։ Ապրեցուր զիս, Գթած. մտիկ ըրէ՛ ինձ, Ողորմած. մարդասիրութիւն ցցո՛ւր ինձ, Ներո՛ղ. խնայէ՛, ո՛վ Համբերող. պաշտպանէ՛, ո՛վ Ապաւէն. բարերարութիւն ցցո՛ւր, ո՛վ Հզօր. ազատէ՛ (մեղքերէ), ո՛վ Ամենակարող. վերականգնութիւն շնորհէ՛, ո՛վ Նորոգող. կանգնէ՛ (հոգւով), ո՛վ Անհաւոր. լուսաւորէ՛, ո՛վ Երկնային. բժշկէ՛, ո՛վ Հնարագիտ. քաւէ՛, ո՛վ Անքննելի, պարգեւտո՛ւր, ո՛վ Առատաձեռն. շնորհով զարդարէ՛,

ո՛վ Աննախանձ. հաշտուէ՛, ո՛վ Անմեղ, ընդունէ՛, ո՛վ Անոխակալ, պարտքերէ ազատէ՛, ո՛վ Օրհնեալ։ Եթէ աչքերս յառելով, թշուառութեան օրն ինձ ապառնացող վտանգներուն նայիմ, փրկութիւնդ անմիջապէս թող երեւի, ո՛վ Յոյս ու Խնամակալս, և եթէ գլուխս վերցնելով ամենքը քաշող ահեղ ճամբուն նայիմ, խաղաղութեան հրեշտակդ անուշութիւնով դէմս թող ելլէ։ Կեանքիս վերջին օրն, աշխարհէ հրաժարած ատենս, մաքրէ՛ հոգիս, որ սիրոյ պարգեւիդ շնորհիւ եկող հրեշտակները, լուսոյ մէջ տանին զայն։ Արդար Նահատակներու պսակին մասնակից ըրէ՛ զիս, ու յուսահատած օրս անակնկալ բարիք շնորհէ ինձ նման չարի մը։ Բաւ լիցի որ ամէնուն Փրկիչն եղող բարեբանեալդ փառաւոր գազան մը ուղեկից կարգես ինձ նման հիւանդ ոչխարին, Դուն որ մեղքերու մէջ մեռնողներու կեանք, ու պարտքի տակ կործանողներու փրկութիւն կը շնորհես։

Գ. Արդեօք ըրած բարիքներդ պիտի մոռնա՞ս, ո՛վ Ակնկալութիւն, արդեօք ցցուցած գթութիւններդ պիտի անտեսե՞ս, ո՛վ Խնամող, արդեօք մարդասիրութիւններուդ հակառա՞կը պիտի գործես, ո՛վ Անփոփոխ, արդեօք կեանք շնորհելէ պիտի դադրի՞ս, ո՛վ Անվախճան. երեսի վրա՞յ պիտի ձգես ողորմութիւնդ, ո՛վ Երջանիկ պտուղ.

պիտի փճացնե՞ս ողորմութեանդ բարեշնորհ ծաղիկը, պիտի անպատուե՞ս հարստութեանդ պարծանքի առարկան, տակնուվրա՞յ պիտի ընես քու Բարձրութեանդ մազերուն փառքը, չպիտի՞ պահես պսակիդ պայծառութեան զարդը։ Եթէ ողորմածներն երանելի են, ուրեմն Դու որ փափագներու լրութիւնը սեպուող կատարեալ Թագաւոր մ'ես, վերջնական փրկութիւն պիտի չպարգեւե՞ս, վէրքերուս դեղ պիտի չտա՞ս, խոցերուս սպեղանի պիտի չքսե՞ս, տկարութեանս դարման պիտի չշնորհե՞ս. ո՛վ տիեզերքի կեանք պարգեւող, մութին մէջ լոյս պիտի չծագեցնե՞ս ինծի, որ ամբողջ յոյսս Քու զօրութեանդ վրայ դրած եմ, ո՛վ Ամենասուրբ Երրորդութիւն, Դուն որ նոյնութիւնով, իսկութիւնով ու մշտնջենաւորութիւնով կը փառաւորուիս, և մինչեւ յաւիտեան, ու մարդիկներէ չկրնալ սահմանուելիք ժամանակով բարեբանուած ես, ամէն։



*Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն*
*ու ողբաձայն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։*
*Սրտի խորերէն խօսք առ Աստուած.*



## Դ. ԽՕՍՔ

Ո՜վ իմ պարգեւներ շնորհող Տէրս, Տէ՛ր, Դուն որ բնական բարութիւնովդ բոլոր արարածներն ոչնչութենէ ըստեղծեցիր ու ամէնուն վրայ հաւասարապէս կ՚իշխես, Դուն որ փառաւոր, անքննելի, անհեղ, անհասելի, սոսկալի, զօրաւոր ու խիստ ես, ո՛չ սկզբնաւորութիւն ունիս ու ո՛չ ալ վերջաւորութիւն, կարելի չէ ո՛չ ըմբռնել, ո՛չ հասկնալ, ո՛չ տեսնել, ո՛չ զննել, ո՛չ շօշափել ու ո՛չ ալ մօտենալ Քեզ։ Պայծառ գիտութեան ու յստակ տեսութեան նոյն իսկ էութիւնն ես, օրհնաբանուած գոյութիւն մը՝ որ բարձր ես ու միանգամայն խոնարհ, ծագումդ ստուեր չունի և ճառագայթդ աշխարհ կը փայլեցնէ, ազդած վստահութիւնդ տարակոյսէ զերծ է, ու շնորհած հանգիստդ կասկածէ ազատ, կնիքդ չի փոխուիր ու կերպարանքիդ տեսքը չի բացատրուիր. Դո՛ւն, ո՛վ Տէր, Դուն վկայուած

անուն, քաղցրութեան համ, ուրախութեան բաժակ, հոգին կազդուրող հաց, օտարութեան մէջ սէր, երկբայութենէ զերծ խոստում, ցանկալի ծածկոց, անկողոպտելի զգեստ, բաղձալի հանգստարան, փառքի զարդ, մեծ ձեռնտու, գովելի ապաւէն, անպակաս շնորհ, անսպառ գանձ ու անապական անձրեւ ես։ Յօղ մ'ես որ արեւ կը սփռես, ու դեղ մը՝ որ ամէնուն վրայ կը տեղաս. ձրի բժշկութիւն ես ու կրկնածիր առողջութիւն. քաջալերութիւններու ամէնէն մեծն ես, ու կոչումներու ամենավեհն, աշխարհի աւետիսն ես, ու աղքատներու պաշտպանն, իշխան մ'ես որ ստրուկներդ կը մեծարես, ու հարուստ մը՝ որ բնաւ չես աղքատնար ու միշտ կ'ողորմիս. հրամանդ ետ չի դառնար, ու քեզ դիմողը ձեռնունայն չի մնար, տուած յոյսերդ անսահման են, ու տեսութեանդ ասպարէզն անհատնում. աչքդ աչառութիւն չ'ըներ ու ձեռքդ արդարութիւնով կը կշռէ. ամէնուն առատութիւնով կը բաշխես, ու տալէ վերջ չես զղջար։ Մխիթարութեան ձայն ես, ու սփոփանքի բերկրառիթ լուր, կենդանի անուն ես ու նախախնամող մատ, ընթացքդ անխարդախ է, ու յաջողութիւնդ անվրէպ. կամքդ կենդանութիւն կուտայ, խրատդ անշահախնդիր է ու պատիւդ աննախանձ. ընդարձակուելու միակ միջոցն ես, ու ամփոփուելու եզական պայմանն, հետքդ

անգտանելի է ու շաւիղդ աներևոյթ. պատկերդ չի չափուիր ու քանակութիւնդ չի սահմանուիր. աննման տիպար մ'ես ու անզուգական դթացող մը. ողորմութիւնդ առատ է ու խոնարհութիւնդ տօնելի. և Դուն ես (հոգւով) փրկութեան միակ միջոցը։ Ասոնցմէ զատ Աստուածութեանդ նուիրելու արժանի դեռ անհամար ածականներ կան, օրհնուած, գովուած, բարեբանուած, քարոզուած, հռչակուած, աւետարանուած, պատմուած, աներկեղծօրէն աղաչուած, և դեռ շատ մը քաղցր բղխումներ որ Քեզմէ մեզի կը շնորհուին ու ապագայ ճառերու մէջ պիտի պատկերացուին, և որոցմով — ճոխ սեղանէ ախորժակով կշտացողի մը պէս զուարճանալով — կը հաճիս (հոգիս) փրկել, ո՛վ երանելիդ Աստուած. որովհետեւ չէ թէ իմ անարժէք ու անիմաստ աղօթքներովս կը փառաւորուիս, այլ իմ խոնարհ աղաչանքներս պատճառ կը սեպես որ հոգիս փրկես։

Բ. Բոլոր քրիստոնեաներուն, առաջին ժամուն հասնող մանուկներուն, երկրորդ ժամ սեպուած չափահասներուն, ու իրիկուան ժամ համարուող լքեալ ծերերուն, մեղաւորներուն ու արդարներուն, ինքնահաւան հպարտներուն ու սխալը ճանչցող խղճամիտներուն, բարիներուն ու եղեռնագործներուն, քաջերուն ու երկչոտներուն, հարկատուներուն ու ստրուկներուն, ազնուական-

ներուն ու աշխարհիկներուն, միջնակարգներուն ու իշխանազուններուն, գեղջուկներուն ու տոհմիկներուն, արուներուն ու էգերուն, հրամայողներուն ու հնազանդողներուն, գերիներուն ու նուաստներուն, մեծերուն ու պզտիկներուն, պատուաւորներուն ու ռամիկներուն, ձիաւորներուն ու հետեւակներուն, քաղաքացիներուն ու գեղացիներուն, ահաւոր Աստուծմէդ սանձուած գոռոզներուն, մշտամրմունջ ճգնաւորներուն, ու զգաստ մաքրակրօններուն, ընտրեալ եւ երջանկակրօն քահանաներուն, բարեխրատ այցելու հովիւներուն ու սրբանուէր աթոռակալ նախագահներուն և համայն քրիստոնէից կողմէ շարադրեցի այս ողբերգական նոր աղօթագիրքն, ուր ամբողջ մարդկութեան կիրքերը մի առ մի նկարագրելով, ճշգրտապէս պատկերացուցի, իրենց մանրամասնութիւններովը նշաւակելով զանոնք, ու տիեզերքի համայն քրիստոնէից ցաւակից ու անոնց պէտքերուն մասնակից եղողի մը պէս, Սուրբ Հոգւոյդ զօրութիւնովդ այս աղօթագիրքը գրել ձեռնարկելով, անոր մէջ ամէնուն յարմար բազմադիմի աղօթքներ ու խնդրուածքներ զետեղեցի, որ ոմանց իբր աղօթագիրք ու ոմանց ալ բարի խրատատու ըլլայ ու այս գրքով ամէն օր ներկայանան աղօթելու ու մեծ գթութիւնդ խնդրելու։

Գ. Ու յստակ սրտով այս գիրքը կարդացողներուն

հօգիներուն բժշկութիւն, յանցանքներուն քաւու-
թիւն, ու պարտքերուն թողութիւն շնորհես, և մեղքի կապերը քակես: Ասով վարժուողներուն արցունքները թող յորդին. ու այս աղօթքներուն շնորհիւ անոնց ապաշխարութիւնը կատարեալ աեպուելով, բարի փափաքները թող կատարուին: Ո՛վ Տէ՛ր, ինծի ալ զղջում շնորհէ անոնց հետ, և անոնց ալ բարեհամբոյր շունչ պարգեւէ իմ աղաչանքներովս. այս գրքով, անոնց ինծի համար ըրած աղօթքներն ընդունելի թող ըլլան, և այս խօսքերով անոնց հեծութիւններն իմինիս հետ թող նուիրագործուին: Այս ողբերգութիւնը կարդացողներուն վրայ Քու լուսեղէն շնորհքդ թող գայ հանգչի, եւ եթէ այս գրքին շնորհիւ բարեպաշտացողներ ըլլան, զիս ալ անոնց հետ մէկտեղ ընդունէ, ո՛վ Գթած. եթէ այս աղօթքներու ազդեցութեամբ հոսած կաթիլ մը արցունքն ընդունելի ըլլայ Քու առջիդ ու սրբագործուի, իմ վրաս ալ թող անձրեւէ այն սրբագործութիւն, ո՛վ Խնամակալ. եթէ այս կեանքի պայքարին մասնակցողները փրկուին, զիս ալ անոնց հետ փրկէ. եթէ այս գրութեան շնորհիւ մէկու մը գաղտնաբար Աստուծոյ մատուցած աղօթքներն ու հեծութիւններն ընդունելի թուին, Քո՛ւ շնորհիւդ ես ալ օգտուիմ անկէ, ո՛վ Բարձրեալ. եթէ խնկաւէտ ու մաքուր ձեռք մը դէպ ի Քեզ բարձրանայ, իմ ձայնիս հետ ու-

ղաչողներուն աղօթքներն ալ Թո՛ղ Քեզ մատուցուին։

Եթէ բազմադիմի խնդրուածներ միանան իմ աղաչանքներուս հետ, Քու շնորհիւդ ու այս աղօթքներու միջնորդութիւնով կրկնապատիկ Թող նուիրուի ինձ. եթէ այս խօսքեր յարգ ստանան քու առջեւդ ու անոնց ամփոփումն իբր ընծայ մը հաճութեամբ ընդունիս, ուրիշներուն աղօթքներն ալ իմինիս հետ ընդունէ։ Եթէ տխրութիւնն ու ձանձրութիւնը նուաղում բերեն ո՛ և է մէկու մը վրայ, այնպիսին այս աղօթքներուն շնորհիւ ու Քեզ յուսալով անմիջապէս Թող ոյժ ստանայ ու կազդուրուի. եթէ ո և է մէկու մը վստահութեան աշտարակը մեղքի պատճառով հիմնայատակ կործանի, Քու պաշտպան ձեռացդ զօրութիւնով կառուցուած այս արձանին շնորհիւ Թող վերականգնի այնպիսին՝ (հոգւով)։ Եւ եթէ մէկու մը յուսոյ կապն՝ յանցանքի սուրով խզուի, Քու ամենակալ կամքովդ նորէն Թող կապուի։ Եթէ հիւանդ մը մահուան վտանգով պաշարուի, ու այս գրքով աղօթէ, ապրելու յոյս Թող ստանայ Քեզմէ, ո՛վ Փրկիչ. եթէ մէկը տարակոյսի պատճառով մտատանջութեան մէջ իյնայ ու սաստիկ տխրի, այս տողերուն միջնորդութեամբն ու Քու քաղցրութեանդ շնորհիւ մխիթարուելով Թող սփոփուի. եթէ մէկն աններելի յանցանքով մեղքերու անդունդին մէջ գլորած ըլլայ, այս կար-

թին շնորհիւ փրկուելով պաշտպանութիւնդ թող վայելէ. եթէ մէկը սատանայական հնարքներէ խաբուելով մեղաներու ենթարկուի, Քեզի ապաստանելով քաջալերութիւն թող ստանայ։ Եթէ մէկու մը վստահութեան պահապանը զայն լքանէ, այս միջնորդին շնորհիւ Քու ձեռքդ թող ընդունի զայն ու իր տեղն հաստատ պահէ. եթէ մէկը պահապաններու հսկողութեան շրջանակէն հեռանալով ամայի տեղ մը դեգերի, իր տեղը վերադառնալու համար, ասով Նորոգողիդ (հոգիին) թո՛ղ ապաւէ։ Եթէ մէկը դիւային տենդի մը ենթարկուի ու դողդողալով սարսռայ, այս Խաչիդ խորհուրդը խոստովանելով ու անոր երկրպագելով, այս նշանով թող սթափի. աւերիչ հովերու անսաստ փոթորիկն եթէ աշխարհային ծովուն վրայ տարուբերուող մարդկային կազմուածքին յանկարծ բաղխի, Քեզ պատկանող այս ղեկին թեւովը անմիջապէս թող հանդարտի։ Ու Քու անունովդ սկսուած այս ողբերգանաց գիրքը Քու ծառաներուդ հոգեւոր ու մարմնաւոր ցաւերուն կազդուրիչ դարման ըրէ, ո՛վ Բարձրեալ, իմ սկսածս Դուն աւարտէ. Քու հոգիդ անոր մէջ թող խառնուի, Քու ազդու շունչդ, ինծ շնորհած բանաստեղծական ոգւոյդ թող միանայ, որովհետեւ Դուն զօրութիւն կուտաս վհատած (մեղաւոր) սրտերուն, ու ամէնէն փառաբանութիւն կ'ընդունիս։ Ամէն։

Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած։



## Դ. ԽՕՍՔ

Ի այն ատենէն, երբ խօսիլ սկսայ Քեզ հետ, սաստիկ տագնապ մը պատեց զիս, ու անտանելի երկիւղ մը ամբողջ էութիւնս դողացուց. որովհետեւ բազմամեղ հոգւոյս փրկութիւնը Քեզմէ մինակ կախում ունի, ո՛վ երկինքն ու երկիրն ստեղծող. ու անաչառ ատենիդ առջեւ կշտամբուելու գաղափարն այն ատրճան ահ ու սոսկում կ'ազդէ ինծի նման մեղաւորի մը որ անոր յիշատակէն զգացած տխուր տպաւորութիւններս երբեք չեմ կրնար խօսքով բացատրել։

Մանաւանդ որ (հոգիս) կորստեան մատնողին թունաւոր ակռաներով մարմնոյս վրայ բացած վէրքերն ալ խիստ վտանգաւոր ու մահացու են, ու անոնց բժշկութիւնն՝ անկարելի։ Եւ աւելի սոսկալին այն է որ դատաստանին օրը տալու պատասխան մը չունիմ —ինչպէս կ'ըսէ առակախօսը—

և ոչ իսկ զիս արդարացնելու խօսք մը․ ո՛չ վերարկուով կրնամ պատսպարուիլ, ո՛չ դիմակով կերպարանափոխուիլ, ո՛չ շողոքորթութիւնով մօտենալ, ո՛չ կեղծ ու պատիր ձեւերով խաբել։ Պարապ խօսքերով չե՛մ կրնար ստել և ո՛չ ալ շուտափոյթ քայլերով կրնամ փախչիլ, ո՛չ թիկունքս կրնամ դարձնել․ ո՛չ երեսս գետնին կպցնել, ո՛չ բերնովս հողն համբուրել և ո՛չ ալ գետնին խորերը պահուըտիլ։

Որովհետեւ ծածուկ բան մը չկայ Քեզ համար և ոչ ալ աներեւոյթ խորշ մը․ արդարութիւններս նուազած ու իսպառ ոչնչացած են, ու մեղքերս յորդած ու չափէն աւելի շատցած․ չարիքներս մնայուն են, իսկ ես կորստական․ իրաւունքներուս կշիռը պակսած է, իսկ անիրաւութիւններուս քանակը ծանրացած․ բարեգործական արարքներս հալած են, իսկ սխալմունքներս իբր արձան կը մնան․ աւանդս կորսուած է, իսկ դատակնիքս հիմակուընէ պատրաստուած․ զիս (յաւիտենական) մահուան դատապարտող մուրհակը գրուած կը պահուի, իսկ ինձ կեանքի աւետիս շնորհող կտակը բոլորովին աւրուած է։ Բարերարը տխուր է, իսկ չարախօսն ուրախ․ հրեշտակներու գունդը կը տրտմի, իսկ սատանաները խնդալով կը պարեն․ երկնային զօրքերը կ՚ողբան, իսկ ստորնայինները կը խնդան․ մահացնողին մթերանոցը լեցուած է,

իսկ պահողին գանձը կողոպտուած․ օտարին կողմը զօրացած է, իսկ ստացողին պարգեւներն ոտնակոխ եղած․ ստեղծողին ձիրքերը մոռցուած են, իսկ կորսնցնողին որոգայթները պահուած․ Փրկչին երախտիքներն հեգնուած են, իսկ սադայէլ՝ զըւարթացած․ կեանքի աղբիւրը փակուած է, իսկ գառողին թոյնն ինձ նման դաժանի մը հասած։

Բ․ Ուրեմն աւելի փափաքելի չէ՞ր — մարգարէին ըսածին նման — բնաւ արգանդ չիյնալ, ու որովայնի մէջ չնկարուիլ, ո՛չ ծնելու հասնիլ, ո՛չ կեանքի լոյսը տեսնել, ո՛չ իբր մարդ սեպուիլ, ո՛չ հասակ երկարել, ո՛չ գեղեցիկ դիմագծերով զարդարուիլ, ու ո՛չ ալ ճարտարախօսութիւնով օժտուիլ, քանի որ այսպէս սարսափելի դատապարտութիւններու ենթարկուիլ կայ, որոնց ապառաժ քարերն իսկ չեն կրնար դիմանալ, ո՛ւր մնաց թոյլ ու տկար մարմին մը։

Գ․ Ուրեմն, տո՛ւր, Բարեգո՛ւթ, կ'աղաչեմ, ողորմութեանդ շնորհը տուր ինձ, ըստ որում Դո՛ւն իսկ Քու անսուտ խօսքովդ ըսիր մեզ թէ, յանուն ձեր (հոգւոյ) փրկութեան, Աստուծոյ տուէք այդնուէրն ու մաքրուեցէք, որովհետեւ ողորմութիւն կ'ուզեմ, չէ թէ զոհ։ Ահաւասիկ այս աղօթքներուն յիշատակովը բարձրացի՛ր դարձեալ, ո՛վ Ամենակալ, Դուն որ ամէն բան ունիս. ու ամէն բան Քեզմէ կ'բղխի ու ամէնուն կողմէ Քեզ փառք կը մատուցուի․ ամէն։

Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու ողբ-խառն հեծեծանքներուն հո՛ս յաւելուածը՝
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## Ա. ԽՕՍՔ



Եւ հիմայ ես որ իբր հողեղէն մարդ՝ աշխարհային անցաւոր իրերով կը զբաղիմ ու խաբող գինիին յիմարութեամբը խենթեցած՝ միշտ կը ստեմ և ոչ մէկ կերպով չիտակը կը խօսիմ. երբ այնչափ աղարտուած եմ —վերը նշանակուածին նման—, ի՞նչ երեսով յանդգնիմ դատաստանիդ առեանն ելլելու, ո՛վ ամէնուն՝ զօրաւոր Աստուածը, Դուն որ արդարութեամբ կը դատես, անհաւոր ես ու կարելի չէ ո՛չ Քու վրայ ճառել և ոչ ալ պատմութիւնդ ընել։ Հոս իսկ դասակարգելով ապերախտութիւնը մեղաւոր անձիս՝ հանդէպ Քու երախտիքներուդ, պիտի ցուցնեմ որ իրաւունքներդ միշտ զօրացած են ու իմ անիրաւութիւններս մինչեւ վերջը դատապարտուած. Դուն որ պանծալի պատկերիդ վրայ ստեղծեցիր

զիս Քու վեհ կաղապարովդ օժանդակելով ինձ, տկարիս։

Բ. Խօսքով զարդարեցիր, (շունչ) փչելով փայլեցուցիր, մտքով ճոխացուցիր, իմաստութիւնով աճեցուցիր, հանճարով հաստատեցիր, շնչող (կենդանի)ներէն որոշեցիր, ազգային հոգիով խառնեցիր, անձնիշխանութեամբ պճնեցիր։ Հօր նման ծնար, դայեակի նման սնուցիր, ստնտուի նման դիեցուցիր։ Ամբարիշտները բակիդ մէջ տնկեցիր, կեանք տուող ջրովդ ոռոգեցիր, աւազանին ցօղովը մաքրեցիր, կեանքի առուովը արմատ արձակել տուիր, երկնային հացովդ կերակրեցիր, աստուածային արիւնովդ յագեցուցիր։ Անոնց որ անկարելի էր մօտենալ և ոչ իսկ խելք հասցնել՝ ընտանեցուցիր, համարձակութիւն տուիր երկրային աչքով Քեզ նայելու, փառքիդ լոյսովը վերածածկեցիր, անմաքուր ձեռքերուս հողեղէն մատները Քեզ մօտենալու թոյլատրեցիր, լոյսի նշոյլի նման յարգեցիր զիս, որ անարգ և մեռնելու ենթարկուած մոխիր եմ. Քու զօրաւոր, ահաւոր և օրհնուած հօրդ անունն, մարդասիրապէս իմ անարժան անձիս վրայ ալ դրոշմեցիր։

Պարապ խօսքերով լեցուած բերանս չայրեցիր, երբ Քեզ ժառանգակից կ'անուանէի ինքզինքս. չյանդիմանեցիր զիս, երբ Քեզ կցորդուիլ յանդգնեցայ. աչքս չմթնցուցիր երբ ակնարկ կը

նետէր Քեզ. ո՛չ ձեռնակապի կաշկանդումով մահապարտներուն հետ տարագրեցիր զիս, ո՛չ բազուկիս դաստակը կոտրեցիր՝ որ անմաքուր կերպով Քեզ կը բարձրանար, ո՛չ մատներուս ոստերը մանրեցիր երբ կեանքի խօսքդ (բան) կը չօշափէին, ո՛չ մառախուղներով չրջապատուեցայ երբ զՔեզ կը ձօնէի, ո՛վ Անհաւոր· ատամնաշարերս չփշրեցիր, երբ կը ճաշակէի զՔեզ. որ սահման չունիս. բարկութեամբ հակառակ չգացիր հետս, երբ մոլորած Իսրայէլի տանը նման խոտորնակ կերպով Քեզ կը հետեւէի. հարսնիքիդ մէջ չխայտառակեցիր զիս, որ անարժան էի պարերգութեանդ, ո՛չ գձուձ հագուստներս տեսնելով զիս անօրէնս յանդիմանեցիր և ո՛չ ալ ձեռքս ոտքս կապուած՝ դուրսի խաւարը ձգեցիր։

Գ. Ո՛վ Բա՛րերար. Օ՛րհնուած ու ամէն բանի համար միշտ Հա՛մբերող. բարիքներու այս ամէն մասերն ու երկայնամիտ ներողութիւնը — զորս ես դատապարտուածս ստացայ Քեզմէ — փոխարինեցի մարմնական և անձնական տեսակ տեսակ անօրէնութիւններով, ամէն կարգի աղտեղի խորհուրդներով և երկրաքարշ յուզումներով։ Այսքան բարիքներդ ատոնցմով փոխարինեցի, ո՛վ Տէրս ու Աստուածս։ Ես որ Մովսէսի յանդիմանական առակին նման, իմաստութիւնը մոռցող ու յիմարութիւնը սիրող մ՛եմ, իմ կողմէս այս չարիքներն

հատուցի Քեզ։ Այսքան բարիքներն ու անթիւ երախտիքները, ունայնամիտ ընթացքովս չարաչար ոչնչացուցի։ Ա՛րդ Բարձրեալ, Քու խնամքներուդ շնորհիւ բարդուած՝ անճառ շնորհներու այսչափ լոյսը, խելագարութեան փոթորիկովը ցնդեցուցի։

Իսրայէլի ամբաստանութեան առթիւ մարգարէին ըսածին նման, թէպէտ շատ անգամ ուզեցիր ձեռքդ ինձ երկնցնելով, այցելութեամբդ զիս դէպ ի Քեզ քաշել, սակայն ես հաւանութիւն չտուի։ Թէեւ խոստացայ, ուխտեցի հաճելի ըլլալ Քեզ, սակայն այս ուխտիս մէջ ալ չսահմանափակուեցայ. այլ դարձեալ սկսայ չարութիւն նիւթել, կրկին առջի ընթացքս բռնեցի, սրտիս արտին մեղքի փուշերը հերկեցի, որոմ արդիւնաւորելու համար։

Աստուածարեալ սուրբ մարգարէներուն ըսածները իմ վրաս կը կատարուին, որովհետեւ խաղող կ'սպասէիր ինձմէ ու ես փուշ բուսցուցի անոր տեղ. ես՝ օտարացած այգիս՝ լեղի ու անհամ պտուղներ տալ սկսայ. անհաստատ հովերէ բռնուեցայ, որոնցմէ միշտ երերալով աստին անդին կը տարուբերիմ։ Յոբ երանելիի ըսածին պէս, ես չդառնալիք ճամբայ մը գնացի. աւազի վրայ յիմարական շէնքեր կառուցի։ Լայն ճամբաներէ փափաքելի կեանքին հասնիլ կարծելով խաբուեցայ. փրկութեան ճամբան՝ ձեռքովս փակեցի.

կորսուելու անդունդը յօժար կամքովս բացի։

Ականջներս գոցեցի, որպէս զի կեանքի խօսքերդ չընդունիմ. հոգւոյս աչքերը փակեցի, կեանք շնորհող դեղը չտեսնելու համար։

Լքուած մտքիս թմրութիւններէն չսթափեցայ՝ ահաւոր փողիդ պատգամը լսելով. չզգաստացայ այն ողբէն, որ կրակով փորձուելիք օրուան (դատաստանին) ընտրութիւնը կը գուժէր. երբեք չարթնցայ մեռցնող քունէն, որ կորսուելու կ'առաջնորդէ։

Այս մարմնեղէն տաղաւարիս մէջ, բնաւ հանգստութիւն չտուի Քու հոգւոյդ. պարգեւած շնորհներէդ մաս մը իսկ չխառնեցի շնչող հոգւոյս, առակախօսին ըսածին նման, կենդանի հոգիս մեռցնելու համար իմ ձեռքովս փնտռեցի կորուստը։

Գ. Եւ սակայն ի՞նչ օգուտ ունի, քիչ մը աննշան կսկծեցուցիչ բաներ շարադրել ու չափաբերել, երբ չարիքներս չափն անցած են և անոնց բուժումն անկարելի է դարձած։

Արդ, Դուն կրնաս կեանք շնորհել ինձ, որ մեռած եմ հոգւով. մօտեցի՛ր, անոխակալութեամբ այցելութիւն ըրէ՛ ինձ դատապարտուածիս, ո՛վ կենդանի Աստուծոյ Որդին, ամէն պարագայի մէջ Քեզ փառք կը մատուցանեմ, ամէն։



Նոյն այն Հոկոզէն աղբրոալէց ճաղնանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## Զ. ԽՕՍՔ




՞ՆՉ բարիք կը ծագի սակայն ասկից, և կամ ի՞նչ օգուտ ունի ինձ այս հեծեծանքի ողբերգութեան շարքն, երբ կը թուլնամ, բայց մահացու վէրքիս վրայ ժողվուած թարախը խօսքի խարանով (տաք երկաթով տաղել) չեմ դուրս հաներ և կամ ցաւերուս մթերքէն ծանրացած սրտիս հոգեկան խիթերը չեմ բուժեր, տաղտկալի հնարագիտութեամբ մատս որկորս մտցնելով ու զզուանքով փսխելով։

Բ. Եւ որովհետեւ պարծելու արժանի չսեպուեցայ սուրբերու դասակարգին [հետ, որոնց բե-

բանները—սաղմոս ու տաղ խօսողներուն ըսածին նման — լեցուն են ծիծաղով ու չրթունքները ուրախութեամբ. ուրեմն բոլոր ինձ նմաններն հոս յիշատակելու համար երկրորդ դաստկարգին դիմեմ, թէպէտև իմ անբարոյ բնաւորութեանս թերութիւններուն հետ բաղդատելով անոնք յաղթական են, իբր չապաշխարողի մը հանդէպ ապաշխարողներ։ Մեղքերուս չարութեանը հետ բաղդատելով՝ սուրբերուն կարգը դասուեցաւ Մանասէ և իմ դժնեայ ամբարշտութիւններուս հանդէպ պատիւ ստացաւ Փարիսեցին. Անառակ որդին գովուեցաւ իմ անդարձ ուխտազանցութեանս նայելով և Ամասիայի որդւոյն կեղծաւորութիւնն յիշատակութեան արժանի հանդիսացաւ ինձ նման անպիտան ապերախտի մը քով։ Օրհնութիւն ստացաւ աւազակն որ անհաւատներուն դատախազն է. պատուուեցաւ պոռնիկ կինն որ ապաշխարողներուն առաջին մայրն եղաւ. Փարաւոնէն ոչ պակաս կարծրացուցի սրտիս յամառութիւնը. փոթորկալից ծովու ալեկոծութեանը նման ծփացի. ո՛չ այնքան պատկառեցայ ու դողացի հրամանիդ խստութենէն, որչափ ծովուն ալիքներն՝ եզերքներէն։ Գործած չարիքներուս թիւը աւազի կոյտերու հետ չափուելու աստիճանին հասաւ, որոնց անհամար չեղջերը, իմ անօրէնութեանս մթերքին հետ կշռուելով՝ պակաս եկան։

Գ. Որովհետև, Թէպէտ ջուրին եզերքը շատ մը մանր իրեր կան հաւաքուած, սակայն անոնք առանձին և զատ զատ ըլլալով, բնաւ չեն ծնիր ու չատնար. իսկ իմ յանցանքներս ու մեղքերս անթիւ են, զորս կարելի չէ միտք պահել: Մէկ մեղքս ու անկէ ծնածները. մէկն՝ ու իր ճիւղերը, մէկն ու իր բիծերը, մէկն ու իր արկածները, մէկն՝ ու իր փուշերը, մէկն՝ ու իր արմատները, մէկն՝ ու իր ստեղծածները, մէկն՝ ու իր պտուղները, մէկն՝ ու իր կտորները, մէկն՝ ու իր ճիւղերը, մէկն՝ ու իր ոստերը, մէկն՝ ու իր արմուկները, մէկն՝ ու իր ճիրանները, մէկն՝ ու իր մատուըները, մէկն՝ ու իր չարժումները, մէկն՝ ու իր զօրութիւնները, մէկն՝ ու իր ազդումները, մէկն՝ ու իր նշմարները, մէկն՝ ու իր օրինակները, մէկն՝ ու իր մնացորդները, մէկն՝ ու իր շուքերը, մէկն՝ ու իր մթութիւնները, մէկն՝ ու իր յարձակումները, մէկն՝ ու իր հնարները, մէկն՝ ու իր խաբէութիւնները, մէկն՝ ու իր դիտումները, մէկն՝ ու իր դիմումները, մէկն՝ ու իր չափերը, մէկն՝ ու իր խորութիւնները, մէկն՝ ու իր զզուանքները, մէկն՝ ու իր կայծակները, մէկն՝ ու իր կիրքերը, մէկն՝ ու իր մթերքները, մէկն՝ ու իր գանձերը, մէկն՝ ու իր ցատկռտուքները, մէկն՝ ու իր աղբիւրները, մէկն՝ ու իր գիւտերը, մէկն՝ ու իր չանթերը, մէկն՝ ու իր հրդեհները, մէկն՝ ու իր

պատկառանքները, մէկն՝ ու իր վիհերը, մէկն՝ ու իր անդունդները, մէկն՝ ու իր բորբոքումները, մէկն՝ ու իր մթութիւնները, մէկն՝ ու փոթորիկները, մէկն՝ ու իր կաթիլները, մէկն՝ ու իր հոսումները, մէկն՝ ու իր հեղեղները, մէկն՝ ու իր սառոյցները, մէկն՝ ու իր դռները, մէկն՝ ու իր ճամբաները։ Փուռն՝ ու իր տաքութիւնը կրակն՝ ու իր գոլորշիները, ճարպ հալեցնելու կաթսան՝ ու իր ճենճոտ հոտը, օշինդրն՝ ու իր լեղիութիւնը։ (Հոգին) կործանողն՝ ու իր հնազանդողները, բռնաւոր (սատանայ)ն՝ ու աւազակները. գոռոզն՝ ու իր զինուած մարդիկն, աւազակապետ (Բելիար)ն՝ ու իր գումարտակները, գազանն՝ ու իր լակոտները, խածնողն՝ ու իր ծակոտածները, ապականողն՝ ու իր նմանները։

Դ. Ասոնք հանրութեան հոգիներն ապականող մեղքերուն գլխաւոր պետերն են, որոնց ամէն մէկուն տակ կը դասաւորուին դեռ այս կարգի միլիոններով, հարիւրաւոր միլիոններով ուրիշ մեղքերն. իսկ անոնց ամէնուն համրանքը Անիկա մինակ կրնայ գիտնալ որ դեռ մեր չգործածները գործածի նման կը տեսնէ։

Արդ եթէ ոև է մէկը անձը խաբել չուզէ, երեսանց ձեւեր չառնէ ու կեղծաւորաբար չթերահաւատի և եթէ ինքզինքը ճանչնայ և զգալով որ հասարակ կիրքերու ենթակայ հողեղէն մարդ

է, իրեն համար սահմանուած չափը չանցնի. այնպիսին թող իմանա՛յ, հասկնա՛յ թէ՝ պարապ բաներ չեն վերը թուած արկածներուս մասերն և ոչ ալ ամբողջութիւնը՝ տեսակ տեսակ սխալանքներուն, որոնց մէջ կը պտուտկի մարդկային բնութիւնը. այլ մեղքի պտուղներուն տասը հազարէն հազիւ մէկը ցոյց տուի որ անոնցմով ուրիշներ ալ իմաստասիրէք, թէպէտ ոչ կատարեալ կերպով։



Նոյն այն Հոկողէն աղերսալից մաղթանքներուն
ու աղօթական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի՛ խորերէն խօսք առ Աստուած.



## Է. ԽՕՍՔ

Ի որպէս զի փրկուելու վստահութիւնը բոլորովին չկորսնցնեմ ու զինաթափ ըլլալով ձեռքը չիյնամ այսքան աներեւոյթ հակառակորդներու, որոնք ուրիշ բան չեն՝ եթէ ոչ ինքնին բուսած ընտանի թշնամիներ, զորս որոշեցին վերը գրուածները, պատկերացնելով անոնց անհարկու ձեւն ու թիւը, այսչափ բազմաթիւ թշնամիներու բռնութեան դէմ ցուցնեմ ուրեմն աստուածային զօրաւոր ախոյեաններն (կտրիճ) որոնք ամէն բանի կը յաղթեն ու բնաւ չեն յաղթուիր։

Թէեւ սոսկալի զոհողութիւններով կարելի է ստանալ զանոնք, իբր ձեռք չհասնելու չափ բարձր ծառերէ քաղուած պտուղներ և կամ մարդու ոտք չկոխած տաժանելի ճամբաներու արդիւնք։

Որովհետեւ աչքերէ հոսած քիչ մը արցունքի կաթիլներ կը սատկեցնեն քսու սատանային չար

զօրքերուն ամբողջ գունդը, նման բազմոտանի զեռուն ճճիներուն և կամ տկար շարժումներով երերացող թրթուրներուն, որոնք քիչ մը ձէթի և կամ որդասպան դեղի մէջ, վայրկենաբար կը սատկին։ Եւ լացող սրտի մը հոգիին խորերէն քաշած ախը, սառոյցներու անհագին կոյտերը կը հալեցնէ, արեւին տաքութեան հետ խառնուած հարաւային հովին նման։ Որովհետեւ մեղքերը վերի օրինակներէն մէկին նման շուտով կը ծնին, իսկ միւսին դիմադրութեամբն անմիջապէս կը մեռնին։

Բ. Իսկ ես երբէք ես չպիտի կենամ դատապարտուած անձս խիստ բառերով դատելէ. զիս մեղաւորս իբր փրկանք չունեցող յամառ պատժապարտ՝ քարկոծելէ. որովհետեւ երբ թշնամիներուս մէկ մասը կը սատկեցնեմ, միւս մասին ալ ոյժ կու տամ ապրելու որ հոգիս կորսնցնէ։

Տունկ մ'եմ լեղի ոստերով որ անառակ վարքերու զզուելի պտուղը տուի և ապականութեամբ ու թունաւոր ողկոյզներով բեռնաւորուած որթի ճիւղ մը, որ կորստեան գինին ծնայ։ Մեծն Դանիէլի ըսածին նման Քանանու զաւակ եմ և ոչ Յուդայի. գեհենի որդին եմ և ոչ Արքայութեան. դժոխքի ժառանգորդն եմ և ոչ փափաքելի փառքերու. տանջանքի նիւթ եմ և ոչ հանգստեան։

Ապերախտ եմ երախտիքներուդ հանդէպ և անհամար պարգեւներդ ուրացող. համբերութեանդ

փոխարէն միշտ մեղք կը գործեմ և քաղցր ընթացքդ դառնացնելու առիթ կու տամ, ո՛վ Բարերար։ Տիրոջը յանդիմանութեանը նման չար ու վատ ծառայ մ'եմ, չարիք գործելու մասին իմաստուն եմ — ինչպէս մարգարէացած է Եսայի — և զզուելի մեղքերու համար շատ արթուն։ Փութկոտութիւն ցոյց կու տամ Տէրը բարկացնելու և չարունակ վարժումի մէջ եմ սատանայական հընարք խորհելու. ամէն վայրկեան վիշտ կը պատճառեմ զիս Ստեղծողին։ Բարիք գործելու մասին թոյլ եմ և ծոյլ՝ ընտրուած երջանկութիւնը ձեռք բերելու. խոստացուած (հոգեւոր) նպատակակէտն հասնելու համար դանդաղ եմ և պիտանի ու օգտակար գործեր կատարելու անկարող. երախտիքները մոռցող ու Տիրոջը դրժող ծառայ մ'եմ։

Գ. Վա՜յ մեղաւոր անձիս. զիս Ստեղծողը բարկացուցի. վա՜յ ինձ՝ կորստեան զաւկիս, որ կեանք պարգեւող շնորհները մոռցայ. վա՜յ ինձ՝ տասը հազարներով քանքարներու պարտականիս որ պարտքերուս փոխարէնը վճարելու բան մը չունիմ. վա՜յ ինձ՝ անտանելի մեղքերու ծանրութեան տակ ճնշուած բեռնակրիս որ հանգիստ շընորհողին քով չի պիտի դառնամ. վա՜յ ինձ՝ Տիրոջը դէմ մեղանչողիս որուն անհնար է զօրաւորին դէմն ելլել. վա՜յ ինձ՝ եղէգնախառն դիւրավառ նիւթիս որ դժոխքին մէջ պիտի այրիմ. ՙվա՜յ ինձ՝

երբ յիշեմ թէ, Աստուծոյ բարկութեան նետերը կրակի մէջ պատրաստուած են. վա՜յ ինձ՝ յիմարիս որ միտքս չպահեցի թէ ծածուկ գործուածները պիտի յայտնուին, Վա՜յ ինձ՝ ամբարշտիս, որ չարիքներու կտաւը մագոգով գործեցի անդադար. վա՜յ ինձ՝ որ անմահ որդերուն համար մարմինս գիրցուցի. անոնց թունաւոր խայթերուն ի՞նչպէս պիտի կրնամ դիմանալ. վա՜յ ինձ՝ երբ մահուան բաժակը խմեմ. ի՞նչպէս պիտի կրնամ տուժել յաւիտենականութեան մէջ. վա՜յ ինձ՝ երբ անարժան հոգիս ողորմելի մարմինէս ելլէ, ի՞նչպէս պիտի ներկայանամ ճշմարիտ դատաւորին. վա՜յ ինձ՝ երբ իւղը պակսի լապտերներուն, որովհետեւ մարելէ վերջ կարելի չէ նորէն վառել. վա՜յ ինձ՝ այն սոսկալի երկիւղին տագնապալից ժամուն երբ առագաստին դուռը գոցուի. վա՜յ ինձ՝ երբ երկնաւոր թագաւորին վճիռը կնքուած սարսափելի և սրտերը դողացնող ահաւոր խօսքը հնչէ թէ, չեմ ճանչնար զքեզ։



Նոյն այն Հոչողէն աղերսալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտէ՛ խորերէն խօսք առ Աստուած

## Ը. ԽՕՍՔ



ՅԺՄ ի՞նչ պիտի ընեմ, ո՛վ կորսուած անձս. ո՞ւր պիտի պահուըտիմ. ի՞նչպէս պիտի ազատիմ կամ ի՞նչ միջոցով պիտի ելլեմ մեղքերու բանտէն։ Որովհետեւ մեղքերդ խիստ շատ են ու տուգանքդ անթիւ. յանդիմանութիւնը սաստիկ է ու նախատինքն անվերջ. հրեշտակներն անգութ են ու դատաւորն անկաշառ։ Ատեանը զօրաւոր է ու թեմն անաչառ. ապառնալիքը սոսկալի է և փոխարինութիւնը խիստ. հրամանն անհարկու է և յանդիմանութիւններն հրապարակային։ Գետերը կրակէ են և առուներէն կարելի չէ անցնիլ. մուխը խիստ թանձր

է ու մշուշին մէջ աչք չի տեսներ . փոսն աղտոտ է և սրտադողն վերջ չունի . անդունդը ամէն բան կուլ կու տայ և սառոյցներէն կարելի չէ ազատ մնալ ։

Արդարեւ Քեզ համար գանձուած են այս սոսկալի նեղութիւններն ու անտանելի պատուհասներու տաժանելի օթեւաններն, ո՛վ իմ անարժան անձս . որ մեղաւոր, չարագործ, աղտոտ, պոռնիկ և ընդհանուր կեղտոտութիւնները թափուած արտին՝ սահմանն ես ։

Հիմայ ձեռքովդ գործածներուդ արդիւնքը պիտի վայելես՝ դուն որ ուղղութենէ շեղած, մաքրութենէ խոտորած և արդարներուն ու պարկեշտներուն դասակարգէն վռնտուած ես . հոգիիդ շընորհուած հարստութիւնը պարապ տեղը վատնելով Բարերար և ամէն բանի վրայ կարող (երկնաւոր) Թագաւորին բարկութիւնը վրադ հրաւիրեցիր ։

Բ . Եւ դուն քեզմէ խոստովանելով թէ վէրքդ անբուժելի է և կրած հարուածդ աննման . և թէ մահապարտ անձդ չբժշկուելու աստիճան խորտակուած է, այսպէսով բանտ մը չինեցիր քեզ, ուրկէ կարելի չէ անգամ մ'ալ ելլել և ծուղակ մը՝ ուրկէ փախչիլ, ո՛վ բարիներուն մէջ գտնուող չար, ո՛վ անոյշին մէջ լեղի . ո՛վ լոյսի զուակներուն մէջ խաւար . ո՛վ զարդարուածներուն մէջ մերկացած, ո՛վ գովուածներուն մէջ

պարսաւուած, ո՛վ բարեպաշտներուն մէջ ամբա-
րիշտ. ո՛վ բանականներուն մէջ լոկ շնչող. ո՛վ
մտացիններուն մէջ ա՛նմիտ. ո՛վ իմաստուններուն
մէջ տխմար. ո՛վ ընտրեալներուն մէջ անմաքուր,
ո՛վ կենդանիններուն մէջ մահացու. ո՛վ սուրբե-
րուն մէջ պիղծ. ո՛վ պարկեշտներուն մէջ գինով.
ո՛վ արդարներուն մէջ կեղծաւոր. ո՛վ պիտանի-
ներուն մէջ անպիտան. ո՛վ փառաւորներուն մէջ
անարգ. ո՛վ ճոխերուն մէջ կարօտ. ո՛վ պատ-
ուաւորներուն մէջ գերի. ո՛վ վեհանձններուն մէջ
նուաստ. ո՛վ հարուստներուն մէջ աղքատ. ո՛վ
փրկուածներուն մէջ անարժան. ո՛վ բարձրերուն
և հոգւով հարուստներուն քով տնանկ և օրհ-
նուածներէն զատուած։



Նոյն այն Հօկոզէն աղերսալից ծաղկանցներուն ու ոգեխառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։

Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

---

## Թ. ԽՕՍՔ



ՏԻՄԱՅ՝ այս ողբերգութեան գրքին մաղթանքներուն մէջ, ի՞նչ արժանաւոր բամբասանք չարադրեմ քեզ, ո՛վ Թշուառ և ամօթապարտ անձս, որ պատասխան գտնելու անկարող, պապանձած ես և Աստուծոյ ու սուրբերուն մասնակցութենէն զրկուած։ Որովհետև եթէ ծովացած լիճերէն մէկը մելանի փոխեմ և մղոններու ընդարձակութեամբ տարածուած դաշտերը

լայն թուղթի վերածեմ ու անտառներու բազմաթիւ պուրակներէն եղէգի խուրձեր կտրելով գրչի տեղ գործածեմ, մէկ փոքր մասն իսկ չեմ կրնար գրի առնել դիզուած անօրէնութիւններուս։ Մանաւանդ եթէ Լիբանանու մայրի ծառերը մեղացս հետ զուգակշռեմ և կամ (ամենաբարձր) լեռը չիտակ կշիռի մը նժարին մէջ դնեմ, դարձեալ չեն կրնար հաւասարիլ անոնք անօրէնութեանս քանակին։

Բ. Բարձրաբերձ ծառ մ'ես, ստուար ոստերով ու խիտ տերեւներով զարդարուած. բայց անպտուղ՝ նման ճիշդ այն թուզի ծառին, զոր Տէրը չորցուց. որովհետեւ թէեւ կանանչ տերեւներով — այսինքն պարկեշտութեան արտաքին ձեւերով — զարդարուած ես պսակաւորի մը նման, սակայն հեռուէն դիտողները միայն կրնաս հրապուրել· իսկ եթէ տնկողը մօտենայ ու պտուղ փնտռելու ձեռնարկէ, բոլորովին զուրկ պիտի գտնէ զքեզ բարիքներէ և հեռու գեղեցկութենէ. տեսնողներուն ծաղրը պիտի հրաւիրես վրադ ու նախատողներուն խայտառակութիւնը։ Որովհետեւ եթէ տերեւախիտ ծառը անկենդան որ պտուղ չունէր — և անպատրաստ գտնուողներու մէկ փոքր օրինակը կը պատկերացնէր — անէծքի ենթարկուեցաւ այնպիսի անակնկալ ատեն մը որ արդէն պտուղ տալու եղանակն ալ չէր, և կամ ցօղով ջրուած հողն որ երկրագործներու տածած աշխատութեան փոխարէն

խիստ չատ արդիւնք չտար, երեսի վրայ ձգուելով կը մոռցուի, ուրեմն դուն, ո՛վ իմ խեղճ անձս, որ կենդանի խօսուն ծառ մ'ես ու եղանակին պտուղ չես տար, ի՞նչպէս չկրես վերի տունկին պատիժը։ Որովհետեւ առաջին մարդէն սկսեալ մինչեւ անոր ամբողջ սերունդին սպառիլը որչափ որ չար գործեր ու զքեզ ստեղծողին — Աստուծոյ — ատած ու չախորժած նոր գիւտերը կային, ամէնքն ալ իւրացուցիր, բան մը պակաս չթողելու պայմանով։

Գ. Եւ որովհետեւ ամբողջ մտածութեանս առարկան դուն ես, ո՛վ անպիտան անձս, նպատակ ունիմ խօսքի քարերով անգթաբար քարկոծել զքեզ՝ վայրենի գազանի մը նման կատաղի։ Անոր համար որ թէպէտ արդար անուանուելու արժանի չեմ, բայց իմաստունին ըսածին համեմատ, առաջին խօսքէս իսկ յօժարակամ կը կռուիմ անձիս հետ՝ թշնամիի մը պէս. և միտքս յուզող գաղտնի խորհուրդներն իբր կատարելագործուած չարութիւններ խոստովանելով կը պարզեմ առջեւդ, ո՛վ Տէրս ու Աստուածս։ Որովհետեւ ինչ չափով որ չափեմ անձիս յանցանքներն, նոյն չափով պիտի չափուի ինձ՝ անհատնում գթութենէդ, պարտքերուս չատութեանն հաւասար, անթիւ շնորհներ ստանալով Քեզմէ։ Եւ հարուածներու վէրքերն որչափ անբուժելի ու ծանր ըլլան, դարձեալ այն համեմատութեամբ հոչակուելով պիտի փայլի ար-

ուեստիդ ճարտարութիւնն, ո՛վ Բարձրեալ Բժիշկ. և ո՛րչափ մեծ ըլլան պարտքերս, նոյնքան փառաւորուելով պիտի պսակուի միշտ առատաձեռնութիւնը Փոխատուիդ. Քու օրհնուած առակիդ նըման: Որովհետեւ Քու ձեռքդ է փրկել և Դուն կրնաս քաւել. աջովդ նորոգել ու մատովդ զօրացնել. Արդարութիւնը Քու հրամաններէդ կը բղխի և ազատութիւնը (հոգւոյ) Քու ողորմութիւններէդ. լոյսը երեսներէդ կը ծագի ու զուարճութիւնը դէմքէդ. բարութիւնը հոգւովդ կ'ստացուի և սփոփանքը իւղիդ օծումովն, ու զուարթութիւնը շնորհիդ ցօղովը: Մխիթարութիւնը Դո՛ւն կու տաս, վհատութիւնը Դուն կը մոռցնես. վիշտերու խաւարը Դուն կ'անհետացնես ու ողբալով լալու ձայները Դուն ծիծաղի կը փոխես: Եւ Քեզ կը վայելէ մինչեւ վերջը գովուիլ ու օրհնուիլ, թէ՛ երկինքը, թէ՛ նախահայրերու սերունդէն և թէ՛ անոնց զաւակներէն. Ամէն:



Նոյն այն Հոգեղէն աղերսալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի՛ խորերէն խօսք ու Աստուած․

---

## Ժ. ԽՕՍՔ



ԱՅՑ թէ՛ չափէ աւելի զգլխալն և թէ՛ սանձարձակ մեղանչելը, հաւասար կերպով կորսուելու կը դատապարտեն մարդը․ որովհետեւ թէեւ ատոնց երկուքն ալ բոլորովին հակառակ են ու ո՛ և է տեսակէտով չեն նմանիր իրարու, բայց երբ քով քովի դրուին միեւնոյն վնասութիւնը կ՚արտադրեն։ Մէկը Զօրաւորին կարողութեանը վրայ կը թերահաւատի իբր ապիկար նկատելով զԱյն․ իսկ միւսը չորքոտանիններու նման անզգայ դարձած՝ յոյսին կապը կը կտրէ։ Անոր համար առաջինին վրայ միշտ գուրգուրալով կը խնդայ սատանան․ իսկ երկրորդին արիւնը ծծելով կը դիրնայ․ փառատող գաղանի նման իր դժոխային փորը լեցնելով։

Բ. Ուրեմն անոր նման՝ որ սոսկալի հարուածներու ազդեցութեամբ մահուան դուռն հասնելէ վերջ, քիչ մը շունչ առնելով նոր կեանք կ'ստանայ, ես ալ կազդուրուիմ պատսպարուիմ կանգնիմ (հոգւով). մեռնելու ատրճան կորսուելէ վերջ յարութիւն առնեմ օժանդակութեամբը Քրիստոսի, որ ամէն առթիւ գթած է։ Երկնաւոր և բարերար Հօրմէն փրկութեան և բժշկութեան պտուղ թող շնորհուի ինծ որ ախտացած ու մեռած մեղաւոր մ'եմ։

Եւ այս աղաչանքի ողբերգութեան սկիզբէն, հաւատքի չէնքը կառուցանեմ. որովհետեւ նախահայրերէն մէկը (Ենովք) ասով զինուած՝ իսկոյն երկնային անմահ կեանքին փոխադրուեցաւ, ընդունելով դեղն ապաշխարութեան. անեղծ մնալու (չմեռնելու) երաշխաւորութիւնը, զղջումի թուչակին շնորհիւ այս աշխարհէս իսկ ժառանգեց. խիստ գերազանց կերպով անօնցմէ, զորս առաքեալն իրեն (Ենովքի) հետ կը յիշէ. և որոնք (Աբէլ, Աբրահամ են) այս աշխարհի վրայ մրցանակի հանդէսը լրացնելով ապագայ երկնաւոր յոյսին հաւատացին և չտեսնուած ճոխութեամբը փարթամացան։ Ցիշեմ նաեւ քաջալերութիւնը Տիրոջ պաշտելի խօսքին թէ (հոգեւորապէս) «Ամէն բան կարելի է անոր համար որ կը հաւատայ»։

Մանաւանդ որ երբ Աստուծոյ հաճելի եղած

ընտիր բարեմասնութիւններն համեմատաբար քըննելով ասիկա (հաւատքը) կը գտնենք ամէնուն նախագահը. որով միայն կը պատրաստուինք սըրբութիւնները մտնել։ Առանց անոր (հաւատքի) փառքի Տէրն ալ իր հրաշքին զօրութիւնները մեզ չյայտնեց. եթէ ոչ, նախ մեր հաւատքը լծակից խնդրեց Իր բարերարութիւններուն։ Ուստի հաւատքը՝ որ Աստուծոյ մօտ է, կարողութիւնը ունի ինքն իր գլխուն կեանք շնորհելու. որովհետեւ «հաւատքդ քեզի ապրեցուց»ը Աստուծոյ օրհնած բերանը վկայեց։

Արդարեւ յստակ տեսութիւն, կատարեալ իմաստութիւն, Աստուծոյ հետ ընտանութիւն եւ Բարձրեալին հետ ծանօթութիւն են հաւատքի մանրամասնութիւնները. երջանիկ եւ նուիրական անուն մ'է այն որ տեւական կերպով կը մնայ անվթար եւ անխափան, պատուակից ունենալով իրեն սէրն ու յոյսը։ Որովհետեւ եթէ փոքրիկ սերմի մը, մանանեխի աննշան հատին չափ հաւատքը, անհագին լեռները՝ ծովուն մէջ կը փոխադրէ ուժեղ կերպով, ուրեմն վստահաբար պաշտօն մատուցանելու համար Աստուծոյ — որ ապագային ըլլալիքներն ու ծածկուածները հոգիին աչքովը կը տեսնէ անկասկած — խումբ ճամբայ բացող առաջնորդ ընտրեցինք մեզ հաւատքն որ Երրորդութեան փառաւորութեանը անունովը պատուուած է

դաստակից, ունենալով իրեն Սէրն ու Յոյսը. անոր համար որ եթէ այս երեք առանձին հատուածները միեւնոյն խորհուրդին մէջ դիտես. անոնց շնորհիւ միշտ կը մեծնաս Աստուծոյ առջեւ. որովհետեւ եթէ Անոր հաւատաս, կը սիրես ալ, որով և կը յուսաս Անոր աներեւոյթ պարգեւներուն. մինչեւ վերջը փառք տանք Անոր. Ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

---

## ԺԱ. ԽՕՍՔ



Ւ հիմա ես՝ դաւանողներու ամենէն յետինն որ բարիքներէ զուրկ եմ. մտքիս առջեւ բերելով առաջին ստեղծագործութիւնը, ուր Արարիչին ձեռքով ոչինչէ ստեղծուեցաւ. յոյսով կը հաւատամ Յիսուսի Քրիստոսի թէ, կրնայ ընել ինչ ¡ որ ուզէ։ Խօսեցաւ, անոր համար որ հաւատացած էի. խրատուելով Պօղոսէն ու սորվելով Դաւիթէն, որոնց կենդանի բարեմաղթութիւններն հիմայ թող այցելեն ինձ. որպէս զի ինչպէս որ հաւատքով կը ճանչնամ զԱյն — առաքեալին ըսածին նման — Անոր Յարութեան զօրութիւնը, չարչարանքներուն հաղորդութիւնը և ուրիշ ըսուածներն ալ ճանչնամ։

Իրարու կցուած են և մէկզմէկէ չեն բաժ-

նուիր կատարեալ կերպով հաւատալն ու նոր կեանքի փոխադրուիլը. մեղաւորը քաւութիւն կ'ստանայ. չարագործը կ'արդարանայ. աղտեղին կը մաքրուի. աններելի յանցանքներով՝ մեռնելու դատապարտուածն անվերջ երջանկութեան կ'արժանանայ ու ծառայական կաշկանդումներուն կը յաջորդեն երկնային ազատութիւն։

Զարմանալի և խելքէ մտքէ վեր չէ՞ սիրտը մեղաւորին, որուն միտքն Աստուծոյ ողորմութեամբն ու Անոր օգնութեամբը թերահաւատութեան խաւարէն զատուելու պէս, երբ մարմնով ծիծաղի, հոգիովը կը հառաչէ զղջումով։ Որովհետև եթէ իր բարձր դիրքին գագաթնակէտէն, նոր մեղքերուն անջնջելի ծանրութեամբը կործանումի փոսին անդնդային խորխորատներուն մէջ գլտորի իսկ, կեանքը փրկելու համար մօտն ունի դեռ նշոյլ մը լոյսի, մտքի և հոգիի մէջ պահուած կայծի մը նման. ճիշդ այն նշանաւոր և զարմանալի թանձր կրակին պէս, որ աստուածային հրամանով հրաշքով մակարդուած անջրդի ջրհորներու յատակը պահուած էր։

Ուստի մեղաւորն որ բոլորովին դիտումէ և Աստուծոյ բարիքներէն յուսահատ ու չի համարձակիր այլևս շնորհ խնդրել Անկէ, կը յուսայ դարձեալ հասնիլ այն նախկին փառքերուն որոնցմով զարդարուած էր։ Այս զգացում Աստուծոյ տնօ-

բէնութեամբ կ'արթննայ մեղաւորին մէջ որպէս զի Տուողին ամէն բանի կարող ըլլալն հռչակէ։ Եւ Աստուած մեծ հաճութեամբ կը հոտուըտայ այս (հաւատքի) խունկը, կ'ախորժի անկէ, ուրիշ անուշ հոտերէն և մինչեւ իսկ այն խունկերէն աւելի, զորս երբեմն աղալով իրարու կը խառնէին և խորանին մէջ կը ծխէին, իբր օրինակ այն խոնարհ անձերուն որոնք իրենց չար կամքը կոտրելով կը յաղթեն անոր։

Մեր ամէնուն Փրկիչն ալ մէկ քանի կոյրերու, «Կը հաւատա՞ք թէ այդ բանը կրնամ ընել ձեզ» հարցնելով, հաւատքին գերազանցութիւնն հաստատեց և անոնց աչքերուն լոյս չպարգեւեց, մինչեւ որ հաւատքի երաշխաւորութիւնը չստացաւ։

Չորս օրուան դիակի մը ողջննալէն աւելի, ի՞նչ կայ մեզ համար չյուսացուելիք. սակայն կիներն որ ջերմ հաւատքով Ստեղծողին ոտքն եկան, իրենց մեռած եղբօր ողջննալովն անմիջապէս տեսան Աստուծոյ փառքը։

Բ. Իսկ մեղք գործելէ վերջ դարձեալ շնորհ ստացողներու զօրաւոր ապացոյցներ կան։ Նախ Ենովք, ետքն Ահարոն, անոնցմէ վերջ Դաւիթ, դարձեալ Պետրոս։ Ասոնց հետ է նաեւ Եղիազարը ծերը, որ Մեծ Աստուծմէ ողորմութիւն գտնելով աւելի մեծերու վկայ եղաւ։ Անառակ որդին ա-

ռակն աւելորդ է հոս. զանց կ'ընեմ Գառնիկն որ Տիրոջ գովեստին արժանացաւ և Մաքսաւորն որ Բարեգործին կողմէ յիշատակուեցաւ և այն երջանիկ Աւազակն որ վերջին շունչն արձակած ատեն հաւատքով պսակուեցաւ։ Չեմ յիշեր Արարիչն սպաննելու մասնակցողներն որոնց մեղքն աններելի է. և ոչ ալ ընտրուածներուն գլխաւորն եղող Պօղոսն որ երբեմն առաջինն էր անօրէններու, որոնցմէ ոմանք խիստ օրինապահութեան պատճառով գլորելէ վերջ, դարձեալ կանգնեցան, իրենց առջի կրօնքէն տասը հազար անգամ գերազանց առաւելութիւնով։

Իսկ այն որ դեռ օրէնքը չտրուած հայրենի աւանդութիւնները պահելով չէր հեռանար նախահօրը (Ադամին) դաւանութեան պատուէրէն, և որ իր վրայ առնելով մեղքն առաջին մարդուն, անոր տեղ ապաշխարեց, կիրքերուն վրայ բռնանալով, անիկա՝ (Ենովք) ո՛չ միայն շնորհ ստացաւ հողին տակ չծածկուելու, այլ չարչարուելու ենթակայ մարմնոյն իբր մահուան բռնութիւններուն յաղթող և մարդոց կեանքին առաջնորդ, երկինք փոխադրուեցաւ։ Իսկ ոմանք իրենց տղայութեան խակ հասակէն չարութեամբ մեծնալով, երբ կատարելութեան հասան, ո՛չ թէ իրենց բարձր դիրքէն սահեցան, այլ այն թշուառ կեանքի ստորնութենէն՝ երկնից կամարները բարձրացան։

Եւ եթէ օրէնքին հաստատութենէն առաջ կարող եղաւ այն՝ (հաւատքը) չարիք գործելէ արգիլել զմարդ, մաքուր ոսկիի փոխել անոր հողեղէն կազմուածքը, (երկնային) Թագաւորական պատկերն՝ արքայական քանդակուածով նկարել մեր սրտին մէջ. հաստատ և անկորուստ դիրքի բարձրացնել ստրկացած մարդկային ազգն և սատանային դաւաճանութիւններուն յաղթող հանդիսացնել զայն. ուրեմն հիմայ ա՛լ աւելի պէտք է յուսալ բացարձակ լուսաւորութեան՝ ջինջ ու պայծառ, երբ ուխտած ենք մեր Տիրոջ՝ Քրիստոսի միջոցով։ Որուն շնորհիւ միշտ հաստատ կը պահուի մեր մէջ, մարգարէին՝ բերնով ըսուած աստուածային խօսքը. խաղաղութեան ուխտն ու անխախտ մնալու կնիքը որ հաստատուեցաւ հաշտարար միջնորդին, երկնային անմահ կենդանի և մշտնջենաւոր բարեխօսին ձեռքով։

Հետևաբար՝ այս ճշմարիտ կանոնին անդառնալի որոշումին և Արարիչէն աւանդուած պայմանին համեմատ, հաւատքի չրթունքներով կը համբուրեմ այս խօսքերուն պատկերացումն (կը հաւատամ) և կ'սպասեմ շնորհի փառքերուն. որովհետև — ինչպէս առաքեալը կ'ըսէ — երբ Աստուած կ'արդարացնէ զմեզ, այլևս և ոչ մէկը կրնայ դատապարտել։

Գ. Եւ այս անջնջելի կերպով գրուած վըռ-

տահութեան ապաստանելով կանգուն կը կենամ՝ որ կործանած եմ. կը յաղթեմ՝ որ թշուառ եմ. կենդանութեան կը դառնամ՝ որ մոլորած եմ. կը յուսամ՝ որ ամենէն թշուառ չարագործ մ՚եմ. կ՚ապրիմ որ մեռնելու դատապարտուած եմ. ձիրք կ՚ստանամ՝ որ աղտեղութիւններով թաթախուած եմ. լոյսի կ՚արժանանամ՝ որ դժոխային գործերով պաշարուած եմ. երկինք կը բարձրանամ՝ որ ստորնութեան սիրահար՝ անասունի կեանք կը վարեմ. դարձեալ կը փրկուիմ՝ որ երկրորդ անգամ գայթակղած եմ. հանգստանալու խոստում կ՚ըստանամ՝ որ մեղքերով կապուած եմ. անմահութեան դեղ կը վայելեմ՝ որ անբուժելի վէրքերով վարակուած եմ. հանդարտութեան սանձովը կը հնազանդիմ՝ որ կատաղութեամբ ըմբոստացած եմ. կը կանչուիմ՝ որ գլուխս առած կ՚երթամ. հեզ բնաւորութիւն կ՚ստանամ՝ որ կոշտ յամառ մ՚եմ. ներողամիտ կ՚ըլլամ՝ որ սոսկալի ընդդիմախօս և կռուարար մ՚եմ։ Այս ամէնուն կ՚արժանանամ անունովդ ու բարերար կամքովը Յիսուս Քրիստոսի, Անոր զօրաւոր ու ահաւոր Հօր ու ճշմարիտ Հոգւոյն, որուն իսկութիւնն օրհնաբանուած է և մէկ է աստուածութիւնը, զօրութիւնը, թագաւորութիւնը, մեծութիւնն ու փառքը, մինչև վերջն. Ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յանկերգը։
Սրտի՛ խորերէն խօսք առ Աստուած

—

## ԺԲ. ԽՕՍՔ




Ւ որովհետեւ առաջին զղջումիս մէջ միշտ յուսահատական խօսքերով թուլցայ ու տարակուսանքի գաւազանով՝ մեռնելու աստիճան ծեծ կերայ, ուրեմն հիմա դէպի յոյսը դառնամ ու գթութիւն խնդրել համարձակիմ՝ Սուրբ Երրորդութիւնն օգնութեան կանչելով ինծի մեղաւորիս։ Եւ երբ օրհնեմ ու դաւանիմ ամէնուն կենդանութիւն պարգեւող Աստուածը, շնորհ սփռող Բարերարին ահաւոր անուան ուղղուած ընտանի ձայնը կը վերակենդանացնէ զիս՝ որ մեռած եմ․ ինչպէս մարգարէն ըսած է կանուխէն թէ՝ «Ո՛վ որ Տիրոջն անունը կանչէ, անիկա է պիտի ապրի»։

Իսկ ես չէ թէ մինակ կը կանչեմ, այլ Նախ կը հաւատամ Անոր մեծութեանը. չէ թէ Անոր պարգեւներուն համար կ'աղաչեմ, այլ կը խոստովանիմ զայն իբր բուն իսկ կեանք և չնչաւորութեան պատճառ, առանց Անոր կարելի չէ ո՛չ շարժիլ և ո՛չ ալ քալել, որովհետեւ ոչ այնքան յոյսի ակնկալութիւնով՝ որքան սիրոյ կապով կը յարիմ Իրեն։

Ոչ թէ տուածին, այլ Տուողին կարօտ եմ միշտ. փառքին չեմ ցանկար, այլ փառաւորուածին կ'ուզեմ ընտանենալ. չէ թէ կեանքի փափաքումն, այլ կեանք շնորհողին յիշատակովը կը տառապիմ միշտ. վայելքներու տարփանքովը չէ որ կը հառաչեմ, այլ զանոնք պատրաստողին կարօտն է որ սրտիս խորերէն կը լացնէ զիս. հանգիստը չէ, զոր կը փնտռեմ, այլ հանգստութիւն պարգեւողին երեսը տեսնելու համար կ'աղաչեմ. չէ թէ հարսնարանի խնճոյքին, այլ կարօտովր կը մաշիմ փեսին, որուն զօրութեան վրայ վստահապէս յոյս դրած՝ աներկմիտ կերպով կը հաւատամ թէ, կարողին ձեռքն ապաստանելով ոչ միայն ինձ վերագրուած յանցանքներուն բեռներէն պիտի ազատիմ ու Ներում ստանամ, այլ նոյն իսկ զինքը պիտի տեսնեմ ողորմութեանը, գթութեանն ու երկինքի ժառանգութեանը մէջ, թէպէտեւ Իրմէ հեռու ձգուելու արժանի ըլլամ։

Բ. Եւ հիմա, շատ մը ամչնալիք գործերուս

համար պատկառած երեսս գետին խոնարհեցնելով ու նորոգելով շարժումի միջնորդն երկու շրթունքներուս — որոնք իրենց արժանի եղած կղպանքով գոցուած ու պապանձած են, որպէս զի չհամարձակիմ բերան բանալ — կրկին սկսիմ աղիողորմ ողբուլացով պաղատանքի ողբերը երգել բարձրաձայն կանչելով ։

### ԳԻՇԵՐՈՒԱՆ ԶԱՐՀՈՒՐԵԼԻ ՎԱԽԵՐՈՒՆ ԴԷՄ
## ԶՕՐԱՒՈՐ ԱՂՕԹՔ
(Ազատ փոխադրութեամբ)

Գ. Ո՛վ զօրաւոր Տէր Աստուած, հաճութեամբ ընդունէ աղօթքներս որ նեղուած եմ. գթութեամբ մօտեցիր ինձ, որ ամչցած երեսով կը կենամ. փարատէ՛ ամօթալի տխրութիւններս, ո՛վ ամէն բան պարգեւող. վերցո՛ւր վրայէս, անտանելի ծանրութիւններս, ո՛վ Ողորմած. հեռացո՛ւր ինձմէ այն վարժութիւններն, որ մահ կը պատճառեն, ո՛վ Հնարագիտ ։ Աւարի տո՛ւր հաճոյքները խաբողին, միշտ Յաղթո՛ղ. պարզէ՛ մառախուղը կատաղիին, ո՛վ Երկնային. դադրեցո՛ւր ընթացքը կորսնցնողին (սատանին), ո՛վ Ապրեցնող ։ Դուն որ ծածկուածները կը տեսնես, ի դերեւ հանէ՛ յափշտակողին չար դիւաերը. խորտակէ՛ կռուողին ընդդիմութիւններն որ անքննելի են ։

Քու անուամբդ խաչակնքէ՛ տանս լոյս տուող պատուհանը. ձեռքովդ պատպարէ՛ տաճարիս առաստաղը. Քու արիւնովդ գծագրէ՛ սենեակիս

մուտքին սեմը. ցոյց տո՛ւր ինծ կերպը նշանիդ, որ փրկութեան (հոգւով) ճամբայ մը կը խնդրեմ. աջ ձեռքովդ ամուր պահէ՛, հանգստանալու խշտեակս. աղտեղութիւններէ մաքրէ՛, անկողնիս ծածկոցը։ Քու կամքովդ պահէ՛ տառապած հոգիս. անխարդախ ըրէ՛ մարմինիս շնորհած շունչդ. երկնային զօրքերուդ խումբը, շրջափակ թո՛ղ կանգնի ինծ. դեւերու դասին դէմ կեցո՛ւր զանոնք։ Զքեզ ծնող Սուրբ Աստուածածնին ու ընդհանուր ընտրեալներուն բարեխօսութեամբն ուրախառիթ հանգիստ շնորհէ ինծ խոր գիշերուան քունիս ժամանակ, որ մահուան կը նմանի։ Աշխարհային զբաղումներու խռովարար ծփանքներէն, անվախ, անվտանգ պահէ՛, ամփոփէ՛, փակէ՛ զգայարանքներուս տեսութեան պատուհանը (աչք), որ գիշերային երազներէ ու խենթուխելառ երեւակայութենէ անմնաս պաշտպանուի Քու յոյսիդ յիշատակովը։

Ու կրկին սթափելով ծանր քունէն, կատարեալ զգաստութեամբ, արթնութեամբ ու հոգին նորոգող զուարթութեամբ Քու առջեւդ կանգնած՝ զՔեզ փառաւորող երկնային խումբերուն երգակցելով, այս աղաչանքի ձայնը հաւատքի բուրումով Քեզ կը մատուցանեմ, որ ամէնէն օրհնուած թագաւոր ես, անճառելի փառքով։ Որովհետեւ ամէն արարածները մինչեւ վերջ զՔեզ կը փառաւորեն. Ամէն։

Նոյն այն Հոգւոյն ազդարարեց մարգարէներուն
ու առաքեալներուն հեթանոսներուն նո՛ր յայտնութիւնը.
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

---

## ԺԳ. ԽՕՍՔ



ՍՏՈՒԱ՛Ծ իմ, Դուն որ զօրաւո՛ր, ահաւո՛ր, բարե-րա՛ր ու բա՛րի Հայր ես, ողորմութիւն կը շնորհես և Քու մեծ անունդ իսկ գթութիւն ու ընտանութիւն կ՚աւետէ նեղուողներուն ու դժգո՛ններուն։ Քու Որդիդ ալ Քեզ հետ և Քեզ նման է. Անոր ձեռքն ալ զօրաւոր է Քուկինիդ պէս ու իշխանութիւնն անհեղ՝ սկիզբ չունեցող ժամանակներէ ի վեր. Ա՛ն ալ Բարձր է Քեզ նման և Արարիչ։ Եւ ճշմարտութեան սուրբ Հոգիդ, որ անհատնում կերպով Քեզմէ բղխելով, կատարեալ իսկութեամբ գոյութիւն

ունի, մշտնջենաւոր էութիւն է ու ամէն կեր-պով Քեզ հաւասար և իշխանութեամբ՝ Որդւոյդ հետ փառակից։

Բոլորովին անքննելի երեք անձնաւորութիւն, դէմքով միայն զատուած ու իրարմէ բաժնուած. իսկ միեւնոյն կամքով ու կցորդութիւնով, նոյն բնութեամբ և իշխանութեամբ իրարու միացած՝ անբաժան և անայլայլելի։ Ո՛չ Մէկը Միւսէն մեծ է և ո՛չ ալ մէկն՝ ակնթարթի մը չափ ժամանակ թերացած է Միւսին հաւասարելէ. Երեքն ալ ըս-կիզբ չունեցող ժամանակներէ ի վեր միեւնոյն սրբասացութեան պսակովը կ'օրհնուին. և այս երեք Անձնաւորութենէն՝ չուք չունեցող Լոյսն (Յիսուս) էր որ երկնային սիրոյն պատճառով ինքզինքը ճանչցուց մեզ (աշխարհ գալով)։

Ա՛րդ, քանի որ այս խոստովանութիւնը, —զոր ես ըրի վերը՝ Սուրբ Երրորդութիւնդ դաւանելով—, Հաւատոյ վէմ անուանուած Պետրոսն երանութեան արժանացուց, գոնէ իմ ալ մեղքով դատապար-տուած անձս Նոր հրաշքով մը թո՛ղ արդարացնէ Քու բարեհրաման ակնարկութեանդ շնորհիւ, ո՛վ ինձ նման գերիներն Ազատող։ Որովհետեւ, թէեւ պարգեւներն ալ, ողորմութիւններն ալ Քեզմէ կը բղխին, սակայն պարգեւներուդ մասին ո՛չ այն-չափ հռչակուած ես, որչափ ողորմութիւններուդ։ Անոր համար որ երկրորդը Քու փառքդ կ'աւել-

ցընէ, իսկ առաջինը ճգնաւորներուն տառապանքը կը յայտնէ. ըստ որում պարգեւն (վարձք) աշխատութեան փոխարինութիւն մ'է; իսկ ողորմութիւններն, ինձ մեղաւորիս նուիրուած բարերարութիւններ են։

Բ. Ո՛վ գթոտ Աստուած, Քու շնորհներէդ աւելի զօրաւոր թող չըլլան մարդոց գործերը, թէև անոնք մարդկային տկար բնութեան սահմանէն վեր գործուած իսկ սեպուին. այլ միշտ թող յաղթէ համբերութիւնդ և հողեղէն արարածներուն ընթացքը պակաս թող երեւնայ Քու շնորհներուդ հետ բաղդատելով։ Որովհետեւ անոնք որ մաքրութեամբ կը փայլին իրենց օրինապահութեան վստահելով, երբ ներկայ օրէնքը ծանօթացնող արդարութեան լոյսդ ծագեցաւ, բոլորովին եւս միացին ու վերջին ծայր չքաւորութեամբ հրէութիւնը լքանելով, վերջնականապէս տարագրուած խղճալիներուն (հոգւով) հետ, ամենէն աւելի կարօտ միացին մարդասիրութեան։

Եւ որովհետեւ ամէն բան կարելի է Քեզ համար, ո՛վ Բարերար, լսէ՛ պաղատանքներս ու հառաչանքի ձայներս, զոր կ'ուղղեմ Քեզ. ողորմէ՛, փրկէ՛ և մարդասիրութիւն շնորհէ։ Որովհետեւ Դուն համբերող, քաղցր, ազատող և ներողամիտ ես. և ամէն դարու ազգերէն միշտ փառք թող մատուցուի Քեզ. Ամէն։

Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու ողբական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի՛ խորերէն խօսք առ Աստուած.

---

## ԺԴ. ԽՕՍՔ



ՔԵ՛Զ կը պաղատիմ, ո՛վ լոյսի ճառագայթ, երկնաւոր Թագաւոր, Դուն որ գովուած ես ու անպատմելի, ո՛վ մեծ Աստուծոյ անբացատրելի Որդին, դարձեալ ինձ մօտենալով ականջ տուր, ո՛վ բարձր և բարեգութ, երբ հոս նուաղած ձայնով կը հառաչեմ, որ վիրաւորուած եմ։

Բ. Բնաւ տեսնուած չէ մէկն որ աւազակներու սուրերէն խողխողուելէ ետք, Քեզ աղաչէր, որովհետեւ կծկուած էր. պաղատանքի ձայնով չպօռաց ետեւէդ, անոր համար որ ձայն հանելու կարողութիւն չունէր. մատուըները խաղցնելով աղէտալի վտանգը չյայտնեց Քեզ՝ — որ ամէն բան կը տեսնես —, որովհետեւ խորտակուած էր.

լալէ ողբալէ ուռեցած՝ արտասուալից աչքերով Քեզ Բարերարիդ դիմաց չկանգնեցաւ, որովհետեւ յանցաւոր էր. միջնորդի մը բարեխօսութեամբ չկրցաւ կամքը հաճեցնել ողորմածիդ, որովհետեւ անպաշտպան էր. վիրաւորուած մարմինին արիւններովը ներկուած հագուստները ներկայացնելով սիրտը չկակծեցուց գթածիդ, որովհետեւ յոյսը կտրած էր. ոչ իսկ ոտքերուն տեղ ծունկերը գործածեց ու անոնցմով քալեց, անոր համար որ տեղէն չէր կրնար շարժիլ. որովհետեւ ողջ մարդու մը կէս մեռած է ըսելը, բոլորովին մեռած ըսելէ շատ չի տարբերիր: Մանաւանդ որ Քու խօսքերովդ խրատուելով, ողորմութեանդ բարիքները վայելելէ և լուսեղէն փառքովդ զարդարուելէ վերջ, ոչ միայն չդադրեցաւ Քու կամքիդ հակառակ ճամբու մը հետեւելէ, այլ ապստամբութեամբ գլուխ քաշելով՝ գնաց իր թշնամիներուն հետ միացաւ, անոնց հետ պայման կնքեց և գործակցեցաւ Քեզ ատելի եղողներուն:

Գ. Իսկ Դուն, որ առատ պարգեւներ շնորհելով ամէնքը կը փրկես, ոխ չես պահեր ու բարերար ես, ոչ միայն մեղքերուն յիշատակը չպահեցիր չարագործին, այլ խօսքով իսկ չյանդիմանեցիր զայն. ոտքով չզարկիր անոր որ ինկած էր, այլ կարեկցութեամբ մօտեցար ու վերջին աստիճան խնամք ցուցուցիր:

Խոցոտածը ջախջախելու չփութացիր իբր քահանայ, նման Ահարոնեան տկար օրէնքին, որ զօրաւոր էր սակայն մեռցնելու պաշտօնին մէջ և կը դատապարտէր անէծքով ու քարկոծութիւնով բանի սպաննել: Ոչ ալ վտանգը տեսար վիրաւորուածին, Ղեւտացի անկատար առաջնորդին տեսակէտով, (Յովհաննէս Մկրտիչ), որ երկու օրէնքներուն միջնորդն ըլլալով, հինը լրացնելու ու նորն սկսելու պաշտօն ունէր և առանց կարող ըլլալու Հոգիին շնորհը տալ, ապաշխարութիւն կը քարոզէր: Այս Ղեւտացիին տեսակէտով չդիտեցիր վտանգը վիրաւորուածին որ արմատէն կտրող տապարին սպաննող օրէնքն ու մեռցնելու պաշտօնը Քու վրադ տեսնելով, դեռ փորձութեան չենթարկուած յուսահատ մեռնէր: Այլ հեթանոսներուն՝ դաւաճան ըսուած Ասորեստանցիներուն (Սամարացի) նմանեցար, որոնք ամբողջութեամբ պահեցին Հրեաներէն ընդունած իրենց օրէնքներն, զորս այս վերջինները մոռցան: Մարմինիդ վերարկուովն յայտնի գրկախառնութեամբ անոնց (Սամարացւոց) միանալով (հոգւոյ) ազատութեան աւետիսը օտար ազգերուն աւետեցիր. և Աստուածային զօրութեամբդ — որ չապականիր — ձեռք երկնցնելով ոտքի կանգնեցուցիր առաջին մարդը, որ ամբողջ սերունդովն մահուան դատապարտուելու չափ մեղք գործած էր: Ու բախացուցիր սիրտը տրտումին. վհատածը

վերահաստատեցիր. և այն որ անգամ մը թշուառ եղած էր, կրկնապատիկ լնդացուցիր։ Աւաղանին կեանք պարգեւող օծումովն ու լոյսին բաժակովը լրացուցիր. Քու արարչական մարմինովդ՝ երկնային հացովդ նոր կեանքի փոխեցիր։ Ընտրեալներու երջանիկ դասակարգին հսկողութեամբ, կոկեցիր, գուրգուրացիր ու խնամեցիր։ Հանդարտ քալող գրաստին հոգածութեամբն անզգուելի պահեցիր, մինչեւ լուսեղէն յարկը բերիր։ Երկու միջնորդներուն առաջին եւ երկրորդ անգամ տրուած կենդանի կտակներուն (հին և նոր օրէնք) միջոցով մարդասիրութեամբ դարման տուիր։ Եւ ինչպէս երբեմն Մովսէսին, նոյնպէս ալ անոր վրայ արծիւի նման թեւերդ տարածելով՝ հանդարտ կերպով հանգստանալու համար բարեբեր երկիր առաջնորդեցիր զայն և վարդապետներուն հրաման ըրիր որ խօսքի կերակուրը տան անոր։

Դ. Ա՛րդ՝ Դուն որ լոյսի ծայրագոյն բարիքներուն ամէնքը կատարելապէս բովանդակելով, ամէն առթիւ հրաշքներ գործեցիր, Դուն որ յափշտակողին (դեւ) գանձը Քեզ յատկացնելով, Քու ստացուածքդ Քեզ վերադարձուցիր. զիս ալ ազատէ մեղքի պարտքերէս մաքրելով. Դուն որ ձրի պարգեւ կու տաս անպատրաստ գտնուողներուն իսկ, անոնց հետ ինծի ալ քաւութիւն ու բժշկութիւն տուր ո՛վ Բարեգութ, զօրաւոր, անեղծ, անհաւոր և մինչեւ վերջն օրհնուած. Ամէն։



Նոյն այն Հոկողին ողբերգալից ձայնանուններուն
ու ողջախառն հեծեծանուններուն նո՛ր յաւելուածը։
Սրտի՛ խորերէն խօսք առ Աստուած

—

## ԺԱ. ԽՕՍՔ



ՍՈՐՄՈՔԱԾ սրտիս հեծութիւններուն դառնալով, ինքնաբերաբար առաջ պիտի անցնիմ կրկին՝ ու այս եղանակով նոյն խօսքերը պիտի կրկնեմ հոս, որպէս զի ամէն բան պարգեւողիդ գութը շարժեմ հոգւոյս վրայ որ անհատնում վտանգներով կը տառապի։ Իբր մեռել կ՚աղաչեմ Քեզ՝ որ կենդանի և անմահ Աստ-

ուած ես, ու կը խոստովանիմ իմ ստորնութիւնս՝ Քու փառքիդ, և չարիքներս՝ Քու բարիքներուդ հանդէպ. որոնցմով բժշկուելէ աւելի յաղթուեցայ. համարձակ ըլլալէ աւելի ամչցայ, ուխտս մոռցայ ու աւանդս կորսնցուցի։

Բ. Ինձ համար է նաեւ երկրորդ առակն աննշան ոչխարին, որ վերջին ծայր անզգայութեան մատնուած անմարդաբնակ լեռներու մէջ, գազան դեւերու ու վայրենի կուռքերու հետ քայլամոլոր թափառեցաւ, քչիկ մը իսկ չմօտենալով հօտին։ Լեզու չունէի որով ցաւերուս սաստկութիւնը բացատրէի և ոչ ալ կարկառելու ձեռք, որով համրերն իրենց զգացումը կ'արտայայտեն։ Իսկ մինակ Դուն որ անհաշուելի ժամանակներէ ի վեր ու նաեւ ներկայ սերունդէն ալ գովուած ես, երգողին աղօթական ձայնին համեմատ, գտար զիս մեղաւորս, երբ մութին մէջ մոլորած էի ու խնամող տեսուչի կամքովդ՝ հովիւ ըլլալ ստանձնեցիր։ Եւ ոչ թէ մինակ խնամեցիր այլ փնտռեցիր իսկ. չէ թէ մինակ գտար, ո՛վ հրաշքներ գործող, այլ խելքէ մտքէ վեր բարերարութեան սիրովդ Քու կեանք շնորհող ուսիդ վրայ կրեցիր. ու հայրենական ժառանգութեանդ մէջ, երկնային զօրքերուն կարգը դասեցիր։

Ա՛րդ, Դո՛ւն, ո՛վ Գթած, Ողորմած, Այցելող, Զօրաւոր ու Փրկող, եթէ ընդունեցիր աղաչելու

անկարող այն երկուքն, որոնցմէ մէկը մեռնելու աստիճան չարչարուած էր, իսկ միւսը անասուններու անզգայութեամբ հօտէն հեռացած, անծանօթ տեղերու մէջ չուարած՝ աննշանակ և անիմաստ ողորմելի ձայնով բառաչներ կ'արձակէր։ Դուն որ աստուածային բարի խնամքներովդ տիեզերքն հիացնող պաշտպանութիւն ընծայեցիր կորսուածին, իր մեծ թշուառութեանը պահուն, ուրեմն վերի օրինակներուն՝ նման գթութեանդ խորութիւնն ու բարերարութեանդ հոսանքն յայտնէ՛ ինձ նկատմամբ ալ, որ անօրէնութեան ծայր աստիճանին հասած եմ. որ շատ տեսակէտներով մեռնելու դատապարտուած եմ. որ բարութեան քաղցր խառնուրդին մէջ, մասնաւոր չար համ մ'եմ. որ մարմինի անդամ մ'եմ կտրուելու արժանի. որ ամբողջ համաճարակ ախտերով վարակուած վիրաւոր հոգի մ'եմ. որ անզգայ անասուններուն հաւասարած եմ. որ իմաստուններու ընտանութենէն օտարացած եմ. որ ինձ պէս խօսող արարածներուն չեմ նմանիր. որ եթէ օրինակ մ'ունենայի, կ'ըսէի. նման մը ունենայի, կը պատմէի. ընկեր մ'ունենայի, կը ճառէի. հաւասար մ'ունենայի, կը գրէի. գործակից մ'ունենայի, կը ցուցնէի. տիպար մ'ունենայի, կ'իմացնէի. եթէ անցած սերունդին մէջ գտնէի մէկն ինձ նման, առաջ կը բերէի. իսկ եթէ ներկային մէջ գտնուէր, ես ալ կը

յուսայի։ Արդ, քանի որ ոչ նման ունիմ և ոչ ալ հաւասար, ուրեմն մինակ Դուն կրնաս բժշկել, քաւել և կեանք շնորհել, ո՛վ բոլոր մեռելներն ապրեցնող, Դուն որ տիեզերքի Նորոգողն ես։

Որովհետեւ, եթէ երջանիկ Դաւիթին համար — որ իբրեւ մարգարէ սուրբ սիրտ կը կրէր — կ՚ըսուի թէ չարիքներն ու անօրէնութիւնները գլուխէն վեր բարձրացած էին և մեղքերն ու յանցանքները դժուարաւ կրուելիք բեռներէ աւելի ծանրացած. ուրեմն իմ սխալմունքներս տիեզերքն ողողելով ամէն բան ոչնչացնող ջրհեղեղին ծովացումէն աւելի յորդած են և բարձր լեռներու գագաթներն անցած։ Արդ, Նոյին տապանուան պէս, թող փչէ անուշ հովդ, — որուն ազդեցութեամբ լեռներն իսկ կը հալին — և թող ցամքեցնէ ամեհի կոհակներն երկիրը կործանող մեղքերուս. որոնք բարձրացած են լեռներէ աւելի կարկառուն և կուտակուած՝ ջրհեղեղի նման։

Ուրեմն համառօտէ՛ խօսքդ, ո՛վ զօրաւոր. ու ամէն բանի կարող հնարագիտութեամբդ կարճ հատուցումով քաւութեան միջոց մը ցուցուր ինձ, որ մարգարէին ըսածին նման անօրէնութեան մէջ ձրգձգուած եմ. ու ներելով յամառութեանս, ո՛վ ողորմած, Համբերող և Օրհնուած. մէկ անգամէն թողութիւն շնորհէ՛. կատարելապէս բարիք գործէ՛ ինձ, բոլորովին ջնջէ պարտքերուս ծանր տոկոսին

տուգանքը, զոր չեմ կրնար վճարել, թէեւ օրինաւոր պարտքս է այն։ Մանաւանդ որ սիրտդ չի ներողուիր ու ոչ ալ բարկութիւնդ կը բռնկի, խարդախութիւն չունիս ու մութ գործեր չեն նշմարուիր վրադ. որովհետեւ լոյս ու կեանք կը բղխին կամքէդ. մահը Դուն չստեղծեցիր և ոչ ալ մարդիկներու կորուստն ուրախութիւն կը պատճառէ Քեզ, ինչպէս կ'ըսեն Դաւիթ և Սողոմոն։

Դ. Եթէ դէպի բարին առաջնորդող կանոններովդ, սա մեծ պայմանը սահմանեցիր մարդոց համար թէ՝ «Չարիքը պէտք չէ չարութիւնով փոխարինել, այլ օրը եօթն անգամ եօթանասունը ներել յանցանքներն». ու այս բանը մեզ համար ըսիր որ մեր խառնուածքին մէջ բնական միտում մը ունինք դէպի չարն և անթիւ անհամար նոր չարիքներ կ'արտադրենք, որոնք կը բուսնին, կը մեծնան միշտ փուշ ծնող մեր բնութեան արտերուն մէջ, Քու անսուտ վկայութեանդ համեմատ թէ՝ «Մարդիկներու միտքերն, տղայութենէն իսկ հակում մ'ունին չարին». որովհետեւ Քու կեանքի խօսքդ աւետարանող Յովհաննէսն որ կատարելապէս մաքուր էր. զինքն ալ հասարակաց բնաւորութեան հետ կցելով, իմ ստութեանս քով Քու ճշմարտութիւնդ արդարացուց ու խօսքդ հաստատեց ըսելով թէ՝ «Եթէ բնաւ մեղք չունինք ըսենք, սուտ հանած կ'ըլլանք զԱյն»։

*Արդ, իրաւացի է սուրբ խօսքդ ու ճշմարտապէս կատարուած՝ իմ վրայ, որ դժնդակ անօրէնութիւններու մէջ մոլորած եմ։ Անոր համար, ողորմութեամբդ խնայէ՛ ինձ, ո՛վ անուշահամ աղբիւր, մինակ Դուն որ մինչեւ վերջն օրհնուած ես ամենէն. Ամէն։*



*Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն*
*ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։*
*Սրտի խորերէն խօսք առ Աստուած։*

---

## ԺԶ. ԽՕՍՔ



ԻՍԿ մինակ Դո՛ւն բարձր ու բարեգործ ես, ո՛վ երկնաւոր Աստուած, և Դուն կու տաս ոյժ, ներողութիւն, բժշկութիւն, առատութիւն, պարգեւ, ձրի ձիրք, քաւութիւն, պաշտպանութիւն։ Հընարքներուդ խելք չի հասնիր ու արուեստդ անստգիւտ է. չափդ չի չափուիր ու Դուն ես սկիզբն ու վերջը։

Բարկութեան մութը, երբեք շուք չի ձգեր ողորմութեանդ լոյսին վրայ, անոր համար որ կիրքերու ազդեցութեան տակ չես ընկճած ու խելքէ մտքէ վեր ես. պատկեր մ'ես, զոր կարելի չէ գծել. և ոչ ալ հնար է քանակութիւնդ կշռել։ Փառքիդ լայնութիւնը չափ չունի և ոյժիդ սաստ-

կութեան աստիճանը տարերքներու մէջ չի սահ-
մանափակուիր ․ բացարձակ առաւելութիւնդ ան-
ամփոփելի է ․ ու գթութեանդ բարիքներն եր-
բէք չեն տկարանար ։

Մարգարէին ըսածին նման, Դուն ես որ մա-
հուան շուքն առտուան լոյսի կը փոխես ։ Դուն՝
որ յօժար կամքովդ՝ բանտարկուածներուն քով
իջար, դժոխքի ներքին բանտն, ուր աղաչանքի
դռները կղպուած էին ։ Ազատեցիր հոգիներու
մթերքն որոնք կողոպտուելով՝ հոն աքսորուած
էին ․ յաղթող խօսքիդ հրամանին սուրովը
խզեցիր կապը մահուան, ու մեղքի տարակոյսը
փարատեցիր ։ Դարձո՛ւր երեսդ ինձ, որ քսուին նե-
տի սլաքներէն սոսկալի խոցերով վիրաւորուած՝
կը տառապիմ խոր ընդանին խոնաւ տղմուտ խոր-
շին մէջ, մեղքի շղթաներու կաշկանդումին տակ ։

Բ ․ Բայց Դուն, ո՛վ ամէնուն բարիք ընող
Տէ՛ր, մութի մէջ լոյս, օրհնութեան գանձ, ողոր-
մող, գթացող, մարդասէր, կարող ու զօրաւոր
ես ․ կարելի չէ, ո՛չ պատմութիւնդ ընել, ո՛չ զՔեզ
քննել և ոչ ալ Քու վրայ ճառել ։ Ամէն բան ընե-
լու կարող ես, ինչպէս որ սուրբ Յակոբ կ'ըսէ ․
ամէնէն անհնարին գործերուն համար դիւրու-
թեամբ պատրաստուած հնարք կը գտնես, լափող
կրակ մ'ես որ մեղքի խռիները կ'ոչնչացնես և
այրող ճառագայթ մը՝ որ մեծ խորհուրդներուն

ընդհանուրին կը թափանցես։ Արդարութեամբ մի դատեր զիս, ո՛վ Օրհնուած, այլ ողորմութեամբդ յիշէ․ հատուցում մի՛ ըներ ինձ, այլ ներէ՛․ անաչառ մի ըլլար ինձ նկատմամբ, այլ համբերութիւն ցուցուր։ Մեղքերու ծանրութիւնը քաղցր ներողամտութեամբդ կշռէ՛ և ոչ թէ արդարութեամբդ, որովհետեւ առջինին հետ բաղդատելով խիստ թեթեւ կը կշռեն անոնք, իսկ վերջինին դէմ միշտ ծանր։

Գ․ Արդ մօտեցի՛ր ինձ, ո՛վ Բա՛րի, ինչպէս որ Քեզի դէմ ձեռք վերցնողին ականջը բժշկեցիր, մահուան խռովարար հովը վերցո՛ւր վրայէս․ որպէս զի ամէնուն իշխող խաղաղութեան Հոգիդ իմ վրայ հանգչի․ ու ամէն առթիւ փառք թող ընծայուի Քեզ մինչեւ վերջն․ Ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի՛ խորերէն խօսք առ Աստուած

—

## ԺԷ. ԽՕՍՔ



ՔԵԶ՝ որ վտանգաւոր կիրքերու տաժանելի տրտմութենէն վշտացած հոգիներու խնամակալն ես, կ՚աղաչե՛մ, ողբերուս վրայ նոր ցաւ մի աւելցներ, մի՛ խոցեր զիս որ արդէն վիրաւորուած եմ, մի՛ դատապարտեր՝ որ պատժուած եմ, մի՛ տանջե՛ր՝ որ չարչարուած եմ. մի՛ ծեծեր՝ որ հարուածուած եմ. մի՛ գլորեր՝ որ ինկած եմ, մի՛ կործաներ՝ որ գայթակղած եմ, մի՛ մերժեր՝ որ հեռացած եմ, մի՛ աքսորեր՝ որ հալածուած եմ (սատանայէն), մի՛ ամչցներ՝ որ խայտառակուած եմ, մի՛ յանդիմաներ՝ որ խըրտչած եմ, մի՛ ջախջախեր՝ որ կոտրուած եմ, մի՛ տակն ու վրայ ըներ՝ որ արդէն յուզուած եմ, մի՛ ալէկոծեր՝ որ ուռած եմ, մի՛ սարսեր՝ որ խախտուած եմ։ Մի՛ շուարեցներ զիս որ արդէն փո-

Թորիկի բռնուած եմ, մի՛ բզքտեր՝ որ փառատուած եմ, մի՛ փշրեր՝ որ մանրուած եմ։ Մի՛ վիրաւորեր գլխս՝ որ արդէն վշտացած եմ, մի՛ կուրցըներ՝ որ մթնցած եմ, մի՛ սոսկացներ՝ որ ապշած եմ, մի՛ խորովեր՝ որ խաշած եմ, մի՛ մեռցըներ՝ որ հիւանդ եմ. ծանր բեռներու մի՛ ենթարկեր՝ որ տկար եմ։ Ծռած՝ կծկուած թիկունքներուս վրայ երկաթէ օղակ մի՛ անցըներ և ո՛չ ալ լեղի արցունքներուս վրայ՝ նոր աղբ. խստութեամբ մի՛ վարուիր ինձ հետ՝ որ հող եմ և ո՛չ ալ սաստկութիւն ցուցուր ինձ, որ մոխիր եմ. ո՛չ անաչառ եղիր ինձ նկատմամբ՝ որ Քեզմէ ստեղծուած եմ և ո՛չ ալ սոսկում ազդէ՛ ինձ՝ որ փոշի եմ։

Խստութեամբ մի՛ վարուիր ինձ հետ՝ որովհետեւ Դուն մեծ ես, իսկ ես՝ պզտիկ. Դուն լոյս, իսկ ես՝ ցած մութ. Դուն բնութեամբ բարի, իսկ ես՝ բնականէն չար. Դուն օրհնութեան ողկոյզ, իսկ ես՝ անէծքի պտուղ. Դուն կատարելապէս անուշ, իսկ ես՝ բոլորովին լեղի. Դուն մնայուն փառք, իսկ ես՝ ամէն տեսակէտով ստորին. Դուն կեանքի նշխարհ, իսկ ես՝ կաւի կտոր. Դուն տէրերուն տէրն ես, իսկ ես՝ գետնի ցեխ։ Դուն ամէն բանի անպակաս առատութիւնն ունիս, իսկ ես՝ վերջին ծայր չքաւորութեան մէջ եմ. Դուն չկողոպտուելիք ճոխութեան մէջ ես, իսկ ես առանց պատսպարուելու կը տառապիմ. Դուն ան-

կարօտ բարութիւն ես, իսկ ես՝ ամենէն թշուառ աղքատ։

Որովհետեւ ո՞վ է այն որ առտուան հասնի ու լոյսը ծագելէն վերջ, վախնայ թէ պիտի մթննայ այն. և կամ ապրած ատեն, կասկածի թէ պիտի մեռնի. ազատ գտնուած միջոցին, պարտքի վախը քաշէ. շնորհ վայելած պահուն՝ դատապարտութեան վրայ խորհի. (հոգիով) փրկուելէ վերջ, մատնուիլ մտքէ անցնէ. Նորոգուելէ ետք՝ աւրուելէ վախնայ. օրհնուելէ վերջ, (դժոխք) աքսորուելէ սոսկայ. բժշկուելէ վերջ՝ վիրաւորուիլ երեւակայէ. հարըստութեան մէջ չքաւորութիւն միտք բերէ. հացի առատութեան պահուն, անօթենալ կայ ըսէ, վազող գետերը տեսնելով, ծարաւ պապակելէ վախնայ, ծնողական գութին մէջ կեղծիք նշմարէ և կամ Քու Աստուածային աջ ձեռքիդ խնամքները վայելած պահուն, վախնայ թէ պիտի զզուիս իրմէ։

Բ. Եւ հիմա ամբողջ մարմնովը սաստկապէս վարակուած բորոտին նման, հոգիիս սպառնացող վտանգներուն համար Քեզ կը պաղատիմ, ո՛վ Տէր, եթէ ուզես, կրնաս զիս մաքրել։ Աչքի ցաւէ նեղուելով գիշերն ամբողջ խարխափողներուն հետ լալով ողբալով կը հառաչեմ. Դաւիթի՛ն զաւակը չեմ կանչեր զՔեզ, այլ Աստուծմէ ծնած կը դաւանիմ։ Մինակ չեմ անուաներ զՔեզ

ռաբբի — որ վարդապետներու յատուկ պատիւ մ՚է զանոնք դիտուն կարծել տալու համար — այլ կը հաւատամ թէ երկնքի ու երկրի Տէրն ես։ Չէ թէ մինակ մօտէն ձեռքդ երկնցնելով է որ պիտի կրնաս զիս բժշկել ո՛վ մօտս եղող բարեգութ Աստուած, այլ Քեզմէ այսչափ հեռու գտնուելով մէկտեղ, Քու խօսքիդ զօրութեան կը սպասեմ, բժշկուելու համար։ Կասկած պատճառող բառով մը, խտիր չեմ դներ կամքիդ ու ողորմութեանդ մէջ. այլ կը հաւատամ որ իբրեւ բարեգութ՝ կ՚ուզես, իբրեւ ստեղծող՝ կրնաս, բառ մը ըսէ՛ ու բժշկուիմ։ Ես ալ կը մասնակցիմ հարիւրապետին հաւատքին, բայց կը հաւատամ թէ ոչ մինակ տունէ տուն եղած հեռաւորութեան մը նեղ շրջանակին մէջ է որ կարողութիւն ունիս բժշկելու և մեռելներն ողջնցնելու, այլ երկինքին մէջ նստելով ալ ամբողջ երկրին խորերը կը փայլեցնես հրաշքներուդ սքանչելիքներովը, որոնց պատմութիւնն ընել կարողութենէս վեր է։

Գ. Շնորհէ՛ ինձ պարտքերս, ո՛վ բարութիւններու Աստուածն ու երանութիւններու Տէրը, ինչպէս որ Քու խօսքիդ դատակնիքը վճռեց, հինգ հարիւր դահեկան պարտքը շնորհել պոռնիկ կնկան, զայն ընդունած ատենդ. Դուն որ՝ որչափ շատ օգնութիւն ընես՝ այնչափ կը փառաւորուիս, ու որչափ առատ տաս այն համեմատութեամբ կը սիրուիս

և որչափ ողորմութիւնդ աւելցնես անոր կրկնապատիկը կը բարգաւաճիս։ Այսքան բարիքներովդ իրաւամբ կը գովուիս. ամէնուն տէրը ըլլալով մէկտեղ մեզի հաւասար կը ճանչցուիս. ամէնն ունենալով հանդերձ, մեզի հետ կը կշռուիս. անճառելի պարգևներուդ փոխարէն մեր աղօթքներն առնելով կը բաւականանաս. վերջ չունեցող արքայութիւնը տալ պարտ կ'ստանձնես մեր երկրաւոր գործերուն փոխարէն, զորս մեծ համարելով անոնցմով կը փառաւորուիս վեհութեամբ. ու երբ մեր փոքր գործերէն աննշան փառք ստանաս, չես դժուարիր։

Այն գթութիւնն ինձ նկատմամբ ալ ցոյց տուր, որ անթիւ անհամար դատապարտուելիք գործ ունիմ. և այս առթիւ քու պարգևած երախտիքներուդ պատմութեանը մէջ թող գրուի թէ այն չափով կը սիրես զիս ու ամէն բանի մէջ Քեզ փառք կ'ընծայեմ. Ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

---

## ԺԸ. ԽՕՍՔ



ՐԴ՝ ես որ մեղքէ ծնած եմ ու մահուան ցաւերու զաւակ, արդարեւ անթիւ անհամար՝ տասը հազարներով քանքար տուժելու պարտական եմ մէկ օրուան մէջ։ Սակայն չէ թէ մարդկային մտքի փոքրկութեան համեմատութեամբ ներողութիւն կը խնդրեմ, այլ անհատնում առատութենէդ մարդասիրութիւն կը հայցեմ պաղատագին, ո՛վ Փրկիչ Յիսուս Քրիստոս։ Չկայի երբեմն ու գոյացուցիր. չմաղթեցի և Դուն ստեղծեցիր. դեռ լոյս աշխարհ չեկած՝ Դուն տեսար. դեռ ես բան մը չյայտնած՝ Դուն գթացիր. Քեզ չկանչած՝ զիս խնամեցիր. ձեռքս չբարձրացուցած՝ նայեցար.

չպաղատած՝ ողորմեցար. անորոշ ձայնս հասկը-ցար. չողբայած՝ մտիկ ըրիր. հիմակուան գլխուս գալիք (հոգեկան) դիպուածները գիտնալով՝ չտեսնալու չզարկիր. Թէեւ կանխատես աչքովդ նշմարեցիր պատիժի արժանի չար գործերս եւ սակայն դարձեալ ստեղծեցիր։ Ուրեմն այն՝ զոր Դուն ստեղծեցիր եւ որ Քեզմով փրկուեցաւ ու այսքան խնամքներուդ արժանացաւ, վերջնականապէս թող չկորսուի, քսուին հնարած մեղքի հարուածներէն։ Ցամաքութեանս մշուշը թո՛ղ չյաղթէ ներողութեանդ լոյսին եւ ոչ ալ սրտիս կարծրութիւնը բարի համբերութեանդ։ Ես որ մեռնելու ենթակայ մսեղէն մ'եմ, թող յաղթական չըլլամ Քեզ, ո՛վ ամէնուն լրումն ու կատարելութիւնը, ոչ ալ ինձ նըման տկար նիւթ մը թող յաղթէ Քու անյաղթելի բարձրութեանդ։

Բ. Հոգիիս կծկուած թեւը կ'երկնցնեմ ահաւասիկ Քու անունովդ. ո՛վ զօրաւոր. առողջացուր զայն առաջուան պէս, երբ զուարճութեան դրախտին մէջ կեանքի պտուղը կը քաղէր։ Ջորցած, կաշկանդուած, ու չշտկուելու աստիճան ծռած է թշուառ հոգիս, վիշտին տակ ընկճած կըն-կան նման. մեղքերու ծանրութիւնը գետնին փակցուցած է զայն սատանայական ամուր կապերով, որպէս զի երկնային ողջոյնը չընդունի։ Դէպի ինձ ծռէ՛, ո՛վ միակ Ողորմած, սուրբ մարգարէին Աստ-

ուամծային խօսքին համեմատ բարձրացնելու համար զիս, որ թէեւ խօսող՝ բայց նուաստ, ինկած փտայտ մ՚եմ. և կրօնքի վայելուչ դեղեցկութեամբ ծաղկեցնելու համար, որ չորցած եմ։ Մօրմէն կոյր ծնողին պէս, աչք չունիմ որ Քու կերպարանքդ տեսնելով աղաչեմ, թախանձեմ ո՛վ զիս Ստեղծող. Դուն որ ամենէն զօրաւոր ու գթած ես և ամէնուն պաշտպանը, Քու խնլքէ միտքէ վեր սիրոյդ խնամքներուն անհարկդ դարձո՛ւր վրաս ու ոչինչէն լոյս հաստատէ իմ մէջս՝ որ Քու չնչող ու խօսող ամանդ եմ։ Անբուժելի ցաւերով տառապող տարբ չարաչար տանջուող վշտահար կնոջ արիւնի հոսումին նման, մեղքի գետեր կը բղխին ինձմէ. Դուն որ չմօտեցուելիք լոյսով շրջապատուած ես, նայէ՛ բարձրերէն՝ ուր ձեռքով կարուած վերարկուի քղանցք չկայ, այլ հրաչքներ միայն ամէն կողմ տարածուած զօրաւոր կերպով։

Ես որ պատժուելու դատապարտուած եմ, մեղաւորին հետ՝ իւղի օծումով չեմ մօտենար կենդանութիւն շնորհող ոտքերուդ և ոչ ալ աչքիս արցունքները մազերուս հիւսկէններուն միացնելով կ՚ընծայեմ. այլ թեւերս վերցնելով անարատ հաւատքս ստոյգ կերպով կը դաւանիմ կատարեալ հոգւով, ու շրթունքներս կպցնելով գետինը կը համբուրեմ և խառնելով ողբ ու կոծերս արցունքի աղբիւրներուս, հոգիիս բժշկութիւնը կը խնդրեմ։

Հոգիս մաշեցաւ մեղքով, քակուեցաւ, քայքայ-ուեցաւ ծուլութեամբ, երկու ոտքերովս իսկ կը կաղամ դողդոջ քայլերով · չար սատանան խոտո-րեցուց ոտքերս, որոնք մարմինիս ծանրութիւնը կրելով դէպի կեանքի ծառին ճամբան կ'առաջ-նորդէին, որուն մուտքն արգիլուած է։ Արդ, Դուն որ փրկելու հնարքն ունիս, նորէն զօրացուր քայ-լերս, նեցո՛ւկ եղիր անոնց։

Քեզ փառք տալու գործիքը (լեզուն) զոր իմ մէջ հաստատեցիր, ամուր կերպով փակեց, ար-գիլեց, համր ըրաւ զայն քսու սատանին հովը · մեծ ողորմութեամբ ղրկէ հոգիդ · Աւետարանին մէջի բժշկուածին նման, հրաշքդ փառաւորող բարիք գործէ, անսխալ կերպով խօսելու կարողութիւնը շնորհէ ինձ, Դուն որ կենդանի խօսք ես։

Մեղքի անկողինն ինկած եմ չար ախտերուս պատճառով · ողջ գիակ մ'եմ ու խօսող մեռել մը · ո՛վ Աստուծոյ բարերար որդին · կարեկցելով թըշ-ուառ վիճակիս, ողբախառն գգուանքով և օրհնը-ւած աչքերուդ ցօղովը, վերականգնէ՛ զիս ու ող-ջնցուր, սիրելիիդ նման, զոր անշունչ մեռելու-թենէն ողջնցուցիր։

Արդարացի կերպով վշտացած՝ մեղքի փոսին մէջ չուարած կը մնամ · ո՛վ անշուք արեւ, Աստու-ծոյ Որդին · Ձեռքդ երկնցուր ու Քու լոյսիդ ճա-ռագայթներուն մէջ հանէ զիս։

Նայինցի որբեւայրիին հետ — որ մէկ հատիկ զաւկի մը մայր էր ու աղխողորմ լացով, սիրտ շարժող ձայնով, ձեռքի երերումներով կուրծքը կը ծեծէր և հիւծած, մաշած, տրտմած դէմքով՝ արիւն արցունք կը թափէր — ես ալ Քեզ կը պաղատիմ ո՛վ Գթած, մխիթարութեանդ քաջալերական խօսքը արտասանէ՛ ինձ, որ յուսահատած եմ։ Ո՛վ աշխարհն ստեղծող գովուած բարի. «Խեղճ գերի (հոգւով), մի՛ լար», ըսէ՛ ինձ, որուն շնորհիւ, վշտահար ծնողքն սփոփելու համար կրկին ողջնցող պատանիին նման, ես ալ ամէնէն աւելի դատապարտուած հոգիս ընդունիմ Քու ձեռքէդ, ու անոր հետ դարձեալ նորոգուիմ։

Անզգայ դիւահարներուն հետ, որոնք ոգիներէ տանջուելով քարով կը ծեծէին իրենց անձը, ու շատ անգամ կը խեղդուէին. այն սոսկալի ջլախտաւորներուն հետ՝ որոնց մազերը ցցուած էին ու դէմքերը կատաղի, և որոնք ողորմութիւն գտան Քեզմէ, ո՛վ ամէնքն ազատող, ես ալ անոնց պէս Քեզ կը դիմեմ։ Հեռացնելով վտարէ չարին ապականող խումբը այս Քու խորանէդ, որպէս զի բարի հոգիդ գալով հանգչի հոս. շունչիս զօրութեամբ մաքրէ՛ մարմինս, անդամներս հագուեցո՛ւր և զգաստութիւն շնորհէ ինձ՝ որ թշուառ խելագար մ'եմ։ Դժոխքին մէջ բնակող գերի հոգիներուն նման աքսորուած՝ մնացած եմ արգելարանին մէջ.

ողորմութեանդ փառքին ճառագայթը ծագելով լոյս թող տայ ինձ՝ որ նեղ տեղ եմ ու որսացողին (սատանին) չղթաներէն ազատելով թող ապրեցնէ՝ զիս։

Զրգողութեան ենթարկուած է հոգիս զզուելի մեղքերուս պատճառով, որոնք առանց իրենց ընթացքն զգալի ընելու, ծածկաբար տարածուած են ամբողջ մարմնոյս մէջ ու կը նեղեն զիս. աչքով չտեսնուածները՝ չարագործին տուած ուռեցքներն, առողջացուր իբրեւ գթած Քու Աստուածային զօրութեամբդ, ո՛վ Աստուծոյ Որդին։

Զանազան հիւանդութիւններու այլ և այլ ցեղերն ու մահ պատճառող ախտերու սեռերն, որոնք անօրէն մարմնոյս արտին մէջ հաստատուած են իրենց սպաննող բերքերով ու յոռի արմատներով, հեռացո՛ւր, դուրս նետէ՝ Քու ամէն բանի կարող ձեռքովդ, զոր միշտ արօրին վրայ դրած՝ անով հոգիներու սահմանը կը մշակես կեանքի խօսքդ արդիւնաւորելու համար։

Գ. Եւ որովհետեւ յանցանքներս անցած են առաջ բերած օրինակներէս ու ճարակող քաղցկեղի նման բոլոր անդամներուս մէջ տարածուած, ուրեմն Իսրայէլին պէս՝ դարման չկայ այլ եւս ախտիս և ոչ իսկ խարաններուն (եագը) չատութիւնը կրնայ բուժել զայն. ոտքիս խարիսխներէն մինչեւ անդամներուս լրացած տեղը առողջ մաս մը չկայ, այլ ամէնն ալ բոլորովին անբուժելի են։ Իսկ Դուն, ո՛վ ողորմա՛ծ, բարերար, օրհնուած, համբերող ու անմահ թագաւոր, լսէ՝ պաղատանքներս, արգահատէ վշտացած սրտիս որով կը կանչեմ Քեզ, Տէ՛ր, նեղութեան ատեն։



*Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն*
*ու աղօթական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։*
*Սրտէ՛ խորերէն խօսք առ Աստուած.*

---

## ԺԹ. ԽՕՍՔ



ԵԱՆՔԻ բարիքներուն յոյսը, ո՛վ ամէն բան տեսնող. ցաւագար անձիս հառաչանքներուն ու բարձրաձայն լացերուն ուշադրութիւն ըրէ։ Դուն, ո՛վ Տէր Յիսուս, մեծութիւն մ'ես որուն կարելի չէ հասնիլ և անուն մը՝ որ ահ ու դող կը պատճառէ. կենդանի խօսք ես, փափաքելի լոյս ես և ախորժելի ճաշակ. հրաւէրդ պաշտումի արժանի է և բարութիւնդ խոստովանութեան. ազդեցութիւնդ օրհնուած է ու ինքնութիւնդ դաւանուած. էութեանդ փառք կը մատուցուի ու գոյութեանդ օրհնութիւն. Քու Հօրդ հետ որ գովուած է ու երկրպագուած ու սուրբ Հոգիիդ հետ՝ որ բարձրացած է ու հռչակուած։

Դուն մինակ մեզի համար մարմին առիր մեզ նման, որպէս զի Քու փառքիդ համար մեզ ալ Քեզ նման ընես, ո՛վ ամէնուն Լոյսը՝ որ ամէն առթիւ ողորմած, ամէնէն զօրաւոր ու երկնային ես։ Հիմա կ՚աղաչեմ, ո՛վ գթած. իբրեւ Աստուած հրաշք գործելով նորէն ստեղծէ՛ հողէ շինուած այս ամանը որ փշրուած է ու քայքայուած։ Կը պաղատիմ Քեզ, հալեցնելու բովին մէջ, խօսքի կրակովդ նորէն ձուլէ՛ զիս որ Քու պատկերդ եմ մեղքով հինցած, կ՚աղաչե՛մ, Բարերա՛ր. զայն պահպանող հոգիիս հետ մաքրէ՛ նաեւ խախտած շէնքը մարմինիս որ Քու հանգստարանդ է եւ հոն բնակութիւն հաստատէ՛։ Զարիքով մի փոխարիներ չար գործերս։ Խմած եմ, մարգարէին ըսածին նման, բայց ոչ գինի. մահուան թմրեցնող բաժակին մեղքի մրուրը որ դիզուած է իմ մէջ, մաքրէ՛ Քու ազատութիւն շնորհող հրամանովդ, ո՛վ ամէնքն Ապրեցնող, որպէս զի վրէժխնդրութեանդ մրուրը չխմեմ վերջին դատաստանին օրը։

Բ. Վճիռդ իրաւացի է ու դատաստանդ յաղթող. եթէ մեռնելու մատնես՝ արդարացի են գործերդ. եթէ այս տեղէն իսկ սկսելով յանդիմանութեան տանջանքին դատապարտես, փոխարինութիւնդ արդար է. եթէ գետնին խորերն իջեցնես, եթէ կենդանական շարժումս դադրե-

ցնես. եթէ խօսքիս ազդեցութիւնն ոչնչացնես. եթէ աչքիս պատուհանները մթնցնես. եթէ կեանքի ճաշակն (հոգի) Քու վրադ ամփոփես (եւ առնես). եթէ ամենօրեայ ուտեստի պարէնս զլանաս. եթէ օրերուս երկայնութիւնը կարճըցնես. եթէ անուշ ցօղիդ հետ կրակ ալ տեղացնես. եթէ Քու խօսքդ լսելու սովը քաշել տաս. եթէ ականջներուս դռները փակես. եթէ շնորհած ձիրքերդ ընդհատես. եթէ ոտքիս տակի գետինը դողացնես. եթէ Քու փափաքելի երեսիդ լոյսէն զրկես. եթէ այս ընդհանուր աշխարհէն վռնտես. եթէ կրակ փայլատակելով վախցնես. եթէ անբուժելի ցաւերով տանջես. եթէ չար դեւերուն ձեռքը մատնես. եթէ գազաններու ակռաներովը մանրես. եթէ բարկութեան հովով քշես տանիս. և եթէ տանջանքի նոր արարած մը չինես, որ տարտարոսէն չար ըլլայ ու դժոխքէն սոսկալի, որդերէն աւելի թունաւոր ըլլայ, մութէն աւելի չուարելիք, խորխորատէն աւելի սոսկում ազդէ ու մերկութենէն աւելի խղճալի ըլլայ. ես ինքս կը վկայեմ անձամբ որ, խիստ արժանի եմ ասոնց։

Գ. Ու որովհետեւ բոլորովին համեմատական են մեղքերուս տեսակներն ու անոնց փոխարէն սահմանուած պատիժները ու երկուքն ալ իրարու հաւասար են ու զուգակշիռ, ուրեմն պէտք է խոստովանիլ ու անոնց երեսի ծածկոցը վերցնել, որպէս զի փնտռողը տեսնէ ու արթննայ։

Առաջին անգամ պատահած փորձանքէն կը սարսիմ ու կը տառապիմ, անոր համար որ տաք սրտով չօգնեցի ընկերոջս պէտքին. և որովհետեւ խրոխտ ցանկութիւններս չսանձեցի, ինձ նման թշուառի մը արժանի պատիժը կրելով կ'այրիմ կը մրկիմ առանց զովանալու: Կորստեան մութին թանձր մշուշին մէջ խարխափելով անդին ասդին կ'երերամ և այս արդար փոխարինութիւն մ'է ինձ որ լոյսիդ աւետիսը չսիրեցի: Եւ որովհետեւ անվնաս սեպելով կարեւորութիւն չտուի փոքրիկ յանցանքներուն, զզուելի միջատներուն խածնող ակռաներէն կը խոցոտիմ, որուն արժանի եմ:

Աղտոտ փոսին մէջ ինկած կը տանջուիմ պատշաճ կերպով հոս նկարագրուածին պէս, անոր համար որ օգնութեան ձեռք չերկնցուցի անոր, որ վտանգի մէջ ինկած էր (հոգւով):

Դ. Արդ Աստուածային ամէնէն բարի գանձէդ չարիք չի բղխիր ու ոչ ալ լոյսիդ ճառագայթներէն մթութիւն. Դուն որ ապաւինութիւններու ամէնէն մեծն ես, գայթակղութիւն չես սերմաներ, այլ ես՝ իբր կորուստի զաւակ՝ ինձմէ գտայ ասոնց ամէնքը, իմ անօրէնութեանս մեղքերը գանձեցին, դիզեցին, Հոգիդ բարկացնող այսքան մթերքը: Մոլորեցնող իշխանին (սատանին) հնազանդեցայ. Քու տեղդ անոր տուի, յանդիմանող խրատտուին գրածին նման:

Եւ որովհետեւ մարմինիս անդամներուն

գաղտնի խայտառակութիւններն յայտնուեցան ու անվայել գործերուս ամօթալի չուքն երեսիս զարնուեցաւ ու մարգարէին առակին նման, մերկացուելով խայտառակուած բողի մը պէս, տգեղութիւնս ամէնուն երեւեցաւ, քաւութեան լոյսդ ծագէ՛ ինձ, ո՛վ Երկնաւոր Թագաւոր, որպէս զի աւետիսի ձայնին համեմատ, ոտքիս փոշին թօթուելով, Բաբելոնէ դարձողներուն նման, հողին երեսէն վերականգնելով նստիմ։ Ու իմ մէջս հաստատուած անխախտ յոյսիդ վստահելով, Եսայիին խօսքին նման, թեւերուս առջի մաքրութեան ոյժն ու կարողութիւնը վերստանամ, Քու ամէն բան պարգեւող մեծ փառքիդ քաղցրութեան համար, ո՛վ Աստուած, որ մինչեւ վերջն օրհնուած ես. Ամէն։



*Նոյն այն Հոկողէն աղերսալից մաղթանքներուն*
*ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։*
*Սրտի խորերէն խօսք ու Աստուած։*

---

## Ի. ԽՕՍՔ



ՅԱՒԻՏ համբերող, ներող, գթացող, զօրաւոր, ողորմած և քէն չպահող Տէ՛ր․ ահաւասիկ արդարացի են Քու գործերդ և շիտակ՝ դատաստաններդ․ ընտրութիւններդ վկայուած են, ո՛վ ծածկուածներն իսկ տեսնող։ Երեք երջանիկ մանուկներուն հետ՝ որոնք Բաբելոնի այրող հրկիզող բոցովը փորձուեցան ու բնաւ չվնասուեցան, անոնց կսկծի երգը կը հառաչեմ․ «Մեղա՛յ, անօրէնութիւն ըրի՛․ յանցանք գործեցի, ըմբոստացայ ու պատուէրներդ մտիկ չըրի»։ Եւ

որովհետեւ անոնք մեղքէ ազատ ըլլալով այս խոստովանութիւնը կը գոչէին, ես որ ամէն տեսակէտով արժանի եմ մեռնելու, անոնց հետ նոյն խնդրուածքով այս ողբերգութիւններուն ձայնակցելէ զատ, ուրիշներ ալ պէտք է աւելցնեմ։ Երանելի, սուրբ և մեծ մարգարէին՝ Դանիէլի հետ, որ Յուդայի տան ընտիր սերունդէն է և Քու հարազատ ազգականդ, անոր ընդունելի և նուիրական խօսքերովը պաղատելով, ուրիշ ալ պիտի կրկնեմ իմ պատժապարտի ողբուկոծովս ու գոչումներովս։ Այսչափ գիտութեամբս անվայել գործեր ըրի․ սխալ ճամբաներու մէջ մոլորեցայ չարաչար կերպով, ինչ որ ամէն տեսակէտով ու ամէն պարագայի մէջ մեղանչել է։ Քու կամքիդ սահմանէն դուրս ելայ, ինչ որ մեղադրելի անօրինութեան յայտնի ապացոյցն է։ Անչափ չարիք գործեցի շարունակ և կատարելութեան հասցուցի մեղքերս, ինչ որ յանցաւոր ըլլալու ճշգրիտ պատկերն է։ Սպառնալիք ըրի ու չսոսկացի, մեղքցար ու բնաւ ականջ չկախեցի, ինչ որ յայտնի նշան է ըմբոստութեան։

Քեզ արդարութիւն պատրաստեցիր․ ո՛վ Բարերար և ինծ՝ ամօթ ու պատկառանք․ Քեզ՝ վայելուչ փառք, իսկ ինծ՝ յարմար նախատինք․ Քեզ՝ քաղցրութեան յիշատակ, իսկ ինծ՝ լեղի քացախ՝ վերջին օրերուս․ Քեզ՝ անվերջ բարեբա-

նութիւն, ինձ՝ ողբ ու լացի ձայներ, Քեզ՝ խնկելի երգերու օրհնութիւն, ինձ՝ անյուսալի աքսոր (դէպի դժոխք) ու հեռացում, Քեզ՝ շատ մը տրժանաւոր իրաւունքներ, ինձ՝ վարանոտ պատասխանատուութիւններ. Քեզ՝ խելքէ մտքէ բարձր գովեստներ, իսկ ինձ՝ մոխիր լզելու պատժով խայտառակուիլ։

Բ. Եւ հիմա դուն ընդունեցիր անչափ ու անսահման բարիքներ որոնք ախորժելի խունկեր են Քեզ համար, և զորս իւրացուցիր ինչպէս որ կը վայելէր Քեզ՝ իսկ ես ընդհակառակն հոս իսկ կրկին բարդեցի շատ մը պարսաւանքներ, որոնք միայն կը վայելեն ինձ։

Եթէ անմեղներն այս կերպ աղօթել յանձն կ՚առնէին, հապա ես ի՞նչ տեսակ խօսքեր չարադրեմ ու տողեր հիւսեմ մեղադրելու համար զիս, որ ամէն չարերէ աւելի սխալներ գործեցի չարունակ։ Անառակ ընթացքով՝ վայրենի խորհուրդներու մէջ մոլորեցայ, չրթունքներովս աշխարհային բաներ խօսիլ յանդգնեցայ. ամօթալի գործերու յարեցայ բուռն տենչով, առանց կարող ըլլալու ետ կենալ անոնցմէ։ Ուռեցայ, վերացայ որ քիչ ատենէն մահուան գերեզմանը պիտի իջնեմ, գոռոզցայ, բարձրացայ, որ հոգիիս չնչառութեանը երաշխաւորութիւնը չունիմ ձեռքս։ Ամբարտաւանեցայ, որ փոշի եմ չնչող, ինքնի-

րենս հաւնեցայ, որ կաւ եմ ձայն տուող, հպար-
տացայ որ հող եմ անարգ, գլուխ տնկեցի, որ
մոխիր եմ ստորին, թեւս վերցուցի որ գաւաթ
մ'եմ փշրուելու ենթակայ։ Վեհ մէկի մը նման
չափէ աւելի տարածուեցայ, բայց ետքը՝ վռընտ-
ուածի պէս տեղս կծկտեցայ։ Բարկութեան բո-
ցով բռնկեցայ, երբ ցեխ եմ խօսող ու անմահ
եղողի մը պէս մեծամտութիւն ցոյց տուի որ չոր-
քոտանիներու նման մեռնելու եմ սահմանուած։
Աշխարհը սիրով ընդգրկեցի ու երեսիս տեղ ե-
տեւս դարձուցի Քեզ. մտքի թեւերովս մութ
խորհուրդներու մէջ սլացայ, մարմինս փափուկ
պահելով, անարատ հոգիս նիհարցուցի չարունակ.
աջ կողմիս ոյժը տկարցուցի և ձախ կողմիս զօ-
րութիւն տալով յաղթեցի աջիս։ Քեզ իսկ տե-
սայ որ ինձ համար կը հոգայիր — ինչ որ սակայն
ղանց կ'ընեմ գրելու — ու չամչցայ։ Ովսէի՝ Եփ-
րեմին ուղղած խօսքին պէս, վայրի թռչունի
նման սուրալով իմ հին սովորութեանս վերադար-
ձայ. աշխարհային զբաղումներով շրջապատուե-
ցայ աղօթարանին մէջ. խօսքի սանձով ոտ-
քի չկանգնեցուցի երիվարը մտքիս։ Հին չա-
րութիւններուն վրայ Նոր գիւտեր ալ ստեղծեցի.
Յոբի ըսածին նման ծանր ու անտանելի անուրս
(երկաթէ օղակ) աւելի եւս սաստկացուցի ձեռ-
քովս. Եփրեմի գրածին պէս, կարկտան չվեր-

ցնող սաւանի մը դարձուցի անձս, առակախօսին ըսածին համեմատ մարդահամարի տոմարներէն ջնջուեցայ յիշատակուելու անարժան վիժածի մը նման. կիներու դաշտանի լաթին պէս զզուելի եղայ, ինչպէս կ'ըսէ Եսայի. հողէ թրծուած խեցեղէն ամանի պէս փշրուեցայ, ալ չփակչելու աստիճան: Զորրորդ չափը պատրաստեցի ինծ՝ անօրէնութեան, որ ոչնչանալու նշան է որով բամբասեց մարգարէն՝ Եզովմը: Եւ միթէ ստութի՞ւն կ'ըլլայ, երբ այս ամէնուն վրայ սա ալ աւելցնեմ ըսել թէ, Մողոքին՝ դեւերու նուիրուած վրանն իսկ առնելով հիմակուընէ դժոխքը ժառանգեցի ու երկնային փառքը լքեցի. ճիշդ այն եղանակով ու ձեւով որով վարուեցան Իսրայելացիք ու Բաբելոնական Ռեփան լուսաւորը պատուեցին Սինա լերան վրայ:

Որովհետեւ նախորդ շնորհին համարձակութենէն անգամ մ'ալ փոխուեցայ, զրկուեցայ, ելայ, հեռացայ, բաժնուեցայ ու չպատուաստուելու աստիճան կտրուեցայ, ուրեմն ո'վ Տէ՛ր, հոգիիդ պատկերին վրայ կրկին վերաշինելով, ընդունէ՛ զիս — որ անարժան եմ ապրելու — մեռնելու դատապարտուածի մը պէս, չարագործի մը պէս, խայտառակուածի մը պէս, քսու սատանին ոտքին տակ կոխկռտուած մէկու մը պէս, չշինուելու աստիճան փշրուածի մը պէս, մահուան անդունդն

հատածի մը պէս, զզուելի գարձածի մը պէս, Քեզմէ կանչուելու անարժան՝ անպիտանի մը պէս, վերջնական կերպով կորսուելու դատապարտուածի մը պէս, դատարկապորտի մը պէս, վռնտուածի մը պէս, չուարածի մը պէս, թշուառացածի մը պէս, վհատածի մը պէս, կործանածի մը պէս, խորտակուածի մը պէս, կոտրուածի մը պէս, վշտացածի մը պէս, հոգին նեղուածի մը պէս, թշնամանուածի մը պէս։

Բայց ո՛վ գթա՛ծ, մարդասէր, զօրաւոր, այս աղերսալից խօսքերս նայելով դարձեալ ընդունէ՛ զիս, զղջացողի մը պէս, խոստովանողի մը պէս, ոտքդ գիմողի մը պէս, ապաշխարողի մը պէս։ Դուն որ կը կշռես, կը գրես և մեծ կը սեպես հոգիի հառաչն ու ողբուլացի ազդեցութիւնը, շրթունքներու կսկիծը ու լեզուի չորնալը, տխուր դէմքը, խորհելու կամքն ու սրտի խորերուն մէջ սնած բարեյօժարութիւնը։ Դուն որ անձերու փրկութիւնն ես, չգործուածները կը տեսնես, ամէնուն ստեղծողն ես և գաղտնի վէրքերու բժիշկը, Քեզ յուսացողներուն պաշտպանն ու խնամող Տէրը։ Եւ Քեզ փառք կ՚ընծայեմ ամէն առթիւ մինչև վերջը. Ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի՛ խորերէն խօսք առ Աստուած.

---

## ԻԱ. ԽՕՍՔ



Ի քանի որ ինքնաբերաբար մահուան մատնուած այս անձովս, երբէք ոտքի վրայ չկանգնեցայ իբրեւ մարդ և ոչ ալ բանականի սիրտ ստացայ, ինչպէս կ'ըսէ գիրքը։ Եւ որովհետեւ նախապէս գրուածներէն փոփոխութիւն մը չկրեցի և ոչ ալ չիտակ ճամբուն հետեւեցայ, ուրեմն ընթերցուածներու այս շարքին մէջ, ինչո՞ւ չցուցնեմ դէմքերը մութին մէջ ծուռումուռ ճամբէ քալողներուն, որոնց եկաւ կատարելապէս յարմարեցաւ իմ դէմքս ալ, զոր Քու պատկերիդ վրայ ստեղծեցիր և խօսքով զարդարեցիր։ Վերև նշանակուածներն անփոփոխ պահելով, հոս պիտի խոստովանիմ դարձեալ բիծերը մնացած չարութիւններուս, որոնք յաջորդ տողերով պիտի հասկցուին։

Բ. Պատժուելու արժանի չարագործ մ՚եմ օտար, որ անհնազանդ ընթացքովս Բելիարի գունդն աճեցուցի։ Ծուլութեամբս առիթ տուի վարպետ, խաբեբայ՝ դարչելի դեւերուն, որ խաղան պարեն, ցատկեն ու խնդալով վազվռտեն։ Գաղտնի հարուածներ ու անյայտ վէրքեր ստացայ կործանած դահիճներէն, (սատանայ)։ Չհալածեցի զայն որ Քրիստոսի Խաչովը վռնտուած էր, այլ աւելի եւս զօրացուցի։ Դեւերուն մէջ կը հայհոյուի Յիսուս անունդ, ինձ նման ապիկարի մը անօրէնութիւններուն համար, ինչպէս որ հեթանոսներուն մէջ ալ, Իսրայէլին համար՝ երբեմն։ Հարուածներ՝ հարուածներու վրայ, մէկզմէկէ աւելի վնասակար ու աւրշտըկող, ժանգ, թըրթուռ եւ հոգիիս ծաղիկն ուտող փճացնող ուրիշ որդեր զօրս սնուցի իմ մէջ, փոխանակ սատկեցնելու, պատրաստուեցայ ստեղծել զանոնք, որոնց մասին խօսած է սուրբն Յովէլ, Իսրայէլի երկրին համար յիշատակած՝ հրաշալի ողբերուն մէջ, իբրեւ նմանութիւն աւազակներու եւ չար ոգիներու։ Տասը հազարներով կռուողներ (մեղք) դիզեցի, հաւաքեցի՝ անձս սպաննելու համար. անիրաւ ու անամօթ յանդիմանողներ գոյացուցի ինձ համար, հակառակորդներ զօրացուցի դէմս, որոնց կարելի չէ յաղթել և ոչ իսկ անոնց հետ կռուիլ. անուշեղէններու համին տեղ, լեղին

տուացայ ինծ իբր բաժին. ես որ զիս ստեղծողին հանդէպ միշտ խարդախ եմ, իսկ քու սատանին՝ չարունակ հաւատարիմ։

Աւա՜ղ այս ի՞նչ փորձանք, ի՞նչ վիշտ. ի՞նչ վտանգ է, խաւարը թող ծածկէ ամօթս ու մութը՝ խայտառակութիւնս։ Ի՞նչպէս համարձակիմ բերան բանալ երբ գոյժի ձայնս սաստիկ է ու բողոքի կանչուըռտուքս անտանելի։ Եթէ կարելի ըլլար հոգիս տեսնել, պիտի գտնէի զայն տգեղ, նուաղած, թուլցած, ողբուկոծի ցաւերէն վերջին աստիճան վարանած ու մեհենի պաշտօնեայի մը նման մրոտած ու զզուելի գոյնով աղտոտած. անոր համար որ միեւնոյն բանն է, թէ՛ թափծու պատկերի և թէ՛ մեղքի ախտերու ծառայելը։ Արդ ես այս կորսուելու ճամբան գնացի խաւարին հետեւելով, Քու ցանկալի բաժինդ անկոխ անապատի ամայութեանը դարձուցի, նման Իսրայէլի քահանաներուն զորս կ'ամբաստանէր մարգարէն։

Գ. Եւ ի՞նչպէս մարդ ըսեմ ինծ, երբ տըմարդներու դասակարգին կը պատկանիմ, ի՞նչպէս բանական անուանուիմ, երբ յիմար անբաններու կցորդուած եմ, ի՞նչպէս կանչուիմ տեսնող, երբ իմ մէջս եղած լոյսը մթնցուցի, և ինչո՞ւ հռչակուիմ զգայուն, երբ իմացականութեան դռները փակած եմ, ի՞նչ բանով պիտի երեւամ

իբր Նկարագիր պատկերը Անեղծի շնորհին, երբ անձամբ մահացուցի հոգիս։ Նաեւ ո՛չ չարժական, ո՛չ ալ շնչաւոր կրնամ անուանուիլ, ո՞ւր մնաց հոգեկան կարողութիւնով ու մաքի ընդունակութիւնով օժտուած հռչակուիլ։ Անպէտ մ՚եմ անօթներու թիւին մէջ և անարգ մը՝ պատի քարերուն կարգը․ կոչնականներու շարքին մէջ արհամարհուած եմ ու հրաւիրուածներու տեսակին մէջ՝ ստորին։ Մահուան երկիւղէն կը սարսռիմ, Երեմիայի խօսքերէն ազդուելով, Երուսաղէմի ցաւերուն ու տանջանքներովը կը տառապիմ առանց ո և է խրախոյս գտնելու։ Նուագարան երգողին ըսածին նման օրերս պակսած են ողբալէն, ու կեանքիս տարիները հառաչելէն։ Իմաստունին խօսքին համեմատ՝ հալեցայ սրտիս խիթէն, ինչպէս ասուին ցեցէն ու փայտը՝ որդէն․ սարդի ոստայնի պէս մաշեցայ ու անպէտ դարձայ, ինչպէս կ՚ըսէ սաղմոսողը, առաւօտեան ամպի ու վաղորդայնի ցօղի նման ցնդեցայ, մարգարէութեան ձայնին համեմատ։ Մարդու մը վրայ յոյս չունիմ սակայն, որ Տեսանողին ըսածին նման անիծուիմ ու անյոյս վհատիմ, այլ Քու վրայ դրած եմ յոյսս, ո՛վ հոգիները սիրող, պիտի ընկղմիմ քու գթութեանդ անբաւ բարիքներուն մէջ որ Խաչին վրայ բեւեռուած ատենդ իսկ, ամենամեծ ողորմութեամբդ, քեզ չարչարողներուն համար աղօթեցիր

Բարձրեալ Հօրդ։ Ուրեմն քաւութեան յոյս շնորհէ՛ ինձ, ո՛վ կեա՛նք ու ապաւէն, և երբ թշուառ շունչս կուտամ, Քու բարի ոգիդ ստանամ։ Ու Քեզ՝ Հօրդ ու սուրբ Հոգւոյդ մէկտեղ, զօրութիւն, յաղթութիւն, մեծութիւն և փառք, մինչեւ վերջը. Ամէն։



Նոյն այն Հոգւոյն ազդարարեց մարգարէներուն
ու ազգախառն հեթանոսներուն Նո՛ր յայտնուածը.
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

---

## ԻԲ. ԽՕՍՔ



ՄԵՂԱԴՐԵԼԻ անձիս նախատինքները չարունակ բարդելով, դարձեալ ուրիշ բառերով պիտի խօսիմ. նոյն պայմաններով կրկին պիտի ներկայացընեմ զանոնք. Թերեւս այս յանդիմանութեան դատակնիքը զոր սիրտ ծակող խօսքերով կը յայտնեմ, գաղտնի չա-

րիքներուս ու բոլոր մեղքերուս ճշմարիտ խոստովանութիւն սեպէ Ամենագէտը։

Բ. Խօսող ձի մ'եմ, դժուարասանձ, երասանը քակուած ու սանձը կոտրած. աւանակ մ'եմ խեռ, վայրենի և անկիրթ. երինջ մ'եմ անընտել, անուղղայ և անվարժ։ Մարդ մ'եմ մոլեգնած, տարագրուած ու կորուստի մատնուած. տղայ մ'եմ յանցաւոր, փողոցային և չխրատուող. տնտես մ'եմ մահապարտ, անճարակ և անգործ, բանական մ'եմ անմաքուր՝ գազանի ու անասունի բնաւորութեամբ։ Ձիթենի մ'եմ, ամայի, անպըտուղ ու կործանած. մարմին մ'եմ որ հոգիս կը տրտմեցընեմ, կը տանջեմ ու դատաստանի կ'ենթարկեմ. վիրաւոր մ'եմ անխնամ, որ ո՛չ կը բժշկուիմ ու ո՛չ ալ կրնամ կանգնիլ։ Կայսերական ոսկիի չարք մ'եմ, վատնուած ու իսպառ կորսուած, ծառայ մ'եմ սխալական, փախստական և թշուառ։

Գ. Ահա ես իմ կամքովս անձս մատնեցի ու մարմինս կործանեցի, հոգիս կորսնցուցի ու միշտ մտախաբ եղայ, կամքովս կորացայ ու սիրտս կոտրեցաւ, յիշողութիւնս կարճցաւ ու խելքս պակսեցաւ, թմրեցայ ու հանճարս կորսնցուցի, յոռիններուն նայեցայ և ոճիրներ մտիկ ըրի։ Ես ասդիէն ու անդիէն ամէն կողմէ բոլորուած՝ վնասուած եմ մահաբեր ցաւերով, ու ոչ մէկ տեսակէտով ընտիր գործի մէջ քեզի պիտանի եղած եմ

ո՛վ ամենուն Տէրը։ Կ՚ողբամ այն որովայնը որ ծնաւ զիս, կուլամ այն ստինքներուն վրայ որոնք կաթ տուին ինծի։ Ինչո՞ւ համար կաթին հետ մաղձ մակրդելով չծծեցի, և ինչո՞ւ անուշի տեղ լեղի չկերցուցին ինծի։ Որովհետև եթէ ես ինծմէ այսքան խօսքերով դատապարտ կանգնեցայ անարգ անձիս դէմ, որուն համար բարկութեան սուրը վար առած չեմ դեռ, երկրածիններէն ո՞վ կրնայ մեղմացնել զիս։ Ամէնքը պիտի խայտառակեմ, ամբողջ էութիւնս քննադատելով տուգանքի պիտի ենթարկեմ. Վնասակարներու ամբողջ գունդը պիտի ծեծեմ. խոցող զինուորներուն դատապարտ պիտի կանգնիմ, գլխաւոր զգայարանքներս պիտի կըշտամբեմ։ Մեղք գործեցի ամէն կերպով ու ամէն բանի մէջ, ողորմէ՛ ո՛վ գթած, յանցանքի ու պարտքի նոր մառախուղ մը չէ որ գտար վրաս. միշտ նոյնն եմ ես, նոյն յանցանքներովս. անկարկըտելի լաթով՝ սխալած եմ Քու առջևդ, ո՛վ Անփոփոխելի, և Դուն ես միմիակ ճշմարիտ, գթացող, օրհնուած և մարդասէր. իմ աջ կողմէս պիտի կանխես զիս փրկելու Քու անփոփոխ ներողամտութեամբդ։

Գ. Արդ, ո՛վ խնամակալ, հզօր, երկնաւոր, բարի, ամէնքը ոչնչէ ստեղծող. Քու զօրաւոր խօսքիդ իմացական կայծակը մօտեցո՛ւր հասկցնելու գործիք եղող լեզուիս՝ որ մաքրէ

ձեռքովդ ստեղծուած ու իմ մէջ զետեղուած ամէն զգայարանքներս։ Որպէս զի ատոնցմով, որոնք Քեզմէ ստեղծուեցան ու բժշկուեցան, այս կրկին պատճառներով, անպակաս ձայնով, անհատնում բառերով Քեզ գոհաբանութիւն վերընծայեմ մեր Աստուծոյն, Քու Հօրդ մեծ փառքին համար, մինչեւ վերջն. Ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու ողբական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի՛ խորերէն խօսք առ Աստուած

—

## ԻԳ. ԽՕՍՔ



ԱՄԷՆՈՒՆ Տէրն ու Աստուածը, ամէն բանի մէջ զօրաւոր ես, ո՛չ կը չափուիս, ո՛չ ալ տեղ մը կը բովանդակուիս. ամէնուն տէրն ես. կատարեալ էութեամբդ ամէնուն մօտ ես. տեղ մը չես ամփոփուիր և չկայ վայր մը ուր Դուն չգտնուիս։ Բնաւ չես երեւար, բայց առանց Քու լուսաւոր ծագումիդ տեսականութիւն չկայ։ Փառքդ ահաւոր է, անունդ մտքէ վեր. մեծութեան կոչումն ես ու անըսպառ ձայն. էութիւնդ անքննելի է։ Հեռաւոր մ'ես, որուն կարելի չէ մօտենալ և մօտաւոր մը,

որուն ուրիշը չկրնար միջամտել։ Ողբուկոծերը կը տեւեն, թշուառութիւնները նկատողութեան կ՚առնես, վշտահարներու կը մօտենաս, անհնար ճարահատները կը բժշկես, գթած Հայր ես որ ողորմութիւն կը ծագեցնես, ո՛վ մխիթարիչ Աստուած։

Բ. Ողորմութեամբդ նայէ, ո՛վ Տէր, կիրքերու հպատակելէ վտանգուած՝ դառն վիճակներու այս պատկերին զոր Քու առջեւդ կը տարածեմ. հետախուզող քննութիւն մի՛ ըներ իբր դատաւոր, այլ իբր բժիշկ կցորդ եղիր վիշտերուս։ Արդարեւ այս տարակուսելի ցաւերուն վտանգն ու վարանումը մեծ է, երբ մարմինը գրաւուած է մեղքով ու անձը մեկուսացած չէ չար գործերէն. երբ գործածական գործիքները կապուած են մեղքերու ունակութեամբ. երբ չէնքին զանգուածը մահու կիրքերով շաղախուած է. երբ սիրտը որ իմաստները պիտի զգայ, ցաւով խոցուած է. երբ բարիին ա- կընկալութիւնը կատարելապէս վերցած է ու բանականութեանը մէջ իսկ անասուններու հետ դասակարգուած. երբ զզուելի աղտոտութիւնով մարմնոյն փակած է ու թէեւ դուրսէն առողջ կ՚երեւայ, բայց ներքնապէս վիրաւորուած է։ Երբ յանցանքներու յիշատակին սատակութենէն բոլորովին յուսահատած է ու նախապէս գործածներուն վախէն միշտ տարակուսած. երբ աղաչանքներուն

յատակութիւնը պղտորուած է խոպան ու խղճմտանքի յուղումէն դարձեալ աղտոտած է։ Երբ ձեռքը մահին վրայ է թէեւ, բայց միշտ ետեւի կողմինները կը հետազօտէ, երբ առաջ երթալու կերպարանքն ունի. բայց աչքերը դէպի ետ կը դառնան։ Երբ գոյութիւն ունեցողները գիտնալով հանդերձ, անգոյ բաներէն կը խաբուի միշտ ու մտքի կուրին մէջ պղտորիկներէն կը յաղթուի. երբ որակին հատաչանքներէն հազուագիւտ դուռը կ'այրի եւ քիմքերուն բնական խոնաւութիւնը ամէն կողմէ կը չորնայ ու անօրէնս մշուշով ամէն մասերէն կը չրջապատուի։ Երբ ակնկալութեան ընդարձակութիւնը վերջնականապէս կը սահմանափակուի եւ անտանելի տանջանքներու տպաւորութիւնը կ'զգայ ամէն առթիւ։ Երբ կորսուելու սոսկումը յիշողութեան կը ներկայանայ եւ պատիժին դատաստանները մտքի դիւանին մէջ կը գրուի։ Երբ բարերարին աչքը բարկութեամբ կ'երեւայ եւ բնական լոյսը ինձ՝ հողէ զանգուածիս դէմ կը զայրանայ. երբ ամենածողին անհաւորութիւնը բնութեան փոքրութեան հետ կ'ընդհարի ու միշտ խօսքերու որոտումով կը բարկանայ ինձ դէմ որ մոլոր եմ բանաւոր. ու իրաւունքի քարերով ջարդուփշուր կ'ընէ զիս որ արժանի եմ մեռնելու։ Իբր անառակ՝ տաղանդս կորսնցուցած եմ արդէն հոս բոկ եւ պատառական իբր դոր սատացայ, անարժէք բանի նման գետին թողեցի. տաժանելի

աշխատութիւններու արդիւնքը ծուլութեան մութով ծածկեցի ու մէկդի դրուած ճրագի լոյսի նըման չերեւցայ։ Պատասխանելու յատուկ լեզուս կարկեցաւ, որովհետեւ իրաւունքէ զուրկ էի, եւ անդուսապ չրթունքներս պապանձեցան օրինաւոր դատաստանին առջեւ։ Մտքիս խորհուրդները զանազան մասերու բաժնուեցան, չկրցայ օգտակարին վրայ միայն կենալ ու բարին չընտրելով յիմարութիւն ըրի. որով փրկութեան ճամբան գոցուեցաւ չարին արգելքովը ու իւղին վառարանը հնոցին մոխիրովը լեցուեցաւ։ Եւ անունս կեանքի մատեանէն աւրուեցաւ ու երանութեան փոխան յանդիմանութիւն գրուեցաւ հոն։

Գ. Եթէ զինուոր տեսնեմ, մահուան կ'սպասեմ. եթէ լրաբեր՝ խստութեան, եթէ դիւանադպիր՝ կորսուած մուրհակի դատին, եթէ օրէնսգէտ՝ անէծքի։ Եթէ աւետարանիչ տեսնեմ, կ'սպասեմ որ թօթափէ ոտքին փոշին։ Եթէ բարեկրօն տեսնեմ, յանդիմանութեան կ'սպասեմ, իսկ եթէ անկիրթ մը՝ սիրտ ծակող խօսքերու։ Եթէ ընտրութեան ջուրովը փորձի ենթարկուիմ՝ կը խորտակիմ, եթէ դատուելու դեղը առնեմ՝ կը սատկիմ. Եթէ բարիքի բերք մը տեսնեմ, չար կարծելով կը փախչիմ. եթէ վերցուած ձեռք մը՝ կը ծռիմ. եթէ փոքրիկ խրտուիլակ մը՝ կը սարսափիմ. եթէ թեթեւ թնդիւն մը լսեմ, տեղէս կը ցատկեմ։

Եթէ ըմպելիքի զուարճութեան հրաւիրուիմ, կը դողամ. եթէ Քու մեծութեանդ դիմաց ելլեմ, կը սարսափիմ, եթէ բան մը հարցուելու կանչուիմ՝ կը պապանձիմ. եթէ իրաւունքով քննուիմ կը համրնամ։ Արդ՝ իրարու վրայ բարդուած այսչափ ամենաթշուառ ու ողորմելի տարակուսանքներս որոնք աններեւոյթ նետերով սրտիս զգացումները՝ ներսէն կը խոցոտեն անբուժելի ցաւերով, բեւեռի նման գամուած են հոգւոյս մէջ ուրկէ կարելի չէ դուրս հանել զանոնք որ թարախի ու վէրքի կրկնակի հարուածով չարաչար մեռնելու վտանգը կը նախազգացնեն ինձ։ Մթերուած թարախն ու երկաթով ամրափակուած ներքին գաղտնիք-ներս երկիւղ կ՚ազդեն ինձ անխնամ ձգուած ծա-ծուկ վէրքերուս նկատմամբ որոնք շունչիս ելլե-լուն կ՚սպասեն։ Անոնց նեղութենէն չարաչար կը ճնշուի ձայնս ու աղաղակս որոնց խառնելով ար-ցունքներս ու հոգւոյս լալագին թախծանքները ինծի հետ աղօթող երկրաւոր (հին) նահատակներու մաղթանքին հետ Քեզ կը նուիրեմ որ ամէն բանի հնարը ունիս։ Վերջին հառաչանքներովս ես ալ կը միանամ հոն՝ վարը բնակող այն ամէնուն որոնք իրենց ըղձանքի աղերսներն ու ողբի ար-ցունքները երկինք կը մատուցանեն։ Անդորր կեանք ու հանգիստ շնորհէ՛ ի՛նձ, Տէ՛ր, որ այս պարապ երկրագործութեան ողորմելի աշխատա-ւորն եմ. Դուն որ ամէն բանի մէջ լման ես ու ամէն առթիւ փառք կ՚ստանաս։



Նոյն այն Հօկոզին ազնուագոյն մաղթանքներուն
ու ազնուական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.
Սրտէ խորերէն խօսք ու Աղօթք.

---

## ԻԴ. ԽՕՍՔ



ՅԻՄԱ ո՞ր բաներուն արժանաւոր սեպելով զիս աղաչելու մօտենամ. Արքայութեա՞նը՝ որմէ չեղեցայ, թէ փառքիդ վայելչութեանը՝ որմէ զրկուեցայ. անմահ կեանքի՞դ՝ որմէ վըռընտուեցայ, թէ հրեշտակներու պարակցութեանը՝ ուրկէ զատուեցայ։ Արդարներու մասնակցութեա՞նը՝ որոնցմէ հեռացայ, թէ իբր ուռը կենդանի որթին՝ ուրկէ հարթուեցայ։ Իբր ո՞սաը ուրախու-

թեան ծառին՝ ուրկէ չորցայ, թէ իբր ծաղիկը փառքի շնորհին՝ որմէ թափեցայ։ Իբր ժառան-գո՞րդը պարծանքին՝ որմէ զրկուեցայ, թէ իբր հարազատը հայրենական գիրկին՝ որմէ դուրս ին-կայ։ Լուսեղէն զգեստո՞վը պարծիմ՝ որմէ մեր-կացայ, թէ վերադարձին սպասեմ Ընդունողին՝ որմէ խորթացայ։ Ըղձալի լոյսի՞ն դիմեմ որմէ զատուեցայ, թէ Յիսուսի ոսկորներո՜ւն փակչիմ որմէ մերժուեցայ։ Անոր թեւերո՞ւն մօտենամ՝ որմէ օտարացայ, թէ ապաւէնին ապաստանիմ՝ որուն թշնամացայ։ Փրկութիւնով՝ նորոգուելո՞ւն յուսամ որմէ մահացայ, թէ զուարթ զգաստութեանը՝ որմէ լքուեցայ։ Կենաց ուխտի կանոնի՞ն՝ որմէ փոխուեցայ, թէ հաստատ սահմանին՝ ուրկէ սա-հեցայ։ Պնդութեա՞նը անշարժ վէմին, ուրկէ գլ-լորեցայ, թէ գումարտակի շարքին (սուրբերուն) ուրկէ դուրս մնացի։ Անդրանիկներու քաղքի՞ն մէջ հաստատուիմ, ուրկէ քերի գնացի. թէ ամէն օր-ուան հացի՞ն վրայ աղօթեմ որուն համար չաշ-խատեցայ։ Աշխատութեանս փոխարէ՞նը խնդրեմ որուն համար չքրտնեցայ, թէ պարգեւով պսակ-ուիլ՝ որուն արժանի չեղայ։ Կեանքի (տօմարին մէ՞ջ) արձանագրուիմ, երբ անկէ ջնջուեցայ, թէ երախտիքներուդ նուէրն յիշեմ զոր միշտ մոռցայ։

Բ. Ահա կորեցաւ, խզեցաւ կապը ապրելու յոյսին, զզուելի բորոտութիւնը տիրեց վրաս. ամ-

բողջ մարմնովս ախտացայ, վարակեցայ, մաշեցայ, ապականութիւնը շրջապատելով մեռցուց զիս աստուածային տեսակէտով։ Աննշան պալար մը (ունիմ) փայլուն ու տգեղ լուսնի ձեւով, նախկին երկեակ երեւոյթներէն (բորոտութենէ) պահուած մնացորդ մը՝ ինչ որ կրկնակ անմաքրութիւն կը նշանակէ։ Պարծանքի նշոյլը բոլորովին մարեցաւ ինձ համար. փրկութիւնը մատնուեցաւ, բարիին շուքը միայն մնաց. կեանքի ճամբան կատարելապէս գոցուեցաւ, մխիթարութիւնը վերցաւ, դատաստանին ատեանը մօտեցաւ, մահուան թոյնը մէջս արծարծեցաւ, սպաննուածը (մեղքը) կրկին կենդանացաւ, նաւահանգիստը մեծ քարերով լեցուեցաւ, յոյսի ճամբան փակուեցաւ, շնորհքի վերարկուն ինձմէ հանուեցաւ, փառքին վայելչութիւնը աղօտացաւ, առաջնորդող հանճարը խափանեցաւ, կշտամբանքի փուշը շատցաւ, անօրէնութեան ոստը ծաղկեցաւ, դժոխքին բոցը ինձ համար բորբոքեցաւ, (մեղքերու) ծառայութեան լուծը սաստկացաւ, ստրկութեան կապը ամուրցաւ, տունը կանգուն բռնող (սիւնը) ահա ինկաւ, բարձրաւանդակին նեցուկը կործանեցաւ, ընտանեկան միութիւնը բաժնուեցաւ, սրբութիւնը սիրող Աստուծոյ հոգին տրտմեցաւ։

Գ. Եւ որովհետեւ դառնութիւններու ամէնէն ծայրայեղը կրեցի, տանջանք, թշնամութիւն,

տխրութիւն, հոգեկան վիշտ, անբուժելի ցաւ, յուսահատեցնող տարակոյս, չպարտկուելիք ամօթ, չծածկուելիք խայտառակութիւն, անհամարձակելի պատկառանք, անդառնալի փախուստ, անգութ հալածանք և առանց պաշարի երկար ուղեւորութիւն. Դուն, ո՛վ երկինքն ու երկիրը ստեղծող կենդանի Աստուծոյ որդին Յիսուս Քրիստոս, որ փրկութիւն, զօրութիւն, օգնութիւն, ողորմութիւն, լուսաւորութիւն, քաւութիւն և անմահութիւն ես, որ ծարաւէ պապակողներուն ջուր կը հայթայթես անապատին մէջ. որ օրհնուած, բարեգութ, զօրաւոր, մարդասէր, համբերող, խնամող, հնարագէտ, այցելող, աննախանձ պաշտպան, յաղթող պահապան, չկորսուող կեանք, երկնային միջնորդ, կատարեալ ամբողջութիւն ու հռչակուելիք երանութիւն ես, սիրով երկնցո՛ւր ինձ ողորմող Աջդ. զիս՝ որ մեղապարտ եմ ամէն տեսակէտով, ընդունէ իբրեւ մաքրուած ու նորում ստացած, ո՛վ կենդանի Խօսք և ներկայացուր Հոգիիդ որ հաւասարապատիւ է Քեզ, որպէս զի Քու շնորհիւդ կրկին հաշտուելով ինձ դառնայ։ Եւ Քու ձեռքովդ, Իր կամքովը մաքրելով, ինքնութեամբ Զօրեղը՝ զիս Հօր ընծայէ. որ Անով ու Անոր հետ միշտ կապուած ըլլամ շնորհիդ, և երբ Քեզմով շունչս փչեմ՝ անբաժանելի կերպով միանամ Քեզ։ Անոր համար Քեզ՝ Հօրդ ու Սուրբ Հոգիիդ հետ

*մէկտեղ, մէկ բնութեամբ, մէկ աստուածութեամբ երրեակ անձնաւորութեանդ փառք, ու ստեղծուած արարածներէն գոհաբանութիւն (կը մատուցուի) մինչեւ վերջը. Ամէն։*



Նոյն այն Հոգւոյն ազերսալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած։

---

## ԻԵ. ԽՕՍՔ




ՍԿ այսքան գերութիւններէ ետք սակայն որոնցնկարագրութիւնները մասամբ գրուեցան վերի ճառերուն մէջ, և որոնք զիրար գերազանցելու աստիճան սաստկութեամբ կը չարչարեն զիս, որ ամէնէն թըշուառ վտանգուած մ'եմ, պիտի փոխեմ, չէ թէ խեղճութիւնը կըսկիծներուս, այլ եղանակը խօսքիս։

Բ. Արդարեւ այս կեանքը շատ կը նմանի ծփացող ծովի մը, որուն իրարու բաղխող անթիւ ալիքներէն՝ հոգիս նաւակի նման կը տատանի

մարմնոյս կազմուածքովս՝ աշխարհի մէջ։ Եսայի մարգարէն այս օրինակով ներկայացուց Երուսաղէմի ու Սամարիայի կործանումին յանկարծադէպ վախճանը՝ Պարսիկ աւազակներու կողմէ, ինչ որ իմ հոգեւոր խորտակումիս նմանցնել սխալ չէ։ Որովհետեւ՝ մինչդեռ կատարեալ վստահութեամբ, անհոգ, անտարակոյս կը ճամբորդէի, թեթեւ կասկած մը յղացայ, երբ փոքրիկ անջրպետ մը մնացած էր հանգստութեան ու յոգնութեան միջեւ։ Կարծես ամառուան մէջ ձմեռը հասաւ. բքաբեր հովերով ու երեք անգամ իրարու վրայ դարձող ալիքներու հարուածներով վրդովեց հանդարտութիւնը։ Ուստի նաւը՝ վայրենի ալիքներուն բաղխումէն խորտակեցաւ։ Թիակներու յենարանը քայքայուեցաւ, բարձր կայմը տեղէն բրթաւ, սուրացնող առագաստը չկարկտուելու աստիճան պատռտեցաւ, շքեղ շինուածքը աւրուեցաւ, քաշող չուանները խզուեցան, դիտարանին գլուխը ծռեցաւ. հաստ պարանը կտրեցաւ, խարիսխը բռնող պահաւանդը քակուեցաւ, իրարու կցորդուած ստուար գերաններու զոյգը բաժնուեցաւ, ղեկը դարձնող սամիքները ծռեցան. յատակը՝ որ նաւին հիմը կը կազմէ՝ ընկղմեցաւ, ղեկին կազմածները անմիջապէս սուղեցան, ճամբորդելու յարմարութիւնները պակսեցան, ողնափայտին պատսպարանը իսկոյն կոտրեցաւ, յատակը կապող կողերը

յօշոտեցան, նաւին չտեմարաններն՝ ուր գոյքերը կը պահուին՝ անգործածելի դարձան, ցռուկի քիւերը խախտելով վար Թափեցան, խելաց կողմի նստարանը ինկաւ, կոտրեցաւ. չքեղ վանդակապատը հիմնայատակ եղաւ, հանգստարանը՝ որ գահաւորակի նման փառաւոր էր՝ աւրուեցաւ. տախտակամածին չարքերը իրարմէ բաժնուեցան. ամուր գամուած բեւեռները իրենց տեղէն ելան: Գործին արդիւնքը իբր ողբերու յիշատակարան՝ ինձ նմանեցաւ. Նաւուղիղը նաւին դիմաց դեգերելով կ'ողբայ. ձեռքը երեսին դրած՝ արցունքի գետեր կը հոսեցնէ: Ծովին ծփանքին ազդեցութենէն տարուբերուող բեկորներու միացորդին վրայ կ'ողբայ սաստիկ տխրութեամբ, որպէս Թէ խողխողուած (մարդիկ) ըլլային անոնք: Որովհետեւ եԹէ օրինակ բերուի Թէ, բարի նաւապետը իր երկնային զօրքերովը մէկտեղ կ'ողբայ, խորտակումը իմ հոգեւոր նաւիս աշխարհի ծովին մէջ, ասիկա բընաւ ճշմարտութեան հակառակ չըլլար: Անոր համար որ, արդարեւ լացաւ բարեգուԹ Տէրը ազգակիցին վրայ՝ Թաղուած՝ որ մարդկուԹիւնը կը նշանակէր, ասկէ զատ լացաւ նաեւ մոլորած Երուսաղէմի ու մոլեգնած Յուդայի վրայ, որոնց երկուքին յոյսը կորսուեցաւ քայքայուած նաւի օրինակին նման. իսկ միւսը՝(Ղազարոս) Թէեւ անդունդին յատակը հասած՝ սակայն յոյսի չուանը բռնողին ձեռքով անքոյԹ տեղը բերուեցաւ խաղաղուԹեամբ:

Գ. Արդ, արդեօք կրկին նորոգուած պիտի տեսնե՞մ մարմնոյս նաւը որ խորտակուած է։ Արդեօք շինուած պիտի տեսնե՞մ, փշրուած նաւը ողբալի հոգւոյս։ Արդեօք դարձեալ միացած պիտի տեսնե՞մ զիս, երբ մեծ միջոցով բաժնուած եմ։ Արդեօք կարելի՞ է որ վշտացած ու տխուր սրտիս բերկրիլը տեսնեմ։ Արդ, յուսա՞մ թէ կրկին շըտկուած պիտի տեսնեմ բնութեանս աւրուած կերպարանքը։ Արդեօք կրկին կանգնած պիտի տեսնե՞մ թշուառիս տաղաւարը որ քակտուած է։ Արդեօք ինձ նման աքսորուած գերիի մը (հոգւոյս) ազատութիւնը տեսնել յուսա՞մ։ Արդարեւ, կարելի՞ է յուսալ որ դարձեալ կազդուրուիմ, երբ լոյսիդ շնորհէն զրկուած եմ։ Արդեօք պիտի տեսնե՞մ որ հոգիիս ամենատխուր կերպարանքը ժպտած է։ Արդեօք պիտի լսե՞մ որ գոյժի ձայնի տեղ աւետիսի լուր ղրկուած է ինձ։ Արդեօք պիտի տեսնե՞մ վայելուչ պայծառութիւնը ընտանի դէմքիդ, որ ողորմութեամբ ինձ երեւի։ Արդեօք պիտի տեսնե՞մ վերակազմութիւնս որ ջախջախուած անօթ մ'եմ։ Աչքերուս զգայական պատուհանները պիտի տեսնե՞ն արդեօք պատռուիլը պարտամուրհակիս։ Արդեօք պիտի յայտնուի՞ ինձ որ, նեղ աւուր մէջ քաւութեան շնորհդ ի նպաստ ինձ կը ճառագայթէ։ Արդեօք պիտի մտնե՞մ լուսոյ խորանին խնջոյքին մէջ, Քու առաջնորդութեամբդ։ Եզեկիէլի ըսա-

ծին նման, ազդեցիկ շունչի մը զօրութիւնով պիտի վերակենդանանա՞ն արդեօք չորցած, մահացած ոսկորներս։ Ես որ լոյսէն զրկուած եմ ու ամօթով կը կանգնիմ առջիդ, մարգարէին կէտ ձուկին փորէն արձակած ձայնովը պիտի կրնա՞մ նայիլ արդեօք սուրբ տաճարիդ։ Առաւօտեան լոյսը պիտի ծագի՞ ինձ, որ մութ խաւարին մէջ կ'ապրիմ։ Արդեօք պիտի տեսնե՞մ մօտենալը գարնան եղանակին՝ երբ միշտ ցուրտէն սառելով կը տառապիմ։ Արօտիս մէջ պիտի տեսնե՞մ արդեօք հոգիները դալարեցընող ցօղը անձրեւին։ Կարելի՞ է արդեօք Քու գթոտ կամքիդ հօտին մէջ կրկին տեսնել զիս՝ որ գազաններէ բզքտուած ու վտարուած ոչխար մ'եմ։

Դ. Յոբին ըսածին նման, չարերուն որոգայթները պատած են չորս կողմս, որոնցմէ չեմ կրնար անցնիլ. բայց միայն, եթէ Քու բարերար կամքիդ ողորմութեան լոյսը ցոյց տրուի ինձ. եթէ գթութեանդ դուռը բացուի. եթէ փառքիդ ճառագայթը ծաւալի. եթէ ձեռքիդ խնամքը յայտնուի. եթէ արեգակիդ կեանքի օրը տարածուի. եթէ պարզուի ըղձալի տեսարանը առաւօտիդ. եթէ քաղցրութեանդ առատութիւնը աղբիւրի նման բղխի. եթէ արարչական կողիդ վտակը հոսի. եթէ անապակ սիրոյդ ծորումը վազէ. եթէ շնորհքիդ աւետիսին ծագումը երեւի. եթէ պարգեւիդ ծառը ծաղկի. եթէ օրհնուած մարմնոյդ կտորները բաշխուին. եթէ կարուած

յոյսը վերահաստատուի. եթէ բարեւի ընդհատուած ձայնդ կրկին լսուի. Տէ՛ր, եթէ խաղաղութիւնդ՝ որ հեռացած էր, մօտենայ։ Ասոնցմով, մինչ այս երանելի միջոցներով, հաստատուն յոյսի հաւատքն ընդունելով կ'ապաւինիմ Սուրբ Հոգիիդ՝ որ Հօրդ հետ կը պաշտուի քաղցր ձայնով ու անմատչելի լուսոյ մէջ կը փառաւորուի Քեզի հետ. որով՝ քաւութեան հետ մէկտեղ կեանք ու երանութիւն ալ պիտի ընծայուի ինձ՝ որ մեղապարտ եմ։ Անկորուստ աւանդի նման ինձ հետ պիտի պահուին անոնք, իբր գրաւականը ճշմարիտ յիշատակին, և անեղծ պարգեւ՝ անճառելի, ահաւոր, զօրաւոր, սուրբ, միակ և անքննելի տէրութեան՝ երրեակ անձնաւորութեանդ անուամբ նուիրուած, Դուն որ իսկութեամբ, էութեամբ, յաւիտենական բարձրութեամբ, քաղցրութեամբ, ողորմութեամբ և մարդասիրութեամբ պսակուած, պատրաստուած ես ու կը թագաւորես յաւէտ։ Այո՛, ասոնց ամէնուն ամէն կերպով ու ամէն բանի մէջ կարող ես ո՛վ գթած. ու Քեզ կը վայելէ փառքը այս աշխարհիս մէջ, ինչպէս նաև այն մեծ աւուր մէջ որ մշտնջենական ու յաւիտենական է և գալիք աշխարհին մէջ պիտի յայտնուի. Ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու աղճախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի՛ խորերէն խօսք առ Աստուած.

## ԻԶ. ԽՕՍՔ



ԵՒ հիմա իրաւամբ ճշմարիտ պարագլուխն եղած եմ լալկաններուն դասին այն ակումբին, որոնք լալու եղանակներ կը յօրինեն ու սրտաշարժ բառերով ողբեր կը շարադասեն, միշտ նոյն գիրերով վերջացնելով տողերը, որպէս զի աւելի սաստկութեամբ մորմոքին ճմլեցնեն սրտերն ու առատ արցունք բղխեցնեն։ Ես ալ անոնց հետ, նոյն հծծիւնով ու ողբախառն բացագանչութիւնով անձիս վիշտերը կը պարզեմ։ Ո՛չ բոլորովին մեռած եմ աշխարհի համար, ո՛չ ալ կատարեալ ողջ՝ Աստուածային տեսակէտով. ո՛չ զուտ տաք եմ ո՛չ ալ բացարձակ պաղ՝ ինչպէս կ՚ըսէ Աւետարանիչը իր Յայտնութեան գիրքին մէջ. վերջին ծայր ատելի եմ, ամէն բան տեսնող Արարիչին ու Երրորդութեան աչքին։ Եւ անհաւա-

սիկ նկարագրութիւններն անոնց, որոնք կը տըրտմեցնեն զիս և աւելի կսկծալի կը թուին, մանաւանդոր թշուառութեանց օրինակը մէկ գծով կը սահմանեն, հետեւեալ կերպով չարադասելով (*).

## Բ.

Անարժան գործերովս՝ դատապարտուած ապիկար
մ'եմ իրաւք,
Մեծ նեղութեամբ տուժելու՝ ուրացած պարտքերս
տաղանդի.
Շուայտութեամբ վատնեցի երկնային գանձն ար-
քունի,
Անպաշտպանելի եմ, և նշաւակ խիստ դատաստանի,
Պատասխանատու եմ Մեծին՝ (Աստուծոյ) ձերբակալ-
ուած՝ անազատելի.
Տասը հազար քանքար կ'ուզեն, ես չունիմ կշիռ մը
անկէ:
Մատնուած եմ խիստ պահեստին արգելարանի,
Անբարեխօս կապուած՝ կ'ողբամ վիշտը ըղձդանի.
Ճաշակեցի ցաւագին կեանքը մութ, խաւար բանտի
Անպաշտպան, անթոշակ կը տանջուիմ խեղճ, ա-
ղորմելի:
Հալկաններու եղանակը մինակ ես ինձ փոխ առի,
Ու անոնց ոճով յօրինեցի ողբ կսկծալի.

(*) Այս գլուխը, Բ. պարբերութենէն սկսեալ, ամբողջ յանգաւոր գրած է Նարեկացին, ամէն տողի վերջը է գիրը բերելով:

Այն կանոնին համեմատ հոս շարադրեցի,
Խորհրդաւոր թիւը, անպատկառելի երկու տասնեակի։
Աղքատութեան հնոցը ամէն կողմէ կը բռնկի,
Անպատսպար, թշուառ սիրտս դրի գրաւի․
Հոգւով շուարած՝ ապերախտ, 'սխալական մարդ մ'եմ իրաւի,
Անաչառ քննութեամբ, ինձմէ դատաստան կը պահանջուի։
Սիրտս կը խոցոտի զէնքովը մահու և մեղքի,
Զարիքներու բռնութեան տակ գերի մ'եմ անփրկելի,
Ամբողջ մարմինս սուր թուրերով կը յօշոտի։
Հիմա իսկ, երբ կը յիշեմ բեմը դատաստանի,
Զարատես աչքերուս անլոյս մշուշ կ'երեւի․
Անտէ՛ր՝ կապուա՛ծ խեղճ մ'եմ, ենթակայ՝ մեծ տարակոյսի,
Անհարկու պատկերը կը տեսնեմ դէմքին Երկնաւորի։
Խիստ անարեւ ու անծածկոյթ խորը տարտարոսի,
Անապաւէն մոլորած՝ կը տանջուիմ կրակովը գեհենի,
Անյայտ կորսուած եմ խորը մեղաց անդունդի։
Ինչ որ ունիմ ահա, կեղծ արծաթ է և ոչ յարգի․
Ո՛չ կ'ընդունուի, ո՛չ կը մթերուի գանձէն տէրունի,
Պղտոր խնդրուածք՝ անմաքուր ձեռքով անընդունելի։

Այլ սրտաբեկ՝ մատներս չարժելով դարձեալ յոյս առի,
Գետնամած կ'աղաչեմ, Քե՛զ Մայր Յիսուսի.
Բարեխօսէ՛, խնդրէ՛ քաւութիւն ինձ մեղաւորի,
Ո՛վ զօրաւոր ապաւէնն կեանքի, Թագուհի երկնի.
Զայներ օրհնութեան, բուրմունքներ խունկի,
Նաեւ քաղցրահոտ ընծաներ իւղի.
Երկրաւորներէն Քեզ կը մատուցուի։

Գ.

Արդ հիւսած ողբերուս՝ նոր մաս աւելցուցի,
Բարերարին շնորհացը փոխարէն՝ արցունքի պտուղ մատուցի.
Կորսուած անդունդիս վիհը չափեցի,
Անեզր, անյատակ խորքը դիտեցի։
Մասնաւոր բառերով զայն բացատրել ջանացի,
Մտքիս թեւերովը թռչելով, գործին երեւոյթը չըմբռնեցի.
Անյաղթելիէն մտքիս պարտուիլը կռահեցի.
Բարկութեան բաժակը ձեռքովս բռնեցի,
Տարտամ տարակոյսներս մահուան նման խմեցի։
Եւ հիմա որ մեղքերուս բազմութիւնը ողորմ ձայնով երգեցի,
Ջե՜րմի աներեւոյթ կրակարան մը, մեծ բորբոքումով մէջս կը վառի։

Նաեւ սաստիկ կ'եռան գաղտնի քուրաներ անշէջ
    հալոցի,
Ներքուս թունաւոր սլաքներէն սրտիս խորը կը
    խոցի։
Լեարդիս երակներուն ճամբան մահուան խիթերով
    կը ցաւի,
Աղիքներս օղակ օղակ բուռն խոստուկէ կը գա-
    լարի.
Որ դէմ դնելով տաք դեղերու, մինչեւ երիկա-
    մունքս կ'երկարի.
Իսկ կոկորդիս բերանը, մաղձի դառնութիւնովը
    կ'այրի։
Շնչափողս սաստիկ կը հնչէ ողբալի ձայնս լքումի,
Բնութեանս տարբեր մասերը մղուած են իրարու
    դէմ պատերազմի.
Երկչոտ կասկածներով չուարած, ենթարկուած է
    գոյութիւնս՝ վտանգի,
Հոգիս և մարմինս թէեւ հարազատ իրարու, սակայն
    անհաշտ թշնամի,
Զիրար դաւաճանելով մատնեցին դառն կոտորածի։
Ո՛չ մեռած եմ հիմա, ո՛չ ալ կենդանի,
Թաղուած եմ աղտոտ խորշը մեղքերուն տիղմի.
Թէեւ պատժապարտ մ'եմ խիստ կասկածելի,
Քեզ Բարերարիդ կ'ուղղեմ ակնարկս խղճալի.
Կեանքի այս վիհէն, խոր անտանելի,
Դուրս հանէ զիս, շնորհէ՛ լոյսդ անձկալի։

## Դ.

*Այն որ այս խօսքերը գրեց, երջանիկներուն հետ*
*Թող պսակուի,*
*Սպասելով Քու ողորմութեանդ, անարատներուն*
*հետ հաղորդակցի.*
*Այն որ պատարագեց Աստուածային Խօսքդ պատ-*
*կառելի,*
*Քեզմով կենդանանալով, բարեգործ Թող սեպուի։*
*Օրհնութիւնը Քու շրթունքներուդ, գովելի,*
*Այս գիրքը ցրուողին գլխուն Թող Թափի.*
*Որով Թող հաստատուի իղձը Սողոմոնի,*
*Զոր արտայայտեց գիրքովն Առակի.*
*Նկարագրէ՛ հոգուովդ, ո՛վ բարձրեալ Բարի.*
*Անեղծ Նորոգման ըրէ արժանի։*
*Զի Դուն մինակ ես, ամէն բանի՝*
*Համբերող, ներող, արժան ես փառքի.*

ԱՄԷՆ



Նոյն այն Հոլովքին ալէկոծեալ մաղթանքներուն
ու աղաչախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

---

## ԻԷ. ԽՕՍՔ



ՐՈՎՀԵՏԵՒ վերընծայած ողբաձայն բանաստեղծութիւններս թուաւոր բառերու դրութեամբ շարադասելով, ողբ ու կոծ, աղիողորմ հառաչանք, դառն լաց եւ արցունքի երգ յօրինեցի, դարձեալ սկսիմ աղաչանքի ճառերու, գաղտնի, ծածուկ մեղքերս բացայայտ խոստովանելով ու ղղջալով։ Նոյն այն բառով սկսիմ ու վերադառնալով անով վերջացընեմ, որպէս զի կարող ըլլամ հոս դնել համաձայնութիւնը միեւնոյն մաղթանքին ու միեւնոյն թախանձանքին խոնարհութեան՝ որ հոգին կ'ապրեցընէ։

Բ. Մեղա՛յ. մեծ բարերարութեանդ հանդէպ,

ես որ անարգ եմ, մեղա՛յ, մեղա՛յ. ծագումիդ ճառագայթներուն դէմ, ես որ խաւար եմ, մեղա՛յ. մեղայ, անբաւ շնորհացդ երախտիքներուն, արդարեւ մեղա՛յ. մեղա՛յ, երկնային գթութեանդ սիրոյն դէմ, յայտնապէս մեղա՛յ. մեղա՛յ, Քեզի դէմ որ ոչնչութենէ ստեղծեցիր զիս, ստուգիւ մեղա՛յ. մեղա՛յ, գրկիդ գերագոյն գըգուանքներուն դէմ, ես՝ անարժանս մեղա՛յ. մեղա՛յ, անպակաս լոյսիդ վայելքին հանդէպ, ես՝ խաւարամիտս մեղա՛յ. մեղա՛յ, անճառելի կեանքիդ ճաշակումին, շատ անգամ մեղա՛յ. մեղա՛յ, խեղ-[illegible] մեծ պարգեւներուդ շնորհին հանդէպ, [illegible] մեղա՛յ. մեղա՛յ, աստուածային գովեալ մարմնոյդ հանդէպ, մեռնելու աստիճան մեղա՛յ. մեղա՛յ ստեղծողիդ պաշտելի որեանը դէմ, կատարելապէս մեղա՛յ։

Արդարեւ օրհնուած է Մեղայի այս հատուածը որ կը յուսադրէ սիրտը, անիկայ՝ (Մեղային) յարգի աւանդ է ու անմոռանալի պատուէր։ Հայրենական սուրբ է ու նախահայրերու օրէնք. հանրութեան թոշակն է ու անդիմադրելի խօսք. զօրաւոր պատասխան ու ապրելու կամուրջ. Աստուծոյ ախորժելի է ու սուրբերուն սիրելի, չքակուելիք կապ է ու հրաշալի խօսք. անվիճելի պատճառ է ու բաղձա՛լի աղաչանք. փափագելի սեղան է ու արտաշարժ հնչում. անհնարներուն ճար կը գտնէ

և կարծրութիւնները կը կակուղցնէ. աստուածապաշտներու սովորութիւնն է ու հեթանոսներու գիրքը. հին կանոն է, քրիստոնեաներու ընտանի. ու Արարիչին (բարկութեան) կը յաղթէ. զօրաւոր անջրպետ է ու սոսկալի խութ. բարձրանալու արուեստ է ու անչափելի խորութիւն. հիացումի տեսարան է ու կնքուած խորհուրդ մը՝ որուն ոչ ոք կրնայ թափանցել, եթէ ոչ մտքի անըմբռնելի արագութեամբ ասոր (մեղային) չծանօթանայ։

Այն պահուն, երբ լքուած դաստակարգին վերջնական դատակնիքը կը վճռուէր, չլսուեցաւ (մեղայի) այս հրաշագործ ձայնը բարեպատեհ, որ՝ թերեւս անմիջապէս խզէր արդար վրէժխնդրութեան վճիռը մահուան. այսպէսով (արդարներու և մեղաւորներու) ընտրութիւնն ալ անգործութեան կը դատապարտուէր ու յաւիտենականութեան սահմանն ալ կը քակուէր։ Զարդը փառքի մեծութեան (մեղայն) որով նոյն ինքն Աստուած պսակուելով կը բարգաւաճի։ Որովհետեւ ո՞վ վազելով բռնեց այն սրբութեան սեղանին եղջիւրներէն ու անմիջապէս պատիժներէ ազատելով անմեղ չհռչակուեցաւ։ Իսկ եթէ Աքար Զարմեան (կամ Քարմեան), Սաւուղ Կիսեան և Յուդա Սիմոնեան ասիկայ (մեղայ) ըսելով չ՚արդարացան, ես ալ կը վկայեմ իրաւացի գտնելով այս պարագան. որովհետեւ ակամայ՝ բռնադա-

տութեան տակ արտայայտուածը կատարեալ սէր չէ, հետեւաբար անբաւական է փրկելու (հոգին)։ Իսկ ես կամաւ կ'ողջունեմ դարձեալ կրկնելով այն երջանիկ բառը որ մկրտութեան ընկերս է։

Գ. Մեղա՛յ, երախտիքներդ մոռնալով, կրկին մեղա՛յ. մեղա՛յ, մարմնոյս ձեռքով հոգիս մեռցնելով, ես յիմարս մեղա՛յ, մեղա՛յ շնորհած կեանքիդ դէմ դրժելով, կատարելապէս մեղա՛յ. մեղա՛յ, խօսքդ մտիկ չընելով չարաչար մեղա՛յ. մեղա՛յ, սատակման օրս փութացնելով ես վատս մեղայ. մեղա՛յ որ դատապարտուած եմ յաւիտենական մահուան, ես խայտառակս մեղա՛յ. մեղա՛յ, Քու բարձրութենէդ չպատկառելով, ես որ զզուելի մէկն եմ, մեղա՛յ։ Ինձ համար կրկնապատիկ ողբալի, վերջին հոգեւոր թշուառութիւնն այն է որ, ես զիս կորուստի կործանումին մատնեցի, անդարձ կերպով հեռացայ, թշնամի սեպուեցայ, մինչդեռ որդի էի. երկինքի բարձրութենէն վար ինկայ, չար վարքի փուշեր դիզեցի։ Ասոր հետ մէկտեղ ողբի ձայներ ալ կ'արձակեմ, որովհետեւ ես ինքս անձս անարգեցի, կորսնցնողին (սատանին) կուռքը գտայ։ Սրտի ուրիշ ծանր կսկիծ մ'ալ ունիմ. զիս այնպէս կը կարծեն, ինչպէս որ չեմ իրօք. փայլուն երեւոյթով բաժակ մ'եմ անմաքուր. դուրսէն ծեփուած պատ մ'եմ աղտոտ. զարդարուն մէկն եմ սնոտի պարծանքով. լոյս

մ'եմ մութի դարձած. թշուառացած աչք մ'եմ որուն մէջ գերան կայ. փառքի ջահ մ'եմ՝ մարած. ես որ ամէն բանի մէջ, ամէն տեսակէտով միշտ յանցապարտ եմ, հանդէպ տէրունական տնօրէնութիւններուն, աստուածային յայտնութիւններուն, արարչական երեւումներուն, սարսափելի խոնարհումներուն և հանդէպ Անոր՝ զոր իմ իսկ աչքովս տեսայ(*)։ Որուն համար մեծ է պատասխանատուութիւնս Աւետարանին ամբողջ զարմացումներէն, հիացումներէն աւելի. հալեցնող հոգեր, անկարելի մտածումներ, անթիւ մտատանջութիւններ, անկատար վերելքներ, ու անհաստատ վայրէջքներ, յարմար յուսահատութիւններ, պատշաճ յանդիմանութիւններ, պատեհ խայտառակութիւններ, արդարացի նզովքներ, հատուցման արժանի անէծքներ։ Անհաւասիկ ասոնք են կշտամբանքները մեղաւոր անձիս որոնցմով ես զիս հարուածելով կը տանջուիմ։

(*) Աւանդութեամբ կ'ըսուի թէ, Նարեկացին ջերմ փափագ կը տածէր Յիսուս Միածինը իր մօր գիրկ տեսնելու։ Այս իղձ [illegible] եղած էր միսթիք վանականին որ չարունակ անով տագորուած՝ հալումաշ կ'ըլլար։ Օր մը իր հոգեկան վերասլացումի պահուն, յանկարծ յափշտակուեցաւ ու վանքին հանդիպակաց կղզիներէն մէկին մէջ տեսաւ մանուկ Յիսուսը իր մօր գիրկ և այս առթիւ կղզին Առտէր անուանուեցաւ։

Դ. Եւ որովհետեւ եթէ Քու սովորութիւններուդ համեմատ մարդասիրութեամբ նայիս, կրնաս այս ամէն յանցանքները ներել ու մահուան վէրքերը բժշկել. ասոր համար Քեզ նայելով կը թախանձիմ ո՛վ ողորմութիւններուն Տէրն ու ամենուն Աստուածը. Բարձրեալ Հօր Որդին՝ Քրիստո՛ս Թագաւոր, Ստեղծո՛ղ, Գթա՛ծ, Բարերա՛ր, Օրհնուա՛ծ, Առատաձե՛ռն, Հարո՛ւստ, Ահաւո՛ր, Զօրա՛ւոր, Ողորմա՛ծ, Տեսո՛ւչ, Ձեռքբռնո՛ղ, Արարի՛չ, Ապրեցնո՛ղ, Դարմանո՛ղ, Կեա՛նք տուող, Համբերո՛ղ, Քէն չպահո՛ղ, Ապաւէ՛ն, Բժի՛շկ, Գովուա՛ծ, Երկնաւո՛ր, Անճառելի՛, Լո՛յս, Կեա՛նք, Յարութի՛ւն, Նորոգութի՛ւն, Քաւութի՛ւն։

Եթէ պիտի լսես, հառաչեմ. եթէ ականջ պիտի տա՛ս, պաղատիմ. եթէ պիտի մտիկ ընե՛ս, աղերսեմ. եթէ պիտի ներե՛ս, աղաչեմ. եթէ ինձ պիտի դառնա՛ս, կանչեմ։ Իսկ թէ որ աչք գոցես, կը կործանիմ. եթէ ոտքի տակ առնե՛ս, կուլամ. եթէ օրապահիկս չնուիրե՛ս, կը մեռնիմ. եթէ ահաւոր դէմքդ ցոյց տա՛ս, կը սատկիմ. եթէ յանդիմանե՛ս, կը դողամ. եթէ ծուռ աչքով նայի՛ս, կը սոսկամ. եթէ սաստկանա՛ս, կը սարսափիմ. եթէ հալածե՛ս, կ՚ողբամ. եթէ վար զարնե՛ս, կը կորսուիմ. եթէ վհատութեանս բոցը չ՚առնե՛ս, կը նեղուիմ. եթէ խստութիւն ցուցնե՛ս,

կը փախչիմ. եթէ սպառնալիք ընե՛ս, կ՚ընկճիմ։ Իսկ եթէ քննե՛ս, կը քարկոծուիմ. եթէ խիստ ակնարկ մը ուղղե՛ս, կը սմքիմ. եթէ չ՚խնայե՛ս, կը մերժուիմ. եթէ պօռա՛ս, կը վախնամ. իսկ եթէ աչքդ յառե՛ս, կ՚ամչնամ. եթէ ձայն տա՛ս, կը դողամ։ Բարիքներու պարգեւը անարգած, երջանկութիւնը թողուցած, շնորհը լքած, ուխտը դրժած, կեանքի աւանդը մոռցած, համարձակութեան վստահութիւնը կորսնցուցած, զՔեզ՝ որ արարածները ստեղծեցիր, բարկացուցած, անճառելի շնորհը ոտքի տակ առած, պատուոյ պատկերը այլափոխած եմ։ Իսկ եթէ մահուան խեղդող ցաւերու այս հեծութեան առեն մարդասիրութեամբ ինձ օգնութեան հասնիս ո՛վ Տէ՛ր Յիսո՛ւս Քրիստո՛ս, իմ վրայ կը կատարուի ազդումով գրուածը թէ «բժշկութիւնը մեծամեծ մեղքերը կը դադրեցնէ». որով ամենառատ քաղցրութեամբ Քու վրայ պատուաստուելով, ու Քու լուսեղէն կերպարանքդ հոգիիս վրայ նկարելով, կրկին ամրացած կ՚ըլլամ քաւութեամբ և փրկուելով կրկին կ՚ստեղծուիմ անմահ ու անմեղ կեանքը ապրելու համար։ Եւ Քեզ՝ Հօրդ ու Սուրբ Հոգւոյդ անվերջ փառք կը մատուցանեմ. ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտէ՛ խորերէն խօսք առ Աստուած

—

## ԻԲ. ԽՕՍՔ



ԻՍԿ հիմա ո՞ր բանները յայտնեմ կամ զորո՞նք նշանակեմ. և ի՞նչպիսիններուն վրայ ճառեմ և ո՞րչափ ծածկուածներ մերկացնեմ, կամ որո՞նց խոստովանութիւնն ընեմ։ Ներկայի՞ն վրայ ճառեմ, զոր արդէն ունիմ, թէ անցեալի՞ն՝ զոր մթերեցի. ապագայի՞ն վրայ խօսիմ որմէ կը կասկածիմ, թէ յաճախ սահեցնող շարժումներուս՝ որոնցմէ գլորեցայ, ինձ համար փոքր սեպուա՞ծը յայտնեմ որ մեծ է Աստուծոյ առջեւ, թէ յիշատակելու, պատկերացնելու անարժան համարուածը. պակա՞սը զրուցեմ որ աւելի է, թէ թեթեւագոյնները՝ որ ծանր են։ Հոգեւոր կիրքերուն վրա՞յ ճառեմ, որոնք կորուստի կը մատնեն, թէ մարմնաւոր ախտերուն վրայ՝ որոնք

կը սպաննեն. առաջին անթիւ հեշտանք պատճառողնե՞րը յայտնեմ, թէ մնասակար տանջանքներով վերջաւորողները. աներեւոյթներո՞ւն վրայ խօսիմ, թէ տեսնուողներուն. ձեռքի հպումով դործուածնե՞րը խոստովանիմ, թէ հեռուէ՛ն շունչով միայն կատարուածները։ Իրենց լայնութեամբ դիւրաւ խածնողնե՞րն ըսեմ, թէ երկայնութեամբնետ արձակողները (մեղքերը), անչափելի խորութի՞ւնը պատմեմ, թէ ամէն բան յայտ յանդիման այրելը. բազմագլուխ պոռնկութի՞ւնը յայտնեմ, թէ անքուժելի առողջութիւնը. չարին՝ մարմնովս պարարտանա՛լը, թէ բարիին հոգւովս սովատանջ մնալը. Աստուծոյ անախորժ՝ գործերուն խնամ տանե՞լս, թէ բռնութեամբ նոյն մոլութիւններուն մղուիլս. մահացու մեղքերս խոստովանի՞մ, թէ պարապ կարծիքներս։

Բ. Արդարեւ կամաւոր խելագարի նման լաթերս հանելով ամօթալի տեսարան մը պարզեցի հակառակ Իմաստունին որ կ՚ըսէ թէ «խելացիներն իրենց ամօթները վերարկուով կը ծածկեն»։ Ես որ կրօնքէ օտարացած, կարգէ հեռացած, մաքրութեան մէջ աղտոտ, կուսութեան մէջ անմաքուր, արդարութեան մէջ անբարիշտ. բարեպաշտութեան մէջ մեղաւոր եմ, բերնովս մօտ եմ Աստուծոյ և երիկամունքներովս (ներքնապէս) հեռի. Մարգարէին ըսածին նման շրթունքներովս կը

պատուեմ զԱյն և ոչ՝ սրտովս։ Եւ եթէ հարկ է հոս աւելի սոսկալին ըսել, ինչ որ տանջանքէ աւելի չար յանդգնութիւն է, Աստուծոյ սուտ պաշտօնեան եմ որ երկու ճամբուն միջեւ չուարած կերերամ. մեռնելէ կը վախնամ՝ կ'աշխատիմ, և բան մը չե՛մ շահիր. կը վազեմ, չե՛մ հասնիր. կը փութամ, չե՛մ ժամաներ. կ'ըղձամ, չե՛մ տեսներ. կը փափագիմ, չե՛մ հանդիպիր. կը կարօտնամ, չե՛մ պատահիր. մարդկային մեղքերուն ամէնքն ալ ունիմ և բոլոր աշխարհի աղօթանուէր պատգամաւորն եմ։ Ասոնց ամէնքը ներէ՛ ինձ, ո՜վ Բարերար ու մի յիշեր, ասոնք աւրելը Քեզ համար շատ դիւրին է, որչափ դժուար է ինձ ձեռքով զանոնք նկարել. ասոր համար առանց խնայելու գրեցի, որպէս զի Դուն առատապէս ջնջե՛ս ո՛վ Օրհնուած։ Դուն որ մեզ մեղաւորներուս համար համբերող անուանուեցար, այն սրտաբեկ մաղթանքներուն համեմատ զոր մատոյց երջանիկն Եզր և ինչպէս ինք կը պատմէ մարմնով նեղուած ու հոգւով ձանձրացած էր (Իսրայէլի մեղքը) յիշելով։ Ես ալ մահացու կիրքերէս վտանգուելով, ինկած եմ մեղքի զզուելի վիհին ու աղտեղութեան անդունդին մէջ. որովհետեւ Ցօղի հետ ձայնակցելով, չեմ հաւատար թէ պիտի լսես իսկ ինձ։ Արդ ես որ ինքնաբերաբար անձս պարսաւող ու դատապարտող գերի մ'եմ, կամաւ մատ-

նեցի զիս, արգիլեցի՛, փակեցի՛, կնքեցի՛ այն ամէն միջոցները որոնցմով կարելի էր ապրիլ, որպէս զի փրկելով զիս՝ որ մեղքերով կապուած եմ, կրկին մեծնաս, ո՛վ Գովուած։

Գ. Ուրեմն մարգարէէն լաւ մը խրատուելով պատրաստուի՛նք անոր հետ մաղթելու, Քու հոգւովդ երգելով ու հաստատուն յոյսով Քեզ ապաւինելով։ «Ձեր հետ, խօսքեր առէ՛ք», կ'ըսէ Ովսէէ, «ու Ձեր Տէր Աստուծոյն դարձէ՛ք, ու ըսէ՛ք անոր, կրնա՛ս մեր մեղքերը ներել. որպէս զի բարիք ընդունիք, ու ձեր անձերը բարօրութիւն վայելեն»։ Անհաւատրկ Աստուած խօսեցաւ և ո՞վ է որ պիտի չլսէ. նոյն իսկ Ինքը վկայեց, ո՞վ է որ չհաւատայ։ Արդ՝ ասոնք՝ պաշտելի վճիռ, նուիրական պայման, անփոփոխելի սովորութիւն, կեանքի աւետիս, աստուածային որոշում, բարութեան դուռ, սփոփանքի հրաւէր, ճշգրիտ պատկեր, անսասգիւտ գանձ, անմոռանալի յիշատակ են։ Ասով՝ ես ալ հաւատալով ասոր, ասկէ կը վկայեմ Մարգարէին հետ. շատ մը մասերով բեղմնաւորած մեղքերս կրնա՛ս ներել կատարելապէս. աւելի եւս պիտի զօրանաս կրկնապատիկ բարձրանալով ամէնէն թշուառ, կործանած հոգիիս հանդէպ։ Ամէն բանի կ'իշխե՛ս, ամէնուն կը բաւե՛ս, ամէն տեղ կը հասնի՛ս, (սատանային) ամէն բռնութեան կը յաղթե՛ս, ամէնէն կարծր բաները կը փշրե՛ս,

ամէն դիմադրութիւն կը վանե՛ս, ամէն խստու-
թիւն պարապը կը հանե՛ս, ամէն սրացածները
ոտքի տակ կ՚առնե՛ս. ամէն լեղիութիւնները
կ՚անուշցնես, ամէնէն դժուար անուշցողները կը
քաղցրացնես, ամէն պարտքերը կը շնորհե՛ս, ամէն
յանցանքները կը ներես։ Ո՛վ Զօրաւոր, Հզօր,
Դուն որ ամէն բանի հնարը կը գտնե՛ս և ամէն
արուեստ գիտե՛ս, կրնա՛ս ամէնուն մեղքերը
ընկղմե՛լ, ոչնչացնե՛լ, մէջ տեղէն վերցնե՛լ, փոք-
րիկ կայծի մը աննշան ճաճանչին նման որ կ՚եր-
թայ կը կորսուի անհուն ծովուն տիեզերատարած
ալիքներուն մէջ խորասուզուելով։

Դ. Ուրեմն այս գիրքը կարդացողներու ա-
ղօթքին շնորհիւ, Քու Որդւոյդ խաչին ու մահ-
ուան չարչարանքին համար ողորմէ՛ ո՛վ գթած
Հա՛յր։ Այն՝ որ սրտաբուղխ արցունքներով նը-
ւագուած՝ այս ողբերգութեան գիրքը մեզ ղըր-
կեց և կեանքի փրկութեան այս դեղը պատրաս-
տեց, Քու անունովդ բժշկուա՛ծ թող սեպուի ո՛վ
Զօրաւո՛ր։ Այն՝ որ խոստովանութեան դիւրին
ճամբան ցոյց տուաւ մեզ այս պատշաճ պայմա-
նով, իր պարտքերէն մաքրուա՛ծ թող սեպուի։
Այն՝ որ կենաց պատգամի այս կանոնով՝ հպար-
տութեան թեւը հարթել սովրեցուց մեզ, թող
ազատ համարուի մահուան չար կապանքներէն և
սկզբնական վերջնական ու միջին մեղքերէ, Եր-

բորդութեանդ բարեգործութեան շնորհիւ լուսաւորութեամբ նորոգուելով, որուն հետ մենք ալ երջանիկ սեպուինք:

---

Աղօթել այս մասը ցաւերուն դէմ կարդալու համար է որ Աստուած կը բժշկէ ցաւերէ տառապած ու ջերմով նեղուած ախտաւորները (լուանտոր, տարալը):

Ե. Արդ ո՛ ամէնքն ստեղծող Հա՛յր, Դուն որ այսքան անթիւ հրաշքներ գործեցիր, ահաւոր անուն ես ու սարսափելի ձայն. ընտանի կոչում ես ու քաղցր բառ. սքանչելի ազդում ես ու սոսկալի հրաման, էութիւնդ կարելի չէ քննել, ու մտքէ վեր է գոյութիւնդ, ինքնութեանդ խելք չի հասնիր, ո՛չ ալ զօրութիւնդ կը զննուի. ամէնուն բարի կը կամենաս ու տէրութիւն ես անսահմանելի. մեծութիւնդ չչափուիր, բարձրութիւնդ չբովանդակուիր. քանակութիւնդ կարելի չէ կշռել, ոչ ալ տեւելութիւնդ հաշուի առնել: Հայրութեամբ պատճառ ես Որդիին (ծնելուն), բայց ո՛չ Անկէ առաջ է գոյութիւնդ: Քեղմով ու Քու անչափ զօրութեանդ ձեռքով՝ յանդիմանէ՛ այս ջերմ տենդը դիւական որ մեղքի հետ ապըրդելով ներս մտաւ ու սաստիկ կը նեղէ, որպէս զի փախչի մարդէն, զարհուրելով՝ երկնաւոր Գառիդ հրաշալի ու անճառելի արեան վտակէն,

որով մէկ անգամ յաւիտենապէս սրսկուելով բոլորովին մաքրուեցանք։

Զ. Եւ հիմա Արարիչէն կերտուած խորհուրդին այս պատկառելի խոնարհութեան հանդէպ, թող ամչնա՛յ սատանան իր դեւ հրեշտակներուն չար գործերէն. թող սանձուի՛ ու հալածի Քու բնակութեանդ յատկացուած չէնքին խորանէն, (լուսնոտի անձէն) թող հեռանայ ու դուրս հանուի դէպի մութը հեռաւոր։ Ու ջնջելով մաքրէ՛ ողբի արցունքները մեր դէմքերէն ու ցաւագին հառաչանքի ձայները՝ սրտերէն։ Ու քստմնասարսուռ յիշատակումը հոգի հանող տաժանատեսիլ գամերու հարուածին, որով Միածինդ խաչի աշտարակին վրայ ամրացա՛ւ, թող ցաւ քաշէ՛ չարը։ Ու սաստիկ բաղխումէն կողը պատռող սուր սլաքին, որով մեծ վէրքն ընդունեց, վերջնական կերպով թող սատկի՛ այն (սատանան)՝ որ առաջին պատճառը եղաւ մահուան։ Եւ որովհետեւ Քու գիրկդ հոգին աւանդած տեղն Իր գովուած գլուխը խոնարհեցուց (Յիսուս), բոլորովին կորուստի մատնուելով հիմնայատակ թող կործանի՛ ապստամբութիւնը չար բարքերուն Բելիարի, ո՛վ Բարձրեալ։ Եւ քանի որ անմահ էութիւնը պահուելով ծածկուեցաւ երկրի փորին մէջ. ատով՝ գոռոզը՝ դժոխքի մահաբոյր յատակին մութ ստուերին մէջէն՝ աչքերը յառելով թո՛ղ դիտէ՛ իր հպարտութիւնը, զոր բարձրացած կը

կարծէր, ու Թող յիշէ՝ առաջին հարուածն անբուժելի, որով՝ ամէն բանի Կարողին կեանք տուող գործերուն շնորհիւ, մեռաւ դիմամարտութիւնը վիշապին Թոյներուն։ Որովհետեւ Քեզ փառաւորելու համար, ո՛վ Հայր ողորմութեան, ու գովելու համար Որդիդ՝ Սուրբ Հոգիովդ՝ կը խոստովանիմ ասիկայ. անոր համար որ խորախորհուրդ Աստուածութեանդ Ս. Երրորդութեան անձնաւորութենէն և ո՛չ Մէկին զօրութիւնը անուանական է ու միւսէն պակաս. այլ անձնաւորուած անսկիզբ Բանդ կը փառաւորեմք անժամանակ Հօրդ հետ։ Եւ Քեզ միակ Սուրբ Երրորդութեանդ, հաւասարապատիւ Տէրութեանդ, մէկ բնութեամբ՝ չբաժնուող Ինքնութեանդ, օրհնաբանութիւն, գոհութիւն, զօրեղութիւն, և մեծութեան, բարեվիճակ հարթութեան, զուգակշիռ հաւասարութեան անճառելի վայելչութիւնը կը մատուցանենք մինչեւ վերջն. Ամէն։



*Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն*
*ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։*
*Սրտէ՛ խորերէն խօսք առ Աստուած*

—

**ԻԹ. ԽՕՍՔ**



ՐԴԻ Դուն միայն բարիքներու ակիզբն ես ու գթութիւնդ անճառելի է, ո՛վ միակ Աստուծոյ բարձրեալ Որդին որ օրուան չարը (Մատթ. Զ. 84) (հոգեւոր) մեծ աւետիսին ակնկալութեանը փոխանակերպելով, ներողութեան փրկարանը ցոյց տուիր ամբողջ օրը, ոչ թէ կորսուելու դատապարտարանը։ Դուն որ բժիշկ ես, ինձ ախտաւորիս ու Հովիւ՝ մոլորած ոչխարիս. Տէր՝ որ ծառայ մ՚եմ Քեզ ապաւինած. անապակ Գինի՝ որ տրտմած եմ մեծապէս, սպեղանիներու դեղ ես ինձ վիրաւորուածիս և ազատութիւնը (հոգւոյս), որ գրաւուած եմ մեղ-

քերէ։ Բարիքներու Օրհնութիւնն ես մերժուա-
ծիս, ու շնորհաց Կնիքը անպիտանիս. Օծումն ես
կոչումի որ մերկացուած եմ ու (հոգեւոր) Վերա-
կանգնումը՝ ո՛ր կործանած եմ. զօրաւոր Պատսպա-
րան ես գլտորածիս ու վէհ Օգնականը՝ գայ-
թակղածիս. բարձր Դուռ ես ինծի համար որ
չուարած եմ ու երանութեան Սանդուխ՝ որ խըղ-
ճալի եմ. ճամբու Հետք ես՝ ինծի մոլորածիս ու
ներող Իշխան՝ յանցաւորիս. քաղցր յուսադրու-
թիւն ես ինծի՝ որ լքուած եմ ու ապրեցնելու հա-
մար Ձեռք բռնող՝ որ վտարուած եմ։ Դուն որ
միակ մեծ ես ու ամէնէն առատ, որ սահմանելով
առատութիւնը բարիքներու, Պօղոսի գոհաբա-
նութեանն համեմատ մեր խնդրածէն ու հաս-
կըցածէն աւելի անչափ ու յաճախ կը սփռես
զանոնք։ Որովհետեւ առտուընէ մինչեւ արեւուն
մարը մտնելը, միեւնոյն օրուան մէջ, յաջորդա-
բար՝ ինը անգամ յիսուն, և երեք կամ չորս ան-
գամ տասը (9×50=450 և 4×10=40, գումար
490, որ հաւասար է Աւետարանի 7×70ին) հեղ, ա-
ռանց քէն պահելու, իրարու ներել, բարեգործել (զոր
հրամայեցիր), վեր է մարդկային ակնկալութենէն.
ուրեմն ո՛վ ամէն բանի կարող ահեղ զօրութի՛ւն, ա-
մէնուն Աստուածը, օրհնուած Տէ՛ր, Քրիստո՛ս, Քու
փառքդ երբ ինծի նման անպիտան թշուառի մը
հետ բաղդատութեան դրուի, ի՞նչ չափով պիտի

սահմանուի կշիռը հաւասարութեան Ստեղծողիդ ինձ հետ որ հող եմ։ Ըստ որում ասոնց մէջ կը մնաս մտքէ վեր ու անզննելի. խաւարի բարկութենէն անմաս՝ կատարեալ բարի, ուստի Քու մեծութեանդ քով խիստ նուազ է թիւը երկնային լուսաւորներուն, զորս ոչինչէն ստեղծեցիր ու անուններ յորջորջելով կնքեցիր, և կամ օդին մէջ տարածուած նիւթը երկրի, զոր ստեղծեցիր, երբ գոյութիւն չունէր և յատակի տարածումը կառուցիր, ասոնք աւելի նուազ են Քու ողորմութեանդ քով ինձ համար սահմանած քիչ թիւերէդ, որոնցմով Քեզ նմանիլ սովրեցուցիր։

Բ. Ահաւասիկ ամէնուն գործած չարիքը ծածկուեցաւ, ընկղմեցաւ, Քու կամքի համբերութեանդ լոյսին մէջ. արեւի ջերմութենէն անհետացած՝ թեթեւ մշուշի մը նման. ասկէ իսկ կը տեսնուի որ մարդկային բնութիւնը ենթակայ է մեղանչելու և ներողութիւն յուսալու։ Որովհետեւ ո՞ր մարդը մեղք գործեց ու չզղջաց. ո՞վ աղտոտեցաւ ու չամչցաւ. ո՞վ զզուելի դարձաւ ու չխպնեցաւ. ո՞վ սխալեցաւ ու չապաշխարեց. ո՞վ կործանեցաւ ու չհեծկլտաց. ո՞վ գայթակղեցաւ ու ցաւ չզգաց. ո՞վ յաղթուեցաւ (սատանայէն) ու ինքնաբերաբար չպապանձեցաւ. ո՞վ խաբուեցաւ ու չափսոսաց. ո՞վ լեղին կերաւ ու չդառնացաւ. ո՞վ բարձրութենէն ինկաւ ու չցատ-

կեց. ո՞վ կորսնցուց (հոգեւոր) մեծութիւնն ու չողբաց. ո՞վ զրկուեցաւ երանութենէն ու չլացաւ. ո՞վ կողոպտուեցաւ (երկնային) փառքի շնորհէն ու չկոծեց, ո՞վ մեղաւոր տեսաւ ինքզինք ու չմեղադրեց. ո՞վ մերժուեցաւ Աստուծոյ երեսէն ու չհառաչեց. ո՞վ լսեց Աստուծոյ սպառնալիքն ու չսոսկաց։ Ո՛վ հազար անգամ աւա՜ղ չըսաւ, գործած մէկ չարիքին փոխարէն, ո՞վ մերկացաւ ձմեռուան ցուրտին ու չդողաց. ո՞վ անիրաւութիւն գործեց ու քարով միտքը չկոծեց. ո՞վ (հոգիին) մեծութեան ստրկանալը տեսաւ ու չկսկծաց. ո՞վ չարիք գործեց ու ինքզինք չնզովեց. ո՞վ ախտաւոր եղաւ ու անձը չքամահրեց. ո՞վ ամօթալի գործերու մէջ գտնուեցաւ ու իր մարմինը չձաղկեց. ո՞վ մօտեցաւ պատկառելիներուն ու իր օրը չանիծեց. ո՞վ յիշեց գործածներն ու չտոչորեցաւ. ո՞վ իր գաղտնիքները մտաբերեց ու չխորովեցաւ. ո՞վ իր ծածուկ (մեղքերը) նշմարեց ու մահուամբ կորսուիլ չուզեց. ո՞վ պատկերացուց աներեւոյթներն ու դարձեալ գետին չծռեցաւ. ո՞վ մեղքի հեշտութեան հետ չխառնեց, բոցը անշէջ հնոցին. ո՞վ յիշեց բնութեանը վնասապարտ կողմն ու չպապակեցաւ. ո՞վ խորհեցաւ կամքովը գործածներուն վրայ ու չաղօթեց իրեն համար՝ որ սատկի. ո՞վ մտաբերեց անխոստովանելի արարքներն ու չխռովեցաւ. ո՞վ աչքին պատ-

կերպացուց մարդկային բնութենէ վեր մեղքերն ու չտրամեցաւ. ո՞վ թուեց մեծամեծ մոլութիւններն ու չմաշեցաւ. ո՞վ ապականեց անբիծ (հոգին) ու չտոչորեցաւ. ո՞վ իր տարագրուելու արժանի յանցանքներուն հանդէպ չտագնապեցաւ. ո՞վ տեսաւ երեսին աղտոտութիւնն ու իր անձը Երկնայիներին բարկութեան արժանի չսեպեց. ո՞վ աչքին առջեւ պատկերացուց կարեւոր մեղքերէն մին ու մահուան զէնքով չխոցուեցաւ. ո՞վ վհատութեան վա՛յը չխառնեց իր ողբի ձայնին, երբ խայտառակ գործերը տեսաւ: Ո՞վ տնանկացաւ ու մէջքը ծռած վար չգլտորեցաւ. ո՞վ պերճ պակին տեղ գլուխը հող դրաւ ու կրկնապատիկ չարչարուելով մեռնելու աստիճան չյուզուեցաւ. ո՞վ չքեղ զգեստներու փոխարէն քուրձ հագաւ ու չտխրեցաւ: Ո՞վ կեանքը կորսնցուց ու արիւն արցունք չթափեց. ո՞վ լուսեղէն վերարկուին տեղ մութը հագաւ ու չմարեցաւ. ո՞վ իր սիրելիին սուգին վրայ չթոռմեցաւ: Ահաւասիկ ասոնք են իմ ճշգրիտ կերպարանքս, որ արժանի եմ յանդիմանութեան. տխուր դէմք, նուաղած լոյս, ցամքած խոնաւութիւն, չորցած շրթունք, անշըքացած պատկեր, տրտում հոգի, այլայլած ձայն, ծուռ վիզ: Եւ չսխալիր նախ այն՝ եթէ ճշմարտութիւնը նշանակել ուզելով ըսէ ինծ համար, ամբարտաւանութենէ հեռու միտք, հպարտութենէ

դուրկ սիրտ, պարգեւ չի խնդրող թշուառ, չա-
ղերսող ծարաւի, ինքզինք յանդիմանող թափա-
ռական, արդարացի կերպով մերժուած սովեալ,
իրաւացիօրէն նեղուած անօթի, դատապարտու-
թեան արժանի հարուածեալ, իր իսկ վկայու-
թեամբ մահուան մատնուած, արժանի ըլլալուն
համար դուրս հանուած, անձը անիծող ողորմելի։
Ու ասիկայ թարգմանուելով կը ցուցնէ յանդի-
մանուիլը արդարագործ Փարիսեցիին ու բարե-
հռչակումը մեղապարտ Մաքսաւորին։

Գ. Եւ այդ չարիքները — որ հնարքներն
են զմեզ գայթակղեցնող սատանին և զօրս իբր
իր սերմերը կը ցանէ մեր մէջ—, եթէ ամէն օր կը
համրուին. ուրեմն հոգւոյ արիութիւն առթող
բարիքներն ինչո՞ւ աւելի հաստատօրէն չգրուին
քանի որ Քու ապրեցնող կամքիդ խնամակալու-
թենէն տնկուեցան անոնք մեր մէջ, ո՜վ բարե-
գութ Տէր, զօրաւոր Յաղթող, մեղաւորներուն
ներող, որ ամէն բանի կարող ես ու նաեւ կրնաս
ամէնքն ալ փրկել (հոգւով)։ Եթէ ուզես ծովուն
խորերը երկինք կը փոխադրես ու մութ խաւարը
լոյսի կը վերածես. լեղին ու դառնը անուշ մա-
նանայի կը փոխակերպես. և կամ սատանիկ վիշ-
տերու ողբը հարսա՛նեաց ուրախութեան պարի կը
փոխես. ատոնք դիւրին են Քեզ համար Հնարա-
ւոր։ Եւ ատոնցմէ աւելին կարող ես ընել քանի
որ ամէնուն կը տիրես ահաւոր կերպով և մինչեւ
վերջը Քեզ փառք թող մատուցուի Ամէն։

Նոյն այն Հոգւոյն ողբերգալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած։

---

## Լ. ԽՕՍՔ



ՀԻՄԱ՝ ո՛վ ողորմած, ներող և օրհնուած՝ Աստուածը ամենուն. Թող իրականանայ այն խօսքդ զոր ըսիր, միշտ գայթակղութեան ենթակայ եղողին՝ միեւնոյն օրուան մէջ չարունակ մեղանչելուն ու զղջալուն նկատմամբ, թէեւ այնպիսին՝ ետքի շունչին մէջ ընտրէ բարին և կամ չարիք գործած պահուն բարեփոխուի։ Մանաւանդ որ այս անձնիշխան՝ դժնդակ կցորդը

(յուրի զգացումը) միշտ կռուասէր է ու ստութեան յարած՝ խաբեբայ շողոքորդ։ Առակողին ըսածին նման, հովերուն ետեւէն կը վազէ զորս դժուար է բռնել, Ստեղծողէն կը փախչի, որսացողին ձեռք գերի կ'իյնայ. մոլութեան ենթակայ մարմնոյս հետ տնկուած՝ բայց իբր ներհակ հակառակորդ, կը մնայ անոր, պատճառ ըլլալով շատ մը չուարեցընող մեղքերու, որոնց ստուար քանակութիւնը Դուն միայն գիտես։ Եւ մեղքերուն անմիջապէս կը յաջորդեն վնասական ողբեր, տաժանելի լացուկոծեր, անթիւ ափսոսանքներ զորս՝ գործած անհամար չարիքներէն ու մահացու մեղքերէն պատկառողը, արցունքներով ու թշուառութեան հառաչներով գթութեանդ առջեւ կը տարածէ, ո՜վ Տէր։

Բ. Կրկնաբանութիւններս շատախօսութեան թող չվերագրուի, բայց ինչ որ պիտի ըսեմ ասորմէ աւելի ողբալի է։ Որովհետեւ բնաւ չհամարձակիր (երկնից) արքայութիւն խնդրել իրեն համար, այլ միակ՝ տանջանքին թեթեւացում. կենդանիներուն (արդարներ) լոյսին մէջ ապրիլ չյուսար, մինակ թէ մեռելներուն հետ մութին մէջ մնալու չդատապարտուէր ողջ ողջ. վիճակակից ըլլալ չերազեր բարձրացածներուն, այլ գոնէ սիրտը կոտրածներուն ու թշուառներուն բախտակից ըլլար։ Իր հանգստութեան պահուն իսկ յոգնած է, ուրախ

եղած ժամանակն իսկ, ինքնին տրտում է. դէմքը կը ժպտի, բայց սիրտը խոցոտած է. երեւոյթը ծիծաղ կ'արտայայտէ, բայց աչքը ողբ. երեսները սփոփանք կը ձեւացնեն իսկ արցունքները սրտին դառնութիւնը կը յայտնեն։ Երկու ձեռքին մէջ երկու գաւաթ կայ, մէկը կաթով, միւսը արիւնով լեցուն։ Երկու խնկաման բռնած է կրակով, մէկէն խունկ կը բուրէ միւսէն ճենճ. Երկու սկաւառակ ունի առջին՝ մէկին պարունակութիւնը անուշ է, միւսինը դառն։ Զոյգ մը բաժակ կը կրէ լեցուն՝ երկու տարբեր նիւթերով, մէկն արցունք իսկ միւսը ծծումբ։ Մատուըներուն ծայրովը երկու տաշտ բռնած է մէկը գինիով լեցուն, միւսը լեղիով։ Իրարու հակառակ երկու դռներ ունի տեսողութեան՝ մէկն արցունքի ու միւսը վրիպումի։ Միեւնոյն խանութին մէջ, հալեցնելու յատուկ երկու ներհակ բովեր, մէկը կը բռնկցնէ միւսը կը մարէ։ Դէմքի երկու նայուածք, մէկը քիչ մը անուշութեամբ, միւսը սոսկալի բարկութեամբ։ Բազուկի երկու բարձրացում, մէկը զարնելու, իսկ միւսը՝ մերժելու համար։ Երկու կերպ դէմք, մէկը տխուր իսկ միւսը բարկացայտ։ Մէկի տեղ երկու յանդիմանութիւն, մէկը ներկային, իսկ միւսն ալ ապագային։ Երկու կասկածելի ապաւինութիւն, մէկը եոնէ, իսկ միւսը Ըներե—։ Մէկ բերնով երկու խօսք՝ մէկը թշուառութիւն,

իսկ միւսը խռով կացութիւն։ Մէկ սրտի մէջ երկու զգացում, մէկը (քաւութեան) երկբայելի յոյսի, իսկ միւսը ճշմարիտ կորստեան (հոգւոյ)։ Ահագին տեսքով (մեղքի) ամպ մը լրթագոյն որ երկու բան կը տեղացնէ, մէկը նետ, իսկ միւսը քար։ Որոտում մը ահեղ՝ որուն երկու բան կը յաջորդէ, մէկը կարկուտ իսկ միւսը կրակ (Ելից Թ. 24)։ Ցաւագին գիշեր մը (մեղքի) երկու վտանգով պաշարուած, մէկը լացի, իսկ միւսը մահուան։ Սուգի առաւօտ մը, ուր երկու բողոքներ կը լսուին, մէկը՝ յանդիմանութեան, իսկ միւսը սպառնալիքի։ Երկու ծայրերէն երկու արեւներ կը ծագին, մէկը խաւարի, իսկ միւսը կրակի։

Գ. Զարնելու մօտ վերցուած ո՛ եւ է ձեռքը իրեն համար կը կարծէ, իսկ պարգեւ բաշխելու նպատակով կարկառուած աջը չի յուսար որ իրեն ուղղուած ըլլայ։ Երբ մէկը պարծի, ինք կը կորանայ. երբ գլուխ մը վերնայ, ինք կ՚ընկճի, չարիքները յիշելով կ՚ողբայ. մաքրակեացներու կենսագրութիւնը լսելով կ՚ամչնայ. յաւիտենական կեանքի պատմութիւններուն հանդէպ, կ՚երերայ։ Եթէ մէկը օրհնէ զինք հրապարակով, ինք՝ գաղտնապէս անձը կ՚անիծէ, եթէ մէկէ մը գովեստ լսէ, պարսաւանքով ինքզինք կը կշտամբէ։ Եթէ պախարակեն զինք խստիւ, ինքն ալ իրաւունք կուտայ. եթէ սաստիկ ձաղկուի, աննշան վճա-

րում մը կը սեպէ իր ծանր պարտքերուն. եթէ մահուան ըղձանքը լսէ իր մէջ. այո՛, կ'ըսէ, և դարձեալ կը կրկնէ։ Եթէ մահուան որոգայթը երկինքէն ճաթի, հազիւ դէմքը վեր կը վերցնէ։ Իր իրաւունքներուն գիրքը փակած է, պատասխան տալու յոյսը լքած և համարձակութեան ճամբան գոցած։ Եթէ արդէն գերի տարուելով (սատանայէն) առանց փրկանքի կորսուած չըլլար, երբէք պիտի չդանդաղէր ինքնիրենը երթալու։ Արդարեւ վա՜յ մեղաւորին, որ Իմաստունին հոգեպարար խօսքին համեմատ «շուարած կը կենայ երկու ճամբուն մէջ տեղ»։

Դ. Ուրեմն այսքան հառաչանքներէս ու ողորմելի ողբ ու կոծերէս ետք, ինչո՞ւ չողորմիս ո՛վ Բարեգութ, որ սա անունով մեծացար թէ, «ես ողորմած Տէր եմ»։ Անաւասիկ թող հասնի Քու բարութիւնդ, փոխարէն չարութեանս որ գերի մ'եմ. Քու քաղցրութիւնդ. փոխարէն դառնութեանս որ դատապարտուած մ'եմ. Քու ճառագայթդ՝ որ բացարձակապէս կորսուած մ'եմ. Քու ողորմութիւնդ, որ յանդուգն մոլի մ'եմ. Քու հեզութիւնդ որ վնասակար, խակ մ'եմ։ Աջդ թող այցելէ զիս որ կործանած եմ. ձեռքդ թող վեր հանէ զիս որ ընկղմած եմ. մատդ թող բժշկէ, որ անբուժելի կերպով խոցոտուած եմ։ Հոգիդ թող պաշտպանէ զիս որ ահաբեկած եմ. համբերու-

թիւնդ Թող վստահութիւն ներշնչէ՛ ինձ, որ ապերախտ մ'եմ. զօրութիւնդ Թող օծէ զիս որ ամենադժնեայ մանկանացու մ'եմ. հրամանդ Թող քաւութիւն շնորհէ ինձ որ մեղաւոր եմ. ոտքդ ապաւէն Թող ըլլայ ինձ որ փախած եմ. բազուկդ Թող պատսպարէ զիս որ սուրացած եմ։ Լոյսդ Թող առաջնորդէ ինձ որ վրիպած եմ. հանճարդ Թող հնար սորվեցնէ ինձ որ շուարած եմ. օրհնութիւնդ Թող վերստանայ զիս որ անիծուած եմ. խրախոյսդ Թող քաջալերէ զիս որ վհատած եմ. բաժակդ Թող մխիթարէ զիս որ վշտագնած եմ. կամքդ Թող լայնը հանէ զիս որ նեղուած եմ. աչքդ Թող հրաւիրէ զիս որ ատելի եմ. խօսքդ Թող հաստատէ զիս որ սասանած եմ։ Արիւնիդ կաթիլը Թող բուժէ վիրաւոր հոգիս. ակնարկդ Թող ցրուէ աներեւոյթ մթերքը ցաւերուս. իշխանութիւնդ կրկին Թող ընտրէ զիս որ յուսահատած եմ. կցորդութիւնդ Թող վերապատուատէ զիս որ կտրուած եմ. կեանքիդ նշոյլը Թող լուսաւորէ զիս որ մահուան խաւարովը ծածկուած եմ. խաղաղութիւնդ Թող հանդարտեցնէ զիս որ խռոված եմ (մեղքերէ). ողջոյնդ Թող ընտանեցնէ զիս որ վայրագ օտարացած մ'եմ և ձայնդ Թող դարձի բերէ զիս որ մոլորած եմ։ Որովհետեւ Դուն գթութեամբ կ'իշխես ամէնուն. անմահն ես մութէն ու Քեզմէ դուրս բարութիւն չկայ ու մինչեւ վերջը փառք կը վայելէ Քեզ. Ամէն։

Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու ողբական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի՛ խորերէն խօսք առ Աստուած.

---

## ԼԱ. ԽՕՍՔ



ՍԻՆՉԵՒ հիմա ըրած խօսքերումս խիստ շատ անգամ պարզեցի տագնապը հեծեծանքի ձայներուս ու մեծ հառաչանքներուս — որոնք անսփոփելի վիշտերէս կը բղխին — որպէս զի Դո՛ւն որ անյայտ ծածուկ մեղքերը խոստովանելու (խորհուրդին) սկզբնահայրն (հեղինակն) ես, ո՛վ կենդանի Աստուծոյ Որդին ողորմած Տէ՛ր Յիսուս Քրիստոս, անուշու-

թիւնով նայիս ինձ ու քաւես մեղքերս։ Արդարեւ կարող ես, ճշմարտապէս ձեռնհաս ես. հնարը գիտես, եթէ ուզես. առատապէս կը կամենաս, ինչպէս և կարող ալ ես. մեծապէս կը հարստանաս երբ տաս, քան՝ երբ առնես. գանձերդ աւելի կը շատնան երբ ցրուես, քան՝ երբ ժողվես. ստացուածքներդ աւելի կը բազմանան երբ սփռես, քան՝ երբ խնայես. ամբարանոցներդ աւելի կը լենան երբ տարածես, քան՝ երբ կուտակելո՛վ դիզես։ Կը հաւատամ այս ամէնուն, ո՛վ Տէր, ինչպէս նաեւ թէ՝ Քեզմով փրկութեան ճամբայ մը պիտի գտնեմ, ես որ անարգ եմ, պատուականին հետ կը հաւատամ. կը յուսամ Աբրահամին ու Աննային հետ. որովհետեւ մէկը Քու խօսքիդ հաւատաց ու միւսը քահանայապետին ըսածին մտիկ ըրաւ։ Անոր համար, մէկը՝ իր խոր ծերութեան մէջ անթիւ զաւակներու հայր հռչակուեցաւ, յուսաց տեսնել Սառայի ամուլ ու պառաւ արգանդը՝ օրհնութիւնն արդիւնաւորող արտ մը պտղաբեր, ուրկէ ծնան շատ ժողովուրդներ, սուրբ մարգարէներ և ընտրեալ թագաւորներ։ Իսկ միւսը՝ անպատրաստելի, խոպան գետինը՝ որովայնին սենեակը բարգաւաճեցուց զաւակներով եօթը, որ անապառ (անեզր) թիւ մ'է և կը նշանակէ ամբողջ էութիւնն ու անսահման անհետազօտելի մշտնջենաւորութիւնը Աստուծոյ, ինչպէս նաեւ անհամանուն յորդումը Աւազանի Նորա-

ծին զաւակներուն։ Սարկայ՝ (եօթը) պանծալի թիւ մ'է, ո՛չ կցորդուելու կէտ ունի (չի բաժնուիր) և ոչ ալ կը սպառի կամ կ'աւարտի (անեզր), այլ առանձին նոյն է (ըստ Պիւթագորեանց և ըստ Լամբրօնացւոյ), և մասնաւոր ընտրութեամբ՝ դարերէ ի վեր՝ անճառելի վիճակով՝ յաւէտ նուիրագործուած է ամէն ազգէ. բան մը որուն դժուարաւ կրնանք խելք հասցնել։

Բ. Արդ անյոյս կորսուած հոգիիս փրկութեանը իբր արդարացում նկատէ՛ սրտիս հեծեծանքներուն ողբուկոծի վարանոտ ձայները. իմ խնդրուածքներս ու հաւատքի այս փոքր դաւանութիւնս վերը յիշուած երջանիկներու հաւատքին կարգը դասէ՛, որպէս զի ես ալ ապրի՛մ անոնց քով. խնդա՛մ անոնց հետ. իմ գործերէս աւելի՝ Քու շնորհներուդ փարիմ։ Մանաւանդ որ անոնք կրկնապատիկ բարձր են ու փառաւոր և խօսքով բացատրուելէ աւելի գերազանց աներկբայելի հաշտարարներ են իմ խռովութեանս և զօրաւոր մաքրատուններ մեղքերուս։ Քու անհաւոր արեանդ հետ նաև (միջնորդ է ինձ) Քու մարմնաւոր Ծնողդ գովելի։ (Միջնորդ են ինձ նաև) Պարերը Առաքեալներուն, դասերը Մարգարէներուն. գունդերը Մարտիրոսներուն, հետեւոյ ձիաւորներուն՝ որոնք (հաւատքի) քաջութիւնով զինուած մերկ մարմնով կռուեցան (սա-

տանին հետ)․ գումարը ճգնաւորներուն, թոյլը ընտրեալ վանականներուն, ժողովը բարեկրօններուն, խումբը երկրէ երկինք փերացող հոգեղէններուն, զինուորութիւնը՝ մեզի հետ կցորդուած երկնաւորներուն։ Մեղքերուս քաւութեանը թող նպաստեն նաեւ ընծաները՝ առաջին պտուղներուն, մատուցումները՝ եզերուն (մատաղ), վառուած ջահերը (եկեղեցիներուն), անուշահոտ բուրումները խունկերուն՝ իւղով պատրաստուած․ յաղթանակները փրկական նշաններուն, կառուցումները՝ խորաններուն, ուր Աստուած կը բնակի, չնորհքով լեցուն ձեռքերը քահանաներուն։ Միտքս է Աստուծոյ յիշատակը երբ անձս չարժեմ, երբ քայլերս փոխեմ, երբ ձեռքս երկնցնեմ, երբ բազուկս վերցնեմ․ երբ բարիքներու համար գոհութիւն տամ և սայթաքած պահուս աղաչեմ, երբ ընտանեկան շրջանակի մէջ խօսիմ կամ հրապարակաւ խօսք ուղղեմ հասարակութեան, երբ բնական ձայներ արտայայտեմ, երբ յաջող գործերու մէջ գտնուիմ, երբ ջերմ առաքինութեան յարելով գիշեր ցորեկ օգտակարին և հոգեւորին հետապնդեմ, Քու առաջնորդութեամբդ․ երբ քնանամ, երբ արթուն ըլլամ, երբ ազգերու հետ պատերազմիմ (հոգեւորապէս)․ երբ դեւերու հետ կռուիմ, երբ հերձուածողներու հետ հակաճառեմ, երբ խօսքի բռնուիմ մեծերուն ու պզտիկներուն հետ, երբ ըմպելի խմեմ կամ կե-

բակուր ուտեմ, Նաեւ այն ամէն հաճելի կամ տատամսելի պարագաներուն մէջ որոնց ենթակայ է մարդկային բնութիւնը. որոնցմէ ոմանց համար իբր ազօթք ըլլայ Քու յիշատակութիւնդ որ անոնք միայն իմ մէջս և ոմանց ալ պատճառ՝ որ սքանչելի և խելքէ վեր հրաշքովդ ազատես զիս անոնցմէ, հաւատ ներշնչելով ամէնուն թէ, կը բաւես ամէնուն ալ, կաթ ուտող մանուկներուն, հասակով պատանիներուն, մորքով վայրենիներուն, գոռող սրիկաներուն. մինչեւ իսկ թատերական տեսարաններուն, կամ խառնիճաղանճ բազմութեան կոյտերուն և կամ զօրաւոր կամքիդ հակառակ սարքուած, անախորժ պարահանդէսներուն մէջ իսկ մոռցուած չես Դուն։

Գ. Արդ Դուն ստացար ամէնքը. Քուկդ են ամէնքն ալ ու ամէնուն ալ պիտի ողորմիս, ո՛վ միակ Բարեգութ. որովհետեւ եթէ մեղք գործեն իսկ, Քուկդ են. անոր համար որ Քու հաշիւիդ մէջն են. Առակախօսին ըսածին նման, Քու զօրութիւնդ գիտեն։ Ես ալ որ վկայեալ յանցաւոր մ'եմ խօսելու անկարող, ձայնակցելով Առակողին, կը յանդգնիմ ըսել թէ, ով որ գովեստով կը կանչէ Քեզ՝ ճշմարտապէս զօրաւոր ճանչնալով զՔեզ, թէեւ եօթն անգամ (շատ անգամ) իսկ դատապարտուած ըլլայ խիստ պատիժներու, ի՞նչպէս Քուկդ չըլլար, վերը յիշուած զօրաւոր վճիռին

համեմատ։ Սեւ ագռաւներուն մէջ երբեմն սպիտակ նշանով երամներ կը տեսնուին աղաւնիներու. խրոխտ ու աղտոտ ձիերուն մէջ՝ հանդարտ ոչխար մը. գազան շուներու շարքին մէջ նուիրական գառնուկներ։ Խստութեան մէջ հեզութիւն, թերութեան մէջ կատարելութիւն, գոռոզութեան մէջ խոնարհութիւն. ստութեան մէջ ճշմարտութիւն. խորամանկութեան մէջ միամտութիւն. խարդախութեան մէջ անբիծութիւն. չարութեան մէջ բարութիւն. լկտութեան մէջ պարկեշտութիւն. անգթութեան մէջ ողորմութիւն. անյուսութեան մէջ զղջում. բարկութեան մէջ քաղցրութիւն. թշնամութեան մէջ հաշտութիւն. խածնողութեան մէջ անոխութիւն. ըլկութեան մէջ քաջալերութիւն. անէծքի նետաձգութեան մէջ օրհնութիւն։ Ասոնք տեսնելով չկրցայ երբէք դատել ճշգրտապէս թէ, այս երկրածին մարդերէն ո՛վ պիտի կանխէ ժառանգել զՔեզ. Որ միայն՝ անաչառ կերպով կը դատես ու արդար դատաստանդ կը ցուցնես թէ՛ մաքուր կարծուած ամբարիշտին եւ թէ՛ զղջացող պոռնիկին։ Դուն՝ որ ամէնուն բարիք կամեցող, բարձրերէն օրհնուած միակ Թագաւոր ես ամէն ատեն մինչեւ յաւիտեան. Ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

---

## ԼԲ. ԽՕՍՔ



ՐԴ, ես, ամենէն յետինը՝ վերը նշանակուած արժանաւորներուն, պատժապարտներուն կարգը դասելով զիս ինքնաբերաբար, ողորմութիւն կը խնդրեմ աղօթքին հետ ամէնուն։ Նկուններուն ու անհամարձակներուն, տկարներուն ու փոքրիկներուն. ընկեցիկներուն ու լքուածներուն. տարագրուածներուն՝ բայց Քեզ դարձածներուն. կասկածի ենթարկուածներուն՝ բայց արդարացածներուն. կործանածներուն՝ բայց ոտքի ելածներուն. ընկճուածներուն՝ բայց հաստատուածներուն. գլորածներուն՝ բայց կանգնածներուն. մերժուածներուն՝ բայց ընդունուածներուն. երեսէ ձգուածներուն բայց վերակոչուածներուն. ապշութեան ենթարկ-

ուածներուն՝ բայց զգաստացածներուն. անառակցածներուն՝ բայց զսպուածներուն. հեռացածներուն՝ բայց ետքը մօտեցածներուն. վռնտուածներուն՝ բայց վերջը սիրուածներուն. պատկառածներուն՝ բայց ետքը զուարթացածներուն. ամչցողներուն. բայց ետքը մտքով ուրախացողներուն հետ: Իսկ ես, դարձեալ պիտի պատմեմ հոս, չէ թէ՝ — Մարգարէին առած հրամանին համեմատ — մեղքերը Երուսաղէմի Նախկին ժողովուրդին և կամ անօրէնութիւնները Յակոբայ տան, այլ իմիններս պիտի փութամ յայտնել. Մարգարէին ըսածին պէս, ողբերս յարելով մահուան վտանգին, Սաղմոսողին նման՝ իմ իսկ ձայնովս զիս պիտի յանդիմանեմ ինքնաբերաբար, որպէս զի ամէն բան պատմելով հոս, ըրած ընդունելի խոստովանութեանս չնորհիւ. և միեւնոյն ժամանակ Քու օրհնուած հրամանովդ, վերջնականապէս մաքրուիմ, առանց կարօտ մնալու երկրորդ խոստովանութեան (դատաստանին օրը):

Բ. Եւ հիմա ծունկ չոքելով, բարերարիդ քաղցրութեանը առջեւ տարածեմ անձս, ու անոր՝ մահուան անդունդը գլտորելուն տեսարանը ցուցընեմ, ես որ հողին հաւասար խոնարհելով գետնին կպչեցայ ու սողուններու անասնական գետնաքարշ սահեցումով՝ սիրայօժար դամուեցայ անցաւոր աշխարհի կորստական կեանքին: Այլ կեանքի

հաստատուն գաւազանի նման — Դաւիթի արմատէն ընձիւղուած՝ մարմնով, որ անճառելի շաղկապումով միացած է անեղ Աստուածութեանդ — Քեզ կռթնելով՝ կէս մարմնովս կրկին պիտի կանգնիմ, ո՛վ Տէր. Քու երախտիքներէդ ամօթապարտ, դէմքս վար ծռած, աչքերս՝ խեղճուկ նայուածքով՝ յառած բարձրերը՝ դէպ ի Քեզ որ հեծեծանքները լսելու մօտ ես, Ողորմութիւն ես համակ. Քաղցրութիւն ես բոլորովին, լոյսի լիճս (աչք) արցունքներով լեցուցած, յուսալից աղօթքներ պիտի վերընծայեմ Մեծիդ առջին: Ամենառատ, անպակաս համբերութեամբդ մտիկ ըրէ ինձ՝ տաղտկացնողիս. որ ամէն առթիւ (հոգիներու) փրրկութեան միակ միջոցն ես, ո՛վ ամէնուն Աստուածը: Դուն որ խելքէ վեր մեծութիւն, անբաւանդակելի բնութիւն. անքննելի իսկութիւն, զօրաւոր ոյժ, կարող բարերար. անպակաս ամբողջութիւն. անճառելի ժառանգութիւն, վայելուչ վիճակ. առատ պատրաստութիւն. առանց չուքի իմաստութիւն. անճչալի տուրք. փափաքելի պարգեւ. բաղձալի բերկրութիւն. անտխուր հանգիստ. անտարակոյս գիւտ. անկողոպտելի կեանք. հրդեհէ զերծ կալուած. անփոխանորդելի բարձրութիւն. ամէն ցաւի հնարը գտնող բժիշկ և անխախտ հաստատութիւն ես: Մոլորածները կը դարձնես, կորսուածները կը գտնես. Քեզ ապա-

ւինաղներու յոյս կուտաս ու մութի մէջ նստող-ներու լոյս. մեղքերը կը քաւես. փախստական (հոգի)ները կը պահես. խռովածները կը խաղաղ-ցընես. մեռածները կը փրկես. կապուածները կ'արձակես. (մեղքով) մատնուածները կ'ազատես. սահածները կը պատսպարես. գայթակղածներուն կը վշտակցիս. տարակոյսի մէջ գտնուողներուն համբերութիւն կը պարգեւես: Լոյսի տեսք ես, ցնծութեան գոյց, եւ օրհնութեան անձրեւ. երես-ներու հոգին ես. դէմքերու զօրութիւնը եւ գլուխի հովանին. շրթունքներու շարժարանն ես. ու խօ-սելու ազդակը. անձին կառավարն ես ու բարձ-րացած ձեռք, երկնցած բազուկ ես որ սրտի երա-սանակը կը բռնես: Անունդ ընտանի է, ձայնդ ամէնուն մօտ. հարազատ կցորդ ես ու հայրենի խնամածութիւն. խոստովանուած անուն, պաշտուած պատկեր. անսահման նմանութիւն. երկրպագուած տէրութիւն. օրհնուած յիշատակ, ուրախութեան մուտք. անվրիպելի հետք, փառքի դուռ, ճշմարտութեան ճամբայ ու սանդուխ ես որով կարելի է ճեմել երկնից մէջ: Եւ Քեզ կը վայելէ դեռ անբաւ տուներու եւ անհամար կար-գերու բաժնուած բազմաթիւ գովեստի խօսքեր, զորս ո՛չ մարդկային բերանը կրնայ ճառել, ո՛չ մարմնեղէն գործիքը կրնայ կրել. եւ ո՛չ ալ հո-գեղէն իղձերը կրնան կշռել:

Գ. Ամէն տեսնող աչք Քե՛զ կը նայի, ո՛վ ամէնուն Աստուա՛ծը. Քու ծառաներէդ և կամ աղախիններէդ մէկն եթէ աղաչէ, նայէ՛ անոնց պաղատանքներուն ու հառաչանքի ձայներուն։ Եւ ցանկասէր աչքերուս անարատ ոտքիդ վրայ թափած լացի արցունքներուն ողբերգութեան ցօղը ընդունէ՝ ով մարդ եղած Քրիստոս, ինչպէս նաեւ խոստովանութիւնս ու Քեզ դառնալս՝ յանցաւոր կնոջ մազերուն խորհրդաւոր օրինակովը. և երբ շրթունքներովս համբուրելով կենաց փրկութեան Հաղորդութեանդ ճաշակեմ, ընդունէ անքակտելի միութիւնս Քեզ հետ՝ իբր նոյն շնչով միացած. և նոյն գթութիւնը նոյն ողորմութեամբ ընդունելով Քեզմէ ո՛վ բարերար, մեծ պարգեւդ գրաւական առած ըլլամ փոքր հաւատքիս. և ինձ համար — որ անձկալի անունդ խոստովանող ծառայ մ'եմ— Քու գթութեանդ սիրոյն շնորհիւ՝ ձմեռուան խիստ հովերը հանդարտ օդի թող փոխուին, սաստիկ մրրիկները՝ ախորժելի սիւքի, երկիւղի կասկածները՝ մեծ վստահութեան, պատուհասի պատիժները՝ երանութեան պատահումի. տրտմութեան հոգերը՝ հոգեւոր խնճոյքի. ծփանքներու ալէկոծութիւնը՝ խոր հանդարտութեան. ղեկերու դարձուածքը՝ անքոյթ նաւահանգիստի և մեղքերու բեռներուս արդիւնքը թող փոխուի շնորհներու թօշակի։ Եւ Քեզմէ տրուած այս ամէն բիւրա-

ւոր բարիքներուն շնորհիւ, թող մեծնա՛յ Քուօրհնուած ու խոստովանուած անունդ զօրաւոր. քու չարախօսը թող ամչնա՛յ, փոնտուի ու հալածուի. մեղքի մուրհակներս թո՛ղ ոչնչանան. թակարդները թո՛ղ խզուին. որոգայթները թո՛ղ զատուին, կապերը թո՛ղ քակուին. վի՛նը թո՛ղ հեռանայ. մնասները թո՛ղ վերնան. խարկանքները թո՛ղ ցնդին. մեղքերը թո՛ղ ջնջուին. պարտատոմարները թո՛ղ պատռին. լուծը թո՛ղ խորտակուի. ղեկերը թո՛ղ քակուին։ Եւ չար յանցանքներու մութ մշուշին ու պաշարող դեւերու բանակին մէջ, փառքիդ արեւը թող հասնի, ապրեցնելու, փրկելու և լուսաւորելու աջէն, ձախէն, ետեւէն ու առջեւէն։ Եւ Քու երեւելուդ սպասողներու ակնկալութիւնը թող փոխարինուի առաւօտեան նշոյլովը հոգւոյ գարունին։ Որովհետեւ Դու Բարերարն ես ամէնուն և ամէն բան հնարաւոր է Քեզ համար, ամէնուն ապրիլը կ՚ուզես և կը բաղձաս որ ամէնքն ալ փրկուին։

Դ. Ո՛վ Յիսուսի Քրիստոսի ամէն բան պարգեւող ձեռքը. շնորհի սուրբ Աջդ կարկառելով ի՛նձ ալ դարձի՛ր, միանալով բնակէ՛ մէջս, սրտիս սիրոյ սենեակին նեղութեանը համար մի՛ հեռանար անկէ. ու Քու անեղծ նկարդ (կնիք) — որ պանծալի նշխարն է լոյսին՝ քրիստոնէական փրկութեան կոչումիս — ինձ հետ պահէ՛ որպէս զի

անոր միջնորդութեամբ արձանագրուիմ յաւիտենական գրքին մէջը երկինքը ստեղծողիդ կեանքի կտակին, որ աւետիսն է հոգիներու։

Ե. Քեզ՝ որ միակ պատճառ ես (Հայր) և մէկիդ՝ որ միակ պատճառէն է (Որդի) և անոր որ ունի պատճառը մէկին (Հոգի) երրեակ անձնաւորութեանդ և միակ Աստուածութեանդ կը վայելէ փառք՝ վեհ երկնաւորներէն ու սուրբերու դասէն մինչեւ յաւիտեան. Ամէն։



Նոյն այն Հոգիին աղերսալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած։

---

## ԼԳ. ԽՕՍՔ



ՅՈԳԻՈՅՍ երախայրիքներէն քեզ ընծայած պաշտումի բանահիւսութիւններս, իւ դաբեր կանանց նուէրին կցորդելով, բարեպաշտ կնոջ Մարիամին՝ անուշահոտ իւղերուն խառնէ՛ ով Օրհնուած բարեգութ, որպէս զի կարող ըլլամ նոյնութեամբ հաւասարիլ երջանիկ պոռնիկներուն — որոնք ընդունուեցան քեզմէ, յա-

ւէտ հրաշալի յարգանքով — ու Դուն ալ իմ նուաստ խօսքերովս մեծապէս պարարիս։ Ընդունելով զանոնք անհասանելի ու օրհնուած գլխուդ վրայ, ո՛վ Բարձրեալ, որ չյանդիմանուիմ Սաղմոսին բամբասանքներովը թէ «Մեղաւորին եղը՝ գագաթի ոստերուն տերեւները (գլխու մազերը) թող չօծէ»։ Այլ կրկնապատիկ առատութեամբ զօրացո՛ւր այս խոստովանութեան գրքին անուշահոտ բուրումը որ մեծ ազդեցութիւն ընէ, ամէն կողմ սփռուի՝, տարածուի՝, աշխարհ լեցնէ՝ տանը օրինակով (ուր Մարիամ անուշահոտ իւղը թափեց). և անոնց յիշատակին պէս հռչակուի աշխարհի մէջ. որովհետեւ Դուն, նոյն Տէրն ես որ երբեմնի չարախորհուրդ մեղաւոր կիներն ղգաստացուցիր, որոնց օրինակ ցուցունելով Մարգարէին գործը (Ովսէէ Ա. 2) զայն ճշգրիտ պատկեր գծեցիր Քեզ, ու ղղջացած պոռնիկներու ընձեռած անճառելի պարգեւովդ, ծայրագոյն շնորհին անձիս վրայ կատարուիլը ցուցուցիր։ Անասուններու յատուկ կերակուրին՝ գարիին տեղ, մեծաքանակ ամբարած ցորենի պտուղդ՝ կեանքի հացդ տուիր. աւրուելու ենթակայ արծաթին տեղ, արքայական պատկերդ շնորհեցիր. յիմարի նման թմրեցնող գինիին տեղ Արարչական արիւնիդ բաժակը նուիրեցիր. հին ժողովրդեան անառակ կնոջմէ առնուած իւղին տեղ, շնորհի օծումդ պարգեւեցիր ինձ

ղղջացողիս. գլուխը ծածկող կտաւին մերկացուելուն փոխարէն՝ չուրուող վերարկուն ընծայեցիր. ապարանջանի զարդին փոխան, բարեմասնութեան թեւեր ընծայեցիր՝ Օրէնքին, Աւետարանին ու գործնական առաքինութիւններուն շնորհիւ. ականջին վայելչազարդ օղին տեղ տէրունական ձայնիդ անստուեր յիշատակը պարգեւեցիր. լանջքը պերճացնող քայռերուն փոխարէն, քաղցր լուծդ կրելու համար ուղղութեան բազմաթիւ աւանդներ (խրատներ) կտակեցիր։

Բ. Բայց ինչո՞ւ ես պարծիմ ասոնցմով, փոխանակ կրկին ամչնալու։ Այլ ուրիշ ձեւի փոխեմ ողբերգութեան մաղթանքի այս գիրքն և ինձ արժանի եղած պատիժը կատարելապէս կրեմ մեղքի պարտքերուս փոխարէն, մարգարէից գրուածներէն համառօտ օրինակներ առաջ բերելով այս գլուխին մէջ, իբր սաստիկ դատախազ։ Անոնց ուրախակից ըլլալով՝ պարելէ աւելի, լծակից ըլլամ անոնց ողբերուն որոնք կը բաղկանան հառաչանքէ, հեծեծանքի ձայներէ, բարկութեան բողոքներէ, խորտակումի նախատինքներէ և մեծ լացերէ։ Սակայն ամէնուն հասնող գթութիւնդ, ո՛վ մեծ Աստուած, շուտով ազդեց վրաս ու յուսադրեց զիս, զղջումի, խոստովանութեան, աւետիսի, պարգեւներու, լոյսի երեւնալուն, աստուածային խրախոյսներու, փառքերը ժառանգե-

լու, հրաշքներու յայտնութեան և սքանչելիքներ տեսնելու։ Ասոնցմէ ոմանք յոյս կընձեռեն. իսկ ոմանք մեծ վհատութիւն կը պատճառեն որոնցմով ես յոժարութեամբ կործանելով կորսուելու են-թարկուեցայ։ Որովհետեւ եթէ Աստուծոյ զգեստ կ՚անուանէ՝ Եզեկիէլ՝ վարագոյրը, որուն մէջ չինծու կուռքեր չինեց ժողովուրդը, և պոռնկացած՝ կ՚ըսէ անոնց, ուրեմն ո՞րքան պատիժ պէտք է իմ անմաքրութեանս որ զԱստուած հագած եմ, ներ-սէն ու դուրսէն։ Կը զարմանամ թէ, ինչո՞ւ չեմ վառիր. կը հիանամ թէ, ինչո՞ւ չեմ այրիր. կ՚ապ-շիմ թէ, — Ս. Գրքին ըսածին նման — ի՞նչպէս չեմ յափշտակուիր կորսնցնողին (սատանայ) ժա-նիքներու օրինակէն ու չեմ տանջուիր, լքուիր, չարչարուիր, ջախջախուիր, մանրուիր, խորտակ-ուիր, կտրուիր ու բաժնուիր։ Եւ սակայն՝ երբ յիշատակի նշոյլ փրկութեան յոյսի՝ սա միայն պահ-ուած է ինձ թէ, Քրիստոսի Աւետարանը կեանք է բոլորովին. ինչպէս (Աւետարան) անունն ալ կը հաստատէ նոյնը։ Որով մեղաւորները դարձի կու-գան, պարտքերը կը շնորհուին, եղծուածները կը նորոգուին, անօրէնութիւնները կը քաւուին, վէր-քերը կը բժշկուին, վտանգը անդորրութեան կը փոխուի, պատիժը՝ ներումի, պատերազմը՝ հան-դարտութեան, կրակը՝ անձրեւի, պատուհասը՝ պարգեւի, սատակումի ակնկալութիւնը՝ շնորհի

և մահուան գործարանը՝ կեանքի ազատութեան։

Գ. Բայց ինչո՞ւ թուեմ այս ամէն յիշատակութիւններն ու անճառելիները չդասեմ հոս։ Բարձրեալ Հօր յիշատակովը՝ Որդիին հետ մեր կցորդութիւնը. Միածինին անուամբ, Հօր հետ մեր ընտանութիւնը. Ասոնց Հաճութեամբ, Հոգւոյն հետ մեր հաղորդութիւնը։ Խաչին փրկութիւնը, խօսքին սփոփանքը, բարի վարձատրութիւնը՝ զոր Դիտողը կ'ընէ մեր բարեյօժարութիւնը կշռելով, կենդանացնող աւազանը որ միջնորդ է հաշտութեան. և դեռ այն անթիւ բարիքներուն ամէնքը որոնք կը չռայլուին մեզ՝ Բարերարէն, և Որուն շնորհիւ, (հոգևոր) հարկէ ազատ ենք ու քակուած են մեր կապերը. կ'իշխենք (սատանին վրայ), իշխանութեան տակ չենք։ Անհաւասարկ աստնք են որ մահուան դառնութեանս մէջ անկասկած կեանք կ'աւետեն ինծ. որովհետև — Երգողին (Սաղմոս) ըսածին նման — եթէ աստնք չունենայի, շատո՜նց կորսուած էի տեղն ու տեղովը։ Ո՛չ Որդին պզտիկցնելով Հայրը կը փառաւորեմ, ո՛չ ալ Հոգին նուաստ ներկայացնելով Որդին կը նախատդասեմ. Երեքն ալ համափառ կը դաւանիմ նոյն արարչութեամբ. որովհետև Սուրբ Հգիին ուղղուած աղաչանքը այս է, Նախընծայ՝ սկիզբը պոտորաքէն (կամ առաջին պատարագիս) — ուր երկնաւոր գառնուկդ կը մորթուի — այսպէս աղօթեցի։

Աղօթք՝ որ Պատարագէն առաջ կը մատուցուի

## (ԱՄԵՆԱԿԱԼ ԲԱՐԵՐԱՐ)

Դ․ Ո՛վ Ամենակալ, Բարերար, Մարդասէր Աստուածը ամէնուն, երևցածներն ու չերևցածները Ստեղծող, Փրկող և Հաստատող, Խնամող և Խաղաղարար, ո՛վ Հօր զօրաւոր Հոգին, Ահաւոր ատեանդ ելլելով, հեծեծանքի ձայնով կը խնդրե՛նք, կը մաղթենք բազկատարած: Մեծ դողով, սաստիկ վախով կը մօտենանք, նախ այս բանական (խօսուն) պատարագը մատուցանելու՝ Քու անզննելի զօրութեանդ որ Աթոռակից, Փառակից և Արարչակից ես հայրենի անկողոպտելի պատուոյն, որ ամէնքն ստեղծող, կենդանութիւն տուող, փրկող, և զՔեզ դրկող Էմմանուէլ Հօր ամէն բան կատարող կամքին ծածուկ ու խոր խորհուրդները կը քննես: Քու ձեռքովդ ճանչցուեցաւ մեզ միասնական Աստուածութեանդ Երրեակ անձնաւորութիւնը որոնցմէ մին ալ Դուն կը ճանչցուիս անհասանելի կերպով: Քեզմով ու Քու ձեռքովդ՝ առաջինները, Նահապետական տոհմին ճիւղերը՝ տեսանող (մարգարէ) անուանուելով, անցածները, գալիքները, եղածներն ու դեռ չեղածները պարզ, դիւրահասկանալի խօսքերով վերապատմեցին: Մովսէս՝ Աստուծոյ Հոգի քարոզեց զՔեզ, ո՛վ չսահմանափակուող Զօրութիւն,

որ ջուրերու վրայ քալած ատենդ, Խնամողի անեղ շրջապատումով Թեւիդ տակ պաշտպանելով Նոր ծնելիքները՝ գթասիրեցիր զանոնք ու ճանչցուցիր խորհուրդը Աւազանին, որուն իբր օրինակ՝ դեռ վերջին վարագոյրիդ լոյծ մածուածը (ջրոտ խմորը, երկինքը) չկտրուցած, ամբողջ բնութիւնը ոչնչէ ստեղծեցիր՝ իբր Տէ՛ր, ո՛վ Ամենակարող։ Քեզմէ եղածներուն ամէնքը Քեզմով կը ստեղծուին՝ յարութիւն առնելով նորոգուելու համար այն պահուն, որ վերջին օրն է այս կեանքին ու առաջին օրը կենդանիներու աշխարհին։ Քու ազգակիցդ, Հօր էակիցը՝ անդրանիկ որդին՝ կամքին միութեամբը՝ ինչպէս Հօր, նոյնպէս Քեզ հնազանդեցաւ, մեզ նման. զՔեզ ճշմարիտ Աստուած աւետարանեց, հաւասար և համագոյ Իր զօրաւոր Հօր. ու Քեզ դէմ եղած հայհոյութիւնը՝ անքաւելի քարոզեց, ու Քեզի դէմ հեստողներուն չարախօս բերանները, Աստուծոյ դէմ կռուողներու բերնին նման կարկեցուց. և Իր դէմ հայհոյողներուն ներեց Արդարը, Անարատն ու ամէնքը գըտնողը, որ մեր մեղքերուն համար մատնուեցաւ ու զմեզ արդարացնելու համար յարութիւն առաւ։ Քու ձեռքովդ Անոր փառք ու Քեզ՝ Ամենակալ Հօրդ հետ բարեբանութիւն թող մատուցուի մինչեւ վերջն. Ամէն։

Խօսէ նոյն շարքընթերցն Բող կրկնուի, մինչև յայտնուի Բէ, հրաշալի շնորհով ազատած է վտանգութենէն լոյսին, շարժելու ատեն փառաբանելու համար խաղաղութիւնը կրկնակ:

(ԱՂԱՉԵՄՔ ԵՒ ԱՐՏԱՍՈՒԵՄՔ)

Ե. Մեր ամբողջ մարմնովը, արտասուալից հառաչանքով կ'աղերսենք ու կ'աղաչենք Քեզ, ո՛վ փառաւորուած Արարի՛չ, որ անեղծ ես, չես ստեղծուած ու ժամանակի տակ չես սահմանափակուիր ո՛վ գթած Հոգի, որ մեր անմռունչ հեծեծանքներուն հանդէպ մեզ համար կը բարեխօսես ողորմած Հօր. որ մաքուրները կը պահես ու մեղաւորները կը մաքրես և Բարձրեալ Հօր կենդանի ու ապրեցնող կամքին տաճար կը պատրաստես: Արդ, ազատէ՛ զմեզ այն ամէն անմաքուր գործերէն, որոնք հաճելի չեն Քեզ՝ բնակութեանդ համար. և մեր մէջէն, մեր իմացական աչքերուն տեսութենէն թող չմարին փայլումները շնորհքի լոյսիդ. որովհետեւ սորվեցանք որ աղօթքի և ընտիր ու բարի վարքերու ձեռքով կը միանաս Դուն մեզի հետ՝ Երրորդութենէդ Մէկը կը պատարագուի և Միւսը կ'ընդունի՝ իր Անդրանիկին հաշտարար արիւնովը հաշտուելով մեզ հետ. իսկ Դուն ընդունէ՛ մեր պաղատանքները, և ամէն պատրաստութեամբ պատուական օթեւաններ ըրէ զմեզ որ արժանի ըլլանք երկնաւոր Գառը ճա-

շահելու վայելքին և առանց դատապարտութեան պատիժի ընդունինք նոր կեանքի փրկութեան այս անմահացուցիչ մանանան։ Եւ մեր դայթակղութիւնը թող հալի՛ այս կրակէն, նման (Եսայի) մարգարէին անմաքուր շրթունքներուն որոնք կենդանոյն այրեցան, մաքրուեցան ունելիով մատուցուած կայծակին ձեռքով, որպէս զի ամէն բանի մէջ քարոզուի Քու գթութիւնդ, ինչպէս նաեւ Որդիին հետ քաղցրութիւնը Աստուծոյ՝ Հօր որ անառակ որդին հայրենի ժառանգութեան մօտեցուց ու պոռնիկները երկնային արքայութեան մէջ առաջացուց մինչև արդարներուն երանութեանը հասցընելով զանոնք։ Այո՛, այո՛, ես ալ մէկն եմ անոնցմէ, զիս ալ ընդունէ անոնց հետ իբր մէկն որ կարօտ է մեծ մարդասիրութեան, Քու շնորհիւդ կ'ապրի և ստացուած է արիւնովը Քրիստոսի։Որպէս զի այս ամէնուն մէջ, ամէն տեղ ճանչցուի Քու Աստուածութիւնդ՝ Հօր հետ փառաւորուած համապատիւ կերպով, մէկ կամքով և մէկ գովելի իշխանութեամբ. անոր համար որ Քուկդ է գթութիւնը, կարողութիւնը, մարդասիրութիւնը, զօրութիւնն ու փառքը, մինչեւ վերջն. ամէն։

Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու ողբական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.
Սրտէ խօսքերէն խօսք առ Աստուած.

## ԼԴ. ԽՕՍՔ



ՍՐՏԻ՝ ասոնք են իղձերը թշուառացած շունչիս ո՛վ Աստուած, որ ամէն բան կ'ամփոփես խօսքովդ. ասոնք են նաեւ Քեզ վայելուչ դաւանութիւնները զոր նախորդ գլխուն մէջ ճառեցի եւ այս երկրորդին մէջ ալ պիտի ցուցնեմ։ Իսկ բազմաթիւ ազգակոյտերու եւ ժողովուրդներու թարգմանուելու համար, իբր գրաւոր հրապարակախօսութիւն այս արգահատական եւ գոհաբանական աղօթքը նուիրեցի զոր վարի տողերը կը յայտնեն։

Հրապարակաւ աղերսախօսութեան յարմար աղօթք,
որով կը հաշտուի Աստուծոյ Հոգին ու օգնութեան
կը հասնի։

(ԱՂԱՉԵՄ ԶԱՆՓՈՓՈԽԵԼԻ)

Բ. Ամէնէն զօրաւոր, հզօր Հոգի՛, կ'աղաչեմ Քեզ ո՛վ անփոփոխելի Տէր. զրկէ՛ Քու քաղցր ցօղդ, ու բազմապարգեւ ողորմութեանդ ամէնքը ճոխացնող շնորհները առատաձեռնէ՛, թէ՛ անձիս՝ եւ թէ՛ զգացումներուս ազդումին իշխող մտքիս։

Ու հերկէ՛ բանական արօր մարմնեղէն կարծրացած սրտիս որ ընդունակ ըլլայ հոգեւոր սերմդ արգասաւորելու։ Մեր մէջ ծաղկած ու աճած պարգեւներուն ամէնքն ալ կը պտտինք Քեզ՝ որ ամէնէն իմաստուն էութիւնն ես և առաքեալներ կը ձեռնադրես. մարգարէներ կը ներշնչես. վարդապետներու կը սովրեցնես. համրեր կը խօսեցնես և խուլերու ականջը կը բանաս. ինչպէս որ Քու ազգակիցդ՝ Հօրը էակիցը՝ Անդրանիկ Որդին ասոնց ամէնքը Քու գործակցութեամբդ ներգործելով՝ Հօր իսկութեան հաւասարակից Աստուած քարոզեց զՔեզ։ Ի՛նձ՝ մեղաւորիս ալ շնորհ ըրէ՛ որ համարձակութեամբ խօսիմ աւետիս տուող Աւետարանիդ կենդանութիւն պարգեւող խորհուրդներուն վրայ. Քու շունչովդ գրուած Կտակարաններուն անհուն ասպարէզին հետեւի՛մ մաքի արագաթռիչ ընթացքով։

Եւ երբ գիրքը մեկնելու համար հանդէսին գլխուն (բեմին) մօտենամ, Քու գթութիւնդ կանուխէն թող հասնի, նոյն պահերուն ներշնչելով ինծ արժանաւորը, պիտանիները ու Քեզ հաճելի եղածները՝ Քու Աստուածութեանդ փառքին ու գովեստին և Կաթուղիկէ եկեղեցւոյ, (բարոյական) շէնքին ամբողջ պահուելուն համար։ Եւ ամէնուն մօտ եղած Աջդ իմ վրաս կարկառէ՛ ու զօրացո՛ւր զիս Քու գթութեանդ շնորհովը։ Փարատէ՛

մթութեան, մոռացկոտութեան մշուշը մաքէս, անոր հետ մեղքի խաւարն ալ անհետացնելով, որպէս զի այս երկրաւոր կեանքէն՝ դէպի բարձրերը վերանամ իմացականութիւնովը մաքիս։ Քու Աստուածային գիտութեան պայծառ հրաշքներուդ լոյսը կրկին ծագեցո՛ւր իմ մէջս ո՛վ զօրաւոր, որպէս զի արժանի ըլլամ թէ՛ ընելու և թէ՛ սորվեցնելու. եւ բարի օրինակ դառնամ աստուածասէր լաղներու (ժողովրդեան)։ Ամենակալ Հօր, և անոր միածին և բարերար որդիին հետ, ամէն բանի մէջ ամէն ատեն փառք թող մատուցուի Քեզ, հիմա և մինչեւ անվերջ անհունութիւն. Ամէն։

Իսկ համագոյ Սուրբ Երրորդութեան ուղղուած հաւատքի սահմանը որ կեանքի կանոն, ընտրութեան շնորհ է, այս խօսքերով սորվեցուցի զոր յետագայ կարգին ընթացքը կը ցուցնէ։

Նոր Քաղաքացութիւնը՝ անայլայլելի Երրորդութեան Հաւատքալիքներուն որ Աստուծոյ այդպամովը սահմանուեցաւ Նիկիոյ Հանգանակին մէջ.

Գ. Ամենասուրբ Երրորդութեան զուգափառ միութիւնը կը խոստովանինք ու կը դաւանինք. կը պաշտենք, ու կ'երկրպագենք Անոր։ Անճառելի Աստուածութիւն. միշտ բա՛րի, գոյութեամբ նո՛յն, և պատիւով հաւասար. մաքի թեւերու ալացումէն վեր, ո՛չ օրինակով կը բացատրուի, ո՛չ ալ

նմանութիւն ունի, բացարձակ անբովանդակելիութեամբը բնաւ չսահմանափակուիր:

Ժամանակներու սահմանուելէն առաջ, ուր ստեղծագործուած իրերն ու արարածները տարերքներով չէին գոյացած դեռ, անթարգմանելի օրհներգութիւնով ու ամենահարուստ մեծութիւնով յաւէտ պսակուած էր Ան: Ժամանակներն ու ժամանակի մէջ կերպաւորուածներն Ստեղծող. Ինքն է Պատճառը, Պատրաստողը և յարմարապէս Յօրինողը տեսնուածներուն ու չտեսնուածներուն: Ո՛չ անունով կը չափուի, ոչ ալ յորջորջումով կը նշանակուի. ո՛չ որակութեամբ կը նմանցուի, ո՛չ ալ քանակութեամբ կը կշռուի. ո՛չ օրինակով կը պատկերանայ ու ոչ ալ որպիսութիւնով կը ճանչցուի. ո՛չ թերի էր լրացաւ և ո՛չ ալ ամբողջութենէն նուազեցաւ. ո՛չ ժամանակի տակ կը սահմանափակուի, ո՛չ ալ տեղի մը մէջ կը պարփակուի:

Դ. Հայրը գթած՝ որ ամէնքն ունի և Աստուածն է ընդհանուրին, թէ՛ անոնց որ երկինքն են և թէ անոնց որ երկրի վրայ, բացի միակ ԽՕՍՔէն, (Բան՝ Որդի) Որով ամէն բան ունի: Ստեղծողն ու շունչ տուողն ամէնուն, բաց ի իսկակից Հոգիէն որով կազմեց ամէնքը:

Ե. Մէկը՝ երջանկափառ, համազօր, ահաւոր երեք անձնաւորութենէն. դէպի հոս՝ ստորինները խոնարհեցաւ վերէն. Ներքիններէն անբաժան էր

արդէն․ Ան, որ փառքի աթոռին վրայ անխախտ
ու իր Ծնողին դէմքին անկարօտ մնաց։ Գարզօրէն
մտաւ Կուսին արգանդի սենեակն ու անկէ կա-
տարեալ մարմին առած դուրս ելաւ, մարդիկներէն
իսկապէս անորոշելի կերպով, անթերի մարդկու-
թեամբը ու անպակաս Աստուածութեամբը։

Միակ Հօր միակ Որդին․ և միածինն ու
անդրանիկը՝ Աստուածամայր և Տէրը ծնող Կոյսին․
Արարիչը՝ որ ստեղծած մօրմէն ճշմարիտ մարդ ծնե-
լով անդրանիկը եղաւ անոր․ ո՛չ թէ երկրի վրայ
ստեղծուած մարդոց նմանութեամբ, այլ նոր ու
չքնաղ, թագաւորներէն աւելի գերազանց․ որ ո՛չ
դարերու մէջ տեսնուեցաւ, ո՛չ ալ ժամանակներու
մէջ գոյացաւ։ Երկրի ամէն թագաւորներէն անդ-
րանիկ՝ ինչպէս կ՚ըսէ Սաղմոսօղը․ անշփոթ խառ-
նուածքով մեր մարմինը վրան առաւ (մարդ
եղաւ) ինչպէս հոգին կը միանայ մարմնոյն հետ,
ու ոսկին կրակին․ և կամ աւելի բացարձակ խօ-
սելով, ինչպէս լոյսը օդին հետ, ո՛չ փոխուելով,
ո՛չ ալ բաժնուելով։

Նոյն Ինքըն կամքովը Խաչի՜ մահուան գալով,
անարատ գառի նման սպանդանոց տարուեցաւ
ու զօրեղ ինքնիշխանութեամբը Իր ստեղծածնե-
րուն փրկութիւնը պատրաստեց․ կենդանի մարմ-
նովը ճշմարտապէս չարչարուելով․ շիրմի մէջ
դրուեցաւ առանց զատուելու Աստուածութենէն։

Երեք օրուան Թաղումովը, դժոխքի սանդարամետին մէջ յաւիտեան բանտարկուածներուն՝ նորոգում և լոյս քարոզեց։ Եւ աւարտելով անօրինական փրկագործ առաքելութիւնը (պաշտօնը), յարութիւն առաւ Աստուածապէս, և հովերու թեւերուն վրայ ճամբորդելով քերովբէներուն քով ելաւ և անքննելի ամպերով ծածկուեցաւ։ Երկնքի ամէն խաւերէն շատ վեր համբառնալով, Հօրը հաւասար ճոխութեամբ նստաւ իր սկիզբէն ժառանգած աթոռը, ուրկէ երբեք չմեկուսացաւ, չկորսնցնելով առածը (մարմինը) և բնաւ չնուազելով սեփհականութենէն (Աստուածութիւն)։ Որով պիտի գայ հատուցումի դատաստանին, իրաւունքի արդար կշիռովը չափելու և քննելու ծածկուածները. կ'սպասենք Իրեն, և կ'աղօթենք ամէն առթիւ հաւատալով Անոր ամէնուն վրայ իշխող տէրութեանը. որ արդարեւ Միակն է միայն, ծնած Մէկէն (Հայր) և փառակից է յաւէտ երկրպագուած Մէկին (Հոգի)։

Ջ. Հօր ու Որդիին հետ կը բարեբանենք միշտ ու կ'օրհնենք անոնց էութեան ամենակարող ճշմարիտ, կատարեալ և սուրբ Հոգին, որ ոչնչէ ստեղծեց բոլոր այս ամէն արարածները։ Իր զօրութեամբ կը գործէ և Երկուքին իշխանակից է անեղծ ու անսահման Թագաւորութեան մէջ։ Ինչ որ է առաջին Պատճառը (Հայր) և նոյն ինքնութեան

ահարկու խօսքը (Որդի), նոյն ինքն է նաև բարձրացած Հոգին։ Բարի ինքնակալ, որ միածնի անուան փառքի, գովեստին համար, ամէնուն կը բաշխէ Հօր պարգևները, Որ ազդեց օրէնքներուն վրայ, մարգարէներուն ներշնչեց, առաքեալներուն մէջ տպաւորուեցաւ՝ Ազգակիցին (Քրիստոսի) անոնց փչելովը. Եկողին (Որդւոյ) փառքին մեծութիւնը ցուցնելու համար աղաւնիի կերպարանքով երևցաւ՝ և Յորդանանու մէջ. աւանդուած գիրքերուն մէջ (Աւետարան) փայլեցաւ՝ և. հանճարեղներ պատրաստե՛ց. իմաստուններ զօրացո՛ւց. վարդապետներ լեցո՛ւց (շնորհքով). թագաւորներ օծե՛ց. թագաւորներու օժանդակե՛ց. վերակացուներ կանգնե՛ց. (հոգևոր) փրկութիւններու հրաման տուաւ. ձիրքեր շնորհե՛ց. քաւութիւններ պատրաստե՛ց. Քրիստոսի մահուամբ մկրտուածներս մաքրագործեց Ինք բնակելու համար. ինչ որ Հայրն ու Որդի՝ նոյն ալ Հոգին ներգործեց և ինքն է տիրապէս օրհնուած Աստուածը ամէնուն՝ ամէն բանի մէջ։

Է. Երրորդութեան անձնաւորութիւններէ Մէկը՝ եթէ առաջ դրուի, մեծ չըլլար Միւսէն. և կամ եթէ վերջը անուանուի, չպզտիկնար Նմանէն. կամ երբ Մէկուն ըսուի՝ խառնակութիւն չըլլար Դէմքերուն մէջ. կամ երբ երեքի բաժնուի, տարբերութիւն չըլլար (Երրորդութեան) կամքին մէջ։

Մեծարանքէ բոլորովին զուրկ կ'ըլլայ Հայրը, եթէ Խօսքը՝ (Որդին) զօրութիւն չունենայ Իրեն. Նոյնպէս ալ եթէ Հոգին չունենայ, կենդանութենէ զուրկ մէկու մը պիտի նմանի, առանց հագագի. և ամէն հրամանները անգործադրելի պիտի ըլլան։ Իսկ Խօսքը (Որդի) եթէ Հօրը անուամբ չճանչցուի, որբ կամ լքուած և կամ ոչինչ մահկանացուէ մը (ծնած) պիտի կարծուի։ Նոյնպէս ալ Հոգին եթէ Պատճառէն (Հայր) չնշանակուի, աննշան հովի նման հոն հոս թափառելով, դասակարգութենէ զուրկ շունչ մը պիտի համարուի։ Իսկ եթէ մէկը հակաճառական խօսքերով՝ Հայրը իր Խօսքէն (Որդիէն) կապտել (բաժնել) յանդգնի. «կար ժամանակ որ Որդին չկար ըսելով», և «Խօսքը չկար»ի բամբասանքով Վեհին մեծութիւնը պատառել կարծէ, և կամ ստրկութիւն տայ բղխողին թէ «բնութեամբ չունի Հոգին՝ այլ ստացական օտար էութիւն մ'է այն» և կամ եթէ մէկը՝ սուրբ Երրորդութեան միութեան անարատ պատուոյն դէմ, այլ ընդ այլոյ ափեղցփեղութիւններ ընէ, այնպիսիները կռուող դժնդակ գաղան դեւերուն նման, հաւատքի խօսքերուն պարսատիկի քարերովը կը վռնտենք մեր մէջէն ու դուրս կը հալածենք, նզովելով զանոնք անոնց (դեւերուն) հետ, անոնց դէմ կը փակենք, եկեղեցւոյ գաւիթին կենսատու դուռը։

Ուստի Սուրբ Երրորդութիւնը՝ նոյն տէրութեան մէջ միակցորդ, հաւասարապատիւ դաւանելով, կը փառաւորենք ներդաշնակօրէն սուրբ սուրբ ըսելով, որ համանման հաւասարութեամբ օրհնուած ու փառաւորուած է, թէ՛ երկինքին մէջ և թէ՛ երկրի վրայ, անդրանիկներու ժողովքէն ու երկրի ամէն տեսակ բանականներէն, մինչև վերջը. Ամէն։

Ը. Արդ՝ գաղտնի խորհուրդները բացայայտ խոստովանելով պարզեցի այս գրքին մէջ, զոր ամէն բան լսող ականջներուդ ընծայեցի. ով Մեծ Աստուած. ասով սպառազինուելէ ետք միայն մտայ հանդէսին մէջ։ Չէ թէ իմ այս ձայնիս կարօտ ես մեծնալու համար, — որ դեռ երբ երկինքը գոյութիւն չունէր, երբ Դուն դեռ այս ամէնքը՝ փառաբանող անմահներն (հրեշտակ) ու երկրի բանականները (մարդ) չէիր ստեղծած, Դուն Քեզմէ Քու սեփական կատարելութենէդ իսկ փառաւորուած էիր արդէն — այլ անոր համար որ, ո՛վ անճառելի Քաղցրութիւն, յորդեա զիս որ մերժուած եմ. և շնորհեա ինձ ճաշակել զՔեզ, այս խօսքերու հաղորդակցութեամբը։

Ի՞նչ պէտք է ընել սակայն անոր, որ արքունական հրամանիդ, կեանքի կանոնիդ համեմատ Ադոնայի Տէ՛ր (Աստուած) կ'ըսէ ու հրամայած պատուէրդ չի պահեր. ի՞նչ պէտք է ընել ինձ՝ որ

զիս — Քու պատգամիդ նուիրուած՝ խօսող ոսկեզէն տախտակը որ Աստուածային մատովդ գրուած էր — աւրեցի, որուն խորտակումը արդարացի ալ էր, և տխրատեսակ մուրով (մելանով) անոր երկրորդ օրինակը կը հայթայթեմ հիմայ։

Արդ՝ որովհետեւ շատ մը խանդաղատական դրուագներով պաղատեցայ — որ ձայնի այս դասակարգութեան մէջ գրուած չէ — այս խօսքիս հետ անոնց ամէնուն ալ մտիկ ըրէ՛ ո՛վ բարեգութ։ Աղօթքներու և խնդրուածքի այս աղերսախառն խօսքերը թող միանա՛ն անոնց հետ, մաքուր կերպով և կամքիդ համեմատ պատրաստուած հացի այս նուէրը, որ իւղով շաղուած անխմոր կարկանդակ մ'է, թերեւս փառքի սեղանիդ ներկայանայ։

Թ. Այլ Դուն ո՛վ միակ Աստուծոյ միակ Քրիստոսը, բարերար ու ամէնուն մարդասիրութիւն ցուցնո՛ղ, Զօրաւոր և ամէնքը բռնող, որ Քու քաղցր խնամքներուդ գթութիւնովը կը յաղթես, ո՛չ թէ ինձ գոյակից եղող հասարակ մարդիկներուն միայն, որոնք միշտ խռով են իրարու հետ և հազար տեսակ հակառակութեամբ տոգորուած են իրարու դէմ, այլ անախտ, անմեղ հրեշտակներուն իսկ, ասոնցմէ աւելի կը յաղթես նաև սրբացած անարատներուն, որոնցմէ մէկն էր Եղիա և որուն խստութեան ցոյցերը Քորեբ լերան վրայ

նշանակուեցաւ երեք օրինակով, մեծ շարժումով, ուժգին հովով ու այրող կրակով. իսկ Քու համբերութեանդ հեզութիւնը գեղազուարճ օդին մեղմ հանդարտութեամբը կ'երեւայ. որովհետեւ գրուածին համեմատ Դու միայն ողորմիլ կ'ուզես: Թէեւ մեզմէ սերածներ (մարդիկ) իրենց առաքինութեամբը հաճելի դառնալով՝ երկնայիններու նմանութեան վերածուեցան, բայց անոնք ալ մարդիկներէ ընտրուած երկրայիններ են. իսկ Դուն բնաւ չես կրնար չարանալ որ իսկութեամբ բարի ես. Նաեւ ամէնէն օրհնուած, կատարեալ փրկութիւն, ամէն տեսակէտով հանգիստ, ընդհանուրին անդորրութիւնը, բոլոր հիւանդներուն առողջութեան դեղը. ու կենդանի ջուրին աղբիւրն ես, ինչպէս կ'ըսէ Երեմիա: Ինձ դարձի՛ր եւ ողորմէ՛ ով անկարօտ Աստուած որ այնչափ ծարաւի ես իմ փրկութեանս եւ մինչեւ իսկ երկնային անմահ օրհնաբանող արթուններուն (հրեշտակներուն) ալ խօսք մը ընծայեցիր որ, իբր քահանայ եւ փրկութեան ու քաւութեան միջնորդ, անընդհատ տեւողութեամբ, մեր՝ երկրաւորներուս կողմէ մշտնջենական պաղատանք մատուցանեն Քու օրհնեալ գթութեանդ ու մաղթեն որ հաշտուիս ինձ լքեալիս հետ եւ շարունակ «Երուսաղէմին ողորմէ» ըսեն, ինչ որ լուսաւոր խորհուրդն է Քու մեծ յայտնութեանդ ու մարդկային մարմնով՝ ինկած

հրեշտակներուն թափուր մնացած տեղը՝ այցելելուդ, որ Երուսաղէմի օրինակովը աւետարանուեցաւ։

Ժ. Արդարեւ լսեցի՛ր Բարեգութ, մտիկ ըրի՛ր Երկնաւոր Թագաւո՛ր, ականջ տուի՛ր ո՛վ Կեանք և Յոյս. ուշադրութիւն ըրիր ո՛վ Երկնաւոր. յարգեցի՛ր ո՛վ Զօրաւոր. Նշմարեցի՛ր ո՛վ Ծածկագէտ. տեսա՛ր ո՛վ Խնամակալ. կարեկցեցա՛ր ո՛վ անպատմելի. խոնարհեցա՛ր՝ որ միշտ բարձր ես, նուաստացա՛ր՝ որ ահաւոր ես, յայտնուեցա՛ր՝ որ խելքէ վեր ես, ամփոփուեցա՛ր՝ որ չես սահմանափակուիր, չափուեցա՛ր՝ որ Անքննելի ես, խոստացա՛ր՝ որ աննիւթ Ճառագայթ ես. մարդ եղար՝ ո՛վ անմարմին, չօշափուեցար՝ որ քանակութենէ վեր ես. կերպարանք առիր՝ որ տեսակ չունիս. աղաչողներու բաղձանքները կատարելապէս լրացուցիր։ Հրեշտակներու ձայնովը՝ Դուն իսկ եղար ինձ՝ Թշուառիս՝ բարի Բարեխօս, կենդանի Միջնորդ, անմահ Պատարագ, անվերջ Զոհ, մաքրութեան Նուէր, չայրող Ողջակէզ, անապակ Բաժակ։ Ահաւասիկ ո՛վ Ողորմած, Մարդասէր, Օրհնուած, Քու կենդանութիւն տուող կամքիդ բարեբախտութիւնները միշտ շնորհէ մեղապարտ անձիս, ո՛վ Գովուած, Համբերող և Քեզ մինչեւ վերջը փառք կը վայելէ. ամէն։

*Նոյն այն Հաչողէն աղերսալից մաղթանքներուն ու աղաչական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.*

*Սրտի խորերէն խօսք առ Աստուած.*

## ԼԵ. ԽՕՍՔ



ԱՐԴ՝ ո՛վ զօրութեանց Տէ՛րը. մեծութիւնդ անհեզ է ու տեսութիւնդ աներկբայ. կամքդ ամենաընդարձակ է և առատութիւնդ անպակաս. ո՞վ պիտի համարձակի պարերգական հանդէսով տօնել մէկ կաթիլը Քու բարութեանդ ցօղին, որ իմ (հոգւոյս) փրկութեանը համար միջոցներ հնարելու կ'աշխատիս։ Ինչ որ ամէնէն մեծն է պիտի գրեմ, ապագային պատմելու համար. որովհետեւ հրեշտակասէր չյանուանուեցար Դուն որ անոնց պետութիւնները հաստատեցիր, ինչպէս նաև երկինքը իր ճրագներով Քու մատներուդ գործերն են թէև. սակայն երբէք չգրուեցաւ թէ զանոնք կը սիրես, այլ աւելի մեծ պատիւ ու գովեստ սեպեցիր մարդասիրութիւնը, նախադասելով զայն։ Որուն համար կրկին մեծցուցիր Քու անճառ անունդ սոսկալի խորհուրդներով. լուսաղէմ երկնայինները (հրեշտակները)՝ սպասաւորներ և պետեր անուանեցիր մասնաւոր մատակարարութիւններու, իսկ այս վարի մահկա-

նացուններու սերունդը (մարդը) Տիրական և Աստուածական պաշտելի անունովդ պերճացուցիր։ Գթութիւնդ չափն ու սահմանն անցաւ, որով՝ Քու երկնաւոր բարութեանդ անապակ ու ծայրայեղ հաստումին համար անթիւ ճառեր գրելու ընդարձակ առիթ տուիր։ Մանաւանդ երբ Աստուածային էութենէդ մէկը մարդացաւ. ոմանց՝ իրենց համար, իսկ ոմանց ալ՝ ուրիշներու համար առատութեամբ շռայլեցիր կեանքի պարգեւներ. տեսակ տեսակ հրաշքներ, Աստուծմէ գործուած սքանչելիքներ, ճշմարտապէս տեսնուած նշաններ։

Եթէ զայն վերցնողներու յոյսի ցոյցերուն գթալով անոնց առաջորդութեամբ թերահաւատ անդամալոյծին ողորմեցար, ո՜րչափ զօրաւորապէս պիտի ազդէ ինծ ուրեմն Քու ամենակարող խօսքդ, երբ ախտացած մարմնոյս մաքրութիւնը կը հայցեմ հառաչանօք. որովհետեւ աղտոտ հոգիս մաքրելէ և լուացուած պատկերս աղտէ զերծ պահելէ աւելի մեծ է հրաշք գործելը, մանաւանդ որ երկրորդ պարտադային մէջ Աւազանէն մաքրուելու շնորհն ալ աւելնալով հայրենի փառքը կը բարձրացնէ։

Բ. Դուն ես Տէ՛ր որ կը մաքրես զմեզ, ինչպէս նախ՝ (մաքրեցիր) Քու ընտրածդ՝ Մովսէսը։ Դո՛ւն ես որ անոր մեղքերուն ու անօրէնութիւններուն մէջ իսկ վերակացու եղար Յակոբայ տոհ-

մին, երբ Եգիպտացւոց երկրին մէջ հեթանոսութեան մութին կ՚ընտելանային։ Դուն ես որ — ինչպէս կ՚ըսէ երգողը՝ Դաւիթ — օրէնսգէտ կ՚ընես մեղաւորը՝ ճամբան գացած պահուն։ Դուն ես որ սրտի քարեղէն կարծրութիւնը մարմնի լոյծ կակղութեան կը փոխես, ընդունակ դառնալու համար խօսքիդ։ Դուն ես որ կրնաս ընձեռել՝ ուրիշ սիրտ մը և միակ ճամբայ մը, կեանքի ամբողջ սահմանին մէջ Քեզմէ վախնալու համար։ Դուն ես որ Քու վախդ կը դնես մեր խոտորած սրտին մէջ, որ հաւատաքով Քեզ յիշենք, Մարգարէներու ձայնին համեմատ։

Գ. Ականջներուս դրան բանալին մօտեցո՛ւր, կենսատու կաթիլը՝ աշխարհը ստեղծող բերնիդ՝ օրհնեալ շրթունքներուն Աստուածային անձրեւին, որով խորամանկ օձին բանսարկու թոյնը անհետացնե՛ս ու բժշկե՛ս։ Դուն որ ամէնուն ընտիր խօսքեր ընել կուտաս, ամենակալ ձեռքովդ բանէ՛ խօսելու շարժող գործիքս (լեզուս) ու ձայնի զօրութիւն ազդէ՛ անոր, որպէս զի պատշաճապէս դաստիարակուելով, չյանդգնիմ խօսիլ նախամարդուն (Ադամին) նման ու յոյսէդ լքուիմ. և սրսացողէն (սատանէն) հետապնդուելով անբանութեան չմատնուիմ։ Կենդանութիւն բաշխող Աջդ երկնցնելով նորէն լուսաւորէ՛ մթնցած աչքը հոգւոյս, որպէս զի վիշտային փչելովը չմարի՛ համարձակութեանս.

լապտերը ու գրուանի տակ չստորածածկուի։ Վերցո՛ւր անօրէնութիւններս ո՛վ Տէ՛ր ու ընկղմէ՛ զանոնք խորը ծովուն, որ Քու անհուն մեծութեանդ, փոքր օրինակն է իմ չարութիւններս ընկղմելու համար, ինչպէս կ՚ըսէ Մարգարէն։ Վստահութեան նշան կանգնէ՛ կործանած անձիս, որ յուսահատութեան կոթողը կառուցանելով, ծածուկ գործերուս համար չբողոքէ։

Ո՛վ զօրաւոր և Գթա՛ծ, կեանքի բժշկարանդ (գիրք) բա՛ց, որ կորսնցնողին իմ մէջս ցանած սերմերը կամքիդ մանգաղովը արմատին քովէն խուզելով հնձեմ։ Ո՛վ ամէնուն Աստուածը՝ Պետրոսին նման Քեզ դիմել մտադրելով, աշխարհի ծովուն մեղքի ալիքներուն մէջ ընկղմեցայ. մօտեցի՛ր, ապրեցնող Աջդ օգնութեան հասցուր ինձ որ սայթաքած եմ։ Քանանացի կնոջ ձայնովը, սրտիս խորերէն կը պաղատիմ. Քու բազմազեղ սեղանիդ հացի փշրանքներէն ապրուստի կերակուր մասնաւորէ ինձ, որ սովալլուկ շուն մ՚եմ լակի սպասող, կաղկանձող, ամենաթշուառ վըտանգուած։ Փրկութիւն շնորհէ ինձ՝ որ թէեւ դառնութեան որդի, բայց խորանի նիւթ եմ (հոգւով) Դուն որ փնտռելու և ապրեցնելու եկար զիս կորսուածս։ Որովհետեւ Քուկդ է մեծութիւնը, յաղթութիւնը և զօրութիւնը ու քաջութիւնը, բժշկութիւնը, նորոգութիւնն ու երա

նութիւնը Դուն ես ու Քեզ կը վայելէ փառքն ու երկրպագութիւնը մինչեւ վերջն . Ամէն ։

Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.

Սրտի խորերէն խօսք առ Աստուած .

## ԼԶ. ԽՕՍՔ



ԱՆԴԷՊ Քեզ՝ ունեցած պարտաքերս աւելցնելու համար, արդարեւ գերազանցօրէն աւելցած ու անհաշուելի կերպով շատցած է արգասիքը փրկութեան շնորհներուդ, յանձնառու եղած չարչարանքդ ու անոր հանդէսը։ Ամէնուն հոգիները իր մէջ ամփոփող ու արարածները ստեղծող ափդ մահուան գործիք եղող խաչին վրայ գամեցիր. որ արգիլես Քու կամքիդ հակառակող ձեռնարկութիւններս։ Կեանք տուողիդ երկու ոտքերը պատժարանի փայտին վրայ փակցուցիր, իմ՝ անարգել կերպով դէպ ի արգիլեալ ծառը երթալուս պատճառով, որպէս զի գթածութեամբդ նուաճես զիս որ վայրագութեամբ փախչող թըշուառ մ'եմ։

Բ. Դուն որ թզենիին ծառը անմիջապէս չոր-

ցուցիր, օրհնեալ գագաթիդ կռուփ զարնող ձեռքերուն չորնալ չհրամայեցիր, որպէս զի ինձ նկատմամբ ունեցած ներողամտութեանդ օրինակը կանխաւ ուսուցանես։ Դուն՝ որ Աստուած ես խոստովանուած, և արուսեակը մթացուցիր, զՔեզ ծեծողներու չարութեան դէմ չսպառնացար. որպէս զի մեռած անձս հանգստացնելով բարիք շնորհես։ Դուն՝ որ լուսինը արեան գոյնով ներկեցիր, հայհոյիչներու հնարած չարախօսութիւնը չկարկեցուցիր, որպէս զի անհամարձակ լեզուս՝ քեզ գովելու քաջալերես։ Դուն որ աստղերը դողացուցիր, նախատողներու մոլեգնութիւնը չյանդիմանեցիր, որպէս զի թշուառացած գլուխս գթութեանդ ծնունդովը ուղղես։ Դուն որ կարծր վէմը ճեղքեցիր, իրարմէ զատելով չբաժնեցի՛ր ծնօտի ոսկորները՝ Աստուածը սպաննողներուն՝ երբ մոլորեցուցիչ կը կանչէին Քեզ, որպէս զի բարիքի անընդունակ հոգիս ոչնչութիւն արտադրելէ դադրեցնես ողորմութեամբդ։

Դուն՝ որ օձին որովայնը հողին վրայ սահելու դատապարտեցիր, պահապաններուն սուրերը իրենց փողը չխօթեցիր, որպէս զի տառապած մարմնոյս ոսկորները, գանձարանի մէջ պահուածի նման, կեանքի յարութեանը արժանացընես։ Երկրին անդունդը չսուղեցիր զանոնք՝ — որ կործանած էին արդէն— երբ կը կնքէին փականքները շիրմին

գերեզմանիդ, ուր ողջ էիր, որպէս զի լոյսիդ նըշխարը իմ անձիս տապանակին մէջ հանգչեցնես։ Ծնունդի սերմը չկրճատեցիր անոնց, ու ամէնքը սպառելով բնաջինջ չըրի՛ր, որ երկրաւոր մարմինի մը պէս գողցուած ու կորսուած հռչակեցին զքեզ. որպէս զի փրկուածներուն հաղորդակից ընես զիս անկորուստ և անվնաս կերպով, որ անարժան եմ ընտրուած բարիներուն հետ յիշատակուելու։ Մովաբու հանիրին՝ (Ղովտին կնկան) հին հարուածին նման, քարէ արձանի չփոխեցիր մոլեգնած ուրացողները, — որ զքեզ մատնելու և վատահամբաւելու համար Հօրդ նուէրի յատուկ գանձարանէն երկու անգամ դրամական կաշառ առին —որպէս զի Քու արիւնովդ փրկելով, հաստատուն վէմիդ վրայ կեցնես զիս, որ հաստատ տեղէս խախտած և մահուան իշխանութեան ծախուած եմ։ Կրկին օրհնուա՛ծ, դարձեալ օրհնուա՛ծ ամէն առթիւ միշտ օրհնաբանուած ես մինչև վերջը. ամէն։



Նոյն այն Հոգիէն ողբերգալից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։

Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

---

## ԼԷ. ԽՕՍՔ



Ո՛վ ամենուն Գթացո՛ղ, Բարերա՛ր, Գովուա՛ծ ու ամէն բանի Կարո՛ղ, ինծ բարերարելու համար շնորհած պարգեւներուդ վերը դատակարգուած գումարտակէն թէեւ սակաւաթիւները շարադրելով հոս զետեղեցի, սակայն որքայաղուն են անոնք (Աստուածային պարգեւները) և ինքնակալներէ (սերած) իշխաններ (այսինքն Աստուծմէ բղխած շնորհներ). զօրութեան զաւակներ են ու վեհերէն ծնած, մեծափառ են, լուսով նորոգուած և հրաշալիօրէն պատիւ ստացած։ Անոնք՝ (պարգեւները) յաղթանակաւ վեր բարձրանալով՝ գեղեցիկ պսակներով զարդարուողներուն նման զանազան դրօշներով հռչակուած են, իրենց հետ բերելով օրհնաբանողներու անթիւ պետութիւններ (հրեշտակներ), որոնք բարեհամբոյր, հեզ, երջանիկ և խաղաղասէր են ու նաև Աստուծոյ հարազատներէն, այն (երկնային) նահանգներէն՝ որոնց մասին մաղթեց Մարգարէն ըսելով. «ո՛վ Տէ՛ր արթնցուր Քու զօրքերդ (հրեշտակներդ) ու մեզ ապրեցնելու եկո՛ւր»։ Անոնք՝

(Աստուածային պարգեւները) մեղքերը հալածելու և յուսահատութեան կարկուտը հալեցնելով փախցընելու մասին խիստ զօրաւոր են երկնային զօրքերու գունդին զօրապետէն (հրեշտակապետէն) աւելի, ․որ մաքառելու պաշտօն ունէր գիշերը վարող ու մութը սիրողին (սատանին) դէմ, երբ առաջին անգամ հակառակեցաւ Աստուծոյ բարւոյն։ Ես՝ որ տկար թշնամի և ապերախտ ծառայ մ'եմ, Բարձրեալէն ինձ տեղացած այսքան շնորհներուն ամէնքը պատմելու կարողութիւնը չունիմ․ իսկ եթէ մէկը խօսիլ համարձակի․ շատերէն քիչը միայն պիտի կրնայ ըսել, քան թէ բուն իսկութիւնը անոնց ամէնուն․ այս առթիւ երբ առաջին նիւթը (հող) յիշէ, ուրկէ կազմուեցաւ, (Աստուածային) մեծ զօրութեան հանդէպ, յաղթուելով պիտի սմքի տկար ու նկուն մէկու մը նման։

Բ․ Այլ՝ թէպէտ և այսպէս գրեցի ու դարձեալ նոյնը կը վկայեմ թէ, Ստեղծողիդ կատարելութեան հանդէպ հող եմ խակ ու թերի, և թէ, անարժան եմ բարիքներուդ, սակայն ամէնքը լուսաւորող, աննախանձ, գովուած և բազմաբեղուն Արարչութեանդ զօրութենէն վարուած են սուրբ կարծրութիւնները՝ արտադրութիւնք քու սատանին, որ կ'սպառնայ յուսահատական վհատութեամբ քարի նման խոպանացնել երկու աղբիւրները, զոր Տնկողը՝ բղխելու համար պատրաստեց

իմ՝ զգայական Եդեմիս մէջ. որպէս զի առոգուելով ծաղկի իմ մէջս եղած ու կեանք բուսցնող պարտէզը բարեգործութեան։ Ուրեմն՝ արցունքներս ցամքեցնելով նորահնար խաբեբայութեամբ, սոսկալի խորամանկութեամբ կրկին թող դուրս չհանէ զիս (սատանան) նախկին անմեղ վիճակէն (դրախտէն)։

Իսկ երբ հրաշագործութեամբ բարձրացած՝ կանգնի Աստուած հաշտարար և խաղաղեցնող աստուածներուն (Առաքեալներ, սուրբեր) մէջ, իրեն հետ պիտի բարձրացնէ նաև շնորհաց կառքը, որուն առջև կը ցնդին ամէն մնասակար խարդախութիւններն ու կարճամիտ սրտնեղութիւնները վէմէ պինդ լերան վրայ թափուած քիչ մը ջուրի կամ փշրուած հողի նման։

Գ. Արդ Ցոքայ ըսածին պէս մարդիկները չեն որ կը յանդիմանեն զիս, այլ վերին հրամայողիդ ամէն բան տեսնող աչքը՝ խղճիս մէջ մտնելով կը տագնապեցնէ զայն մեծ երկիւղով։ Կը դողամ սոսկումով ամէն դիպուածականութենէ և կոտրած սրտով կ'ապաւինիմ Քու հաստատ յոյսիդ որ կենդանի է և անեղծ, որպէս զի ողորմութեամբ նայիս ինձ՝ կորսուելու պատիժին դատապարտուածի մը նման և երբ առանց պաշարի, պարապ ձեռքով դէմս ելլեմ երկնաւոր բարերարիդ. Քու անպատմելի փառքիդ երախտիքները ինձ

հետ բերելով յիշեցնեմ Քեզ, որ ոչ զբաղելով կը մոռնաս ու կը քնանաս և ոչ ալ ականթարթի ընդմիջումի մը չափ եղած մեղքի հեծեծանքը կ'անտեսես:

Կ'աղաչեմ Քեզ, խաչիդ լուսովը վերցո՛ւր ինձմէ, խեղդը մեղքիս. տրտունջներու նկատմամբ ունեցած հոգածութեամբդ՝ անմխիթար տխրութիւնս. փուշէ հիւսուած պսակովդ՝ բողբոջը մեղքիս. ծեծի հարուածովը՝ սպառնալիքը մահուանս, ապտակին յիշատակովը՝ ծանր նախատինքս. թուքին թշնամանքովը՝ արհամարհելի աղտեղութիւններս. լեղին ճաշակելովդ՝ դառնութիւնը հոգւոյս: Այս ամէն անբովանդակելի բարութիւնները ահաւասիկ Քուկդ են, ո՛վ միակ Աստուծոյ միածին Որդին, որոնց հանդէպ յիշատակելով իմ չարութիւնս, ամէնէն օրհնուած անունդ կը կանչեմ բարձր ձայնով մտքի պաղատանքով: Նայէ՛ զըղջումի խոստովանութիւններուս որ յաղթուած ամօթապարտ մ'եմ և տո՛ւր ողորմութիւնդ որ յաւիտենական անմահ մահուամբ սատկելու դատապարտուած եմ. որպէս զի մեղքերուս չափուած համեմատութեամբ, աւետարանուի ողորմութիւնդ՝ թէ կրկնապատիկ աճած, աւելցած է ան՝ կրկին, ահաւոր հնչմամբ թող հռչակուի երկինքի մէջ ու երկրի վրայ և Քեզ Հօրդ ու սուրբ Հոգւովդ մինչեւ վերջը փառք թող մատուցուի. ամէն:

Նոյն այն Հոգւոյն ալէբուալից ծաղկանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։

Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

---

## ԼԸ. ԽՕՍՔ



ԱՐԴ ինչպէս երբեմն առաջին գլուխներուն մէջ ուրիշ ընթերցուածով մը գրեցի խաւարային մեղքերուն գլխաւոր ծնունդները, որոնք օրէնքն ու անդամներն են մարմնոյ, և որոնց տիրապետութեան ենթարկուելով մահ ժառանգեցի, նոյնպէս ալ այս ընտրուած խօսքերուս սահմանով պիտի յիշատակեմ Տէր Յիսուսի շնորհիւ հոգին ազատող կեանքի լուսածին օրէնքներու շաւիղին քիչը միայն, անհուն ծովուն անսպառ ջուրէն առնուած կաթիլի մը նման։

Բ. Որովհետև, արդարև (երկնային) կայսերականներէ ոմանք բարձր գահերու վրայ բազմած՝ և շնորհաց թոշակովը առատացած ու հարստացած են. (Քրիստոսի փրկագործութեան շնորհներէ ոմանք ուրիշ շնորհներուն հետ բաղդատուելով խիստ բարձր են.)։

Թագաւորը (երկնաւոր) ու իրեն սիրելիները. արքան (Քրիստոս) ու իրեն պատուաւորները, պատկաւորն ու իր իշխանականները. (սուրբերը),

բարեհաչակուածն ու իր հնչումները․ յաղթողն է իր փողերը․ զօրաւորն է իր պատերազմիկները, գովուածն ու իր փառքերը, փեսան ու իր պարողները․ դշխոյն (Աստուածածին) է իր օրիորդները․ փեսաւէրն (Յովհաննէս Մկրտիչ) է իր պատրաստութիւնները․ ազատութիւնը (հոգիներու) է իր շնորհները․ այցելութիւնն ու իր ձեռքը․ խոստումը ու իր քաւութիւնը․ պահպանութիւնն ու իր աջը, պարգեւն ու իր զարդը․ կեանքի նշանն (խաչ) ու իր ամրութիւնը․ կնիքն (մկրտութիւն) ու իր նկարագիրը․ ամպն ու իր շուքը․ արուեստն ու իր հրաշքը․ հոգին ու իր անեղծութիւնը․ խօսքն ու իր կատարումը․ ուխտադրութիւնն ու իր լրումը․ զօրութիւնն ու իր հրամանները, լուացարարն (աւազան) ու իր սքանչելիքները․ մանանան (հաղորդը) է իր անապականութիւնը․ կենդանի վէմն ու իր առուները․ հրեղէն սիւնն է իր ճառագայթը, որոտումն ու իր ազդումները․ երկնային յոյսն ու իր փրկութիւնը․ օրհնութեան ծառն ու իր պտուղները․ ընձիւղն ու իր բարութիւնները։

Եւ որպէս զի ամէնքը ըսել ուզելով՝ չըլլայ որ — արեգակէն շլացած ակար աչքի նման — ամէնէն ալ զրկուիմ․ շատն ըսելէ ետ կը կենամ որ ակար կարողութեամբս բաւականանալով քիչին հասնիմ։

Գ. Բայց աւա՜ղ. հազար մե՜ղք թշուառացած խեղճ անձիս. որովհետեւ խօսքին կարգը կը հարկադրէ զիս աւետիսի ձայնին ողբի գոյժ խառնել, անոր համար որ անոնց հետ, անոր քովէն կուգայ արդարութիւնն ու կշիռը. վճիռն ու հատուցումները. քննութիւնն ու լոյսը. հրատարակութիւնը (գաղտնի մեղքերու) և լամբարները. մերկութիւնն ու խայտառակութիւնները. յայտնութիւնն ու ամօթը. անբիծն (արդար) ու վարձատրութիւնները և սխալածն (մեղաւոր) ու պատիժները։

Դ. Դարձեալ լաց կը վիճակի ինծ որ կրկնապատիկ թշուառ եմ. որովհետեւ անհնարին բարկութեամբ կուգայ կը հասնի հասկաքաղի ժամանակը տարիքիս. մանգաղը կուգայ զիս հնձելու. դատաւորը՝ զիս առեան կանչելու. զօրաւորը՝ զիս բեմ հրաւիրելու. սպառնացողը՝ զիս կորսնցնելու. բազուկը՝ զիս դատելու. խրատի գաւազանը՝ զիս ծեծելու. սպառազինուածը՝ նախանձախնդրութիւն ցուցնելու և հովիւը՝ ընտրութիւնը կատարելու։ Որովհետեւ ինծ խօսած խօսքդ է որ դատաստանի վերջին օրը պիտի դատէ զիս, դատապարտուած։ Այլ կանխէ՛ ով Բարերարութ. առաջուց քաղցրութիւն շնորհէ ինծ որ չուարած սոսկումներուս պահուն նուազ տառապիմ. ու վերջին տագնապիս առեն ձեռքիդ օրհնութիւ-

նովը այժ ընձեռէ ինձ. Քու առաջին օգնութեամբդ մխիթարէ՛, բժշկէ՛, քաւէ՛ և կենդանացո՛ւր։ Եւ ամէն առթիւ, մինչեւ վերջը փառք թող մատուցուի Քեզ. Ամէն։

Նոյն այն Հաշոցին աղերսալից մաղթանքներուն
ու աղօթական հեծեծանքներուն նո՛ր յառելուածը.
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## ԼԹ. ԽՕՍՔ



Ես որովհետեւ Վնասակարին (սատանայ) թելադրութեամբ առջի (անմեղ) կերպարանքս լքեցի ու ծուլութեամբս վերջնականապէս կորսնցուցի զայն. ուրեմն հիմա՝ ողորմելի հեծեծանքներով, տրտում հոգւով, անաչառ խայտառակութեամբ, հրապարակաւ՝ եկեղեցիներու մէջ, բազմաթիւ ժողովրդեան առջեւ ցոյց տամ իմ հին դէմքս, բարձր ձայնով պատմութիւնը ընեմ անոր. մեծաբարբառ աղաղակելով։

Բ. Եզեկիէլի տեսիլքին տոմարին նման, շնչող գիրք մ'եմ. ներսէն ու դուրսէն ողբերով, վայերով ու հառաչներով լեցուն. քաղաք մ'եմ որ ո՛չ պատուար ունիմ, ո՛չ ալ մահարձան. տուն մ'եմ՝ դռնփակ ամրութիւններէ զրկուած. աղ եմ, տեսքով՝ չէ թէ համեղութեամբ. ջուր մ'եմ աղ-

տաս, ծարաւիներէ չխմուելու տատարիճան անա-խորժ. գետին մ'եմ, հերկուելու անընդունակ. անհման մ'եմ լքուած և ճախճախուտ մը՝ կնիւն-ներով պաշարուած. խոպանացած արտ մ'եմ ուր փուշ ու տատասկ միայն կը բուսնի. կենդանի գետին մ'եմ Աստուծմէ խնամուած, ուր քսու սա-տանին խարկանքները մշակուեցան. պտուղէ զուրկ փայտ մ'եմ իւղ տուող (ձիթենի). կտրուե-լիք ծառ մ'եմ, պարապ տեղը բուսած. երկու անգամ մեռած՝ խծառղ տունկ մ'եմ՝ անյոյս. անլոյս ճրագ մ'եմ բոլորովին մարած։ Արդ՝ այս աւթիւ ողբացողներու նմանողութեամբ շատ ան-գամ կրկնեմ դարձեալ, որ ամօթի դառն պատու-հասը պահուած կը մնայ ինձ՝ հէք թշուառիս, ակռաներու կճրտում ու անվերջ լաց՝ խղճալի աչ-քերուս. հայրական անդառնալի բարկութիւնը՝ կը սպասէ ինձ՝ որ զաւակ եմ դառնութեան և աններողելի ապականութիւնն (հիւծումը) մեղաւոր մարմնոյս։ Նոր յանդիմանութիւն պահուած է ինձ որ չարիքներ գտայ ախտացած հոգիիս։ Ես որ թշուառ գերի մ'եմ, հոգիս աւանդած առենս կը մատնուիմ տարակուսանքի տարտամ տագնապնե-րու որուն կ'ենթարկեն զիս երկնային զօրքերը, ինձ՝ յանցապարտիս նկատմամբ որոմներու խուր-ձերը վկայութեան բերելով և ահարկու ձայնով զգացնելով թէ, բժշկութիւն չկայ ինձ՝ որ լքուած եմ։

Գ. Ահա արդարեւ քնարահար պոռնիկին կատակերգութեան երգերը, արուեստով վեր վար պատուաքելով նուագուած, կոծուած և լաւ հնչեցուած խղճալի ու սիրտ ծակող ողբեր, ինչպէս կ'ըսէ Եսայի Տիւրոսի պատգամին առակաւոր խօսքերուն մէջ։ Որովհետեւ՝ եթէ անիկայ ապագայի փոքր անցքերու դիպուածը մօտ ցուցնելով այլ և այլ դիմակներով ու լալկաններու պարին համեմատ կերպ կերպ ողբերով կը բողոքէր, ինձ համար՝ ուրեմն ո՛րչափ և ինչպիսի վհատեցուցիչ ձայներով պէտք է մռնչեմ, որ տիրոջը անվրէպ գալստեանը սպասելով մնացի անպատրաստ ու անընդունելի։ Արդ՝ եթէ դատաստանի ահաւորութիւնը կրկնեմ, լաց պիտի չտացնեմ ինձ համար, իսկ եթէ անոր ապացոյցը իսկութեամբ ցուցնեմ, վախս կը սաստկանայ. իսկ եթէ կերպարանքներուն տեսարանը գրեմ, դատապարտութիւնս կ'աւելնայ որ կանուխէն նշմարելով զանոնք, գոնէ վերջին պահուն ալ չապաշխարեցի։ Այլ խնայէ ինձ ո՛վ Գթա՛ծ. Մարդասէր, Զօրաւոր. Բարերար.՜ամէն բան պարգեւող Քրիստոս Թագաւոր որ օրհնուած ես մինչեւ վերջը. Ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն ու աղօթական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։

Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## Խ. ԽՕՍՔ



՛Վ ամէնքը ստեղծող Բարերար և Ամենակալ Աստուած. հառաչանքներուս վշտահար ձայնը լսէ՛. ու կարող զօրութեամբդ պարտքերէ ազատելով փրկէ՛ ապագայ տագնապի երկիւղէն, որովհետեւ ամէն բանի կարող ես և խելքէ վեր իմաստութեամբ ու անչափելի մեծութեամբ՝ ամէն հնարքներու կը յաղթես։

Բ. Մտքիս ուշադրութեամբը հեռուէն տեսնելով ապագայ դատաստանին ահաւորափայլ հանդէսը, հիմակուընէ իսկ ինքնաբերաբար կը կանխեմ նշմարել որ, լուսոյ օր մը պիտի ըլլայ այն, յուսացող արդարներուն՝ իսկ մութ օր մը պատուհասի՝ ինձ պատժապարտ մեղաւորիս համար, որուն՝ այս արարածներէն և ոչ մին կրնայ փախուստի պատսպարան ըլլալ. ո՛չ խոր անդունդները. ո՛չ անյատակ վիհերը. ո՛չ բարձր լեռները. ո՛չ քարանձաւները. ո՛չ կարծր արձանները. ո՛չ ներս քաշուած ծերպերու ծակերը. ո՛չ փոսերու ճեղքերը. ո՛չ հեղեղներու անցքերը. ո՛չ բուիղ-

ներու խորշերը․ ո՛չ տուներու ամբարանոցները․ ո՛չ ծածուկ սենեակները․ ո՛չ հովիւներու ծոցերը․ ո՛չ ապառաժներու խոռոչները, ո՛չ իրարու վրայ բարձրացած բլուրները․ ո՛չ վերացած փոշիները․ ո՛չ ծովերու անհունութիւնը․ ո՛չ հոսանքներու յորձանքը․ ո՛չ հեռաւոր եզրերը․ ո՛չ ողբի ձայները․ ո՛չ արցունքի հեղեղները․ ո՛չ մատուռներու տատանումները․ ո՛չ ձեռքերու բարձրացումը․ ո՛չ ալ շրթունքներու պաղատանքը։

Գ․ Դուն ես ո՛վ Տէր Քրիստոս՝ որ այս աստիճան սաստիկ ու անազատելի կացութենէ՝ փրկութեան և անդորրութեան հնարք, դիւրութիւն և դադար կը շնորհես խիստ մեղանչած հոգիիս։ Դուն որ ամէնուն նկատմամբ միակ անուշութիւն ցուցընողն ես, նայէ՛ զիս շրջապատող վտանգներուն որոնցմէ կարելի չէ փրկուիլ․ կեանքի զէնք եղող խաչիդ յաղթական սուրովը կտրէ՛ ցանցերը ծուղակներու որ ամէն կողմէ կը պաշարեն մեռցնելու համար զիս՝ որ գերի եմ (հոգւով) և խաղաղ ճամբուն վրայ հանէ՛ սայթաքած ոտքերս որ ծուռ ճամբէ կը քալեմ։ Բժշկէ՛ ջերմի հրատապ տոչորումը այրած սրտիս․ մերժէ՛ դիւային նենգութեան շշուկները ինձ նկատմամբ, որ պարտական եմ Քեզ․ հալածէ՛ յուսահատ նեղութիւնը մթնցած հոգւոյս, որ չարին հետ կը կենակցիմ․ ցրուէ՛ թանձրացած ծուխը որ պատկերն է իմ վրայ

բռնացած մեղքերուն. կորսնցո՛ւր զզուելի թխագոյն երեւոյթը որ կ'ապացուցանէ թէ, խիստ ապականած եմ։ Հոգիիս մէջ նորոգէ՛ հզօր անուանդ մեծ փառքին պաշտուած լուսեղէն պատկերը. շնորհիդ փայլը զօրացո՛ւր դէմքիս գեղեցկութեան վրայ. Նաեւ յարմար պատրաստութիւնով կանգնեցո՛ւր զայն (շնորհդ) հողեղէն մտքիս տեսութեան կերպին վրայ որ նմանութեամբ Քեզ կը յիշեցնէ, երբ շնորհդ մեղքի մռայլները զատէ անոր մէջէն. մաքրէ՛ ու Աստուածային անեղծ երկնաւոր լոյսովդ ծածկէ զայն երեք օրինակով։ Որովհետեւ Դուն միայն օրհնուած ես Հօր հետ եւ Սուրբ Հոգիիդ հետ մինչեւ ետքը գովուած. Ամէն։

Նոյն այն Հոկողէն աղերսալից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## ԽԱ. ԽՕՍՔ



Ո՛վ ամէն առթիւ օրհնուած կենդանի Աստուծոյ որդի՛ն, ահաւոր Հօրդ անքննելի ծնո՛ւնդը, Քեզ համար չկայ բան մը որ անհնար ըլլայ։ Երբ ողորմութեանդ փառքին անստուեր նշոյլը ծագի, մեղքերը կը հալին. դեւերը կը հալածին.

յանցաքները կը ջնջուին. կապանքները կը խզուին. (մեղքի) շղթաները կը խորտակուին. մեռելները կը կենդանանան. հարուածները կը բժշկուին. վերքերը կ'ողջանան. տկարութիւնները կը վերնան. տխրութիւնները տեղի կուտան. հեծութիւնները կը պակսին. խաւարը կը փախչի. մշուշը կը բացուի. մառախուղը կը ցնդի, մթնշաղը կը փարատի. աղջամուղջը կը հատնի. մութը կը վերնայ. գիշերը կ'անհետանայ. սրտադողը կը դադրի. չարիքները կ'ոչնչանան. յուսահատութիւնները կը հալածին. և. Քու ամէն բանի կարող ձեռքդ կը թագաւորէ ո՛վ Ամէնուն քաւութիւն շնորհո՛ղ։

Բ. Դուն՝ որ չէ թէ մարդոց հոգին կորսնցնելու, այլ ապրեցնելու համար եկար։ Քու առատ ողորմութեամբդ ների՛ իմ անթիւ չարիքներս. որովհետև մինակ Դուն ես որ երկնայիններու հասողութենէն վեր ես ու երկրայիններէ չես քննուիր. Դուն ես որ ստեղծուածներէ առաջ և մինչև աշխարհի վերջը գոյութիւն ունիս յաւէտ. ամէնուն սկիզբն ես ու ամէն բանի մէջ. ամէն կատարելութիւնով բարձրերէն օրհնուած ես և Քեզ Հօր ու Սուրբ Հոգիին հետ մինչև վերջը փառք թող մատուցուի. Ամէն։



*Նոյն այն Հոգւոյն ողբերգակից մաղթանքներուն*
*ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.*
*Սրտի խորերէն խօսք առ Աստուած.*

## ԽԲ. ԽՕՍՔ

Ո՛վ գթած Տէ՛ր, փրկութեան և ողորմութեան, քաւութեան և նորոգութեան. բժշկութեան և առողջութեան. լուսաւորութեան և կենդանութեան, յարութեան և անմահութեան Աստուածը. յիշէ՛ զիս երբ գաս Քու ահաւոր, զօրաւոր, բարերար, ամէնքն ստեղծող, կենդանի, գովուած ու ամենակատարեալ արքայութեամբդ որ ընդհանուր մարդկութեան հառաչանքներուն ունկնդրելու յօժար ես։ Կը պաղատի՛մ Քեզ խաչակից եղողին (աւազակ) հետ, որ Քեզի համար ո՛չ բանտուեցաւ, ո՛չ կապուեցաւ, ո՛չ կախուեցաւ, ո՛չ գամուեցաւ, ո՛չ Մեծիդ անուամբը կռուփ կերաւ, ո՛չ անարգուեցաւ, ո՛չ ակուեցաւ և ո՛չ արհամարհուեցաւ, ո՛չ խորտակուեցաւ և ո՛չ ալ մեռաւ. և սակայն ուխտի երդումին իրաւունքովը (հաւատք) արժանի դասուեցաւ արդարներու արքայութեան որ փափաքելի մասն է լոյսին։ Այսպէս փառաւորելով աւազակը, հաստատեցիր թէ տուած բարիքներդ անփոփոխելի են, որով փրկուելու յոյս տուիր ինծի որ լքուած եմ յաւէտ։

Բ. Ո՛վ Օրհնուած. Օրհնուած և կրկի՛ն Օրհ-

նուած, զիս ալ նոյն հաւատքով ընդունելով՝ կործանումէ կանգնէ՛, ո՛վ Բարերար. հիւանդութեան ախտերս բժշկէ՛, ո՛վ Ողորմած. մահուան եզերքներէն դէպի կեանքը դարձո՛ւր զիս ո՛վ Կենդանութիւն. ես ալ Քուկդ եմ. ապրեցո՛ւր անոր (աւազակին) հետ, ո՛վ Ապաւինութիւն. ես որ մեռած եմ մարմնով. կենդանական շունչ ընծայէ՛ ինձ, ո՛վ Յարութի՛ւն, Կեա՛նք, Անմահութի՛ւն որ անպակաս Բարիք ես, անսպառ Շնորհ, անփոփոխ Ներող, ամէն բանի կարող Աջ, ամենուն իշխող Ձեռք և ամենուն մօտեցող Մատ։ Կամք ըրէ՛ Տէ՛ր ու փրկուիմ. գթութեանդ ակնարկ մը միայն ուղղէ ու արդարանամ. լոկ խօսքով ըսէ ու շուտով անարատ ըլլամ. չարիքներուս թիւը մոռցի՛ր և անմիջապէս համարձակիմ. առատաձեռնէ՛ ու իսկոյն Քեզմով պատուաստուիմ, որ մինչև վերջը ամէնէն փառաւորուած ես. ամէն։



Նոյն այն Հոգիէն աղերսալից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։

Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

---

### ԽԳ. ԽՕՍՔ

Ո՛վ զօրաւոր, երկնաւոր թագաւոր Տէ՛ր, Յիսուս Քրիստոս. Աստուածը ամէնուն՝ աչքով տեսնուածներուն ու մտքով իմացուածներուն, բժշկական արուեստին կատարեալ հմտութեամբդ՝ պատճառ ես անախտ կեանքի. Մարգարէին խոստացուածին համեմատ, խօսած պահուս իմ մէջս եղի՛ր Դուն. որ Քեզի հետ միանալու այս խօսքին բարեզարդ դաշինքովը լուսաւորուելով, կրկին ողջնամ հոգւով ու մարմնով կատարելապէս կարող և անպարտելի։

Բ. Հոգեկան վէրքերու պատատ պատրաստելու համար կարօտ չես ո՛չ ապեղանիներու, ո՛չ ժամանակի, ո՛չ միջնորդի, ո՛չ օրերու երկարաձգութեան, ո՛չ փոփոխութիւններ մտցնելու, ո՛չ կտրելու, ո՛չ խարելու, ո՛չ ալ անդամահատութիւն ընելու մարդկային դեղատուութեան համեմատ, ուր միշտ վրիպանքը սխալն ու տարակոյսն է որ կ'երեւի։ Այլ Քեզ համար՝ որ հոգիներն ու մարմինները ստեղծող ես, ամէն բան լուսաւոր է. ամէն բան առջեւդ է. ամէն բան գրուած է. ամէն բան դիւրին է, ամէնքը հնարաւոր է. մտա-

ծումը՝ գործադրուած է. խոստումը՝ իրագործուած է. կամքը՝ կատարուած է, Քու կտակդ Աւետարան է. Քու վճիռդ (հոգւոյ) ազատութիւն է. Քու գիրքդ շնորհ է։ Ո՛չ օրէնքով սահմանափակուած ես. ո՛չ կանոնով կաշկանդուած. ո՛չ նուաղութեամբ արգիլուած ես. ո՛չ հնազանդութեամբ խոնարհած. ո՛չ պզտիկութեամբ ամփոփուած ես. ո՛չ ալ սահմանով չափուած. ո՛չ բարկութեամբ կը վրիպիս, ո՛չ ցասումով կ՚այլայլիս. խստութեամբ չես սխալիր. խռովելով չես բորբոքիր և տգէտ չես որ տարակուսիս։ Ո՛չ ողորմելէ կը դադրիս. ո՛չ բարձրութենէ կը խոնարհիս. ո՛չ այցելութիւնդ կը լքանես. ո՛չ կը տկարանաս փրկագործութեանդ մէջ։ Ամէնուն սկիզբն ու վախճանը Դուն ես և ամէն բան Քեզմէ է. և Քեզ փառք ու երկրպագութիւն թող ընծայուի մինչեւ վերջ» ամէն։



Նոյն այն Հոգւոյն ողբերգալից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։

Սրտի խորերէն խօսք առ Աստուած

## ԽԳ, ԽՕՍՔ

Ո՛վ անսահմանելի Աստուած, Աստուծոյ հարազատ և անթարգմանելի ծնո՛ւնդը. բոլոր արարածներն ստեղծո՛ղ Քրիստո՛ս Թագաւոր. խաւարի մէջ լո՛յսը՝ մթնցած սրտերուն. մեզի հետ (մարդ) եղար կատարեալ և Քեզ Ղրկողին հե՛տ (Աստուած) ես իսկութեամբ. որ մերինովը հրաշալի կերպով ճանչցուցիր՝ Քուկինդ։ Քու անճառելի, օրհնուած Հայրդ երկնաւոր, Որուն փառակից ես Դուն իբրեւ Արարիչ. և Որ վերէն ղրկեց զՔեզ, այնչափ հոգ տարաւ ինծի նման տարագրուած գերիի մը փրկութեան որ՝ մինչեւ իսկ մարդոց ձեռք մատնեց զքեզ։ Իսկ Դուն՝ կարող ըլլալով անվիշտ աւարտել փրկագործութեան խորհուրդը, կատարեալ մարդկութեամբ և անթերի Աստուածութեամբ հաճեցար ճաշակել բաժակը մահուան՝ իմ տեղս, որ դատապարտուած մ՚եմ։ Եւ կենսատու սուրբ Հոգին ինչպէս Քեզ՝ նոյնպէս ալ իսկակից է Քու Հօրդ. և էութեամբ համապատիւ զՔեզ ծնողին և Քեզ՝ որ Անկէ ծնար։ Երեք անբաժանելի դէմքերէ՝ միակ Երրորդութիւնը կատարեալ, որ ոչ սկիզբ ունի ո՛չ ժամանակ. ամէնուն Բարերարը, ընդհանուրին Կեանք

չնորհողը, բոլորին Խաղաղութիւն պարգեւողը․ արարածներու ստեղծողը․ ամէնքը Ցօրինողը որ անքակտելի կերպով և մէկ բնութեամբ փառաւորուած է։

Բ․ Աստուածային էութենէ Մէկը, երկնաւոր, զօրաւոր, գթած, հայրը ինձ մահապարտիս յանցանքներուն համար Իր անքննելի ծոցին միակ Ծնունդը՝ զՔե՛զ մատոյց․ չխնայեց Քեզ՝ Իր համապատիւ ու սիրելի Որդիին, այլ՝ Զարքարիայի մարգարէութեանը համեմատ, կամաւ Նուիրեց չարչարողներու զէնքովը մեռնելու․ որովհետեւ սուրին հովիւին վրայ արթննալը, նոյն իսկ հովուապետին զարնուիլը, ոչխարներու հօտին ցրուիլը, ինչպէս նաև նուրբ օրինակը առաջին գիրքը գրողին (Մովսէսի որ երբ թեւերը տարածէր՝ Իսրայելացիք կը յաղթէին) խորանին ուխտադրութիւնը, զոհի արեան նուիրումը և Աբրահամու պատարագին խորհրդաւոր առակը, առաջուց կը նկարագրէր թշուառիս փրկուիլը Քու կամքովդ որ Ապրեցնող ես։ Ուրեմն ինչո՞ւ կը տրամիս, ո՛վ անձս որ կործանած ես, չէ՛ թէ աստուածային հարուածներէ՝ այլ Քու ինքնաբերաբար հակամիտելէդ դէպ ի չարն․ կամ ինչո՞ւ սատանայական յուսահատութիւններով միտքս պղտորելով կը խռովես զիս․ Աստուծոյ յուսա՛․ Անոր խոստովանէ՛ և Անիկայ կը հոգայ քեզ համար, ինչպէս կ՚ըսեն Դաւիթի

Սաղմոսն և ուրիշ մարգարէներու՝ կեանքը խրախուսող խօսքերը։

Գ. Իսկ Ստեղծողին խնամարկելու եղանակը հրեշտակներու և մարդոց մտքի սահմանէն վեր է. և եթէ տասը հազար անգամ կրկնուի՝ չի չափուիր. որովհետև Անբովադակելիին բարերարելն ալ անճառելի է։ Որովհետև Մէկը (Հայր) Որ օրհնուած է. օրհնաբանուած Մէկը (Որդին) զրկեց Երրորդական համագոյութենէն. իսկ Ան մեռաւ, զինքը Ղրկողին կամքը հաճեցնելու համար և Միւս ահաւորը (Հոգին՝) երկուքին հաւանութեանը համար մեծաջան բաղձանքով կը մաղթէ։ Իսկ մեզ նկատմամբ միևնոյն բարիքը գործելու մասին, համաբարոյ երրորդութեան միակամութիւնը կը բացատրուի օրինակովը կենդանիին որ առանց հոգիի՝ զօրութիւն չունի, ինչպէս նաև բանականը՝ առանց խօսքի, փառքը՝ առանց պայծառութեան և բանի մը գոյութիւնը՝ առանց տեսնուելու։

Ապրեցնելու համար փութկո՛տ, ողորմելու մասին արթո՛ւն, ձեռք բռնելու պատրա՛ստ. փրկելու կա՛ղմ, տառապաձեռնելու մասին յո՛րդ. յաճախ տալու պարագային զեղուն. անբաւութեամբ լեցո՛ւն. փարթամութեամբը անպակաս. երկայնմտութեամբը ճոխ ու բարձրութեամբը անհասանելի է երեք անձանց կատարեալ և միակ Երրորդութիւնը որ օրհնուած է յաւէտ. Ամէն։

Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն ու ողբական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։

Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## ԽԵ. ԽՕՍՔ



ԱՐԴ՝ ո՛վ կործանած ա՛նձս, բարիքի յոյսը անկէ՝ սրտիդ մէջ և երիկամունքիդ երկու մասերը՝ կրկնապըղտոր խորհուրդներուդ ցանկութեան գործարանը՝ հաւատքի գօտիով ամրացնելով, բարերար Աստուծոյ առջև խոստովանէ՛։ Մտքէդ անցածները՝ գործածի պէս. խորհածներդ՝ լրացուցածի պէս, չտեսնուածները՝ յայտնուածի պէս, սրտիդ գաղտնիքները՝ ձայնով խօսուածի պէս, ակնարկներդ՝ արդիւնաւորուած մեղքի պէս, շրթունքներով խօսածդ՝ գործադրուած չարիքի պէս. ոտքիդ հետքերը՝ Աստուծոյ պատուէրներուն հակառակ քայլի պէս, բարկութեամբ ձեռք վերցնելդ՝ գործուած արիւնեղութեան պէս, ամէնուն վրայ ծիծաղիլը՝ Աստուծոյ շնորհը կամաւ լքանելու պէս, իրաւացի կամ անիրաւ երդումները՝ իբր գործակցութիւն խաբողին։ Ամբարտաւանութիւնը խոստովանէ՛ իբր հին կործանիչը նախաստեղծին բարձրութեան. արանեղութիւնը՝ իբր թերահաւատութիւն. մեղկութիւնը՝ իբր պարապութիւնը ուժեղ զօրաւո-

րին. կեանքի դառնութեան դէմ ; յայտնուած արտասուքները՝ իբր ուրախութիւն Տիրոջ մատուցուած ուխտին. անհնազանդութիւնը՝ իբր մէկ թոռը անգթութեան. ամբարտաւանութիւնը՝ — դուն բան մը չարժելով հանդերձ — իբր մեծերու դէմ գոռոզութիւն. հպարտութիւնը՝ իբր հլու ընտանութիւն չարիքը հնարողին (սատանայ)։ Ակամայ գործուած մեղքերը խոստովանէ՝ կամքով գործուածներուն հետ. բռնի գործուածները՝ հաճութեամբ եղածներուն հետ. սայթաքանները՝ բնականներուն հետ. անօրէնութիւնները՝ խոստովանէ՝ իբր անաստուածութիւն. պղտիկները՝ խոստովանէ՝ սաստկագոյններուն և քիչերը՝ շատերուն հետ։ Իմ չպատմածներս խոստովանէ իբր Դիտողին պատմուած. Վնասակար չսեպուածները՝ իբր Տեսնողին կողմէ մագնիսէ կարծր քարի վրայ արձանագրուած. մտքովս խիստ թեթեւ սեպուածները իբր ստուար ու ծանր բեռներ. ծածկուած մեղքերուս անորոշ քանակութիւնը՝ իբր ճիշդ չափը պահանջուած սակին — չորս դրամ ծանրութեամբ ստերէն — որ կէս ձուկի ձագին բերնէն գտնուեցաւ (Մատ. ժէ. 26). անդունդներու խորը գործուածները՝ իբր չուառով Աստուծոյ ականջը հասածներ։ Ատոնք դիզէ՝, կուտակէ՝, կրկնակ յանձնառութեամբ դարձեալ պատմէ՝ հոն մեծ ողբուկոծով՝ չգործածներդ իբր գործած. պարտութիւնդ

խոստովանէ՛, ո՛վ վտարուած անձս, որպէս զի փոխ Տուողէն ստանաս մեղքերուդ թողութեան շնորհը, նման մեղաւորին (պոռնիկը) զոր Տէրը արդարացուց և հրաշափառ. կերպով հռչակեց ամէն տեսակ ներբողներով կրկնելով անոր զղջումին զովեստը, փոխանակ մեղքերը պարսաւելու։

Բ. Ո՛վ մեղապարտ և յանդիմանուած անձս, խիստ խթող խօսքերով շատ բամբասանքներ ու աղտոտ ցեխեր դիզէ՛, բարդէ՛ քեզ համար։ Զարութիւնը, անօրէնութիւնը, սխալականութիւնը, (հոգեւոր) պատերազմի դաշտէն փախչիլը, զրպարտութիւնը, մոլեգնութիւնը, ամբարշտութիւնը, ապշութիւնը, թմրութիւնը, արթնութեան ժամանակի քունը, քալած տեղը մրափելը, օտարոտի մտածումը, պարապ խօսքը, աղտոտ գործերէ հաճոյք զգալը և անոնց մէջ դեգերիլը, Աստուծոյ ատելի եղածներուն փափաքիլը, անպատկառութիւնը, անհնազանդութիւնը, կոպտութիւնը, թերութիւնը, ծուռութիւնը, թուլութիւնը, ժլատութիւնը, սանձարձակ շռայլութիւնը։ Ծիծաղները, ձիու վրնջիւնները, (ցանկական ցոյցերը), կատակերգականները (ծաղրածութիւնները), գայթակղականները (պատմութիւններն ու ընթացքները), խաբեբայականները, անտեղի քաջութիւնները, անյարմար կռիւները, օրէնքէ դուրս արիութիւնները, հոգիին խեղդումները, տարակոյսներն ու

երկչոտութիւնները (բարիք գործելու մասին), անթիւ ճիւղերը պարապ մտածումներու, անպատկառ խառնակեացութիւնները, գժտութիւնները, երես ծռելները, անիրաւ ատելութիւնները, դիւրաւ գրգռուած մարմաջները, փոքրները հաշուի չառնելները, խոստումի դրժումները, ուխտերու մոռացումները, նմաններէն տարբերիլը, կեղծիքները քօղարկելը, փառամոլութեան բուռն տենչը, մեծ երեւնալու յաւակնոտութիւնը, չարութիւնը, ինքնասիրութիւնը, (հանդէսներու) նախագահելու տենչը, չարիքներու փոխարէնը հատուցանելը, չարիք ընողներու նկատմամբ գէշ խօսիլը, պարապ բաներու հետապնդելը, քսու սատանին խորամանկութեան հետեւիլը։

Անօգուտ շատախօսութիւնները. սատակումի փոխարէն կեանքը ծախելը. աւանդը կորսնցնելը. հայրենի գոյքերը ծախսելը. երինջներու լուծի փոկին կապուած չուանները ամուր բռնելը՝ (Եսայի Ե. 18). անօրէնութիւնները. միշտ տիղմերու մէջ թաթխուելով բնակիլը. լաւ գործերը լքանելը. ինկածները ոտքի տակ առնելը. դարձի գալէ ետք կրկին դաժան մեղքերու վերադառնալը։ Նորանոր (յոռի) մտածումները. օտարոտի խորհուրդները. (բարի ըլլալու) անհաստատ կամքը. հագագին հառաչները. (մեղքի) շունչին կենդանութիւնը. օրէնքի սահմանէն դուրս չար կամ-

քին բացարձակ տիրապետութիւնը՝ զոր կարելի չէ գրի առնել, պատմել, ճառել և երբեք բերելով ներկայացնել։

Գ. Ուրեմն ինչպէս պիտի բժշկուիս, ո՛վ խըղճալի անձ որ այսքան տէգերէ խոցոտուած, երեսի վրայ ձգուած, տարագրուած, չողջնալիք մարդ մ'ես, ինչպէս կ'ըսէ Մարգարէն. որովհետեւ վերը գրուածներէն մէկն իսկ բաւական է սատկեցնելու, ո՞ւր մնաց՝ զիս շրջապատող այսչափ դժնդակ դահիճներուն ու սպաննողներուն խումբերը (մեղքերը)։ Այս նմանագրութիւնով չի կշռուիր սակայն օրինակը մեղքերուս. այլ ինչպէս որ խայթող անթիւ կայտառ կարիճներ իրենց տուններուն վարի մասին մէջ մահաբեր թոյն ունին, զոր մաշկեղէն ամանի մէջ դնելով կը շրջափակեն որպէս զի չթափի. այսպէս թէեւ բարի կ'երեւան արտաքին երեւոյթով, սակայն իրենց ներսը մթերած են չարիքը, կորուստի պատճառը և կսկիծի կոյտը, ու սատկեցնելու գործիքներ են և մահուան մշակներ։ Արդ ո՛վ կրկնապէս սատկելու արժանի պատժապարտ անձ, ատոնք են քու ամբարած անօրէնութեանդ տաժանելի և դժուարով ստացուած թոշակները, զոր թշնամին սերմանեց աշխարհի ագարակին ցորենին վրայ ու դուն կամաւ ընդունեցիր քու մէջդ. ո՛վ աղտոտ, ամբարիշտ ծոյլ և ամէնուն ատելի մա՛րդ, որ մեղքի ախորժով

կը սիրեն անառակութեան ամէն տեսակովը յղփա-
ցածները, որոնց թիւը կը ցուցնէ առաքեալը յան-
դիմանական սարսափելի բառերով. ասկէ սկսեալ
մինչեւ վերջը այն պարբերութեան, ուր կ'ըսէ թէ,
անոնք Աստուծոյ իրաւունքը ոտնակոխ ըրած են
և անոնք որ այսպիսի ոճիր կը գործեն և կամ
կամակից են գործողներու, արժանի են մահուան։
Արդ ես ինձմէ, ինքնաբերաբար արժանի սեպեցի
զիս կրկնապատիկ հատուցումի. սատակումով
կորսուելու և մահուան դատապարտուելու. այլ
ողորմութեամբ խնայէ՛ ինծ ով բարեգո՛ւթ. կեն-
դանի՛. զօրաւո՛ր. կամք կատարո՛ղ. կարո՛ղ.
հնարագիւտ. յաւէտ օրհնուած. ամէն։

Նոյն այն Հոգւոյն ողերգալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## ԽԶ. ԽՕՍՔ

Արդ՝ ծանր պատիժներու արժանի, միշտ
դժնդակ, վայրենաբարոյ սխալական մ'եմ յաւէտ
որ ինքնաբերաբար մահուան կը մղեմ անձս. Նա-
խատելի վարձկանութեամբ՝ զզուելի երամակը
կ'արածեմ վայրի արօտական խողերու (գարշելի
մեղքերու)։

Երգ Երգոցի ինծ նկատմամբ ըսած առակին

համեմատ, հովիւներու վրանին չուրջ վայրի ուլեր (մեղքեր) խնամող հովիւ մ'եմ, որ ո՛չ իսկ զիս ճանչնալ գիտցայ թէ, որո՞ւ համար, որո՞ւ պատկերին վրայ և ինչո՞ւ ստեղծուեցայ։

Բ. Դուն որ զքեզ կանգո՛ւն կրող անբաժան խորհրդականներովդ — երկու ոտքերովդ — հրեշտակի ձեւով ստեղծուեցար, որպէս զի երբ դէպ ի վեր տանող կրկնակ բազուկներդ բարձրացնես թեւերուդ թռիչովը հայրենական աշխարհը (երկինք) նայիս, ինչո՛ւ դուն քեզմէ գետին ծռեցար ու այս աշխարհի իրերուն վրայ միայն խորհելով անապատի վայրի ցիռերուն կարգը դասուեցար։ Բոլորակ գլուխդ բազմաստեղնեան ճրագի նման հաստատուեցաւ մարմնոյդ աշտանակին վրայ, որ սով օրինակին յարմարութենէն չհեռանալով, զԱստուած տեսնես ու մնացածներն ալ իմաստասիրես։

Բանականութեան յարգանքով կրկնապատիկ ճոխացար, որ քեզ շնորհուած բարեմասնութեան յաղթանակը համարձակ լեզուով խօսիս։ Ձեռքերդ, յարմար ոստերով՝ մատներու շառաւիղներով ստեղծուեցան արհեստական գործեր շինելու համար, այսպէս՝ Աստուծոյ առատաբաշխ ձեռքին կցորդ ու ցեղակից սեպուելով, Աստուած (յօրինող, ստեղծող) կոչուեցար։ Երեք հարիւր վաթսուն յօդերով կազմուեցար, որոնց հետ աւելցաւ նաեւ

վրայ, յարմար թիւը հինգ զգայարանքներու զգայուն մասին (գումար 365). որպէս զի մտքիդ տեսողութեանը անծանօթ չմնան մարմնոյդ արտաքին կազմութեան նիւթական մասերը, որոնցմէ ոմանք ստուարաթիւ են ու զօրաւոր և ոմանք փոքր ու պիտանի. անոնց կէսը կարծր է ու ազդող, կան ալ որ գողար են ու պատուական և դարձեալ կարեւոր ու պատկառելի։ Իսկ ասոնց թարգմանութիւնը անջնջելի արձանի նման քու վրադ նկարուած է ո՛վ ողորմելի անձս. որպէս զի, ինչպէս որ սահմանուած կանոնի մը համեմատ ժամանակին ամէնէն փոքրիկ մասն ու օրերու անընդհատ յաջորդութիւնը մինչեւ տարեգլուխ, անխափան և անփոփոխ կը պահուի, ասոնք ալ (մարմնոյ 365 մասերը) անանկ պահուին, անմեղ ու անվթար։

Գ. Դարձեալ ուրիշ հոգեւոր օրինակ մը — որ սիրոյ կապը մէկ եկեղեցիի վրայ կ'ամրապնդէ — քեզ կը յիշեցնէ՛. այսինքն մինչեւ որ ամէնքը չմասնակցին և մեծերը պզտիկներուն հետ լըծուելով չկապակցին, մնացուած է անարատութիւնը Քրիստոսի անուամբ ժողովուածներու եկեղեցիին. ինչպէս որ մարմնի վրայ պատուաստուած անդամներու ամէնէն անարգին իսկ մէկը երբ կարուի, կամ նուազի, կրճատուած է կազմութեան վայելչութիւնը զգայական սենեակին՝ մարմնոյդ, և

պատկերին բնականութիւնը յեղաշրջուած է անարգ փոփոխութեամբ։ Արդ՝ այսպէսով և թէ ասոնց նման շատ մը անզուգական հրաշքներով առեղծուած, պատկերն եւ Աստուծոյ ո՛վ յաւէտ յանդիմանուած գերի՛ հոգիս. և թէպէտ պատուէրին դէմ մեղանչելով առաջին նմանութենէն մերկացուեցար կեանքի դրախտին մէջ, այլ Աւազանին լուսազարդ շնորհքովը Հոգիին փչումը ընդունելով, դարձեալ նմանութիւնն եւ կերպարանին (Աստուծոյ)։ Արդ՝ ինչո՞ւ երկնաւոր փառքերը կորանցուցիր, նախաստեղծին (Ադամին) նման, որ Ադենական պարտէզին մէջ վայելած երբեմնի երկրաւոր վիճակէն զրկուեցաւ. ինչո՞ւ դու քեզմէ փակեցիր երկինքը ու վերելքի դուռը կղպեցիր. ինչո՞ւ մաքուր. Ջուրին հետ տաժանելի արցունքներուդ ցաւերը խառնեցիր. ինչո՞ւ վերարկուին լուացուած կերպասը գարշելի գործերով աղտոտեցիր. ինչո՞ւ մեղքի հագուստին մէկդի նետուած պատմուճանը անառակութեան վարքով վրադ առիր. ինչո՞ւ տանող ոտքերուդ սրբութիւնը ժանտ ճամբաներով աղտոտեցիր. ինչո՞ւ իրաւադատին (Աստուծոյ) առջեւ կրկնեցիր, ուխտազանցութիւնը հին պատուիրանին։ Ինչո՞ւ մերժուեցար շնորհաց պատուղէն, ինչպէս Ադամ՝ կեանքի ծառէն. ինչո՞ւ դու քեզմէ կամաւ խարդախեցիր տեւականութիւնը անստուեր յոյսին,

ինչո՞ւ անխոստովանելի ամօթներով ծածկուեցար. ինչո՞ւ քու իսկ անձիդ դէմ զինուեցար ո՛վ խելագարութեան ընդունարան. ինչո՞ւ վստահելի արահետէն շեղելով մահուան ծուղակէն որսացուեցար. ինչո՞ւ պատրանքի կարթովը բռնուեցար, դուն որ հաղորդ ես կենաց տուողին մարմնոյն։ Այլ կրկին Անոր յուսալով, աղաչէ՛ Անոր որ ապաւէն է և լոյս, քաւող, նորոգող, փրկող, ապրեցնող և կեանք տուող. ողորմած, խնամող, մարդասէր, քէն չպահող, ամէնուն գթացող և յաւէտ օրհնուած է. ամէն։

Նոյն այն Հոգւոյն ազդուալից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## ԽԷ. ԽՕՍՔ

Եւ հիմայ ինչ կը մնայ ինձ ընել, որ Մեծիդ ահաւոր երեսէն ամչցած եմ, բայց եթէ համբառնալ և բերանս հողին փակցնելով լռել սրտովս, Մարգարէին խրատին համեմատ՝ Բարիին միայն յոյս կարկառելով։ Իսկ եթէ խօսիլ ուզելով շըրթունքներուս չարժողութեան փականքը բանա՛մ, բռնադատե՛մ, դարձեալ այն ողբուկոծի ձայներն ու եղերերգական խիստ լացերը կը թելադրէ ինձ մտացս ցաւը։

Բ. Արդ՝ իբր ողբակից մեծ մեղաւորին, որ ինքնաբերաբար մահուան դիմեց, անոր հետ իր գոչումը կը կրկնեմ ես ալ. մեղք գործեցի Տէր, մեղք գործեցի և անօրէնութիւններս ես ինձմէ կը վկայեմ։ Անոր հետ հիւսելով նաեւ յիսուներորդ Սաղմոսին խօսքը, անձիս մեղքերուն պարտքի չափը անթիւ կը սեպեմ երկրի փոշիին հիւլէներէն աւելի, զոր հովը կը հոսէ ու ամբողջ օդին մէջ կը տարածէ։

Գ. Մեղք գործեցի երկինքին ու Քու առջիդ, ամօթապարտ անառակորդիին հետ կրկին հայրական գութիդ դառնալով կը թախանձեմ. աղերսանքի խղճալի ձայնը, արտասուագին ողբերու գոչումով ու տխուր դէմքով ներկայելով, Քու առջիդ կը տարածեմ ո՛վ ամէնուն Աստուածը. Գթած Հայր. արժանի չեմ կանչուելու ոչ իսկ երբեք անուանուելու, չէ թէ՛ մինակ որդի, այլև անպիտան, անխօս վարձկան։ Ընդունէ՛ զիս որ մեղսապարտ տարագրուած մ'եմ (հոգւով) սովատանջ. և Քու կեանքի հացովդ բժշկէ անօթութեան ցաւս որ նուաղած, թուլցած եմ լլկանքէ նեղութենէ։ Ողորմութեամբդ դիմաւորէ՛ զիս այս առաջին ապաւինութեանս առթիւ, ով Գթած ու քէն չպահո՛ղ, ինձ՝ անօրէն մեղապարտիս հագուեցուր ծածկոյթի հագուստը որ առաջ կողոպտուեցաւ ինձմէ. ամէնէն առաջ կամքովդ հա-

մարձակութեան մատնիին կնիքը մօտեցուր մեղքով աղտոտած ձեռքերուս որ աւանդը կորսնցուց. մերկ ոտքերուս Թշուառ գարշապարները, Աւետարանական ամրափակ կօշիկներով պատսպարելով, օձին Թոյնին դէմ միշտ ամրացո՛ւր զայն։ Կարօտեալիս իբր բարիք. Նուիրէ՛ պարարտ զուարակդ, երկնային եզդ որ Քու Միածին Որդիդ է մարդասիրութեամբ իսկապէս օրհնուած։ Որ կը մատուցուի միշտ և երբեք չը պակսիր իր ամբողջութենէն. անսպառ կերպով կը մորթուի յաւէտ անթիւ սեղաններու սպանդարանին վրայ. Որ լման է ամէնուն մէջ և կատարեալ ամէնուն վրայ. էութիւնով երկինքն է. իսկութիւնով հոս՝ վարը. անպական մարդկութեամբ և անթերի Աստուածութեամբ. կը փշրուի ու անսպառ մասերով կը բաշխուի՝ որպէս զի ամէնքը հաւաքէ նոյն մարմնոյն վրայ, որուն գլուխը Ինքն է. Անոր հետ փառք կը մատուցանեմ Քեզ յաւէտ, ո՛վ Ողորմած Հայր. ամէն։



*Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն ու-*
*ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։*
*Սրտի խորերէն խօսք առ Աստուած*

## ԽԸ, ԽՕՍՔ

Ո՛վ անքննելի Ծնողը փառաւորուած Միածնիդ, ով անքուն հսկող Աչք, Դուն որ բարձր, զօրաւոր, անսկիզբն ես, ստեղծուած չես ու տեղ մը չես բովանդակուիր, ինձ նկատմամբ ընծայած ողորմութիւնդ հաշակէ երկնայիններուն ու երկրաւորներուն, ընդունելով զիս որ վտարուած եմ։ Վերնականներու ։̃ (հրեշտակ) պարերգութեամբ տօնէ՛ իմ վերադարձս որ կորսուած եմ. օրհնութեան խօսքովդ աւետարանէ՛ իմ կենդանութիւնս որ մեռած եմ. կամքիդ բարեյօժարութիւնը բոլոր արարածներուն յայտնէ՛ ով Գովուած. Քեզ համար անուն և ինձ թշուառիս ալ (հոգւով) նոր փրկութիւն ստացիր ո՛վ անճառելի. կորսնցուր ամբաստանագիրը մեղաւորիս. հոգւոյս մահուան վճիռը ջնջէ՛ արեան կայլակներովը սիրելի Որդւոյդ. Քու Քրիստոսիդ արիւնովը նկարէ վստահութիւնը բարի փրկութեան. բարեգթութեանդ սքանչելիքը ցուցուր ինձ, Քու Հարազատիդ հարսնիքի սեղանին վրայ։ Կեանքի յարկիդ սրահին վարադոյրը մի՛ փակեր ինձ դէմ որ Քեզ կը դիմեմ. բազմականներէդ մի զատեր զիս ու բարիքներէդ մի զրկեր. գանձարանիդ մէջ մի՛ պահեր անօրէ-

նութիւնը իմ նիւթած պարաքերու, իմ զզուելի աղտեղութիւններս, բարիքներու քանկիդ մէջ դնելով մի՛ կնքեր. մեղքերուս վէրքը երկար ատեն մի՛ ծածկեր ախտալից մարմնոյս մէջ. ցաւերուս նեխած փտութիւնը, մինչեւ ի մահ չը ձգես վրաս, այլ ողորմութեան խօսքովդ անհետացուր ապականարար ծանրութիւնը. որպէս զի հիւծող ախտերէն ազատելով առողջանալու պատրաստուիմ. ո՛վ Գթած Հայր, մեծ խոցուածքիս զօրեղ սպեղանիներ հնարէ՛ ուհիմնայատակ կործանումիս բարի այցելութիւններ։ Որովհետեւ Քուկդ եմ ո՛վ հոգի սիրող Տէ՛ր, թէեւ մէկ անգամէն աւար հազար հեղ մեղանչեմ իսկ, կատարելապէս մեղաւոր չեմ սեպուիր Քու կեանքի պարգեւներուդ շնորհին ապաւինելով, ո՛վ ինձ կեանք տուող բարերա՛ր. անոր համար որ զՔեզ ճանչնալը բովանդակ արդարութիւն է եւ զօրութիւնդ գիտնալը արմատն է անմահութեան, ինչպէս որ Իմաստունն իսկ կանխաւ գրեց. եւ դարձեալ, Քու ամէնուն վրայ տիրելդ, կ՚ըսէ, խնայել կուտայ Քեզ՝ ամէնուն. եւ կրկին, մօտ է Քեզ, երբ որ ուզես կարող ես գտնելու։

Բ. Սողոմոնի այս յուսոյ աղերսները ինձ օրինակ կ՚առնեմ, որովհետեւ անկէ աւելի շատ մեղանչող ուրիշ մէկը չկայ որ ինձ զուգընթաց ըլլայ։ Երբեմն որդի էր, (Սողոմոն) ետքը ատելի. եր-

բեմի խաղաղութեան միջնորդը Աստուծոյ ժողո-
վրդեան, և յետոյ բաժանումի միջոցն ու պատ-
ճառը շատ մը խռովութեան. երբեմն կեանքի
կանգուն օրէնքը, և յետոյ մահուան հաստատ
մուրհակը. Երկնաւորին պաշտօնը ոտքի տակ առ-
նող ու օտարին անունը հռչակո՛ղ. Առանց պատ-
ճառի՝ գլուխ քաշող. առանց կարօտ ըլլալու՝
զրկող. կուշտ գող. թէև հանգիստ, բայց
տրտնջացող. թէեւ փափկակեաց, սակայն փա-
խըստական (Աստուծոյ երեսէն). (Աստուծոյ) սեղա-
նին դէմ խարդախելով. փախչող. պատասխան
չունեցող յանցաւոր. անուշեղէններով սնած հայ-
հոյիչ. հայրը ատող զաւակ. (օրէնքի) կատակա-
բաններու հանդէպ օրինազանց. Մովսէսի նկատ-
մամբ չարախօս. երախտիքները մոռցող. սխա-
լական իմաստուն. ամէն բան գիտցող յանցաւոր.
ամօթապարտ զղջացող, տարակոյսով աշխատող
(ապաշխարող). կռապաշտ աղաչող. դանդաղ
դարձի եկող. կասկածելի ընդունուող. արա-
կուսելի հաշտութիւն. ապագայի յիշատակ (զգու-
շութեան). երկբայելի փրկութիւն. չհաւատացուե-
լիք գիւտ. Մնացած մաս (հրեայ ցեղերէ ոմանք
չհնազանդեցան Սողոմոնի). ծպտեալ գերի. կիս-
կատար ազատուած. կամաւ անձը մատնող.
յղփացած տմարդի. շատ սխալող խելացի: (Սո-
ղոմոնի նկատմամբ) Գրուածներու ընթացքին մէջ

երկու որոշ խօսքեր կը տեսնուին ամէն տեղ. ողբ ու ծաղրանք. մեծ պարսաւ և փոքր գովեստ, ինքզինք ձեռքովը կորանցնողի վրայ գրուածի նման. երգիծանք ողբի հետ խառնուած։ Անոր խօսքը ամէն տարիքի բարգաւաճութիւն կը թելադրէ. իսկ անոր խոստումը, ցաւալի ապաւորութիւն ըրած է ու արտմագին հառաչանքի նիւթ դարձած է ամէնուն շրթունքին վրայ։

Գ. Կը զարմանա՛մ, կը վհատի՛մ, ապշութեամբ տարակուսելով որ, եթէ անիկայ (Սողոմոն) այնչափ սխալեցաւ, ի՞նձ ինչ պիտի պատահի. ի՞նչպէս ինկաւ որ բարձրացած էր. ի՞նչպէս սասանեցաւ որ հաստատուած էր. ի՞նչպէս կործանեցաւ որ կառուցուած էր. ինչպէ՞ս օտար եղաւ ծանօթը. ի՞նչպէս խորթացաւ ընտիր զաւակը. ի՞նչպէս փախաւ մերձաւորը. ի՞նչպէս աղօտացաւ փայլածը. ի՞նչպէս գրաւուեցաւ ազատուածը. ի՞նչպէս անօրինացաւ որ (օրէնքը) սովրեցնող էր. հռչակուածը ի՞նչպէս նուաղեցաւ. փառաւորը ի՞նչպէս անարգ եղաւ. մեծատունը ի՞նչպէս պըղտիկցաւ. բարեպաշտը ի՞նչպէս ամբարիշտ եղաւ. ի՞նչպէս անպարծեցաւ ընտրօղը. ի՞նչպէս դատարկացաւ՝ որ լեցուն էր. ի՞նչպէս ուխտազանց եղաւ հանդէպ Բարձրեալին։ Կ'ամչնամ ըսել թէ (Սողոմոն) սանդարամետականին (սատանին) հետ կապուեցաւ. կուռքերուն հետ ի՞նչ գործ ունէր

-նիկայ, ո՞ւրկէ էր պատկերներուն տուած սէրը. Ինչո՞ւ կամակից էր անոնց՝ զորս կը խարէր օրէնքը. Ինչո՞ւ չյիշեց Սաւուղի ուղղած յանդիմանութիւնը Սամուէլի որ կ՚ըսէ. «կախարդութիւնը մե՛ղք է և թերափը (Թըլըսըմ) ցաւ ու յոգնութիւն կը բերէ»։ Ինչո՞ւ չյիշեց հայրենի յանդիմանութիւնը որ կ՚ըսէ «հեթանոսներու կուռքերը դեւ են ու անշունչ, անոնց ծառայողներն ալ անոնց պէս պիտի ըլլան»։ Մովսէս ամէնէն առաջ գրելով. խստիւ կ՚ամբաստանէ կանխասաց ձաղկանքով «Տէրը միայն կը վարէր զանոնք. կ՚ըսէ, անոնց հետ չկային օտարոտի աստուածներ զոր չէին ճանչնար անոնց հայրերը»։ Ո՞ւր է մահահրաւէր, այլանդակ արձանը Փագովրայ (որուն կ՚երկրպագէր Սողոմոն). ո՞ւր է տգեղ, խայտառակ ամենանզովուած, իգական ձուլածոյ կուռքը Սիդոնացւոց. ո՞ւր է անգրելի խայտառակութիւնը զզուելի տեսարանին կանացի կերպարանքին, որուն անամօթօրէն եղած անխտիր դիմումները՝ յանուն չարութեան անժուժկալ դեւին ձօնելով, ամօթի մարգարէները (քուրմերը)՝ անաստուածաբար կը մոլորէին։ Այն (կինը) որ Նախահայրը (Ադամ) կորուստի մատնեց, երջանկութեան գոյութիւնը խլեց տարաւ (Սողոմոնէն). մեծութիւնը յաղթեց գերաղանց իմաստութեանը. գոռոզութիւնը՝ գերի ըրաւ. փափկութիւնը՝ յիմարցուց.

ծառայեցնող արծաթը՝ վանեց։ կործանողին (սատանային) հին չէնքը (կինը) հոգւով դատապարտեց գովելի մարդը. Աստուծոյ գիրկէն հանելով սատամբակին ոտքին տակ գլորեցուց. մեղկութիւնը՝ մեռցուց. ծուլութիւնը՝ թմրեցուց. չուառութիւնը՝ գինովցուց։ Ի՞նչ ձայնարկութիւնով վայ կարդամ քեզ, ո՛վ դիւրախաբ մարդկային մարմի՛ն. որովհետեւ ուղղակի անոր (Սողոմոնին) չի վերաբերիր այս յանդիմանութիւնս, այլ՝ այն ամէն սխալողներուն, որոնք իրենց կամքովը կը մեղանչեն. վասն զի անով (Սողոմոն) կը հասկցուի թէ, «անիրաւ է մարմինի իմաստութիւնով պարծենալը, եթէ Աստուծմով դատուած ու ընտրուած չըլլայ այն». ուրեմն՝ այս տեսակէտով եթէ մէկը յիմար ըլլայ և սանձողին կամքին յուսայ, զերծ կը մնայ անոր (Սողոմոնի) դատապարտելի արարքներէն։

Դ. Բայց Սողոմոն՝ — իբր կատարելապէս մեռած՝ աշխարհի ու անձնական հաճոյքներու սիրոյը — ինքզինք պարսաւող կշտամբանքով խիստ քստմնելի յիշատակարանը ունի իր դարձին (Ժողովողի գիրքը), որուն եթէ իմաստը նկատողութեան առնուի, անոյնաբնեամբը կը հասկցուի — ինչ որ քահանայից մատեաններն ու Սիլոնացի Աքիաի գիրքն ալ կը պատմեն —. ասոր մէջ (Ժողովող) իր սխալ ընթացքը արտասուելի կերպով կը բա-

ցատրէ (հետեւեալ կերպով)։ Ջուր ջանք. անօ-
գուտ վաստակ. անմիտ հետեւում. անշահ աշխա-
տանք. անհաստատ աշխատանք. սխալ իմաստ.
ոչնչութեան շրջան. բամբասելի փրփուրք. ան-
յարմար դէպք. պարապ սերմ. աւազի վրայ
հիմնուելով փլած շէնք. աւրուելու ենթակայ
առացուածք. քամահրելի ամօթանմունք. իր անձին
դէմ կռիւ. իր հոգիին դէմ դաւ. պարապ աշխա-
տութիւն։ Թափուած քրտինք, Վնասակար փափաք.
կորստեան հետք, սխալ ճամբայ. կործանող կըր-
թութիւն. մոլորեցնող խորհուրդ վարժութիւն. միջա-
սխալական տեսութիւն. անամօթ պչրանք. պոռ-
նիկի ձեւ կերպարանք. սխալ ըմբռնող նիւթ.
դժնդակ տեսքով գոյն, անտարբերիլ գեղեցկու-
թիւն. թանձրացած ծուխ. ցնդող շոգի. դիւրա-
յափշտակուելիք ապրանք. քակտուելիք ապա-
ւոր. փուճ աղաղակ. առանց պատճառի ծաղր.
արհամարհելի ասպարէզ. անձը ծախող գիր (կամ
գերի) սնանկեցնող հնարք. անստուգուած մտած-
մունք, առայօղ պատմութիւն. զայրացնող
զրոյցք. պատրուանքի խծբծում. խելագարու-
թեան խնդիր. ամօթի ցոյց. խայտառակութեան
յայտնութիւն. աղտեղային օրինակ. ապաշխարու-
թեան գործ. խեռ անառակութեան պատմութիւն.
անհոգ ծոյլերու օրինակ. ծածկուած խարխարտ.
խաւարային ոգի. մահագուշակ միտ, անյատակ

անդունդ. ապաւինողներու ուղեկցութիւն. յիմարութեան բարբանջանք. դարանի կեցածներու ակդ. խարխուլ տուն. տարուած չէնք. խախտած կամուրջ. վաղանցիկ երեւոյթ. խաբող չողոքութ. վայրագ մատնիչ. Բարձրեալին դէմ հակառակութիւն։ Խօսքերու այս ամէն մասերը խօստովանութեան կանոնով ամէնուն արտին մէջ կանուխէն սերմանեց Ժողովողը որ դարձի եկողներուն զղջումի կանոնը դրաւ. որպէս զի ո և է մարդ չպարծի ու բամբասանքի նետերով զինուելով անձը ու ընկերը չխոցոտէ. որովհետեւ կռապաշտ է (աստուածապաշտութեան) քողով ծածկուածը որ միակ արտաքին երեւոյթը ունի ու առեղծողին անախորժ եղածները կը կատարէ։

Ե. Ուրեմն այն (Սողոմոն) որ ո՛չ այնչափ մեղանչեց, որչափ զղջաց. Թող չպախարակուի իսպառ. այլ բոլորութեամբ Թող յիշուի այն մարդը, իբրեւ յուսադրութեան հիմը Տիրոջ ոտքը դիմողներուն, երբ հոգւովը այցելութեան իջաւ, անբաժանելի աստուածութեամբը կեանք շնորհելու համ խոստովանողներուն. ինչ որ մեռելները առանց տարակոյսի, աւետեցին մեզ՝ կենդանիներուս։ Անոր հետ կը մաղթեմ ես մեղաւորս ալ որուն Թէեւ իմաստութեանը չհասայ, բայց մեղքերուն հաղորդակից ըլլալով կը պաղատիմ Քեզ որ բարերանեալ մեծ ես. իմ գրած նուազ խօսքերս

երջանիկին հանճարեղութեամբը լրացո՛ւր. Ներկայ խնդրուածներս թող միանան՝ բարգաւաճ և խիստ ապաշխարող արքային աղերսներուն հետ ու յարգ ստանան. հայցուածներս թո՛ղ ընդունուին աղօթքներուն հետ քեզմէ ընտրուած վեհ արքայորդւոյն զոր Միածնիդ օրինակ ցոյց տուիր։ Անոր (Սողոմոնի) արեան կցորդութենէն (սերունդէն) Քու Փառակիցդ ճաշակեցի՛նք. փրկութիւն տո՛ւր Քու ծառայիդ ո՛վ ամէն բանի հնարը գտնո՛ղ, զօրե՛ղ, ահաւոր. անքաւելի մեղքերը ջնջելով Ստեղծողի փառքդ աճեցուր։ Ողորմութեան արժանացողներուն հետ, բարի խորհուրդներուն յիշատակովը զայն ալ նորոգէ՛ որ եկեղեցւոյ կտակին՝ լուսազարդ մատեանին (Աստուածաշունչ) մէջ գրած ամենահամեղ, ախորժաճաշակ և բազմապաճոյճ առակներով Քու Աստուածութիւնդ քարոզեց ու բարութեան հետք ընծայեց խոստովանութեամբ Քեզ մօտենալու համար, ո՛վ Հայր։ Որովհետեւ անոր խօսքերուն նայելով կը հասկցուի թէ, ողորմութենէդ շատ հեռու պիտի չմնար, եթէ անյուսութեան կաթուածը չիյնար սրտին իղձերուն եռանդին մէջ, որ զըղջումի փութացումը քիչ մը կասեցուց։

Զ. Արդ, յիշելով Քու մտքէ վեր բարեմասնութիւններդ. ողջունէ՛ գթութիւնդ, որով ՝շատ դարերէ ի վեր բամբասանքի քարկոծութեամբ ըն-

դրօշմուածը երանութեան վերարժանացո՛ւր. որ առաստաղոս արցունքներու հեղեղով խրախճանութեան ապարանքին յատակը ողողելով, սասակակկիծ ապաշխարանքովը ու խղճալի հոգիին հծծանքներովը գերազանցեց հօրը ապաշխարութիւնը, որուն արցունքները երկայնամիտ ներողութեամբ միացնելով խառնեց Քու Բանիդ (Միածնիդ) աչքէն հոսած արցունքներուն, ո՛վ Գթած. Ան՝ որ մեր մարմինը իւրացուց ու մեր բնութիւնը կրեց. և փառաբանութիւնը այն (ՀԱ. գլ.) Սաղմոսին որ անյարմար կը թուի անորը (Սողոմոնի) կարծել, Դուն էակից որդւոյդ փառքին դարձնելով, անիկայ ալ քաղցրութեամբ ապրեցուր ժողովուրդին ազգաններուն հետ։ Բարեչնորհ պուէտ մը (Նիւսացին) կարգահատէր Սողոմոնի վրայ. կատարեալ վարձք կը սեպէր իրեն, կենդանի մէ՛ջ ու մը պէս, աղօթակից, ձայնակից ըլլալ անոր ու Քեզ աղաչել անոր փրկութեանը համար, ինչ որ յաջորդ խօսքը կը ցուցնէ։ Որովհետեւ անորմէ ստեղծուած Աւստացիին (Յոբին) բազմահրաշ, մարգարէաճառ պատմագրութիւնը— որ Աստուածութիւնը կ՚արդարացնէ — Սողոմոնը ողորմութեան արժանացած կը սեպէ, որուն համար պարսաւելի չէ աղօթելը, որչափ չարախօսելը անոր նկատմամբ։

Է. Ինչ որ ես ալ կը մաղթեմ մեծ վստահու-

թեամբ. իմ՝ այս հառաչանքին նմանակից աղաղակներս անոր հետ վերընծայել է. որովհետեւ եթէ մեր գործերուն համեմատ դատելով կորսընցընես զմեզ, փառքդ չի պակսիր, անոր համար որ Քու իրաւունքովդ կը ճանչցուիս. իսկ եթէ զանես, այնքան կը բարձրանաս, որչափ կը վայելէ Քու մեծութեանդ. որովհետեւ յաւէտ կ'օրհնաբանուիս Դուն-երկրորդովը՝ ողորմածութեամբ, քան հրամայած առաջինովդ՝ խստութեամբդ: Դարձի՛ր Տէ՛ր դարձի՛ր քաղցրութեամբ, ու գթութեամբ խնամէ՛, սիրոյդ ձրի և ամէնառատ պարգեւներովը յաւէտ մխիթարելու զմեզ, որ անբուժելի ջերմին տոչորումի տագնապէն տրամած ենք անոր (Սողոմոնի) պէս: Փրկութեան ձեռք դնելով կրկին նորոգէ՛ քաւելով ու պատըսպարելով մեղքերու կործանարար խորտակումէն: Եւ Քեզ որ միակ սկիզբն ես ու անըսկիզբն (Հայր), սկիզբիդ հետ (Որդի) և սկզբանց սկզբնաւորիդ հետ (Հոգի) Սուրբ Երրորդութեանդ և մի Աստուածութեանդ մինչեւ վերջը փառք, իշխանութիւն. Ամէն:



Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն ու աղօթական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը՝ Սրբոյ խորհրդին խօսք առ Աստուած

---

### ԽԹ. ԽՕՍՔ

Արդ՝ անօրէնութիւնները Թող չտիրեն վրաս, որ երկնային թագաւորութեանդ պատկերն եմ կայսերական (աստուածային). ո՛վ համակ լո՛յս Աստուած. գոռոզ ապստամբը (սատանան) Թող չկողոպտէ՝ փչումիդ շնորհի զարդը ինծմէ, որ Քու պատկերիդ վրայ ստեղծուած եմ. արգիլուած մեղքը Թող չթագաւորէ՝ մահացու մարմնոյս վրայ, որպէս զի կրկին չգրաւուիմ անով։ Շունչիս վրայ իշխելու համար, Քեզմէ զատ (երկնաւոր) Թագաւոր չունիմ ո՛վ Քրիստոս, որ տռանց բռնադատելու կը հնազանդեցնես քաղցր լուծիդ. որ ամենակարող խօսքովդ մեղքի ցաւերը կ'անհետացընես. որ արիւնովդ ստացար ու մարմնովդ կերակրեցիր. որ կեանքի անփոփոխելի ուխտ սահմանեցիր, ու դաստակարգեցիր. որ հոգւովդ կնքելով Քեզ կցորդ սեպեցիր և Հօրդ մատուցիր (զմեզ) իբր ժառանգակից, որ պատարագուելուդ անուամբ՝ միշտ Քու չարչարանքիդ յիշատակովը նոյն բարերարին ողօթելու համարձակութիւն տուիր ո՛վ ամէնուն կեանքն ու ստեղծողը։ Ամէն հոգի-

ներու Աստուածը Դո՛ւն ես որ Քու գործած բոլոր հրաշքներէդ աւելի, այս շնորհի տուրքդ (պարգեւդ) մեծացուցիր. ո՛չ երկինքը իր զարդերով ու հրեշտակներու պայծառութեամբ, ոչ երկիրը, մարդկութիւնը և անոնց վրայ գտնուած զարմանալիքը, ո՛չ անսահման ծովուն լայնութիւնն ու անոր մէջ եղածները. և ո՛չ անդունդները իրենց կղպանքներով ու անքաւութիւնով, (կը հաւատարին այս պարգեւիդ), այսքան վեհ ստեղծագործութեամբդ չբարձրացար. որչափ ինձ կարեկցելով, երբ բարութեանդ քաղցր յոյսը ներշնչելու համար. Սուրբ մարգարէին բերնովը ըսիր «ո՛վ կայ ինձ նման կարող Աստուած որ միշտ մեղքերը ներէ ու անօրէնութիւնները ջնջէ։ Արդ, խօսքերդ օրհնուած են ո՛վ ողորմա՛ծ, ու բարերարութիւններդ խոստովանուած, խորհուրդներուդ խորութիւնները փառաւորուած են ու շնորհներուդ զեղումները երկրպագուած։

Բ. Արդարեւ արարածներէն ո և է մէկը անբաւական է նիւթական լեզուի խօսքերով մէկ մասն իսկ բացատրել ինձ նկատմամբ ցոյց տուած գթութեանդ, ո՛վ Յօրինող, որովհետեւ հինցածը վերանորոգել ու առողջի պայծառութեանը հասցնել մեծ կարողութիւն է, ոչինչէն ստեղծելէ աւելի։ Եւ որովհետեւ ակարութիւն չունիս Դուն, որ ամեն բան ընելու կարող ես և միակ խօսքդ կը բաւէ

գործը լրացնելով գլուխ հանելու, ուրեմն փառաւորուելու համար ոտքի ե՛լ ո՛վ բարեգործ, կրկին փրկելու Քու այս յուսահատ ստացուածդ, որպէսզի ուխտի իրաւունքովը բարձրանայ. Մեծապէս հաստատուն ըլլայ օրհնաբան աւետեացդ ձայնը. ու ճանչցուի քաւելուդ շնորհիւ. ստեղծագործութենէդ աւելի ողորմութեանդ լուսովը հռչակուի այն։ Որովհետեւ մէկին համար՝ միայն արարիչ կը ճանչցուիս, իսկ միւսին համար աջի անուանովդ (արարիչ) մէկատեղ, նաեւ երախտաւոր. Կերպացընողին հետ՝ նաեւ Քաւող. Նորոգողին հետ՝ նաեւ Բարերար. Ստեղծողին հետ՝ նաեւ Ողորմած Կազմողին հետ՝ նաեւ Հնարագիւտ. Յօրինողին հետ նաեւ Հեզ. Նկարողին հետ, նաեւ ամէն բանի Կարող. Առաջնորդողին հետ, նաեւ Լոյս. Տածողին հետ նաեւ Հովիւ. Դարմանողին հետ նաեւ Խնամող. Ողջ Պահողին հետ, նաեւ Բժիշկ. Ձեռք Բռնողին հետ, նաեւ Զօրավար. Անպարտ արձակողին հետ, նաեւ Թագաւոր (երկնաւոր). Արարիչին հետ, նաեւ Քաղցր. Ամէն պարգեւ Տուողին հետ, նաեւ Առատ. Միշտ մտիկ ընողին հետ, նաեւ Ներող. Չբարկացողին հետ նաեւ Քէն չպահող. Մեր ցաւերուն Վշտակիցին հետ՝ նաեւ Ծածկուածները գիտցող. Գթածին հետ, նաեւ Ապաւէն. Գերագոյն Գորովողին հետ, նաեւ Աստուած. Անսպառ Բարիին հետ, նաեւ ամէն առթիւ Օրհնուած։

Գ. Արդ՝ ինչպէս որ ստեղծեցիր զիս երբ չկայի իսկ և գոյացնող ճանչցուեցար ինձ. հիմա ալ ան առջի ստեղծուած վիճակիս նման կրկին անարատ սուրբ ու մաքուր ըլլալու պատրաստէ՛ հոգիս, անակովը մարմնոյս, որ Քեզ կը մաղթեմ. որպէս զի ստուերական, անցած հին օրէնքէն աւելի ներկայ նոր օրէնքին մէջ բազմանա՛յ, աւելի աճեցուն ըլլա՛յ առատ շնորհները Քու անսահման սքանչելիքներուդ։ Եւ երբ մեղքերուս թիւին վրայ կը ճառեմ — որքան որ սակայն մտքիս թեւը թռչելով կարող ըլլայ անտանելիներն յիշատակել — Քու անունովդ արդարանամ ո՛վ Զօրաւոր. և երբ ինքնաբերաբար անձիս բիծը կը պատմեմ, Դուն ալ խոստովանողիս շատ մեղքերուն ամբարշտութիւնը ներէ՛ ով Հզօր. ծածկուածները տեսնո՛ղ. ամէնքը փրկո՛ղ. որպէս զի աւետիսներու այս ծայրագոյն լրումին (Նոր օրէնք) մէջ կրկին կարօտ չըլլամ հինին, Սաղմոսին հետ, երանի կարդալով մկրտութեան շնորհքով փրկուողներուն. ու մեղքի փուշերով ծանրապէս չխոցուի հոգիս, հիմակուընէ իսկ (բարկութեան) ձեռքդ չմխուի ինձ կրկին, ու պարտքերուս բեռը քաղցր բարիքներէդ աւելի չծանրանայ. Օրհնաբանուած Սուրբ Հոգւովդ ազատէ՛ զիս, մեղքի և մահու օրէնքէն, կաղաչեմ Քեզ ո՛վ ամէնուն Տէրը։

Քա՛ւ լիցի որ ճշմարտութեանդ ծագումը (Նոր օրէնք) (հին օրէնքին) տկարութեամբը սահմանուի, գրքին օրինակին համեմատ. որովհետեւ ուր որ քաւութիւն կը թագաւորէ, մեղքերը վտարուած են անկէ. ու կենդանի խօսքիդ խրախոյսովը յուսահատութիւն չկայ այլ եւս (մեղաւորներուն) և Քու շնորհներուդ բարձրացումովը, հալածուած են պարտքերը. և որովհետեւ մօտ է Աստուածային ձեռքդ, անհնարութիւն չկայ այլ եւս, այլ կատարեալ յաղթութիւն, բովանդակ զօրութիւն, անպարտելի կարողութիւն։ Դուն կը փրկե՛ս, կը կենդանացնե՛ս, կը նորոգե՛ս, կ'ողորմի՛ս, քաղցր ես և անեղծ, միեւնոյն ժամանակ Քուկդ է Արքայութիւնն ու փառքը մինչեւ վերջն. ամէն։

Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն ու ողբական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտէ խորերէն խօսք առ Աստուած.

## Ծ. ԽՕՍՔ



ՐԴ՝ ինչպէս որ առանց Քրիստոս Աստուծոյ չկայ հոգիներու փրկութիւն, և առանց աչքերու տեսողութեան՝ լոյսի զուարճութիւն կամ առանց Արուսեակի Նշոյլներուն չկայ երբեք արեւի քաղցրութիւն. այսպէս ալ առանց

գաղտնիքները խոստովանելու և անձը մեղադրելու, չկայ քաւութիւն։ Որովհետեւ ի՞նչ օգուտ ունի քեզ մաքրութիւնդ, եթէ փարիսեցիին հետ դատուիս, և կամ ի՞նչ մնաս կուտան ինձ պարտաքերս, եթէ մաքսաւորին հետ գովուիմ. և կամ ո՞ւր ըսուած է թէ, Յովէլ մարգարէն պարսաւուած է, անձին թշուառութիւնը երեք անգամ կրկնելուն համար. և կամ որբակեացը պիտի դատապարտուի՞, մինչ Աստուծոյ մեծ օրը յիշելուն համար. և կամ ի՞նչպէս չրթունքով անմաքուր պիտի սեպուի Եսայի երբ հեռու էր Իսրայէլի տան չար գործերէն. և ի՞նչպէս մեղապարտ կը կարծուի Աստուած, որ ինձ կարեկցելով, ադամեան մարմնովը յանցաւոր նման Հօրը աղօթեց. և կամ ի՞նչ բանով կը թարգմանուի առածը առակին թէ «Իմաստունին սիրտը սուգի տան մէջ է, և անմիտին սիրտը ուրախութեան տան մէջ»։ Որովհետեւ, ո՛վ որ Ադամայ սխալմունքը իր անձին ալ չի վերագրեր, ու իրենը չհամարիր ամէնուն մեղքը — ինչպէս (հին) թագաւորներուն երջանիկը (Դաւիթ) նախահարցը մեղքերը իրը կը սեպէր — այնպիսին կորսնցուց իր արդարութիւնը, զինքը մարդկային բնութեան յատուկ մեղքերէն զերծ սեպելուն համար, ինչպէս ըսուած է թէ, այն սիրտը որ չի բեկիր չի կրնար երեսները զուարթացնել յոյսի աւետիսներովը,

եթէ Քրիստոսի Առաքեալէն սովրելով, կատարելապէս չտրամի Աստուծոյ պահանջածին համեմատ։

Բ. Արդ յաւէտ ըղձալի է ինձ հոս, նոր ընդունուած հին խրատը հոգեւոր հանճարեղին (Սողոմոնի), ինչ որ Տէրն իսկ կրկնեց «չերթալ չնստիլ նախապատիւ բազմոցին վրայ ուր հպարտներն ու անափառ ամբարիշտները ժողվուած են», որմէ Դաւիթ ու Երեմիա ալ զգուշացուցին, կանոնի ուխտով սահման գծելով. այլ որսով զըղջացածներուն, մեղքով պատկառածներուն, ու հատուցումի վախովը Մեծին դատաստանէն ահաբեկողներուն հետ, յետիններուն հաւասարելով հոս, կամաւ խոնարհիլ երկրի վրայ, որմէ Բարձրեալ Աստուածը պարարելով կը բերկրի. որով նախադաս երանելի բազմականներուն հետ նստիլ համարձակիմ ե՛ս ալ, ա՛ն ալ, ասոր հետեւելով։ Այսպէսով կ՚աղօթիմ նաեւ Մարգարէին բամբասանքի խօսքերէն որ ակնարկութիւն է հպարտներէ ոմանց, «ինձ մի՛ մօտենա՛ր, կ՚ըսէ, մաքո՛ւր եմ և ով պիտի տեսնէ զիս»։ Այլ երջանիկ Դաւիթին անչափ խոնարհութիւնը ինձ ի նպաստ ընդունելով անոր հետ ըսեմ. «զգացողութենէ զուրկ անասունի նմանեցայ ես. չորս կողմս շրջապատեցին չարիքները, վէրքերս փտեցան ու նեխեցան, որպէս զի ես անզգամս չբժըշկուիմ»։ Կրկնեմ նաեւ Ասորեստանի մէջ գտնուած

ուրիշ ընտրեալներուն (երեք մանկունք), մեղապարտութեան կամաւոր կշտամբանքը, զորս կ'ուղղէին իրենց անարատ անձին, որոնց հետ նաև ես ինձմէ առնելով կը կրկնեմ Եզր մեծ քահանային խօսքը, թէև երբեք իսկ դէպի Քեզ վեր վերցընելու արժանի չեմ ո՛վ Աստուած։ Արդ ես որ ճշգրիտ պատկերն եմ բոլոր աշխարհի, իմինս անոնց մեղքին հետ խառնելով ու անոնց պարտաքերումն ալ իմ դառնութիւնս կրկնապատիկ աւելցընելով, անոնցմով կը հեծեծեմ, թէև զզուելի գոյնը պէտք չունի նոր տգեղութեան։ Ահաւասիկ, մեղա՛յ ուրեմն, անմտութեամբ գործեցի Քեզ անհաճոյ եղածները շատ յանցանքներով սխալելով. ինչպէս երբեմն ուրացութեանը մէջ բռնուած Պետրոսին նայեցա՛ր, ինձ ալ նայէ՛, ո՛վ Գթած, որովհետև բոլորովին դատապարտեցայ։ Ցոլացու՛ր ինձ ողորմութեանդ ճառագայթը ո՛վ կատարեալ Բարերարութիւն, որպէս զի Քու օրհնութիւնդ ընդունելով, ո՛վ Տէր, արդարանամ, ապրիմ ու մաքուր ըլլամ զիս լլկողներէն, զորս դուն չստեղծեցիր (մեղքերէս)։ Մեղապարտ ձեռքերուս կազմուածքը Քեզ տարածելու համարձակութիւնը չունիմ, մինչև որ Քու օրհնուած Աջդ չմօտեցնես նորոգելու զիս որ դատապարտուած եմ։ Արդ կրկին յաղթէ՛ իմ յամառութեանս, Քու հեղութեամբդ մարդասիրաբար ինձ հասնելով, ու

ամէն բանի մէջ, ամէն առթիւ, Քու կատարեալ կարողութիւնովդ առաջին չարութիւններս միջիններովս ու վերջիններովը ներէ՛ ինծի, ո՛վ անկարելիներուն հնարը գտնող, արդարներու լոյսին թագաւորը Քրիստոս։

Դ. Արժանի չեմ Քու օրհնուած անունդ յիշելու, որովհետեւ մահուան հարուածներու արժանի մեղապարտ եմ, հանդէպ Քեզ՝ բարեգործիդ, նաեւ հանդէպ կնիքին, շնորհին, փչումին, պարգեւին, աւանդին, ընծային, անուանը, որդեգրութեանը, արքայական պատիւին, պատկերին, դրոշմին, օծումին, ճոխութեանը, համարձակութեանը, ընտանութեանը, կեանքին, լոյսին, երանութեանը, յոյսին, փառքին, անխոնարհելի բարձրութեանը, անկողոպտելի պսակին, և հանդէպ ծածկուածներու խոստմունքին. որ ո՛վ Տէր Յիսուս Քրիստոս, Քեզմով լիուլի աւետարանուեցաւ ինծի՝ որ յամառ իժ մը ու քարբ մ'եմ, ականջները խցած ու լսելու գործարանները փակած. որ միշտ բարիքներուդ առաւելութենէն (խրախուսուելով) չարիքներս անոնցմէ խիստ շատ անգամ աճեցան ու իսպառ կործանեցին զիս. կեանքէ հեռացնելով մահուան հետ կապեցին ու ապականութեան ծառայ կարգեցին զիս։ Եւ արդ, Դուն միայն իրաւունքով կշռող, ճշմարտութեամբ դատող և գթութեամբդ օրհնուած բարերար ես.

մեղանչեցի՛ քեզի դէմ, անօրէնութիւն ըրի, անի-րաւեցա՛յ, անոր համար աւրուեցայ, զեղծում ըրի, սխալեցայ, ամբարշտութիւն գործեցի. ու Քու խոստովանուած և երկրպագուած խօսքդ մտիկ չըրի. որ Դուն իսկ երեւցար Քու խելքէ վեր սիրովդ զոր գրելն իսկ մեծ է ու նշանակելը սար-սափելի։ Քեզ արդարութիւն, փառք ու մշտնջե-նաւոր գովութիւն կը վայելէ, և ինձ — որ Քեզմէ պատկառած եմ. ո՛վ Ամենակալ — քա-ւութի՛ւն, ողորմութի՛ւն, բժշկութի՛ւն, օգնու-թիւն ու սրտի և հոգւոյ պահպանութիւն շնոր-հէ՛, ո՛վ ամէն առթիւ յաւէտ օրհնուած. ամէն։

*Նոյն այն Հեղողին աղերսալից մաղթանքներուն*
*ու ողբական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.*
*Սրտի խորերէն խօսք առ Աստուած.*

## ԾԱ. ԽՕՍՔ

ԱՐԴ, երկրէ ծնած մէկո՞ւ մը, խաբեբայ ու մահացու մարդո՞ց պաղատիմ, որոնց աղաչելը պա-րապ բան է. բանական մահկանացուի՞ մը՝ որուն (հոգիս) փրկելու համար տուած յոյսն ու վստա-հութիւնը սուտ է. եղծուելու ենթակայ մար-դո՞ւ մը՝ որուն խօսքը ակար ըլլալէ զատ ուժն ալ ոչինչ է. երկրաւոր գահերու իշխաններո՞ւն

(աղաչեմ հոգւոյս փրկութեանը համար) որոնց բարիքն ալ անցաւոր է իրենց հետ (իբրեւ մարդ-մահկանացու). հարազատ եղբօ՞րս (աղաչեմ) որ իր անձին անդորրութեանը համար (ուրիշի բարեհաճ) կամքին կարօտ է. երկրաւոր հօ՞րս, որուն խնամքներն ալ պակսած են, կեանքի օրերուն կարճընալուն հետ. զիս ցաւով ծնող մօ՞րս, որուն գթութիւնները կասեցան իր կեանքին պակսելուն հետ. աշխարհի իշխանութիւններո՞ւն (աղաչեմ արդեօք հոգւոյս փրկութեանը համար) որոնք (մահապարտներ) ապրեցնելէ աւելի մեռցընելը կը նախընտրեն. բայց միայն Քեզ կը պաղատիմ, ո՛վ բարերար Աստուած, որ բարձրերէն օրհնուած ես, կենդանի ես ու կենդանութիւն կուտաս ամէնուն ու մեռնելէս ետքն ալ կրնաս անեղծ կերպով նորոգել։

Եթէ Քեզմէ փախչինք, Դուն մեր ետեւէն կը վազես, եթէ ակարնանք, կը զօրացնես, եթէ սխալինք՝ չիտակ ճամբան կ'առաջնորդես, եթէ ամօթահար ըլլանք՝ կը քաջալերես, եթէ հոգւով ու մարմնով ախտաւորուինք՝ կը բժշկես, եթէ մեղքով աղտոտինք՝ կը մաքրես, եթէ սուտ ըսենք՝ Քու ճշմարտութիւնովդ կ'արդարացնես, եթէ ներքին անդունդները խորտակելով գլորինք՝ երկինքը կը ցուցնես, եթէ մեր (չար) կամքէն չդառնանք՝ Դուն կը դարձնես, եթէ մեղանչենք

կ՚ողբաս, եթէ արդարանանք՝ կը ժպտիս, եթէ (Քեզմէ) օտարանանք՝ սուգի կ՚ենթարկուիս, եթէ մօտենանք՝ տօն կը կատարես, եթէ տանք՝ կ՚ընդունիս. եթէ (ապաշխարելու համար) ծանր չարժինք՝ կը համբերես, եթէ մենք ուրանանք (մեր հոգեւոր պարտքերը) Դուն առատապէս շնորհելով կ՚օգնես մեզ. եթէ լքուինք՝ կը տրամիս, եթէ (հոգւով) զօրանանք՝ կ՚ուրախանաս։

Գ. Ինչպէս օրհնաբանութեան հարիւր երկուերորդ հրաշալի Սաղմոսը, որ ինձ նման վհատած մէկու մը սիրտը կ՚սփոփէ և կեանքի մեծ յոյսը կ՚աւետէ (հոգւոյս) փրկութեան համար, որ դեւերուն կը յաղթէ և քսուն (սատանան) կը շփոթեցնէ. որ սքանչելափառ ու պանծալի Տէրունական Խաչին բարեբախտ նշանին նման՝ լոյսի անխոնարհելի բարձրութեամբ և Վերինին (Աստուծոյ) անյաղթելի զօրութիւնովը՝ յաւիտենական անշարժ և անվանելի ախոյեան կանգնած է ամէն տեսակէտով՝ Բելիարի (սատանայ) յոռի բարքերուն բռնութեանը դէմ. որ (102րդ Սաղմոսը) հոգիով կարդացողներու համար օգտակար և հոգեւոր գանձեր կը պարունակէ իր մէջ մահուան պարտութիւն ու մեղքերու քաւութիւն ընծայող. որ երկնակի (հոգեւոր) յոյսեր կը պարգեւէ, երկու աշխարհի համար ալ և կը նորոգէ արդարներու անեղծ մնալուն խոստումը. որ (խոստացումն է)

կեանք տուող և երջանկութեան հրաւիրող կանոնները, որոնք Աստուծոյ հոգիովը գրուած են, ինչպէս Սաղմոսին բոլոր երգերն ալ, որոնք մարդիկներու համար նկարուած կեանքի կտակ կ'երևուն մաքուր սրտերուն։

Դ. Հին օրէնքն իսկ որ տկար օրինակն էր (Նոր օրէնքին), ընդգրկած ունէր (մեղքերու քաւութեան և 102րդ սաղմոսին մէջ ըսուած) այս աւետիսն ու վստահութիւնը, իբր մահուան կործանուելուն նախաշաւիղ մեծ աւետաբերն ու գրաւականը՝ երկնային վերնակենցաղ յաւէտ անճառելի կեանքին։ Այն (հին օրէնքին) գիրը սակայն ջնջուելու ենթակայ էր և (գրուած) օրինակը փոփոխական. անոր պաշտօնն էր յանցաւորները վհատութեան դատապարտել. երկրային կտակը խափանելի էր և միջնորդներու հաշտարարութիւնը տկար. իսկ մաղթողներու խօսքերը թերի էին։ Այնքան աններելի մեղքերէն ետք, [ինչպէս կը վկայեն (Ս. Գրքերը), Մանասէի փրկուիլն իսկ խոստովանելի է, որ՝ մարգարէին անսուտ պատմութեանը համեմատ՝ արդարներու արիւնովը լեցուց մեծ թագաւորին նուիրուած հօրենական հրաշալի քաղաքը (Երուսաղէմը). որ՝ (Մանասէն) մարգարէներուն մեծն իսկ (Եսային) մահուան մեքենայով սղոցելով երկու մասերու բաժնեց ու դժնդակ տանջանքներով մաշեցուց զայն, ան-

հնազանդ գտնուելու դիտումով յոյսի միակ միջոցը կարողի մը՛ պէս. մինչդեռ անիկայ (Եսային) մեծ երախտիքներով ձեռնասու եղած էր (Մանասէի հօրը), նախնիքներէն կտակուած յարկին (տարանքներուն և Տաճարին) խնամողը, պաշտպանն ու տեսուչը իր (Մանասէի) իսկ դաստիարակը և ծերունի ազգականն էր։ Ասոր վրայ աւելցուց նաեւ (Մանասէ) չար մոլեգնութիւն մը։ Վերնայինին (Աստուծոյ) հետ մարանչելու քրէական յանդըգնութիւնը Բարձրեալին.դէմ. որովհետեւ բնաւ չպատկառեցաւ Ստեղծողին պատիւն ու անունը իր բնակած խորանէն մերժել, Աստուծոյ հոգին հալածեց ու Բելիարի անձը դաւանեցաւ։ Տիրական այն տաճարը որ երկրի հռչակաւոր տեսարանն ու ազգերու սարսափելի սրբարանն էր և Աստուծոյ խնկարկութեան սահմանուած, ուր հրեշտակային տեսիլներ և Աստուածային յաղթող հրամաններ լուսաւոր յայտնութեամբ ազդուելով կ'երեւէին, այն երկնքի նմանող, ահաւոր և սքանչելի տեսքով սրբավայրը՝ ճենճոտ դեւերուն զահարան ու զարշելի պաշտօնատեղի դարձուց՝ Աստուծոյ նախանձը շարժող Քեւան անուն չորս դէմքով մէկ պատկերին (կուռքին), որ նմանութիւնն էր անապատի աւերակին։ (Մանասէ) զրկեց՝ երկնաւոր Թագաւորը՝ իր արքայական տեղէն, ամենահարուստ իր ստացուածքներէն, սանու-

տէրը անհանգիստ ու Թափառական դեգերեցաւ։ Բեհեզզգերաւղի տան առաստաղը նկարեց և (Սատուծոյ) անհաւատ անունը տարագրեց (Մանաէ). Գովուածին աւանդը գերի տարաւ և ողբալի կերպով նուաղեցուց բաժինը ողորմածին. լոյսի սրահը՝ փոքրիկ աղուէսին ապարանքն ըրաւ և ամէն բանի տէրը եղողին (Սատուծոյ) ոչ իսկ գլուխը դնելիք տեղ մը յատկացուց Իր բնակարանին մէջ։ Զօրաւորին ցանկապատը կտրեց. (զոհերու) արիւնը սրսկելու յատուկ մեծախորհուրդ սեղանը բախտահմաններու յատկացուց։ Շատ մը լայն ճամբաներ բացաւ գայթակղութեան վազելու համար. հօտը սատկեցնող կորստեան հովիւն ու մոլորութեան բուռն վարդապետը՝ որ քաջ գիտէր կրօնքին օրէնքը իրեն հայր ունենալով Մեծն Եզեկիան՝ Դաւիթի նմանակիցը։

Ե. Իր չար գիւտերուն մէջ այն աստիճան առաջացաւ որ, հայհոյեց ու նախատեց պատիւը Սատուծոյ որ Թագաւորութեան փառքը ընծայած էր իրեն ու աղօթողներու բազմութիւնը մահուան սուրով խողխողեց։ Ընտանի դաւաճան, վատնող ազգական, սատկեցնող հարազատ և կցորդակից սպաննող։ Սատուծոյ չէր կրնար դառնալ, որովհետեւ ուրացած էր զԱյն. Աբրահամը չէր կրնար յիշել, անոր համար որ խորթացած էր անկէ. Իսահակով չէր կրնար աղօթել, նզովուած

էր անկէ. Իսրայէլով չէր կրնար պարծենալ, քանի որ զրկուած էր այն անունով յորջորջուելու մեծախորհուրդ շնորհէն. Դաւիթի երգը չէր կրնար նուագել, ըստ որում կշտամբողն էր անոր. քաւարանին չէր կրնար մօտենալ, որովհետեւ պղծած էր զայն. Աստուածմէ գծուած տապանակին չէր կրնար ապաւինիլ, քանի որ ձուլուած, աղտոտ պատկերին (կուռքին) հետ փոխանակած էր զայն. Մովսէսը չէր կրնար կանչել, որուն հանդէպ ունեցած մեղքը անքաւելի էր. Ահարոնին աղաչելու երես չունէր, որուն դէմ մեղապարտ էր. մերձաւոր մարգարէներու գունդին չէր կրնար դիմել, որովհետեւ սպաննիչն էր անոնց: Եւ անոր (Մանասէի) մեղքերուն քաւութիւն և կրկին թագաւորելու շնորհը պարգեւուեցաւ, որպէս զի, ո՛վ Բարերար, սատուարացնես, չտացընես Քեզ տրուած խելքէ վեր ու անլսելի գովեստները, ազգատոհմ՚իրու և դարաւոր ժամանակներու մէջ. Նաև յոյսին մուտքը բաց պահես Քու բարձր փառքիդ և ինձ դատապարտուածիս փրկութեանը համար, ո՛վ անմահութեան պարգեւներ տուող Քրիստոս, որ յաւէտ գովուած ես, ամէն:



*Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը՝*
*Սրտի խորերէն խօսք առ Աստուած*

**ԾԲ. ԽՕՍՔ**



ՏԻՐԱԲԱՐ օրհնուած ես գոյութեանդ մէջ, որ անփոփոխ է ու չի սահմանուիր, ո՛վ խունկով պաշտուելիք իսկապէս Բարի, ո՛վ խոստովանելի երջանկութիւնը ընդհանուր աշխարհի. երկար յոյսերու ամենապատրաստ իրականացումն ես, ո՛վ Գթա՛ծ Ողորմա՛ծ, դո՛ւն երկար տարիներ գործուած մեղքերու համար՝ աչք թարթելու չափ իսկ ոխ չես պահեր և այս խնկելի նոր շնորհաբաշխութեանդ մէջ, զարմանալի հրաշքներով՝ ամբողջ նախնի ազգերուն պարգեւածներէդ չա՛տ աւելի մէկի տեղ երկու համեմատութեամբ հաճեցար վրաս թափել ողորմութեանդ վերէն հոսած վտակները՝ անսահման առաւելութեամբ։ Ու այն հին (օրէնքին) պատուհանին նեղ լուսամուտները, ուրկէ (հին օրէնքին) գիտութեան չափովը աղօտ նշոյլներ միայն կ'անցնէին ըստ Սողոմոնի, ընդարձակեցիր թէ՛ իրեն (Սողոմոնի) և թէ՛ անոր հետ ինծ թշուառիս համար. բացի՛ր անջրպետի վարագոյրը որ աստուածային ողորմութեան ձրի պարգեւներուն մուտքը

կ'արգիլէր։ Այս շնորհներուդ աւետիսը հին օրէնքին մէջ մասնաւոր յիշատակներով մէջ կը բերէիր և անոր՝ արդի նմանութիւնը օրինակով կը նկարագրէիր, երբ կ'ըսէիր «Ինծի դարձէ՛ք որ՝ ես ալ ձեզի դառնամ» և կամ «Երբ դառնաս (չար ճամբէդ) ու հառաչե՛ս, այն ատեն պիտի ապրիս»։ Նաև Զաքարիայի ու Եսայիի ըսածին նման «Աղջամղջային սեւ գոյնը ձիւնի պայծառութեան փոխելը» և «արիւնով ներկուած մարդիկը բուրդի սպիտակութեան վերածելը» «բարկութեան մէջ դարձեալ կրկնակի ողորմութիւնը», «Իսրայէլի անապատացած քաղաքներուն դարձեալ բնակելի ըլլալը» և «մարդիկներու չգոյութեան պատճառով ճամբաներուն ամայանալն ու կրկին բանուկ դառնալը» և «սովէն հոգիով լքուիլն և դարձեալ ձեռքով զօրանալը», «Աստուծոյ՝ բարկութեամբ իր տեղը երթալն ու ողորմութեամբ դառնալը», «երեսէ ձգելէ ետք օգնելը» ու «սպառնական յանդիմանութիւններու մէջ կրկին պաշտպանութիւնը» ու «արտնեղած ատեն իսկ՝ խնամոտ գթութեամբ յուզուիլը», Քու օրհնուած գալստեանդ ազատարար հրամանը կանխաւ կը հռչակէին մարգարէներու այս խնկելի ձայներով։

Բ. Հին օրինակներն ու նմանութիւնները սակայն՝ փոքր, նուազ և ժամանակաւոր են բաղդատմամբ Քու յայտնութեանդ աւետիսին ու խա-

չիդ փրկագործութեանը, զոր նիւթական լեզուն անկարող է թուել անքաւութեանը պատճառով։ Ամէն տեղ կառուցիր արիւնիդ ուխտին վկայութեան խորանը, որոնք Աբէլի մահուան դատակնիքէն աւելի բարձրաբարբառ կը հռչակեն մկրտութեան, յարութեան, նորոգութեան, Քեզի հետ ընտանենալու, Սուրբ Հոգիիդ հետ միանալու, քաւութեան, (հոգւով) ազատութեան, լուսաւորութեան, մշտնջենաւոր մաքրութեան, ճշմարիտ երջանկութեան և վերնայիններուն հետ՝ անկողոպտելի փառքին մասնակցութեան և ուրիշ բարիքներուդ յաղթանակին հանդէսն ու կրկնակի կեանքին անմահ շնորհները որոնք մեր շրթունքներու ձայնաւոր աղաչանքներն են Բարձրեալին հաշտութիւնը հայցող։ Եւ ինչ որ ամէնէն ահռելի է՝ պիտի ըսեմ հոս, մեծ երախտիքդ յիշատակելու համար, «շնորհին ընտրութեամբը Աստուած իսկ ըլլալ ու աստուածային մարմինդ ճաշակելով ստեղծողիդ հետ միանալ ու լուսեղէն կեանքիդ խառնուիլ» (հնարաւորեցիր մեզ). այս կատարելապէս երջանիկ խոստումը չունէր օրէնքը, ինչպէս կ'ըսէ Պօղոս։ Այլ Դուն, ո՛վ Փրկութիւն եկար Քու հայրենի հարստութեամբդ ըրիր ու կատարեցիր երկարաձգումը յոյսին որ Քեզի համար պահուած էր անհամառօտելի կերպով, ո՛վ ամէնուն Ներող։ Եւ Քեզ Հօրդ հետ փառք, բարեբանելով գովելու համար Սուրբ Հոգիդ, մինչեւ վերջը ամէն։

*Նոյն այն Հովուէն աղբերակից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։*

*Սրտի խորերէն խօսք առ Աստուած.*

ԺԳ. ԽՕՍՔ



՚Վ Տէ՛ր, զօրութեանց Տէ՛րը, բոլոր գոյութիւն ունեցողներուն Թագաւո՛րը, օրհնաբանուած ողորմութիւն, Աստուածը ամէնուն։ Որ լայնատարած ընդարձակութեան սահմանին կը յաղթես. բոլոր անհունութիւններուն չափն ու քանակը Դուն ես, մինչեւ իսկ կարծրը հեղուկ է Քեզ համար եւ լոյծը պնդակազմ, եւ Քու առջեւդ չկայ բան մը որ անհնար ըլլայ, ո՛վ Յաղթող անեղ Զօրութիւն. կրակը զովացուցիչ ցօղ մ'է, եւ անձրեւը՝ այրող բոց մը։ Քարը կրնաս խօսեցնել եւ բանականը՝ անխօս ու անշունչ արձանի փոխարկել։ Աղաչող յանցաւորը կը պատուականացնես ու մաքուր կարծուածը արդարապէս քննելով կը դատապարտես։ Մահուան մօտեցածը բարիքներու ուրախութեամբ կ'ազատես ու ամօթապարտը զուարթ տեսքով պայծառացած կը դարձնես։ Գլորումի որոգայթներուն մատնուածը կը կանգնես ու տեղէն խախտածը վէմիդ վստահութիւնովը կը հաստատես։ Միշտ հառաչող ախտաւորը կ'երջանկացնես ու առաջացածը կրկին ետ կը դար-

ձրնեա։ Ու երբ բարիքներն սպառին մեր քով՝ ուելի զարմանալիները այն ատեն կը գործես. որովհետեւ Քեզի համար՝ գիտես մեղքերը ներել ու անօրէնութիւնները ջնջել և քաւողը ըլլալ անիրաւութիւններուն ու մեր մեղքերը չյիշատակել, ինչպէս կ'ըսեն Եսայի և Երեմիա։

Բ. Այս նոր փրկութեան շնորհներուն սակայն բազմաթիւ գոհաբանութիւններով հետեւելով, անոնց անհունութեան առջեւ՝ հոս լռած պապանձեցայ իսկոյն. ուստի կրկնելով անսպառ բարիքը լոյսիդ՝ որ Քեզմէ (կը շնորհուի) ինձ նման թշուառութեան մէջ յամառողի մը, Քու աղօթքովդ Քեզ կը մաղթեմ, խօսքերուս նիւթը կրկին այս գրքին ողբերգական տառերուն յարմարցնելով և տրամութեամբ ու հեծեծանքներով լեցնելով։ Բայց, Տուողիդ հաճութեամբը առնելով պիտի խառնեմ, ցաւերուն՝ դեղը, վհատութեան՝ խրախոյսը. յուսահատութեան՝ Ստեղծողիդ անուան յիշատակը. ախտութեանս՝ Քու սփոփանքները. իմ դառնութեանս՝ Կեանքտուողիդ քաղցրութիւնը. (հին) օրէնքի պատիժին՝ շնորհը. անէծքի պարտքերուն՝ ազատարար օրհնութիւնդ. մարմնոյ մահուան՝ Քու (շնորհաց) կատարեալ նորոգութիւնդ։

Գ. Զօրաւոր խօսքիդ կը հաւատամ, ուստի կը վկայեմ. ո՛վ Տէր Յիսո՛ւս, մաքի՛կ ըրէ սրտիս

լռութեանը որ հնչումն է Քեզ ուղղուած մեծ ձայնի երկար գոչումներուն։ Որ մարմնակից ու պատկերակից եղար մեզի և իբր Քահանայապետ անօրինակ՝ օրինակին (հին օրէնքին) լուծը խորտակեցիր, մորթուած անասուններուն (զոհ) տեղ՝ բարեբանուած մարմինդ նուիրելով՝ միշտ կը մատուցուիս անմահապէս և անսպառ քաւութիւն կը շնորհես ոչ միայն քիչ մեղք ունեցողներուն, այլ նաև անոնց որոնք յուսահատած են ապրելէ (քաւութիւն ստանալէ). որովհետև եթէ տասը հազար տարի իսկ երկարաձգուի կեանքը մարմնոյ անդամներուն, ո՞րչափ պիտի կարենան մեղքերը մնասել անոնց երբ Դուն, ո՛վ ամէնուն Աստուածը, կամաւ ու յօժարութեամբ մորթուիլը ընդունելով՝ մահուան կը համբերես այնպիսիներուն քաւութիւն բաշխելու համար։ Որովհետև, ո՛վ Մաքրութեան Աղբիւր, չէ թէ պարտական ես ամէն օր մահուամբ պատարագուելու, այլ Քու կամքովդ, Հոգւոյդ գործակցութեամբը, Հօրը հաճութեան և մեզի հետ հաշտուելուն համար միշտ կը պատարագուիս։ Իսկ, ո՛վ ամէնուն անքննելի Աստուածը, իմ մարմնովս, ինձ և իմ փրկութեանս համար (կը պատարագուիս) իմ կողմէս, որպէս թէ Քու էութեանդ ես ալ մարմնով կցորդուած ու միացած ըլլամ Քեզ որ ամէն բան կը պարունակես. և դո՛ւն, ով Բարերար, ինձ համար, իմ կերպարան-

քովս, իմ մեղքերս վրադ առնելով — և Դուն որ անպարտ ես — ինձ նման մահապարտին չարիքներուն պատուհասն եղող մահը ընդունելով, իմ անուամբս իբր յանցաւոր — որպէս թէ Քեզ հետ ես ալ կամաւ պիտի չարչարակցիմ — շատ անգամ կը մեռնիս՝ և կենդանի կը մնաս, ոչ թէ ուրացողներու՝ այլ հաւատքով դաւանողներու ձեռքով Աստուածապէս կը նուիրուիս ու անհատնում մասերու կը բաժնուիս։

Դ. Կուռքերու պաշտօնատար աղօթող մը (քրիստոնէութիւն ընդունած քուրմ մը) կ'ըսէր. Տէր (պատարագին) նկատմամբ մեծ և անկշռելի վճիռ մը կուտար ինձ, յուսադրութիւն մը որ անյարմար էր անոր անձին, «կը հաւատամ թէ յանցաւոր մարմինս թշուառութիւնը ուղղելէ և մարմնաւորութեամբ նահատակուելէ աւելի՝ մեռած ատեն Ս. Հաղորդութիւնը ընդունելով պիտի արժանանայ փառքի ու երջանկութեան»։ Իսկ այս (պատարագի) խորհուրդին անճառելիութիւնը ասով ուղեցի ցուցնել որ անվրէպ կը հաւատար (աղօթողը) թէ. մաքուր անձինք իսկ առանց այս (պատարագի) յիշատակին նուիրման՝ իսկապէս կատարեալ չեն յաւէտ, եթէ այս մեծ հրաշագործութեան չխառնուին հոգւով, «ինձ մեղաւորիս համար կրկնակի պատարագուեցար» ըսելով կը յուսար (աղօթողը) իբրև թէ ճշմարտապէս իմ նա

եղար, իմ դառնութիւնս Քու համեղութեանդ հետ փոխելով պատարագուեցար Քու Նիւթէդ շաղուած լուսաւոր կեանքի Նշխարովդ։ «Աստ հետ մէկտեղ (կ'ըսէ աղօթողը) Վերնատան մէջ կատարուած առաջին շնորհաբաշխութեան տեն՝ իբր դարման անբուժելի (հոգեւոր) ախտերու, անոնց քաւութեանը համար Իր մարմինն ու արիւնը բաշխեց (որով՝ պատարագի խորհուրդը) արժանք նահատակուող մարտիրոսներու առաքինութենէն վեր կը դասէր»։ Յայտի այս օրինակովը հաւատալի կը ցուցնէր (աղօթողը) թէ, այս (հաղորդութեան) փրկանքով աւելի մեծարժէք փառքով պիտի ընդունի զիս (Աստուած), քան թէ երբ (ապաշխարելով) քաւութիւն, ողորմութիւն ու շնորհ առանամ. (անոր համար որ առաջինը կը համեմատի երկրորդին հետ այն չափով), որ չափով որ Աստուածային գթութիւնը (համեմատի) մարդկայինին, Տիրական Աստուածախառն Մարմնոյն կամաւոր նուիրումը՝ անասնական (մարմնոյն) զոհուելուն, Անմահը՝ մահկանացուներուս, ահաւոր լոյսը՝ մեզ շուք եղողներուս, Յաւիտենականը՝ անցաւորներուս, բարձրեալը՝ երկրաւորներուս, չՍտեղծուածը՝ ստեղծուածներուս, իսկապէս Բարին՝ բնութեամբ մոլորածներուս հետ. մանաւանդ որ Իրն է կամենալն ու Իրը՝ կեանք շնորհելը, որ օրհնութեան առիթ կուտայ՝ քան անէծքի պատճառ։

Ե. Արդ ո՛վ Գթած, կ'աղաչեմ, երկինքէն ընծայած կեանքի դեղդ տո՛ւր ինձ որ խոցուած եմ հոգւով ու սրտով. քաղցրութեամբ մօտեցիր ինձ որ ախտացած եմ մեղքով, պարտքերուս թողութիւն շնորհէ՛, ո՛վ ամէն բանի կատարելապէս Կարող։

Իսկ իմ ճշմարիտ և անխաբելի խօսքս այս է թէ, ամէնքը Ստեղծողդ մաքուրներուն մէջ կը բնակիս, և ցանուածին համեմատ քաղելն է արդարացի, ինչպէս ճշմարիտ կերպով կ'ըսէ Պօղոս, և աչքը ցաւողներ՝ ոյժ չեն ունենար արեւին տաքութիւնը վայելելու։ Այլ Դո՛ւն, ո՛վ Բարերար, ամէն բան ոչինչէն Ստեղծող, իսկապէս կենդանանալու բաւական կը սեպես զՔեզ դաւանիլը յաւէտ. օրէնքով սահմանափակուած չես, այլ կը յաղթես՝ մանաւանդ որ կը խզես կապը կանոնին, և Դուն մինակ կը մնաս աւետիսի պայմանը՝ բոլոր շուարած յանցաւորներուն։ Ու Քեզ՝ Հօրդ ու Սուրբ Հոգիովդ մինչեւ վերջը փառք ու իշխանութիւն. ամէն։



*Նոյն այն Հոգւոյն ողբալից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։ Սրտի խորերէն խօսք առ Աստուած.*

## ՃԴ. ԽՕՍՔ

ԱՄԷՆ բանի համար՝ ակնկալողներուն ամէնուն ալ Դուն կ՚ողորմիս, ո՛վ մտքերն ու աչքերը ամէնէն առաջ լուսաւորող Յիսուս. Դուն կը բարերարես ու կեանք և անմահութիւն կը շնորհես։ Գթութեամբ դարձիր ինձ ու պատրաստէ զիս կրկին Քեզ դառնալու բերկրութեամբ։ Որովհետեւ առանց Քու կամքիդ չեմ կրնար փոխուիլ ու նորոգուիլ. ու եթէ Քու կամքդ չը գթայ չեմ կրնար փրկուիլ որ մահուան պատրաստուած եմ, և եթէ Դո՛ւն, ո՛վ Կառավարող, ինծի համար չպատրաստես Քեզի առաջնորդող ճամբան, խոր վիհեր կը պաշարեն զիս աջէն ու ձախէն։

Բ. Ահա չեմ պարծիր ես՝ որ ամէն տեսակէտով նախատուած եմ. չեմ պանծար որ քամահրուած եմ. չեմ խրոխտանար՝ որ լքուած եմ. չեմ մեծ խօսիր՝ որ պապանձած եմ. չեմ ըմբոստանար՝ որ ծաղրուած եմ. երջանիկ չեմ սեպեր զիս՝ որ ողորմելի եմ. չեմ արդարանար՝ որ ամբարիշտ եմ։ Որովհետեւ ձին ընաւ շիտակ չի քալեր առանձ սանձակալի, ոչ ալ նաւը առաջ կ՚երթայ առանց ղեկավարի. ո՛չ արօրը ուղիղ կը

հերկէ տուանց մաճակալի. ո՛չ ալ արօրին լծուած երկուորեակները պատաչանապէս կը քալեն տուանց վարողի. ամպը չի չուեր տուանց հովի. երկինքի լուսաւորները չեն հեռանար կամ դաւմարուիր տուանց (որոշեալ) ժամանակի. ո՛չ արեգակը անդէն փոխուելով շրջանը կ՚ընէ տուանց տարրական օդի և ո՛չ ալ ես անոնց հետ՝ տուանց Քու բարեգործ հրամաններդ ակընկալելու։ Որովհետեւ Դու մինակ բանականներու կեանք կուտաս և արարածներու հոլովման կարգին խնամք կը տանիս և իմ (հոգեւոր) փրկութիւնս Քեզմէ է, ինչպէս կ՚ըսէ Առաքեալը, և Դուն ամէն հաստատ անձանց ականջին կը հնչեցնես սա ուրախառիթ աւետիսը թէ «Իմ հանգստարանս եկէք, ընդհանուր աշխատողներ և ես մաքրեմ զձեզ պարտքերէ»։ Բայց ի՞նչ օգուտ լուացուելէ, եթէ կրկին պիտի աղտոտիմ. և կամ ի՞նչ օգուտ ունի ճաշակելը (Ս. Հաղորդութիւնը) եթէ գեհենին պիտի մատնուիմ։ Ես կամ ինչպէս պարծիմ Աբրահամով՝ երբ խորթացած եմ անոր գործերէն։ Ես՝ որ ինչպէս Մարգարէն իր յանգաւոր ձայնովը կ՚ըսէ ինձ համար, Ամովրհացի հօր և Քետացի կամ Քանանացի մօր աղտոտ զաւակն եմ, և Մարգարէին ինձ ըսած տառածին նման մերժուած ժառանգորդ մըն եմ Եթովպացի և չեմ Սառայի ազնեակէն. եղբայրն եմ Շամրընի (Սամարիա) և կամ Գոմորի. Եզե-

գիշլի կրկնանախատ յանդիմանութեանը համեմատ Սողի և Ողողէբի խակ արգանդէն վիժած երախայ մըն եմ չլուացուած ու չաղուած։

Ալետանջ հովերու բազմավտանգ ծփանքէն տատանկապէս զզուած՝ ուժգին չարչարանքով յաւէտ կը տագնապիմ ծովին մէջ, տարուած ձըգուած եմ ողողող վայրենի վտակի մը մէջ, և ձեռացս մատուըները հոս հոն կը տարուբերեմ, նման անոնց, որոնք՝ գարնան՝ սաստիկ յորդող գետերուն բուռն հոսանքներէն բռնուած մահաբեր վախերով ակամայ կը քաշկռտուին անկէ, ողորմելի վազքով մը գլաօրելով, և կը խեղդուին չնչասպառ եղած իրենց կլլած պղտոր ջուրէն որ ցեխերու, մամուռի արմատներու և խռիւի խառնուրդէն ապականած է ու գարշահոտած։ Այս առակով ես Թշուառս ալ, կը խօսիմ, ու չեմ իմանար. կը կանչեն, ու չեմ լսեր. ձայն կուտան, ու չեմ արթննար. կը հնչեցնեն, ու ականջս չեմ փոխեր. փող կը զարնեն ու չեմ դումարուիր (Աստուծոյ եկեղեցիին մէջ). կը վիրաւորուիմ, ու չեմ զգար. աղտոտ կուռքերուն նման զուրկ եմ բարի զգացումներէ ազդուելէ։ Արդարեւ ես իրականութիւնս, այս օրինակէն աւելի չար եմ յաւէտ իսկապէս, ատելի եմ ու մեղադրելի ու Քրիստոսի ատեանին մատնուելու արժանի։

Դ. Եւ իբր յիշատակը անդառնալի ճամբուն,

աշխարհային մեղքերուն քաւութեանը (համար) այս կտակը թողուցի ընթերցողներուն. որպէս զի իմ խօսքովս միշտ Աստուծոյ աղաչեն. ընդունելի խոստովանութեան այս սահմանը քու առջեւդ իբր յաւիտենական ձայնարկու թող կանգնի, ո՛վ Ամենակալ, գիրը մարմնոյս տեղ և խօսքը հոգւոյս տեղ թող թախանձէ միշտ Քեզ որ անսահմանելի ես, ո՛վ Բարեգութ, Մարդասէր ու յաւէտ օրհնուած, իբր անեղծ մաղթողի մը աղերսներն ընդունէ՛ իմ ձայնովս եղած մաղթանքները։ Ամէն։



Նոյն այն Հոգւոյն ողբերգակից ժողովածներուն
եւ ողբագին հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

---

## ԾԵ. ԽՕՍՔ



ՀՈԳԻՈՅՍ թեւերով ոլոռնալով դէպ ի անհունութիւնըմարդկային ազգին, ամէնուն ալ զգացումները կշռեցի, բայց և ոչ մէկը մեղապարտ գտայ ինձ չափ. այս առթիւ Դաւիթի Սաղմոսին խօսքը ինձ երգ ընտրեցի իբր կծու կերպով յանդիմանող գաւազանաւոր վերակացու թէ՝ «ո՞վ պիտի մրցի ինձ հետ չարիք գործելու մասին և ո՞վ պիտի հաւասարի անօրէնութեան մէջ»։ Իմ մահկանացու անձիս վրայ կնքուեցաւ, ճշդուեցաւ (Սաղմոսի) այս խօսքը, որուն ես ալ կը վկայեմ կրկնապէս հաստատելով (անոր ճշմարտութիւնը). և անոր համար աւելի արդարացի կը սեպեմ որ փոխանակ իմխօսքովս չարերուն (արքայութենէ) տարագրուելուն, ե՛ս մինակ կորսուիմ իսպառ. Թերեւս աւով թողութիւն շնորհես ինձ ալ որ կը ներեմ ինձ դէմ մեղանչողներուն։

Բ. Արդ, ինձմէ անիծուածները՝ օրհնել, (հոգւով) կապուածները արձակել, (մեղքով) դատա-

պարտուածները տապալել, նզովուածներուն բարիք գործել, նախատուածները պատկել, տրտմածները սփոփել, խորտակուածները դարմանել, (ընտանիքներէն) լքուածները խնամել, նենգութեան զոհուածները պատսպարել, մարմնով վիրաւորուածները հոգւով բժշկել մաղթելէ աւելի ի՛նչ հաճոյալի աղերս և խունկի ի՛նչ անուշ ծուխ մատուցանեմ այս պարագայիս որ ընդունելի ըլլայ Քեզ, ո՛վ գովուած երկնաւոր Թագաւոր Յիսուս։ Եթէ մէկու մը համար օրհնութեան խօսքով մօտենամ՝ լսէ՛, իսկ եթէ անէծքով՝ մի՛ ընդունիր, ո՛վ Գթած։ Ես որ ամենաթշուառ տառապող մ'եմ, աղօթագրքիս այս վերջին մասին մէջ կատարեալ սրտով ներեցի ինծի դէմ մեղանչողներուն, աղաչելով Քեզ որ անիծելու դառն իղձիս չարաշուք ձայնին կարեւորութիւն չընծայես. և ինչպէս ինծի բարիք ընողներուն, նոյնպէս ալ ինծի դէմ նենգութիւն գործողներուն համար հաշտութիւնդ խնդրեցի կատարեալ սրտով, անոնց համար ծնրադրեցի ու պաղատեցայ։ Արդ հապա Դուն որչա՞փ շուտ պիտի այցելես ինծի ու Քու մեծութեանդ համեմատ պիտի ողորմիս, ո՛վ գովուած խնամակալ որ կեանք ես հանդէպ ինծի մահկանացուիս. Հզօր՝ հանդէպ ինծի տկարիս. Ամենակարող՝ հանդէպ ինծի շուարածիս. Իմաստութեան Աղբիւր՝ հանդէպ ինծի թմրածիս ու յիմա-

րիս։ Որովհետեւ յաւէտ սխալելով՝ մութին մէջ խարխափող անվարժ լուղորդի մը նման, մահուան ծուղակը ինկայ անզգալաբար, կորուստը չիմացայ, որոգայթը չգիտցայ, չտեսայ որսացող ծածուկ մեքենաները, կեղծաւոր վարմին խաբեպատիր երեւոյթէն չկասկածեցայ, շրջապատող գայթակղութիւնները չի նշմարեցի, չշօշափեցի անմիջական կերպով բռնող ցանցը կարթին. Սաղմոսին ըսածին նման, չարիքներ հասան վրաս ու ես չկրցայ ճանչնալ։

Գ. Ինչպէս որ օտար իմաստակ մը՝ պատճառը չհասկնալուն համար՝ լոր ըսելը աղէկ սեպեց մահուան, ես ալ իմ խօսքովս կը հաստատեմ (անոր ըսածը), որովհետեւ անզգայ անասուններու նման կը մեռնինք ու չենք վախնար. կը կորսուինք ու չենք ահաբեկիր. կը թաղուինք ու չենք խոնարհիր, կը տարագրուինք ու չենք տագնապիր. կ՚աւրուինք ու չենք զղջար. կը մաշինք ու չենք խրատուիր. կը պակսինք ու չենք պատրաստուիր. կ՚երթանք ու չենք զգուշանար. գերի կը տարուինք (հոգւով) ու չենք զգար։ Իսկ մարդուս վախճանին (մահուան) համար երջանիկ Յոբին հանգէտ ըսելը ես ալ կը խոստովանէի Սուրբին հետ, եթէ մահացու գործերու աշխատութեան բեռներ ստանձնած չըլլայի։ Մանաւանդ որ որոգայթը գաղտնի է (մահուան) և հնարքը աներեւոյթ. Ներկան արժէք

չունի, անցեալն անյայտ է ու ապագան տարակուսելի. ես անհամբեր եմ և (մարդկային) բնութիւնը թերահաւատ. ոտքերը անհաստատ են ու մտքերը ցնդած. կիրքերը զօրաւոր են ու բարքերը անժուժկալ. մարմինը մեղքով մակարդուած է ու յօժարութիւնը աշխարհայիններուն հակամէտ. (բարի գործերու դէմ) կռուիլը բնական է, իսկ անոնց հակառակիլը խառնուածքին մէջ կայ արդէն. (մարդուս) բնակարանը հողեղէն է և անձրեւները ամէն բան քշող տանող են. անթիւ արկածներ ու ամէն բան ոչնչացնող (հոգեկան) պատահարներ. միտքերը չարութեամբ սնած են ու փափագները՝ բարին ատելու հակամէտ. կեանքը առօրեայ է ու վայելքները կարճատեւ. յիմարական խաբկանք ու աղայական խաղալիք. պարապ աշխատութիւններ ու երազական հաճոյքներ. ոչնչութիւններու ամբարանոց ու հովերու պահեստ. չուքի նմանութիւն ու ծիծաղելի կերպարանք։ Որովհետեւ Պօղոսին ըսածին նման, երբ պատուէրը եկաւ հասաւ, զիս անպատրաստ գտնելով իրեն, մեղքերը արդարութիւններէն յանդիմանուելով կենդանացան ու ես կեանքի մէջ մեռայ ու կորստեան մէջ կենդանացայ։

Դ. Գրքին (Յոբ) կանուխէն ըսածին նման, չարին օտար գումարտակները սրտիս զգացումներուն մթերքը գողցան, որով — ինչպէս կ՚ըսէ

Առակողը— իմաստութիւնն ակատ Նուազիլ իմ մէջ և չարի ցանկութիւնն աւելնալ։ Հոգիիս աչքը կեանքիս գլխուն՝ Քրիստոսի չյառեցի, որով կարողանայի չիտակ ճամբուն հետեւիլ։ Որովհետեւ սաստիկ վազել ուզելով՝ խորապէս ընկղմեցայ. անչափին ձգտելով՝ իմինիս չհասայ. մեծագոյնին հասնիլ տենչալով՝ հոս իսկ գլորեցայ. երկնային ճամբուն աչք տնկելով՝ անդունդներուն մէջ ինկայ. երբ աւելի կ'զգուշանայի, յաւիտենապէս մեղանչեցի. երբ անարատ պահուիլ կ'ուզէի, մանր կերպով խորտակուեցայ. ձախին հետ մրցիլ կարծելով՝ աջը ձգեցի. երբ երկրորդը խուզել կը տենչայի՝ առաջինը կորսնցուցի. երբ քիչն ալ ձեռք անցընել կը հետամտէի՝ կարեւորէն զրկուեցայ. ուխտը պահել ուզելով (քրիստոնէական)՝ դաշինքին դէմ դրժեցի. սովորութիւններս դադրեցնել ուզելով, կորսնցնողները (ունակութիւններ) գտայ. երբ պզտիկներէն կը փախչէի՝ աւելի մեծերուն (մեղքի) մատնուեցայ. ինչ որ ես ինձմէ ստեղծած էի, անողոք դատախազ կանգնեցաւ անձիս։ Որոնցմէ Դուն մինակ կրնաս փրկել զիս, — որ դատապարտուած գերի մ'եմ— կեանքի մօտեցնելով մահուան մատնուած հոգիս, որովհետեւ Դո՛ւն միայն, ո՛վ տէր Յիսուս, Բարերար կը ճանչցուիս, որ անսահման փառքով Հօրդ ու Սուրբ Հոգւոյն հետ մինչեւ յաւիտեան օրհնուած ես. ամէն։

Նոյն այն Հոգւոյն ողբերգալից մաղթանքներուն ու աղօթական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած

## ԾԶ. ԽՕՍՔ

ԻՍԿ վարը՝ մանրամասն կերպով իրենց անուններովը պիտի նշանակեմ մահուան պատճառները, որոնք ընտանի թշնամիի, հակառակորդ եղբօր ու դաւաճանող զաւկի նման դառն պտուղներն են մարմնոյս որ ծառ մ'է դժոխային արմատով. ահաւասիկ անոնք են (մահուան պատճառները)։

Բ. Պարապ բան խորհող սրտեր. չարախօս բերաններ, անամօթ նայուածքով աչքեր. յուռին մտիկ ընող ականջներ. մեռցնելու համար երկարած ձեռքեր. անմաքուր երիկամունքներ. մոլոր ճամբէ գնացող ոտքեր. աներկիւղ ընթացքներ. խոտոր հետքեր. ծուխով խառնուած շունչեր. խաւարային գնացքներ. գոյութիւնը վէմի նման (կարծր, անգութ) լեարդի. անհաստատ խորհուրդ. անկայուն կամք. անփոփոխ չարիք. չփոթ բարեմասնութիւն. աղարտուած անձ. ծախուած աւանդ։ Վիրաւոր գազան, նետով զարնուած թռչուն. քարկոծուած փախստական. ձերբակալուած ոճրագործ. ծովին մէջ խեղդուած աւազակ։ Խարդախ զինուոր (մեղքի), անպատրաստ կռուող (սատանին դէմ), անհամբեր սպառազէն (ցանկու-

թիւնով), ծոյլ մշակ։ Առանց քաջալերուելու՝ աղօթող, սորնաքարշ բե ական, անխունկ քահանայ. աննուէր Օրինական. Յանդիմանուած դպիր, խելագար իմաստակ, «նճռունի ճարտասան։ Անպատկառ կեցուածք, ան օթ դէմք, լպիրշ երես, զզուելի գոյն, տմարդի իպար, ծաղրելի գեղեցկութիւն։ Աշխած կերակուր, գանելիք համ, գաղձով (եափըրշկան) լեցուած այգի, որդնոտած որթ, փուշ բուսցնող պարտէզ, ուտիճներէ փճացած հասկ, մուկերէ կերուած մեղր, անպատսպար՝ անկեալ։ Յուսահատ սնապարծ, նզովուած՝ անհամոզելի, անհաշտ՝ բժնուած, ունայնաքան չաղակրատ, անասունի մտքով գոռող, անբան կենդանիի պէս չար, դժ խային ագահ, անսանձ՝ յանդուգն։ Մոլեգնած՝ անսաստուած, սպանութեան համար ձեռք երկ ցնող, փուշ ցանող երկբագործ, ողորմելի երջ նկութիւն, վատթարացած մեծութիւն, անշքա ած վայելչութիւն, ակարացած կարողութիւն, ցածցած բարձրութիւն, ոտնակոխ եղած փառք, տեւական պատուիրանազանցութիւն, կամաւոր սխալմունք, ծուռ ձեռք մատակարար, խարդախ խորհրդակից, զատուած բարեկամ, գողնալ մտադրող վերակացու, կծծի ազգական, ժլատ բաշխող, ծուռ մէջք վերատեսուչ, անկարեկից հոդի նսէր իղձ, սաղ բարք, անգութ աղիքներ, ան հեմ ընթացք, վնասուած

անհրեւոյթներ, անիծուած ծածուկներ ու թշնամուած պատահարներ: Վատնող վաճառական, շուայտ շահադէտ, գինեմոլ պաշտօնեայ, անվստահելի գանձապահ, քսու պատգամաւոր, մրափող դռնապան. Հպարտ աղքատ, ուրացող հարուստ. անօրէն դիւանապետ, (հոգին) մատնող պահապան. միեւնոյն բնակարանին մէջ ապրող չարախօս, չհասնող սուրհանդակ, պարտաւոր թղթաբեր, խռովարար առաքեալ, անխելք միջնորդ: Զրկող զօրավար (հոգեւոր), կողմնակցութիւն ընող դատաւոր, ինքնագլուխ ռամիկ: Նախատողի ծառը. սիրելիի ողբ, բանտարկեալի պարտաւանք, յանդիմանող ամբաստանութիւն: Որովհետեւ (վերը յիշուած) վեհագոյն անուանակոչութիւններէ շատին արժանացած էի երբեմն, իսկ յոռեգոյններէ շատերն ալ եկան հասան վրաս:

Արդ՝ այսքան ստուարաթիւ խարէութեանց չարիքներէն ոմանցմէ խուսափեցայ իբր յիմար և ոմանց ալ տիրապետութեան տակ ընկճեցայ իբր տկար, կամքովս մահուան մատնելով անձս:

Դ. Արդ իբր պաշտօնի ծառայութիւն ո՞րը մատուցանեմ Քեզ վերը գրուածներէն՝ որոնք ատելի են Քեզ և իմ կորսուելուս պատճառ, աղտեղութեամբ շրջապատուած ո՞ր մէկը Քու ամենասուրբ մեծութեանդ դէմ կանգնեցընեմ. և կամ ո՞րչափ համբերութեամբ պիտի հանդուրժես այս-

քան մեղքերու, ո՞րչափ պիտի ներես, ի՞նչպէս պիտի լսես, ի՞նչպէս պիտի մարկ ընես իսկ. գաւազանի հարուածներուն ի՞նչպէս պիտի չենթարկես զիս որ արժանի եմ մահուամբ սատկելու։ Արդ՝ խաւարի այս աննշոյլ մթութեան մէջ մնացած հոգիներուն Քու ողորմութենէդ լոյսը ղրկէ՛ ո՛վ անվթարելի զօրութիւն, բժշկելու, քաւելու և կեանք շնորհելու համար. և ամէն առթիւ Քեզ փառք թող մատուցուի, Ամէն։



*Նոյն այն Հոգիին աղերսալից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։ Սրտի խորերէն խօսք առ Աստուած.*

## ԾԷ. ԽՕՍՔ



Ո՛վ Քրիստոս Աստուած, ահաւոր անուն, մեծութեան տեսակը, անքննելի բարձրութեան պատկերը, անսահմանելի զօրութիւնը, փրկող լոյսին կերպարանքը, կեանքի պաշտպանը, երկնային հանգիստի արքայութեան դուռը, հանդարտութեան ճամբան, նոր ու անտխրական երջանկութեան ապաւինութիւնը, բոլոր արարածներու ամենակարող ինքնիշխանութիւնը, օրհնութեան կոչումը, աւետիսի ձայնը, ուրախութեան խօսքը, անմահութեան դեղն ու միակ Աստուծոյ անճառելի Որդին ես։ Ինչ որ ինձ անհնարին է, Քեզ դիւրին

է. ինչ որ իմ խելքէս վեր է, Քեզ համար ստոմանուած է. ինչ որ ինծի անանցանելի է, մօտաւորագոյն է, Քեզ համար. ինչ որ ծածուկ է ինծ՝ եղկելիիս, յայտնի է Քեզ, ո՛վ Երանելի, ինչ որ անկարելի է ինծ, Քեզ համար կատարուած է. ինչ որ անկշռելի է ինծ, չափուած է Քեզ համար, ո՛վ Անճառելի. ինչ որ յուսահատութիւն կ'առթէ ինծ, Քեզ սփոփանք կը պատճառէ. ինչ որ անքուժելի է ինծ, անվտանգ է Քեզ համար. ինչ որ հեծեծանք կը պատճառէ ինծ, Քեզ ուրախութիւն կ'առթէ. անոնք որ ծանր են ինծ, խիստ թեթեւ են Քեզ համար. ինչ որ աւրուած է ինծ, գրուած է Քեզ համար, ո՛վ Զօրեղ. ինչ որ կորսուած է ինծ, Քեզ համար պահուած է. ինչ որ իմ խելքէս մաքէս վեր է, Քու առջեւդ համբուած է. ինչ որ մթնշաղ է ինծ, ճառագայթ է Քեզ համար. ինչ որ անթիւ է ինծ, Քու օրհնեալ ձեռքիդ մէջ ամփոփուած է. ինչ որ սոսկալի է ինծ, Քեզ հեշտալի է. ինչ բանէ որ ես կը փախչիմ, Դուն կը վանես զայն. ինչ բանի որ ես չեմ կրնար մօտենալ, Դուն դիւրաւ կը վռնտես զայն, ինչ որ մահաբեր է ինծ, Քու զօրաւոր անձիդ համար գոյութիւն իսկ չկրնար ունենալ։

Բ. Բայց Դուն ո՛վ ամէնուն ողորմած Աստուածը Տէր Յիսուս Քրիստոս, եթէ գթաս, այս

պարտագայիս ալ կրնաս (հոգիս) փրկելու հնարք մը գտնել. Քու օրհնուած Հօրդ անուան մեծ փառքին, և Սուրբ Հոգիիդ գթոտ կամքին համար, տաժանելի մեղքերուս բացարձակ պարզուած յայտնութեանը և սրտիս խորերէն իմ անձիս համար ինքնաբերաբար ըրած ամբաստանութեանս նայէ, նկատողութեան առ բնութեանս մէջ գըտնուած ըմբոստութիւնն ու միտումը չարին, ու վէրքերուս բժշկութիւն, կորստեանս՝ (փրկուելու) հնար, բազմակողմանի մահուընէս՝ ազատութիւն, ապականած կեանքիս՝ ճամբայ, եղծուած (հոգւոյս)՝ նորոգութիւն և լոյսի մուտք պարգեւէ ինծի որ ամբարշտացած եմ։ Եթէ ես աննման կամք մը ցուցուցի ինծի համար, հապա Դուն ո՞րչափ աւելի բարերարութիւն պիտի ցուցնես որ ընտանի է Քեզ և բնական. եթէ անուշ պտուղ քաղուեցան փուշերէն, ո՞րչափ աւելի անմահութեան ճաշակ պէտք է ընծայէ կեանքի Ծառդ. եթէ ես ինծ ատելի եղողներուն համար ողորմութիւն մաղթեցի, Քու անսպառ առատութենէդ ի՞նչպէս կրկնապատիկ պիտի չմատուցանես ինծ, որ քուկդ եմ, ո՛վ Հզօր։

Գ. Արդ՝ Քու մեծութեանդ ու իմ փոքրկութեանս նայէ, ո՛վ Բարձրեալ, անթիւ մեղքերուս համար ըրած քիչ խոստովանութիւնս ընդունէ՛, Դուն որ ամէն բան կը տեսնես. և ինչպէս որ

վէմին գլուխը (Պետրոսի ուրացումը) անտես ըրիր, նկատողութեան մի՛ առներ նաև իմ խախտիլս ալ որ աւաղի փոքր հատիկ մ՚եմ, և ինչպէս որ իսկոյն մեղքի պատիժը անցուցիր, երբ մեղայ ըսաւ Դաւիթ, իմ հառաչանքի ձայներուս հանդէպ ալ նոյն համբերութիւնը ցոյց տուր. Դուն որ քարի և խեցեղէն յաղթողի մը նման, աստուածապէս կուտաս ամէնուն ալ՝ անաչառութեամբ և իբր Ողորմող ու ամէնքը Ստեղծող՝ յետին ստրուկն իսկ չե՛ս նախատեր. Քու արիւնովդ բժշկուածներն ու ստինքովդ սնածները մի՛ կորսընցներ, այլ ընդունէ՛ կրկին ո՛վ Գթած։ Որովհետեւ Դո՛ւն կը փրկես ու քաւութիւնը Քեզմէ կը շնորհուի և ամէն առթիւ միշտ փառք կը վայելէ Քեզ, ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու ողբաձայն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.
Սրտէ խորերէն խօսք առ Աստուած.

## ԺԸ. ԽՕՍՔ



ՈՒՐԲ Հոգիիդ հաճութեան կամքովը՝ Հօր հետ օրհնուած ես ով Տէ՛ր Յիսուս. և բոլոր օրհնուածները Քեզմէ օրհնուեցան՝ որ օրհնուած ես. ո՛վ Օրհնուածին որդին միակ Օրհնուածը. Քեզմէ զատ ուրիշ (հոգեւոր) Թագաւոր չունիմ հոգիիս վրայ Իշխող՝ ո՛վ Յիսուս։ Յակոբին օրհնութիւնը այս է կ'ըսէ Եսայի. երբ անոր մեղքերը վերցնեմ։

Բ. Արդ՝ Քուկին սովորութեանդ համեմատ ողորմէ ինձ ո՛վ բարեգութ Տէ՛ր և Քու այս բանական անօթդ օրհնէ՛ Դաւիթի ու Մովսէսի խօսքին համեմատ որպէս զի խօսքովդ փրկութեան հասնելով, Քեզմէ օրհնուիմ ու քաւութեան արժանանամ։ Աստուածութեամբդ հրաշք գործէ՛ ինձ համար ո՛վ Ողորմած երկնաւոր Թագաւոր. ինչպէս որ ըրիր Բեթհեզդայի աւազանին մէջ հաւաքուած և երկար տարիներէ ի վեր անկողնի խշտեկին մէջ ինկածներուն։ Անոնցմէ մէկն էր նաև երեսուն ութ տարիներէ ի վեր անդամալուծուած՝ ախտացած այն կրկին Թերահաւատը, որուն իսկ չխնայեցիր

բժշկելու ձեռնտուութիւնդ․ իբր թէ գիտնալով անբուժելի չարութիւնը որ անիկայ (անդամալոյծը) նիւթեց Քեզ՝ Մարդութեան դառն գիշերը՝ կռուըտելով․ Քեզ հետ որ անոր Տէրը, Երախտաւորն ու Մեծ Բարերարն էիր։ Զոր (բժշկուած անդամալոյծը) թէև կանխաւ զգուշացուցիր ըսելով թէ «մի՛ մեղանչեր, որ դարձեալ չկրկնուին չարիքներդ» սակայն անիկայ չդադրեցաւ՝ զՔեզ Խաչին վրայ դատողներու նախայարձակն ըլլալէ։ Եւ Դուն անանկ անկարող, անչարժ, մահուան դուռն հասած չարաչուք մարդուն իսկ ողորմեցար, ո՛վ անճառելի բարութիւն, հրաշալի՛ մարդասիրութիւն, տարսափելի՛ ներողութիւն, սոսկալի՛ համբերութիւն, անհո՛ւն քաղցրութիւն, փառաւորուելի՛ք հեզութիւն։ Դուն որ միշտ գթութենէ կը յաղթուիս, սակայն չե՛ս թշնամանուիր․ ողորմութենէ կը պարտուիս, սակայն չե՛ս պարսաւուիր․ մարդասիրութենէ կը բռնադատուիս, բայց չես արհամարհուիր․ բարութենէ կը հարկադրուիս, բայց չես հայհոյուիր․ սէրէ կը ստիպուիս բայց չես բամբասուիր։ Կը պաղատիս որ Քեզի դառնամ ու չես ձանձրանար․ արագ կերպով կը հաճիս ինձ՝ աննկնազանդիս ու չե՛ս լքանէր․ ձայն կուտաս ինձ որ չեմ լսեր, ու չե՛ս սրդմտիր․ փոյթ կը տանիս որ թուլացած եմ և չես դադրիր։ Զարերուն համար Բարի ես, պարտականնե-

րուն՝ Ներող, մեղաւորներուն՝ Քաւող, մթնցածներուն՝ Լոյս, մահացածներուն՝ Կեանք։

Գ. Հոգեշունչ և օգտակար գրքերուն ամէնքն ալ այս իմաստով են, որոնք յաճախ մտքէ վեր և զարմանալի երկնաւոր պտուղներ կը ծնին։ Ո՜վ ամէն բան Պարգեւող Օրհնուած, ինձ թշուառիս ալ ըսէ «ե՛լ, մեղքերու անկողնիդ խշտեակն ա՛ռ այս (հոգեւոր) կործանումի տեղէն ու հետեւելով հասի՛ր անաշխատ կեանքի անդորր հանգստութեան»։ Դժոխային կապանքներուս երիզով ամրացուած մահազդեստ պրկումը խօսքիդ հրամանին ամէն բանի կարող սուրովը խզէ՛ և քակէ՛ հոգիս հանելու տարիճան սաստկութեամբ զիս խեղդող հանգոյցները՝ Դու կեանք շնորհող Աստուածային խօսքովդ երկնային անվերջ բերկրանքին ազատութեանը մէջ ղրկելով զիս որ մեռնելու արժանի եմ։ Կամաց կամաց մի՛ ազդեր, ո՛չ ալ որ աւուր երկարաձգէ, որպէս զի մեղքիս բեռներուն ստուար ծանրութիւնը, չճնշէ թիկունքներուս ու կռնակիս վրայ ու կործանելով չծռէ զիս որ դժոխքը տեսնեմ, և սաստիկ բռնութեամբ անկարող դարձնելով զիս հոգեւորական զէնքերու փարելու՝ մահուան չծառայեցնէ։ Այլ մահուան դառն ցաւերու հեծծանքիս մէջ օգնէ ինձ ո՛վ վշտակից Բարի. ինչպէս Երբեմն յոյժ պահակէն (Սիմօն Կիւրենացի) առի՛ր, ինձմէ ալ ա՛ռ

սատակումի փայտը. որով կանգնէ՝ քաջարի զօ-րութեան յաղթանակին վայելուչ եղածը (կոթողը) յոյսին կարծրութիւնը հաւատքին պնդութեան հետ Քու վրայ գամելով անխախտ կերպով։ Եւ Քեզ՝ Հօրդ ու Սուրբ Հոգիիդ հետ փառք և իշխանու-թիւն կը վայելէ ամէն։

Նոյն այն Հոչողէն ողբերգալից մաղթանքներէն ու ողբախառն հեծեծանքներէն նո՛ր յաւելուածը։
Սրտէ խորերէն խօսք առ Աստուած.

## ԾԹ. ԽՕՍՔ

ՀՈԳԻԻՍ Քեզմէ ազդուած իմացական տե-սութեամբն ու մտքիս գիտութեամբը կը հաւատամ ու կը վկայեմ թէ, արդարներու խնդ-րուածքէն աւելի՝ մեղաւորներու աղաչանքներն ըղձալի են Քեզ ո՛վ Բարերար։ Որովհետեւ մէկը իր անձին պարտութիւնը յայտնելով Քու շնորհիդ կ՚սպասէ և գիտնալով չափը մարդկային բնու-թեան՝ մեծ յանդիմանող մը կը դառնայ ու ինքն իրեն հետ կռուըտելով դառն ամբաստանող ու գաղտնապէս գործուած մեղքերը տեսնող դատա-խազ մը կ՚ըլլայ (իր իսկ անձին դէմ)։ Իսկ միւսը իր բարեգործութիւններուն արդիւնքին նայելով ինքն իրեն վստահելու կը յաւակնի, մարդկային բնութեան սահմանը՝ կը մոռնայ և ողորմութենէ

աւելի պարգեւի աչք կը տնկէ։ Որովհետեւ մէկուն համար անթիւ ճառեր ստեղծուած են որոնք Քու ողորմութեանդ ձայնը փողով կը հնչակեն. իսկ միւսին համար՝ դադրած են Քու ողորմութիւններդ, ո՛վ ամէնքը Խնամո՛ղ, Ահաւո՛ր ու Անքըննելի — և կ'ամչնամ ըսելու — երկրաւորներու (մարդոց) գործերուն պատմութիւնը առաջացած (հռչակուած) է Քուկիններէդ աւելի։ Ուրեմն եւ ո՛վ Տէր, ու Քուկինէդ աւելի թող չզօրանայ աջը հողեղէնին. Քու ողորմութիւններդ մարդկային ջանքին հետ թող չզուգակշռուին։

Բ. Անդամով առողջ եղողները կարօտ չեն բժշկութեան. և անոնք որոնց աչքերը կը տեսնեն պէտք չունին առաջնորդի. և հարստութեամբ փարթամացածները չեն դեգերիր մեծատուններու դռները, և կատարելապէս յղփացածները չեն սպասեր սեղանի հացին փշրանքներուն. և վարքով սուրբ եղողները անկարօտ են ողորմութեան։ Արդ ո՛վ Բարձրացած Երկնաւոր Հզօ՛ր, գթա՛, ողորմէ՛ ինձ որ ամենատխուր չուարած մ'եմ։ Որովհետեւ եթէ Յոբին պէս ըլլայի, անոր նման «արդար և անարատ» կ'ըսէի անձիս համար. եթէ Մովսէսին պէս՝ վստահութեամբ կ'ըսէի անոր խօսքը թէ «Տէրը կը ճանչնայ իրենները». եթէ Դաւիթին պէս՝ կ'ըսէի «իրաւունք ու արդարութիւն գործեցի». և դարձեալ՝ մարմնոյ բնութենէն մեծը (Դա-

ւիթին խօսքը Սաղմոս. ԿԵ. 17) «Եթէ սրտիս մէջ մեղք տեսնէի, Տէրը պիտի չլսէր ինձ»։ Եթէ Եղիային պէս ըլլայի, անձիս համար «Աստուծոյ մարդը» կ'ըսէի. եթէ Երեմիային նման ըլլայի, զքեզ ճշմարտապէս կ'օրինակէի անձիս վրայ. եթէ Եզեկիային պէս ըլլայի, բարիքներուս վրայ կը պարծենայի իրաւամբ թէ «արդարութեամբ քալեցի քու առջեւդ». իսկ եթէ Պօղոսին նման ըլլայի, ինձ համար կ'ըսէի «Աստուծոյ խօսքին ընդունակարանը, ազդարանն ու ընդունարանը»։

Ես՝ սակայն՝ որ անօրէն մ'եմ գիտութեան օրէնքներուն մէջ, ոչ միայն անոնց նման յարգական խօսքերով չեմ կրնար անձս Քեզ ընծայել և ամբողջ չարիքներս անոնց բարիքներուն նման Քու առջեւդ յիշատակել, այլ և ոչ իսկ կրնամ ամէն արարածներէն բարի հռչակուած զօրաւոր անունդ ամբարիշտ լեզուովս գովել։ Իսկ Դո՛ւն որ ամէն հնարք գտնելու մասին զօրաւոր ես, փրկութեան հոգի, պաշտպանութեան աջ, այցելութեան ձեռք, բարութեան հրաման, ողորմութեան լոյս, նորոգութեան խօսք, քաւութեան պատճառ, կեանքի օգնելու գաւազան շնորհէ ինձ։ Որովհետեւ ապաւինութեան յոյսը Դո՛ւն ես, ո՛վ Տէր Յիսուս Քրիստոս, որ Հօր ու Սուրբ Հոգիովդ մէկտեղ օրհնուած ես միշտ։ Ամէն։



Նաև այն Հաչողին աղերսալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք ու Աստուած։

Կ. ԽՕՍՔ

Որովհետեւ, ինչպէս կանուխէն սորվեցայ ճշմարիտ առակէն թէ «Օրհնաբանութիւն չի վայլեր մեղաւորին բերնին», արդ ինչպէ՞ս դարձեալ կրկնեմ նոյն գովութիւնը ես, որ խիստ ամօթապարտ աղաչող մ'եմ ու միշտ անէծք կ'ընդունիմ բարեպաշտիկ սաղմոսերգութիւններուս տեղ։ Ինչպէ՞ս երգեմ յանցանքներս ու նախատինք արձանագրեմ ինձ համար, ու մերկ գրկիս մէջ չուչաններու հետ փուշ ժողուեմ։ Ի՞նչպէս համարձակիմ Դաւիթին հետ ըսել թէ «մեղաւորներուն ակռաները պիտի փշրես»։ Դարձեալ ի՞նչպէս ըսեմ թէ, «անօրէնները աչացդ առջեւ թող չբնակին»։ Ի՞նչպէս՝ թէ «արդարութեանդ համեմատ դատաստան ըրէ ինձ, ինչպէս նաեւ իմ անմեղութեանս համեմատ»։ Ի՞նչպէս թէ՝ «չարիքները մեղաւորներուն վրայ պիտի կատարուին»։ Ի՞նչպէս՝ թէ, «մեղաւորներուն ու չարերուն բազուկները պիտի խորտակուին, են.»։ Ի՞նչպէս՝ թէ, «մեղաւորներուն վրայ կրակ, ծծումբ և որոգայթ պիտի տեղայ»։ Ի՞նչպէս՝ թէ, «Տէրը պիտի սատկեցնէ նենգաւոր շրթունքներն ու մեծ խօսիկ լեզուները»։ Ի՞նչպէս՝ թէ, «փորձեցիր սիրտս ու անիրաւութիւն

չգտար»։ Ի՛նչպէս՝ յաջորդը տար թէ, (Սաղմոսին) «ես խիստ ճամբաներով պահեցողութիւն ըրի»։ ինչպէս՝ նաեւ թէ, «արդարութեամբ երեւամ Քու երեսներուդ»։ Ի՛նչպէս՝ թէ, «ես ալ անբիծ ըլլամ անոր հետ»։ Ի՛նչպէս ըսեմ միւսը թէ. «Տէրը իմ արդարութեանս ու ձեռքերուս մաքրութեանը համեմատ թող հատուցում ընէ ինծի»։ Ի՛նչպէս ես ինքս ծաղրեմ իմ իսկ ստութիւնս Սուրբին հետ ըսելով թէ, «ձեռքս լուամ մաքրութիւնով»։ Ի՛նչպէս բամբասեմ ամբարիշտներուն աթոռը՝ երբ անիրաւութեան մէջ եմ։ Երջանիկին պարծանքները ի՛նչպէս յարմարցնեմ թշուառ անձիս թէ «դատաստան ըրէ ինծ Տէ՛ր, որովհետեւ անմեղութեանս մէջ քալեցի»։ Ես որ բարիքներէ հեռացած եմ ի՛նչպէս խնդրեմ արգահատանքդ՝ որ ամէն գաղտնիք գիտես ու ըսեմ թէ. «ամբարիշտներուն կարգը մի դասեր զիս»։ Երբ ես ինքս եմ մեղաւորը՝ ի՛նչպէս անիծեմ ուրիշները թէ. «իրենց գործին համեմատ տուր անոնց. Տէ՛ր» և այս կարգի խօսքեր ըսել համարձակիմ։

Բ. Որովհետեւ եթէ (Ինչ Սաղմոսին) վերջի խօսքերը առջիններուն հետ հօս դնեմ, կրկին կը ծանրանան ցաւերս ու կը բազմապատկուին դառնութիւններս։ Բայց ես կուտակուած արցունքներէն քիչ մը բան չափելով, կը բաւականանամ ամենօրեայ յանդիմանութիւնովը Սաղմոսարանին

ընտանի ձայնին որ մեղապարտները կը յանդիմանէ միշտ. որոնց հետ նաեւ քառասունըիններորդ (Սաղմոսին) հատուածին վերջաւորութեան յանդիմանող խօսքը զիս զզուելի ցուցնելով կը խայտառակէ միշտ. գոցելով բերանս որ չփառաբանեմ՝ ողորմելի կը ցուցնէ անձս. Աստուածային ձայնովը ամբաստանելով կեանքի ակնկալութենէն կը յուսահատեցնէ և միեւնոյն ժամանակ պատնէշէ նետուածի պէս մահացու քարեր կ'ուղղէ ինձ. Որովհետեւ եթէ օտարէն անէծք առնելը չարիք մ'է, հապա որչափ աւելի մեծ չարիք է ինքզինքն անիծելը. իսկ եթէ մօտաւորներէ նախատինք չառնելը օրէնք է. ուրեմն Տեսողէն (Աստուած) զայն (նախատինք) սպասելը. որեան զաւերու տառապանք, աղէտալի վիշտ ու մեծ մըտատանջութիւն է։ Իսկ եթէ մէկը իր անձը խոնարհեցնելու համար հարուածէ զայն ու իր լեզուին անէծքովը ինքզինք յանդիմանէ, այնպիսին վերնայինին խոստովանուած ու ամէնուն վրայ իշխող բերնին շրթունքներէն պիտի օրհնուի, որովհետեւ ճշգրտիւ Թարգմանեց իր դարձն առ Այն, չլքանելով կեանքի հետքերը. չարախօսներու խոր դաւանանքներէն չյաղթուելով՝ սիրոյ վճարումովը՝ իր մեղքերը արմատէն կրճատեց։ Իբր Քրիստոսի հօտին ոչխարը՝ բուժիչ աղին դիմելով, աղիքի հիւանդութենէն բժշկուեցաւ։ Ան-

բաններու գործ է սակայն, երբ տասն կենդանիները (մարդ) կեանք պարգեւող խօսքերու ծաղկաւէտ դալարավայրին վրայ, մտքի թմրութեամբ՝ մահուան արօտին մէջ արածին։

Գ. Յանդիմանական այս վերջին օրինակը ինծ համար է, ու չար դիպուածներու պատահարը կ'ակնարկէ ինծ որ իմ իսկ ձեռքովս՝ անձիս համար՝ այրո՜ղ, տոչորող երկնահաս կրակի կոյտ մը պատրաստեցի խելքիս բազմոցին՝ (ուղեղիս) գագաթիս շուրջը։ Հետեւաբար ինչպէս օգտակար արդիւնք ունենայ ինծ համար Սաղմոսը, երբ Գողոսի թելադրութեան համեմատ՝ հոգւով չեմ նուագեր զայն ու թէեւ շատ կ'երգեմ բայց անպտուղ կը մնամ։ Ինչպէս խառնեմ Տէրունական խօսքն ալ Մարգարէներին ու Սուրբերին հետ, «Ո՛վ անօրէնութիւն գործողներ ինծմէ հեռու կեցէք» ըսեմ, ես որ ծնած եմ մեղաւորներուն ու նկունը պիտանիներուն։ Հին ու Նոր օրէնքի բազմաթիւ պատուէրները երբ չեմ կատարած, ինչպէս «որովհետեւ ծառայ պահեց այս պատուէրներն» ու անոր շարունակութիւնը եղող խօսքերն ըսեմ։ Երջանիկին հետ որ նախ ինքը կատարեց ու ետքը մեզի կանոն դրաւ։ Երկիւղածներուն հետ ինչպէս օրհնաբանեմ Տէրը երբ զուրկ եմ կեանքի իմաստութեան ամբողջութենէն։ Ինչպէս կցորդեմ խմբիններս Մեծին մաղթանքներուն ու ըսեմ թէ

«բան մը խնդրեցի Տէրոջմէն Անոր վայելչութիւնը տեսնել ու նաեւ հրամանատարութիւնը Անոր տաճարին»։ Ի՞նչպէս ձեռք երկնցնեմ անոնց որոնցմէ պէտք է հրաժարիմ երբ լսեմ թէ «շիտակ եղողներուն կը վայելէ օրհնութիւնը»։ Շրթունքներովս ի՞նչպէս անձս անիծեմ, շատ բան ընելէ ետք ըսելով թէ «Տիրոջ երեսները չարագործներուն վրայ են, անոնց յիշատակը երկրէ սատկեցնելու համար», ի՞նչպէս նաեւ միւսը թէ «չարերը շուտով պիտի սատկին»։ Ի՞նչպէս ըսեմ իմ կերպարանքին յարմարողը թէ «անբարիշտներուն բազուկները պիտի խորտակուին»։ Ի՞նչպէս պաղատիմ իմ սատակումիս համար թէ «ահաւասիկ մեղաւորները պիտի կորսուին»։ Ամէն բանի միջամտող լեզուս ի՞նչպէս օրհնուած խօսքին խառնեմ թէ «ըսի թէ ճամբաներուս զգուշութիւն ընեմ որ լեզուովս մեղք չգործեմ»։ Ես որ մեղքի փուշերով խեղդուած եմ, ի՞նչպէս անառակին նման պարծենամ թէ «բայց զիս անբծութեանս մէջ ընդունեցիր»։ Ես որ մեղաւոր ու կրկնապէս պատժապարտ եմ, ի՞նչպէս իմ նմաններս պարսաւեմ անոնցմէ ազատիլ խնդրելով թէ «մեղաւոր ու նենգաւոր մարդէն փրկէ՛ զիս ո՛վ Աստուած»։

Դ. Սնոտի պարծանքներով ի՞նչպէս անպատկառօրէն պերճանամ, ու բնաւ կուռք չպաշտողի նման Դաւիթին հետ ըսեմ «միթէ մոռցա՞ծ ենք

մենք Աստուծոյ անունը, կամ օտար աստուածներու ձեռք կարկառա՞ծ ենք աղօթելու համար», որովհետեւ ո՛վ որ գարշելի մեղքեր գործելու կը խոնարհի, անիկա արդէն իսկ կանգնած է Աստարտի ու Քամովսի արփագրգիռ, ախտարծարծ ու պոռնկադէմ կանացի պատկերները և Մեղքոմի ու անպիտան Թարահատի զազրելի՛, անծածկո՛յթ, խայտառակ, իշանդամ, առնական արձանները, որոնց կ'երկրպագէ պաշտօն մատուցանելով։ Ինչպէս չպատկառիմ «Քեզի համար ամէն օր կը մեռնինք» Սաղմոսը ամբողջութեամբ ըսել Նահատակին հետ որուն միտումն ու յօժարութիւնը բարիին էր միշտ։ Ես որ մարդոց ամէնէն յիմարն ու վատթարն եմ, ինչպէս յանդգնիմ ըսել թէ «բերանս իմաստութիւնը պիտի պատմէ ու սրտիս հանճարը», մարդորսի կերպարանքովս ինչպէս «կեղծաւորներու ոսկորները ցրուել» մաղթեմ։ Ինչպէս կրկնեմ արդէն երկու անգամ կրկնուած մեծանուն բարութիւնները թէ «անմահներու աշխարհին մէջ հաճելի ըլլամ Տիրոջը առջեւ»։ Ես որ անթիւ մեղքերու տէր եմ, ինչպէս արդարին խօսքովը կանչեմ թէ «ո՛չ մեղք ունիմ, ո՛չ ալ յանցանք, առանց մեղքի քալեցի և ուղիղ եղայ»։

Ինչպէս ինքզինքս կարուատի մտնեմ սա խօսքն ըսելով թէ «անօրէնութիւն գործողներուն մի՛ աղօրմիր»։ Ինչպէս ըսեմ թէ «ինչպէս որ

մոմը կրակին առջեւ կը հալի, այնպէս ալ մե-ղաւորները Աստուծոյ երեսներուն առջեւ պիտի հալին»: Ես որ ապականացու փափկութեամբ ապրած եմ, սա խօսքն ու անոր շարունակութիւնը ի՞նչպէս յատկացնեմ ինձ թէ «պահեցողութիւնով անձս խոնարհեցուցի» թէ «երբ անոնք նեղէին քուրձ կը հագուէի և սգաւորի ու տրտումի նման կը խոնարհէի»: Ի՞նչպէս հանդարտիմ ինձ նմա-ններուն պատիժը միշտ յիշատակելով թէ «պիտի չպակսի սակայն Աստուծոյ բարկութեան մրուրը, ուրկէ պիտի խմեն աշխարհի բոլոր մեղաւորները» և թէ «մեղաւորներու բոլոր եղջիւրները պիտի փշրես»: Ի՞նչպէս Յակոբին (Հրէից) ապերախտու-թիւնը պատմելով հեգնեմ, երբ չուքին հետ ճշմար-տութիւնն ալ ընդունելով մէկտեղ՝ անոնց հետ անոնց թերութիւնովը մոռցայ Քրիստոսի երախտիքը որ շնորհուեցաւ Աստուածահրաշ խաչին փրկան-քովը. մինչդեռ անոնք (Հրեաները) Մովսէսի զօ-րավարութեան դէմ ապերախտ գտնուեցան որ գաւազանին սքանչելիքովը Տէրունական անօտ-սութեան օրինակը կը նկարէր: Ի՞նչպէս նկարագ-րեմ ազէտները մեր (հոգիներուն) վրայ յարձակող դեւերուն, զանոնք տապալեցեր, խուժդուժ ցեղ մը ցոյց տալով թէ, մեր մէջ գտնուող բարիներուն դիտակները իբր կեր՝ նետեցին մսակեր թռչուն-ներու այսինքն օդային դեւերուն առջեւ. չարին

հետ միաբանած կամքս ի՛նչպէս սուրբ անուանեմ, ճամբուն վրայ ինկած խօսքի հունտին նման. ի՛նչպէս (սուրբ անուանեմ Աստուծոյ դէմ մղուած) պատերազմի նոյն ճամբուն մէջ՝ չարին (սատանին) նմանակցութեամբ, ծածուկ կռուող անհնազանդ զօրքերուն գունդը մտքիս, զոր ես զօրացուցի քսու սատանին հնարքներուն գործակցելով։ Ոչ իսկ կրնամ աղերսել թէ «մի՛ լռեր. մի՛ դադրիր, ո՛վ Աստուած» և թէ «Քու սուրբերուդ վրայ խորհեցան ու ըսին» և ինչ աղօթք որ Սաղմոսի այս գլուխին մէջ գրուած է։ Որովհետև խիստ պատեհ է այս սաղմոսները՝ միշտ կռուըտող մոլի դեւերուն բռնութեանը ու անոնց հետ՝ իրենց ծառայող մարդոց համար հակընել, (հոգիներու) ներկայ ժամանակի խռովութեան հանդէպ։

Ե. Որոնցմէ՝ ո՛վ Մեծ Աստուծոյ բարձր յաւ Որդին Տէր Յիսուս Քրիստոս, Դո՛ւն պահես ու զօ-րացնես, երկնային զօրքերուդ շրջափակութիւնո-վը խաբողին (սատանին) ամէն հովերուն հոսան-քէն զմեզ պաշտպանես լոյսիդ խաչովը. որովհե-տեւ եթէ բազմօրինակ անօրէնութիւններ գտնուին իսկ վրաս՝ բայց հայհոյութիւն՝ ո՛չ երբեք։ Դուն որ չհանդստացար ինծի նման ամբարիշտներուն կոր-սուիլը տեսնելով, այլ խիստ գորովալի սրտմու-թեամբ կրկնապէս ցուեցար չարագործներուն՝ աւերիչ Ջրհեղեղին տակ խեղդուելուն հանդէպ.

ու անոնց մահուան տողակալի դիպուածը՝ Քեզ վերագրելով, լսողներուն զարմանք ազդող խօսք մը ըսիր մտածելով թէ «մարդոց գործերուն համար անգամ մ'ալ չ'անիծեմ երկիրը»։ Ու մեծապէս զուարճանալով կը մխիթարուիս անմաքուրներուն ու սատակման դատապարտուածներուն փրկուիլը տեսնելով, դուն որ երբեմն դդմենիին առակովը կործանուելիքներուն խնայելդ ցուցուցիր, ո՛վ Ողորմած. Եւ ուրիշ մէկուն համար ալ[illegible]ստարիկ վշտանալով Նեղացար՝ ուրացողներուն օգտին համար անձրեւին ուշանալը տեսնելով։ Վերջին օրերուն մէջ տեսակ տեսակ անճառելի բարութիւններ։ Ու տօնելի յիշատակներ ցոյց տուիր, Քեզմով՝ սուրբ Առաքեալներուդ միջոցով քաղցրահամբոյր ողջոյններ ձօնել հրամայեցիր հեռաւոր, անմաքուր ժողովուրդներու։ Ահա՛ ինձ ալ ցոյց է հայրենի գթութիւններուդ կենդանի սէրը. որպէս զի ես ալ Քու ամենառատ այցելութեամբդ քաւուելով փրկուիմ։ Ու Քեզ Հօր ու Սուրբ Հոգւոյդ միշտ փառք թող մատուցուի ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղբերակից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

---

## ԿԱ. ԽՕՍՔ

Եւ ինչո՞ւ իմ տառապելովս՝ միշտ երգեմ Սաղմոսին (մէջ գրուած) այնպիսի բաները, որոնք նախատինք ու նզովք ըլլան ինծի յաւէտ։ Որովհետեւ ի՛նչպէս արդարին պատիւը ինծի դատապարտութիւն յարմարցնեմ, անոր հետ ըսելով թէ «ուրիշ ծուռ մարդը ինծի չմօտեցաւ»։ Ես որ թէեւ Աւետարան քարոզող, նոր օրէնքի աշակերտ՝ (կրօնական) սակայն զուրկ եմ ամէն բարեմասնութիւններէ, ի՛նչպէս չյուսահատիմ տարբեր է Օրինական, Զինուոր, Թագաւոր և Մարգարէական հրամանատարին (Դաւիթին) հետ ի՛նչպէս անոր սովորական վարքը յատկանշող գերհուրհելի Սաղմոսները ըսեմ, որոնք վերը նշանակուած տունէն ետքը կուգան (Սաղմոս Ծ. 5, 6) և Երկնայիններուն իսկ ախորժելի են։ Իրաւադատ Արդարին (Դաւ.իթի) առա՛յին համեմատ, ի՛նչպէս «առաւօտուն՝ արթննալէս մինչեւ իրիկուն պատրաստ ըլլամ մեղաւորները սպաննելու»՝ (Սաղ. Ծ. 8) երբ ոչ իսկ մարմնոյս անդամները ծեծելով խրատեցի. Մեծին քաջութեանը մասնակցելով ի՛նչպէս սատկեցնեմ Տիրոջ քաղաքին մէջ անօրէնու-

թիւն գործողները որ հոգիիս մէջ բուսած բիծերն իսկ չմնացուցի։ Զլայանուածներն իսկ Գիտցողին՝ ի՞նչպէս սանձ թէ «մոխիրը հացի պէս կերայ»։ Ես որ Երգողին արցունքներու յատակ ողբերուն իմ մեղքերէս պղտոր կաթիլ մը իսկ չմիացուցի, ի՞նչպէս ըսեմ անոր հետ թէ «ըմպելիս արցունքով խառնեցի ու արցունքներովս անկողինս թրջեցի»։

Կատարեալ սրտով զԱստուած սիրողը՝ երբ իր նախնիքներուն յանցանքները վրան առնելով «մեր հայրերուն հետ մեղանչեցինք անօրինութիւն ու յանցանք գործեցինք» եւն., այս Սաղմոսը մինչեւ վերջը կ'ըսէ, որ Իսրայելացիներէ աւելի իրաւամբ ինծի կը յարմարի, ուրեմն ես ո՞ր բաները վերագրեմ ինծի որ մեղքով մեռած եմ։ Կերակուրէ խորշելով (պահեցողութեամբ) մեռնելու աստիճան անօթենալն, ու յաճախակի աշխատութեամբ, (տքնութեամբ, ապաշխարութեամբ) ուժաթափ ըլլալը՝ երբ Հրէից ու հեթանոսաց ինքնօրէն կրօնքին խարութեան համեմատ իսկ պատուեցան, ես ի՞նչ իրաւունքով բարիներու կարգը դասուիմ, երբ մարդիկներէ հնարուած (հոգիներու փրկութեան) այս դեղն իսկ իմ վրայ չգտնուեցաւ։ Ինչպէս պիտի մնայ յուէս արդարութիւնս զոր բնաւ իսկ չգործեցի։

Բ. Ես որպէս զի այս խօսքը երկնցնելով

տաղականի չդառնամ, փութամ համառօտել զայն։ Ինչ կրնամ ըսել, Օրհներգակ Դաւիթին Աստուածաշունչ ձայնով նուագած խօսքին տեղ թէ «կատարեալ սրտովս փնտռեցի զՔեզ». ասոր հետ ինչպէս ըսեմ անկէ մեծը թէ «ամէն չար ճամբաներէ ոտքս արգիլեցի». վերը գրուածներուն հետ ինչպէս նաև ժառանգեցնեմ զայն թէ «Խօսքերդ սրտիս մէջ պահեցի, որպէս զի Քեզ դէմ չմեղանչեմ»։ Պարապ բաղձանքներս ինչպէս լրացած ցուցնեմ ու մաքուրներու դասակարգին հետ ճառեմ թէ «Քու պատուէրներէդ խրատուելով չարերուն բոլոր ճամբաներն ատեցի»։ Հեզահոգիին ըրած ճշմարտութիւնը ինչպէս նիւթ ընեմ իմ ամէն օրուայ սուտ երդումներուս, ուխտելով հաւատարիմին (Դաւիթ) հետ թէ՝ «Երդում ըրի հաստատապէս պահելու Քու արդար դատաստաններդ»։ Ինչպէս կրկնեմ ինձ մահաբոյժ հրեշտակ եղող անդառնալի վճռին պատգամը թէ «Փրկութիւնը հեռու է մեղաւորներէն»։ Ես որ խնկապէս չար եմ, ինչպէս բարիներուն մէջ սեպուիմ — որոնք Տիրոջմէն կ'առնեն նոյն վարձքն — ու անոնց հետ սա ձայնը յեղյեղեմ թէ «Շիտակ սրտակրողներուն բարութիւն կ'ընէ Տէրը»։ Ես որ մոլորած եմ, ինչպէս ինձ յարմարցնեմ անաչառ և անխուսափելի հատուցումը թէ «Ծուռ ճամբաներէ յանիշտակուածները՝ անօրէնութիւն գործող-

ներուն հետ. պիտի կորսնցնէ Տէրը»։ Ես որ ամօթապարտ մ'եմ, ի՜նչպէս ինձ պատուաստեմ Աստուծմէ ներշնչուած մարգարէին պարծանքը ու անոր հետ ըսեմ թէ «Տէ՛ր, սիրտս չգոռոզցաւ ո՛չ ալ աչքերս զուարճացան» և ասոր շարունակութիւնը եղող խօսքերը։ Ես որ դժոխքին գանձն եմ, ի՜նչպէս վնասածներուս քաջալերութեան ցոյց նկատեմ մարդկային կարողութենէ վեր բան մը ու Աստուծոյ Հոգիովը Օծուածին հետ ըսեմ թէ «Առաջուց տեսար որ լեզուիս մէջ խարդախութիւն չկայ» Սաղմոսը (ՃԼԸ.) սկիզբէն մինչև վերջը։ Ես որ մահուան արժանի մարդ ու սատակումի զաւակ ըլլալով՝ չարագործներուս դասակարգին հետ խօսակից եմ, ի՜նչպէս ըսեմ Բարեշնորհին խօսքը թէ «Տէ՛ր, անհաւատարիկ չատեցի Քեզ տալիք եղողները» և տասը մնացած մասը։ Ո՛վ անձս, դո՛ւն որ ողբալի ես աշխարհի մէջ, ի՜նչպէս առաջ կը վարես Քու անփորձ հոգիդ երջանիկ Վեհին (Դաւիթին) մեծ վստահութեամբն ու Թագաւորին հետ կը մեծցնես ձայն թէ «Փորձէ՛ զիս ո՛վ Տէր, ու տես թէ, անօրէնութիւն կա՞յ ձեռքերուս մէջ» ըսէն. այս Սաղմոսին յաւելուածը։ Ես որ մեղաւոր եմ, ի՜նչպէս Աստուծոյ յուսացողներուն ձայնակցելով, ուրիշ մեղաւորներէ ազատելու համար աղաչեմ «չար մարդէ ու մեղաւոր ձեռքերէ ազատէ՛ զիս ո՛վ Տէր»։

Ո՛նչպէս համարձակիմ Փառաւորութիւն հետ Աստուծոյ մաղթելու թէ «Անմահներու երկրին մէջ, Դո՛ւն ես յոյս ու բաժինս»։ Ո՛նչպէս հաղորդ-ըլլալով (Դաւիթի) ծիգերուն յաղթանակին մրցանակը (երկնաւոր) թագաւորին մատուցանեմ ու նմանը չտեսնուած աղերս մը աղօթեմ թէ «Արդարներդ թող սպասեն, մինչեւ որ ինձ հատուցում ընես»։

Գ. Խիստ գովելի է նաեւ Սաղմոսին սա իմաստը — եւ Տիրոջը գործին կը նմանի որ փորձողը (Սատանան) ամօթապարտ ըրաւ — երբ ամէնքը կ'արհամարհէ եւ բոլոր արարածներուն սկզբնապատճառը միայն կ'ընտրէ, ըսելով թէ «Երանի՜ այն ժողովուրդին, որուն տէրը Աստուած է»։ Մեծ է նաեւ շնորհին այս բարձրութիւնն եւ երջանկութեամբ լեցուն զգուշաւոր համարձակութիւն մը թէ «Սուրբերդ պիտի օրհնեն զՔեզ»։ Ըղձալի է նաեւ մերձաւոր ընտանութեան այս հոգեւոր հաղորդակցութիւնը՝ — Աստուծոյ յուսալ ու Անոր վստահիլ — Սաղմոսին խօսքովը ուրախանալով թէ «Իրմէ վախցողներուն կամքը կը կատարէ Տէրը» եւ (Սաղմոսին) խօսքին կարգը կ'աւարտէ, մինչեւ որ ողբալին ու զուարճալին հնչեցնէ թէ՝ «Տէրը կը պահէ զանոնք որ զԱյն կը սիրեն, ամէն մեղաւորները կը սատկեցնէ Տէրը»։ Նուագարաններու գիրքերուն — Սաղմոսներուն —

վերջին գլուխներուն մէջ, առակներուն ու Ժողովողներուն ըլլալիք վերջին հատուցման օրինակը՝ տամ իսկ ցոյց տալու (Դաւիթ)։

Երբոր զուգակից են այս Սաղմոսէն ետք երգուածները թէ «հեզահոգիները կ՚ընդունի Տէրը և ամբարտաւանները մինչև գետին կը խոնարհեցընէ» ուրեմն ո՞րչափ խեղճութիւններ կ՚սպասեն ինձ։ Իսկ թէ «Տէրը կը հաճի սուրբ ժողովուրդին ու փրկելով կը բարձրացնէ խոնարհները», արդ ես որ զրկուած եմ բարեմասնութիւններէ, ո՞ւր պիտի հաստատուիմ։ Եթէ «Աստուած իր սուրբերուն մէջ պիտի օրհնուի տիրապէս», ես որ զերծ եմ մաքրութենէ, ո՞ւր հոս պիտի դասակարգուիմ. իսկ եթէ ասոր մօտ՝ զիս կշտամբելու յիշատակարան մը գնեմ կանխաւ երգուածներէն (Սաղմոս) թէ, Տէրը սիրեցէ՛ք ո՛վ անոր սուրբերը, որովհետև ուղղամտութիւն կ՚ուզէ Տէրը և կրկնապատիկ հատուցում կ՚ընէ ամբարտաւաններուն», արդ ո՞ր գունդին մէջ պիտի գտնուիմ ես՝ որ չարիքը հնարողին գաղանիքներէն գերուած եմ։ Որովհետև՝ ինչպէս որ եղեւին ծառերու տերեւները հովերու ուժգին բախումէն շարժելով մեծատապգնաց կը տատանին ու դէպ ի վար կը ծռին, այնպէս ջանաց ջարդել (սատանան) վերարձակ ընթացքը ուռճացած ճիւղիս, զոր Քու անեղ Մշակի ձեռքը խնամեց, և զոր

կրկին արմատացնելով վերստին հաստատէ՛ դարձեալ, Քու կամքիդ խնամքներուն կեանքի պարտէզին մէջ, որպէս զի անապակ պտուղ բերէ նորէն, ո՛վ ամէն բան պարգեւող Քրիստոս Թագաւոր, որ օրհնուած ես միշտ. ամէն։

Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք ու Աստուած։

ԿԹ. ԽՕՍՔ



Արդ՝ ինչո՞ւ ուրիշ մարգարէներէն ալ հատուածներ չմիացնեմ վերը բերուած սաղմոսներուս որոնք նախապէս գրուեցան։ Որովհետեւ ինչ վայելք կու տայ կերակուրը եթէ ցաւերէ անզգայ դարձած ուտեմ զայն. կամ ինչ օգուտ կ'ունենայ Սաղմոսը եթէ չհասկնամ։ Ըստ որում՝ զիս ինքս կը նզովեմ անոնցմով ու չեմ հասկնար. լուացուած կ'ըլլամ ու չեմ մաքրուիր. արեւ ծագած կ'ըլլայ, ու չեմ լուսաւորուիր. մեղր կ'ուտեմ ու չեմ անուշնար. ռետինով կը լեցուիմ, ու չեմ բժշկուիր. միշտ կը կանխեմ նոյն բանին մէջ ու դատարկ կ'ելլեմ. միշտ կը խոստովանուիմ ու չեմ խրատուիր. կրկին կը յորդորուիմ ու չեմ զգաստանար։

Բ. Արդարեւ Տէրունական առակին (հին ուխտին եւ նոր գիրքին) ու մարգարէին՝ մեղաւորներուն կողմէ ըսածին նման, «մեղքերս ու անօրէնութիւններս կուտակուեցան վրաս և ես կը մաշիմ անոնց տակ»: Որովհետեւ եթէ Եսայիին ըսածին պէս. «անօրէններն ու մեղաւորները մէկտեղ կը սատակին» ուրեմն ինձ՝ չարագործիս ալ նոյն բաժինը պատրաստ կը պահուի: Ըստ որում, կ'ըսեմ այն Սաղմոսը թէ «հատուցում կ'ընէ անոնց՝ որ աւելի ամբարտաւանութիւն կը գործեն» ու ասոր կը կցորդեմ սա կարդացուածն ալ թէ «Հպարտներուն ու ամբարտաւաններուն վրայ է Տէրոջը օրը» թէ, «մեղաւորները մօրմէ օտար եղան» և ինչ որ (Սաղմոսին) այս կարգը կը ցուցնէ: Ասոր կը յարեմ նաեւ թէ «երկրի անօրէնները պիտի կործանին, ամբարիշտը պիտի վերնայ երկրէ և անիրաւները պիտի մերժուին անկէ»: Ողբացէք վրաս (մարգարէին) ձայնին համաձայն թէ «ինչպէս որ եղէգը կրակի կայծակներէն կը բռնկի, մեղաւորներն ալ այնպէս պիտի այրին բորբոքած բոցին մէջ», լացէ՛ք Սաղմոսին համեմատ թէ «անոնց վրայ կրակի կայծեր պիտի նետես». հեծկլտացէք մարգարէին բերնով հաղորդուած Աստուածային վճիռին խօսքերուն հանդէպ թէ «եթէ ինձ մտիկ ընել չուզէք, սուրը պիտի ուտէ ձեզ». կոծեցէ՛ք Սաղմոսին համար թէ «մահը

պիտի հովուէ զանոնք», ողորմուկ հառաչանքներով ալի արցունք միացուցէք իմ հեծեծանքներուս, երբ Բարձրեալը՝ Իսրայէլի հետ, ի՛նձ ալ Սաղմոսին խօսքովը ըսէ թէ «ժողովուրդս իմ ձայնիս չլսեց». մեղքցէ՛ք ինձ թշուառիս, երբ ուրիշ մարգարէ մը նոյն բանը կրկնէ թէ «վայ անոնց՝ որ Ինձ հակառակ կը վազեն»։ Փղձկած սրտով ողբի նոր ձայն հնչեցուցէք. երբ մարգարէն՝ Աստուծով ամչցնելով, Յակոբայ անհնազանդ տան հետ զիս յանդիմանէ թէ «Տեսէ՛ք ո՛վ արհամարհողներ, զարմացէ՛ք և աւրուեցէ՛ք»։

Գ. Այլ սակայն դարձո՛ւր և պատասխանը դի՛ր, ապաւինական սուրը Ահաւորիդ, զոր բարկութեամբ բարձրացուցած էիր ինձ դէմ որ վախէն՝ պահուըտած եմ Մեծութեանդ երեսէն. և բարութիւն բաշխող Աջովդ մօտենալով՝ կենաց օծումին պարգևը տո՛ւր ինձ որ Քեզ կ՚աղաչեմ։ Եւ Քեզ փառք թող մատուցուի, վերը՝ երկինքը՝ անմահներէն, վարը՝ երկրի վրայ՝ մահկանացուներէն ու բոլոր ազգերէն, միշտ և հանապազ, ամէն։



*Նոյն այն Հսկային ողբերգակէն մաղթանքներուն ու աղօթական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։*

*Սրտի խորերէն խօսք առ Աստուած*

## ԿԳ. ԽՕՍՔ



Ո՛վ կենդանի Աստուծոյ որդին, Բարերա՛ր և բազմագութ, մարդասէր և համբերող, միա՛կ Թագաւոր եւ Հօրդ հետ պատուուած՝ և օրհնաբանուած Տէրը ամէնուն։ Որ երբէ՛ք պատճառ չես իմ կորըստեանս, որ ամենեւին վարժ չես չարիք գործելու, որ մեղաւորին մահուանը չես կամենար, որ կամքդ (հոգիներու) փրկութիւն կ'ընծայէ, որ մեղքի մրրիկը քաւութեան պարզ օդի կը դարձընես, որ բարկութեան կրակը անձրեւի կը փոխարկես։ Որ բարիներէ ետ մնացած (Ղովտի) կինը, երկու նիւթով եւ դարձուցիր՝ միեւնոյն արձանին մէջ երկու բնութիւն հաստատելով (քար և աղ). ո՛չ իսկապէս անպարտներուն հետ դասեցիր զայն, ո՛չ ալ կատարելապէս պատժապարտներուն հետ տանջեցիր։ Որ, հեղուկ ծովուն հոսանքները, կառուցուած քարակոյտերու դարձուցիր։ Որ, անապատին կարծրանիւթ ապառաժէն, հոսող վտակներու ցայտուն աղբիւրներ բղխեցուցիր։ Որ, Յորդանանի ջուրերուն արընթաց վազքը, հրաշալի

անդրադարձութեամբ մը, յետամնաց հեթանոսա-ներուն ետեւէն ղրկեցիր՝ իբր ստուղան լուսա-ւորն։ Որ, Երիքովի կրկնապատ պարիսպը, թեթեւ շարժի մը նման ցնդեցուցիր՝ իբր օրինակ կործան-ման սատանային բռնութեան։ Որ, անոր (Երի-քովի) վնասակար ջուրը, խորհրդաւոր աղով հա-մեմելով, անուշցուցիր՝ իբր օրինակ Քանանացի-ներուն փրկութեան, և օտարականներու բարե-փոխութեան։ Որ, անհնազանդ մարդերու նմանող Մեռայի դառնութիւնը, կեանքի փայտովը Քե՛զ նմանցնելով՝ օգտակա՛ր ըրիր։ Որ, անորակելի գոյնէդ անսահմանելի հրամանը գծագրելու հա-մար, գետէն առնուած ջուրը նոր կարմիր գոյնի մը՝ արիւնի՛ դարձուցիր ցամաքի վրայ։ Որ, ան-կենդան գաւազանը անթոյն վիշապի կերպափոխե-լով սողացուցիր, իբր օրինակը Քու՝ մեր մարմնով կերպափոխուելուդ, ու օտարազգի հեթանոսնե-րու դարձին։ Որ, Մովսէսի (բորոտցած) երջանիկ ձեռքերը կրկնապէս բժշկելով, Քու ապագայ մար-դեղութեանդ հրաշալի բժշկութիւններն, ու մեր ախտաւոր մարմիններուն՝ Քեզմով վերջնականա-պէս մաքրուիլը գուշակեցիր, ո՛վ Բարձրեալ։ Ո՛ր, այսչափ շրջադրուած օրինակներով, մատնանշեցիր կորսուած մեղաւորներու հոգիին անակնկալ գիւ-տը՝ սիրոյ բարեխնամ արուեստով, ո՛վ ամենա-գութ Օրհնուած։

Բ. Որ անշունչ երկրին մէջ մեռածը, դալարացնելով կը բուսցունես. որ անշարժը քալողի նման կը կառավարես. որ, անարգ արգանդէ պատկերակիցներ կ'անուանես Քեզ. որ, ուտելու աղօրիք (ակռայ) կուտաս պատանեակներու. որ, մաքուր երեսներուն մազեր կ'ընձայես. որ, գլուխին սեւ մազերը, զարմանալի օրինակով, ձիւնին ճերմակութեանը կը դարձնես, ապացուցանելով թէ՝ ամէն հեռաւոր սահմաններուն յաղթող ես ո՛վ Հզօր. որ, Յոբի խօսքին համեմատ, չրթունքի, բնական արտաքերումը հաւատարիմ կամքի կը փոխես։ Որ, երկիրը ու անոր սիւները հիմէն կը խախտես անոր բնական կազմութեամբը, ցուցունելով թէ, Դո՛ւ միայն կը մնաս անկործան։ Որ, տարերքները, անցաւոր իրերու նման կը դարձնես, և դարձեալ նոյն տեղը կը կապես իրբեւ անշարժ՝ յայտնելով թէ, մեղքերու շատութիւնն իսկ, դիւրութեամբ նկատողութեան առնելու, կամ ներելու մասին ո՛րչափ զօրաւոր ես։ Որ, Արուսեակին (արեւին) անզգայ գոյութիւնը երասանով սանձուածի նման կը վարես՝ անով ցուցընելով թէ, բնութեան չար միտումներն ալ, կրնա՛ս հանդարտեցնել երբ որ ուզես։ Որ, լուսնին անբան գունդը մերթ կը դատարկացնես, ու մերթ ալ լուսով կը լեցնես, Քեզի յուսացողները լուսաւորելու, և անոնց աւետելու թէ

քարիքներէ նուազած, մեր մեղաւոր մարմինը, Դո՛ւն (դրախտի) առաջնաստեղծ հաստատութեան ամբողջ լրութեանը կը հասցնես։ Որ, երկինքի լուսաւորներուն անխօս պատկերները, պզտիկ հօտի աննշան դասակի մը նման կը բաժնես ու կը ժողովես, ասով (հոգիներու) փրկութեան յո՛յսը խորհրդանշելով թէ, չարաչար լեղուներուն ալ կարողապէս կրնաս ողորմիլ, ո՛վ քաղցրութեամբ նայող։ Որ, կեանքի ու մահուան մէջ, վստահութեան ճամբայ կը գծես ծովուն երեսը՝ հաւաստեաւ վկայելով թէ, անկասկածելի տե՛ղն իսկ, Քեզմով կը պաշտպանուինք անդայթօրէն։ Որ, կրակէն եռացած կաթսայի ջուրի նման, մեղքերու (ծովուն) պղտորած մրրիկը, քու կամքիդ խօսքովը կը խափանես։ Որ, երկրին կը նայիս, ու կը շարժե՛ս զայն, որպէս զի անբանով բանաւորները զգաստացնես։ Որ, երբ նեղ նաւակ մը, շարժուն ալիքներուն վրայ, կը դղրդես անբաւ թանձրութիւնը գետնին՝ որով կը ճանչցուիս բոլոր ստեղծուածներէն թէ, առա՛նց երկրայութեան՝ գոյութիւն ունիս, և Քու զօրաւոր խօսքովդ հիմնած ես ամէնքն ալ։ Որ, մեռած մարմինները կը ցանես երկրի վրայ, ու զանոնք անկորուստ պահելով կրկի՛ն կը կենդանացնես։ Որ, ապականացուն տալով՝ անե՛ղծը կ՚առնես։ Որ, մահացու մարմնոյս հետ, կեանքի նշխարդ ալ կը

խառնես։ Որ, անհնարին հրամանով, վայրկենա-բար, կազմեցիր, պատրաստեցիր (աշխարհի) ամէ՛ն եղանակներու կարգաւորութը՝ որ անպատրաստ էր։

Դուն կարո՛ղ ու զօրաւոր ես՝ որ տարիներու օրերուն հոլովման ժամանակը կը փոխես, տարբե՛ր եղանակներու բարեպատեհ տեսարաններ պարգե-լով։ Որ ձայն չհանողները կը կանչես, որպէս թէ կենդանի ըլլային, որ կը հրամայես մթան ու անանք կը վազեն. որ հնարագէտի խելքէ վեր արուեստով մէգ ու (պայծառ) առաւօտ կը հինես, կը գործես (երկգոյն կտաւ գործող ոստայնանկի նման)։ Որ, առաջին ստեղծագործութենէդ ետք, երջանիկին (Ցօքին) կանխահայեաց զարմացման համեմատ, փառաւորներն ու ամենամեծերը կատարեցիր անթիւ հրաշալիքներուն. ահէ՛ աւելի բարձր, անե՛ղծ աշխարհ մը ստեղծեցիր քու մարդ ըլլալովդ՝ որ տօնելի մէկ տեսակն է գո-յութեան։

Գ. Որ անհաւասիկ մեր յանցանքները Քեզի՛ վերագրեցիր. որ, Քու արդարութիւնդ մեզի՛ շնորհեցիր. որ, մեր հաշտութեան փրկանքը վրա՛դ կրեցիր, որ բնաւ չես յափրանար ողորմելէ, երկիւ-ղածութեամբ բարի պաշտօն վարելու դարձուր զիս, որ ամբարշտացած եմ. արթուն զգա-ստութեան՝ որ թմրած եմ. պայծառ դէմքի անա-ղարտութեան՝ որ անմաքուր եմ. Ջինջ պատկերի

անդորր անրձութեան՝ որ կեղատատ եմ. դէպքերէ չխորտակուելիք տոկունութեան՝ որ կոտրուած եմ. անաքրելի զուարթութեանը խնդումին՝ որ լացած եմ. անքակտելի կերպով միաւորող սիրոյն՝ որ յուսահատած եմ. անշարժելի հաստատուն վստահութեան՝ որ ամչցած եմ. անբաժանելի երանութեան լոյսին՝ որ խաւարած եմ. անապական կեանքին՝ որ գերի եղած եմ մահուան։ Որպէս զի ամէն ատեն, վերը երկինքը՝ վարը երկրի մէջ ու անոնց բնակիչներէն մինչեւ վերջը խոստովանուելով փառաւորուի անունդ, Յիսո՛ւս, Հօրդ ու Սուրբ Հոգիիդ հետ. ամէն։



Նոյն այն Հոլողէն ազերամփս մաղթանքներուն ու ոգեխառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը. Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## ԿԴ. ԽՕՍՔ

ԱՐԴ ամէն բանի մէջ, ամէն ատեն ուղէղ ես, ո՛վ Աստուած, երանութեամբ կը դատես. արդարութիւնով կը կշռես. ճշմարտութիւնով կը չափես. օրհնութիւնով կը հաշուես. բարութիւնով կը քալես. ստուգութիւնը կը սիրես. յստակութիւն կը փնտռես. պայծառութենէ կ՚ախորժիս. փորձելով կը յանդիմանես. համբերութեամբ կը քննես։ Ո՛չ խարդախութիւն

ունիս, ո՛չ ալ գոռոզութիւն, այլ կատարելապէս հեզ, հանդարտ և ողորմած ես։

Բ. Ո՛վ Հօրդ անփոփոխելի հանճարին երկնային Իմաստութիւնը, շնորհքով որդեգրուածներու հաստատ գովեստին ու վկայութեամբը կրկնապէս արդարացար, այն սուրբ խօսքին համեմատ, զոր Քեզմէ ստացանք կեանքի Աւետարանովը թէ «ո՛չ ողբացի երբ կը կոծէին, ո՛չ ալ պարեցի երբ փող կը նուագէին»։ Անօրէնութիւն մի՛ ըներ, ըսիր ինձ՝ անօրէնիս, բայց ես նոյն չարիքներուս մէջ աւելի ամրացայ. մի գողնար, ըսիր ինձ՝ մեղաւորիս, և ես գործեցի ինչ որ հակառակ էր Քեզ. ո՛չ իսկ, Ամբակումի, Դաւիթի և Զաքարիայի պատմութեանց համեմատ, զգացի երբէք թէ, հպարտութեամբ գոռոզցած մեծամեծները բարձրացնել ու ստորնացնել Քու ձեռքդ է միայն։ Օրհնութիւն կամեցար ինձ, ո՛վ Ողորմած, և ես որ անիծեալ մ'եմ, մեծ տարագրութեամբ խոտորեցայ այն կողմը որուն միայն արժանի էի. բարկութիւն սիրեցի և ո՛չ բարութիւն. գրուածին համեմատ՝ խաւարը շօշափեցի և ո՛չ լոյսը. Քու կենդանի ձայնիդ կոչաութեամբ պատասխանեցի, ո՛վ Գթա՛ծ։ Եսայիի բերնով ըսիր թէ, «որդը չմեռնիր, կրակը չմարիր, յանդիմանութիւնը անվերջ է, բնակութիւնը յաւիտենական» և ասոր նման ուրիշ սոսկալի բաներ ըսիր (դժոխքին նկատմամբ),

տակայն ես՝ Սաղմոսողին ըստծին պէս՝ ո՛չ իսկ ուշադրութիւն ըրի, այլ մատուորական մռայլ կուրութեամբ քալեցի։ Մարգարէին բերնով ցոյց տուիր թէ «օրհնութիւն պիտի ստանայ ան՝ որ օրէնք կը սահմանէ» ես տակայն օրէնքները կըրճատել փութացի։ Ո՛վ Տէր, Յիսուս, Քրիստոս, Քու մատովդ քարի վրայ գրուած հոգեւոր արձանի պէս կանգնեցիր Դաւիթը իր իսկ խօսքով, երբ իր այս ընտրութեան առթիւ կ՚ըսէ «յաւէտ պահեցի Քու օրէնքդ ամէն ատեն» ու կրկին անդրադառնալով զօրեղապէս կը հաստատէ խօսքը, «յաւիտեանս յաւիտենից (օրէնքդ պահեցի), ըսելով,» և դեռ տասը նման ուրիշ պարծանքի խօսքեր՝ զիս խրատուելու համար (ըսուած)՝ բայց ես բնաւ չզգացի։ Բահաղու տունը փութացի և ո՛չ Աստուծոյ։ Եղիայի երգիծանքին համեմատ, երկմիտ քայլերով կաղացի երկու ճամբաներուն միջեւ, բարիքներէն ետ կենալով։ Մեռելներէն (անդիի աշխարհէն) եկած Մովսէսը իր օրինակներովը ունիմ. Մարգարէներուն խօսքերը գրուած են հոգիիս վրայ. Առաքեալներուն գրքերը չորուա՛ծ են մաքիս մատերուն վրայ և դո՛ւն, ո՛վ Տէր հասարակաց, Աւետարանի կտակովը անթիւ ննջեցեալներու հետ յարութիւն առած ես թաղուելէ ետք. բայց ես ասոնց ամէնուն հանդէպ չապաշխարեցի. դարբիններու անշարժ սալին նման

յամառելով քարացած սրտով՝ որ օրինակն է Բե-լիարի և անհաւատ մտքի (Աստուածային ատեանին) Մեծասաստուհին հինգ եղբայրակիցներէն աւելի, որ յարմար նմանութիւնն է մարմնոյ յղփացած հինգ անողորմ զգայարանքներուն։

Գ. Այլ այս լքուած կերպարանքին գործեալ մեռեցիր, ո՛վ Բա՛րի, Անուշո՛ր, Մարդասէ՛ր, Խնամակա՛լ, Կենդանի, Սուրբ, Լուսաւոր և անվախճան Թագաւոր. պանծալի Խաչիդ խորհուրդին զօրութեամբը կրկի՛ն ողորմէ, յիմար երիկամունքներուս մեղքով կարծրացած անբեր արտին և լքուած, անպտուղ որթին՝ որ Քու ամէն բանի կարող կամքիդ գթութենէն նորոգ և օժանդակութիւն ստանալով որթոյ, բղխեցնէ՛ վշտագնաց աչքերէս արցունքի յորդեցնող վտակներ հոսեցնէ հոգիս, զիս փրկելու, մաքրելու և Քեզմէ հաճութեամբ ընդունուելու համար, ո՛վ ամէն բան պարգևող Տէրը ամէնուն որ միշտ փառաւորուած ես. ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղերսանաց մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## ԿԵ. ԽՕՍՔ

ԱՐԴ ես որ ամբարիշտներու նախահայրը, մեղաւորներու գլուխը, անիրաւներու պետը, պարտաւորներու առաջինը, յանցաւորներու պատկերն ու Աստիկեղի մ'եմ, չէ թէ բարեմասնութեան, այլ վատթարութեան տեսակէտով, անոր չըսուելիքները ըսի ինձ համար, ամօթալի գործերս խայտառակեցի, գաղտնիքներս հրապարակեցի, ծածկուածները յայտնեցի, պահուածները ցուցուցի, ամփոփուածները տարածեցի, դառնութեանս մաղձը ժայթքեցի, չարին գործակցութիւնս մատնեցի, վէրքիս հաւաքն ու թարախը քամեցի, պարտքերուս խորը ճանչցուցի, կեղծիքի պատրուակը մէկ կողմ առի, ագեղութեան քօղը վերցուցի, ամօթալի հագուստները մերկացուցի, գարշելիութիւնները պարզեցի, մահուան մրուրը փսխեցի, հոգիիս խածատուածքին վէրքերը՝ Քեզ՝ քահանայապետիդ՝ Քրիստոսի բացի։ Անձիս վիշտերուն չխնայեցի, մարմնոյս սիրուն ազատութիւն չըրի. փտած հին արմատը ցուցադրեցի, ընտանութեան պիտոյքներուն չողորմեցայ, միաբանութեան կապը խզեցի, սրտիս դղեակը քանդեցի, դարանակալ եղողի նման կռուեցայ կամքիս

որսին հետ զայն մեռցնելու համար, անյայտներու պահեստը դուրս հանեցի, մթերքին գանձը Մեծին ցուցուցի, դատախազը դատաւորին դիմաց կեցուցի, ետքը կատարուելիք (հոգեւոր) փորձանքները հիմակուընէ իսկ գտայ, կործանողին դաշինքը խզեցի, խաբողին ուխտը ցրուեցի, (հոգեւոր) կռիւին յաղթութեան վերջաւորութիւնը Քեզ յանձնեցի ո՛վ Տէ՛ր Յիսուս. (հոգեւոր) պատերազմին խումբը գրգռեցի, (սատանային յարձակումներուն) դիմադրել կարենալու համար Աստուածային խօսքիդ յուսացի ո՛վ Տէր. խաւարատէրներու (դեւ) խումբը՝ լուսեղէններու (հրեշտակ) զէնքին մատնեցի։

Բ. Ուրեմն ո՛վ ամէն արարածներն Ստե՛ղծող, Բարձրեալ Աստուծոյ որդին՝ Քրիստոս, Մեծ օրը (դատաստանին) կրկնակի դատելով մի՛ կշտամբեր զիս, որ այսպէս խօսքերով քամահրուած, ու այսքան հարուածներով ծեծուած եմ հոս։ Ահա ո՛վ զօրաւո՛ր, անքննելի՛, անճառելի՛, բարերար, անմա՛հ Թագաւոր, ամօթապարտութեան այս կերպին հանդէպ երբ խոնարհաբար ինքզինքս պարտաւորեցի և մեծ խոստովանութեամբ ես զիս խստիւ դատեցի, այս գիրքին նուագարաններովը՝ ամօթի անարգանքով լեցո՛ւր դէմքը սատանային և ամօթապարտ դէմքս զօրացուր նշանովը խաչիդ։ Լոյսի կնիքդ թո՛ղ միանայ գեղեցկութեանս անա-

քին՝ ամրութեանդ նշանը թո՛ղ հաստատուի երեսիս կերպարանքին վրա՛յ, կենաց փայտիդ երեւոյթը թո՛ղ գծուի այտիս պատկերին վրայ, հրաշալի արուեստդ թո՛ղ նշանակուի իբր զարդ ճակտիս։ Լուսապաճոյճ դրոշմդ թո՛ղ չայլայլի ինձմէ, օրհնութեանդ ճաճանչը թող չվերնայ աչքերուս բիբէն, վստահութեան հաւաստիքդ թո՛ղ չհեռանայ գլխէս, տեսանագրութեանդ (խաչակնքել) փառքը թո՛ղ չխախտի բերնիս ամրութեանը սեմերէն։ Սրտիս զգայարանքներուն թող միանայ պահպանակդ (խաչ) երկրպագելի, գոյութեանս չորս նիւթերուն (տարերք) թող ազդէ նըշոյլը քառաթեւիդ (խաչ), ձեռքիս կարկառումին թո՛ղ օժանդակէ իշխանութիւնը Փրկչիդ, մատուըներուս մօտենալուն թո՛ղ օգնէ համարձակութեանդ խորհրդարանը։ Իմ (աշխարհէ) մեկնելուս պահուս թո՛ղ չհեռանայ սրբութիւնդ, թո՛ղ չվերնայ պատիւս երբ պատանքով պատնուիմ եւ պարտաւորս. անդաւաճանելի փրկութիւնդ թող չզատուի հոգիէս, կեանք տուողիդ գիծերը թո՛ղ չջնջուին շունչէս որ Քու ձեռքովդ գրուած է. արիւնի զօրաւոր նկարը թո՛ղ չաւրուի ինձմէ, որ Տիրոջը նմանող խորան եմ. ինձ հետ թող բնակի իմ գերեզմանիս մէջ. երբ թշուառ մարմինս փտի՝ շնորհիդ օծումը վրաս թող պահուի. Նորոգութեան (դատաստանին) օրը ասով հանդիպիմ

փառքի Փեսայիդ. իբրեւ Քուկիններդ ճանչցուիմ, Քու վաստակներովդ պճնուիմ, Մեծիդ երախ-տիքներովը յորդուիմ, աւազանին հագուստնե-րովը պերճանամ, ողորմութեանդ քաւութիւն ստանալով։ Անապականութեան վերարկուդ մեղ-քով աղտոտած մարմնոյս մօտեցո՛ւր ո՛վ Բարե-գութ, Քու շնորհներուդ հետ քու սատանային գոր-ծերն ալ չելլեն, հագիս մաշեցնողը թո՛ղ վառնուի, խաւարարմատկներու պատրանքները թող չվերբերե-ւան ինծ հետ։

Հանգստեանս վիհը (գերեզման) անունովդ թո՛ղ օրհնուի ո՛վ Գթա՛ծ, գերութեանս գուբը ողորմութիւնովդ թո՛ղ լեցուի, թշուառութեան վայրը Քեզմով թող ընդարձակուի, բարկու-թեան բանալը հանդիսա թող ըլլայ ինծ ո՛վ Խնա-մող, մթութեան արգանդը թող ծնուցանէ զիս որ ածիմ (յարութիւն առնելու համար), այն նեղ տեղը Քու յուսովդ խող չանձարանէ զիս, տարտամ խշտակին մէջ Քու ձեռքովդ պահուիմ, տագնապի առենը Քու թեւովդ ընդունուիմ. վտան-գի անձնակին մէջ Դուն ինծ հետ եղիր ո՛վ Գոյ-ուած։ Մե՛ղք ինծ, հազա՛ր աւա՛ղ որովհետեւ երբեմն վերնային էի և հիմայ անդնդային եմ, երբեմն ուրախալի (նախանձելի) էի և հիմա ողբալի եմ։

Գ. Արդ՝ Դո՛ւն դարձեալ օրհնուած ես բոլոր

տարածներէն, երկնայիններէն ու երկրայիններէն ու մեռած սանդարամետականներէն որ անպարտ ես իմ այս տարագրութենէս։ Ե՛ս վրիպեցայ, ե՛ս օտարացայ, ե՛ս յիմարացայ, յաղթուեցայ ու անպէտ եղայ, ե՛ս ինքս լքուեցայ, ուղեցի և կործանեցայ, ե՛ս մոլորեցայ, ե՛ս մտանուեցայ (մեղքերու), ես մերժուեցայ, ե՛ս խարթացայ, ե՛ս գերի եղայ ու գայթակղեցայ, ե՛ս նղովուեցայ, ե՛ս թշուառացայ, գինովցայ ու վատթարցայ, ե՛ս ինկայ, ե՛ս խաբուեցայ, ե՛ս անօրինեցայ, ե՛ս ապականեցայ, մեռայ և յաւէտ եղծուեցայ, այս ամէնուն մէջ մաս մը չունիս չարի, որ ես միայն անփոփոխ բարի։ Արդ եթէ կամքդ իմ վրայ ըլլայ, խաւարը ճառագայթ կը դառնայ ինձ, եթէ յոյսի ճառագդ հոն ըլլայ, գիշերը առաւօտ կը դառնայ, եթէ Քու մարմնոյդ հաղորդակցիմ, ամօթի կասկածէն կը փրկուիմ։ Իսկ ես կենդանի չեմ ուզեր անձս, անխուսափելի մահուան համար, դարձեալ զիս կորսուած չեմ համարիր, անկասկածելի նորոգութիւնը նկատի առնելով։ Ես որ անքաւելի մեղքերուս համար՝ փակուած կը սեպեմ ինձ կեանքի ճամբան, դարձեալ բացուած կը նկատեմ դրախտը՝ փրկութեան աւետիքին յուսալով. որովհետև վհատութեան գործը ո՛չ ինչպէս կը տագնապեցնէ. ո՛րչափ կը քաջալերէ փրկելու համար ձեռք կարկառելդ։ Արդ՝ ո՛վ Տէր, Դուն որ միշտ օրհնուած ես, տուր ամէն գոհաբանող ձայներուն՝ ողորմութիւնդ տո՛ւր, Ամէն.

Նոյն այն Հոգւոյն աշխարհալից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։

Սրտի խորերէն խօսք առ Աստուած

## ԿԶ. ԽՕՍՔ

Արդ՝ ով որ այս համեստ գրքին մաղթանքի դեղն առնելով՝ տառով պաղատի, եթէ մեղաւորներէն ըլլայ աղօթողը՝ ես ալ իմ խօսքովս՝ անոր կցորդուիմ. իսկ եթէ արդարներէն ըլլայ (աղօթելու համար) առաջ անցնողը, ես ալ տասը շնորհիւ՝ (Նարեկով) ողորմութեան արժանանամ անոր հետ։ Իսկ եթէ այնպիսին երջանիկ սեպէ ինքզինքը, զիս միայն թշուառ ցուցնելով, անոր համար ես ալ կը վկայեմ։ Բայց այնպիսին Սողոմոնն ու անոր հոգեշունչ խօսքը թող յիշէ թէ «ո՞վ կրնայ վստահիլ թէ մաքուր սիրտ ունի և կամ ո՞վ կրնայ պարծիլ թէ մեղքէ ազատ է», և որովհետեւ երկրածիններէն մարդ մը չելաւ որ զերծ ըլլայ պատասխանատուութենէ և ոչ ալ ընտիր մը՝ որ իր արագընթաց վազքովը (յաղթական ըլլայ), ոչ իսկ՝ եթէ թռչելու սաւիճան թեւերը վերցնէ, որուն համար Պօղոսէն սորվելով դարձեալ թող զգուշանայ՝ եթէ վէմի վրայ իսկ հաստատուած է, որպէս զի չըլլայ որ գետին իյնայ. ու այս արդարացի կանոնը սահմանողին պէս կշռուելով՝ անոր նմանի։ Այլ այս մաքուր կշտամբանքը

պտակի նիւթ թող ընդունի, անընտրողաբար չէջնալու համար ձեռք չհասնելիք բարձրութենէն և պատժապարտը (հոգեւոր) ազատութեան ուխթ (Թող նկատէ Նարեկը), որով հոգեւոր մահուան կործանումէն բարձրանալով թող ապրի յուսով։ Իսկ այս խօսքի պատգամը՝ փորագրուած արձան մը թող ըլլայ ինձ համար՝ միշտ անեղծ մնալու աննմանուած, որ իմ թշուառ մահկանացու անձիս տեղ լացի հեծծիւններով անդադար հնչէ ու աղանց լսելու միշտ աղաղակէ. չիրմիս հողապատեան վերարկուին տակ՝ քայքայուած ոսկորներս ալ՝ անմռունչ ձայնով ասիկայ թող խոստովանած ըսպուին. հողին մէջ լուծուած մարմինս ալ անզգալի լեզուով ասիկայ պաղատած թող ըլլայ Քեզ որ ծածուկները կը տեսնես։

Բ. Գթութիւններու Տէ՛րն ու ողորմութիւններու աղբի՛ւրը և բարութիւններու պարգեւները ո՛վ Բարձրեալին որդին Տէ՛ր Յիսո՛ւս Քրի՛ստոս, ողորմէ՛, խնայէ՛, մարդասիրէ՛, վտանգներուս նայէ՛, սրտաբեկութիւններուս ակնարկ ուղղէ, թշուառութիւններուս խոնարհէ՛, անհնարին տագնապներուս տարակոյսը ուշադրութեան ա՛ռ, հասի՛ր օգնելու պէտքերուս որ կորստական մ'եմ։ Իբր բժիշկ՝ չօշափէ ամենաթշուառ ախտաւորութիւնս. ողորմագին հեծեծանքներուս ականջ տո՛ւր քաղցրութեամբ. մահուան գերեզմանին խոր

անդունդներէն արձակած անմռունչ հառաչներո- լսէ՛, հիւծած անդամներուս պաղատանքի ձայնը թող մտնէ ամէն բան լսող ականջներուդ մէջ։ Եւ որովհետեւ կենդանութեանս դրուակները (հոգին կամ ըստ ոմանց այս Աղօթագիրքը) անապական է, Քու սիրոյդ գթութիւնն ալ անփոփոխ թող ըլլայ. հեզութեամբ կցորդ եղիր տաժանելի տկարութեանս։

Մի՛ ոխ պահեր մեռած պատկերիս դէմ. դատական քննութեան մի՛ մաներ անշունչ կերպարանքիս հետ. հարուածներ մի՛ աւելցներ ինձ՝ որ մահուամբ տանջուած եմ. ուժգին կերպով մի՛ կռուիր ինձ հետ որ խեցեղէն անօթ մ'եմ կոտրուած. կրկին մի՛ բարկանար ինձ, որ վճռով դատապարտուած եմ. պատուհաս մի՛ խրկեր ինձ, որ շէնք մ'եմ կործանուած. մի՛ քարոտեր զիս, որ շուն մ'եմ սատկած. տատասկ մի՛ սփռեր վրաս, որ լու մ'եմ ճզմուած. ուժգնապէս մի՛ մռնչեր վրաս՝ իբր ամբարտաւանի՝ որ հող եմ անպատուուած. ընտրութեան դատաստանի մի՛ կանչեր զիս, որ մոխիր եմ անարգ, Քեզի հակառակորդ մի՛ նկատեր զիս՝ որ ցնդող փոշի եմ. սաստի ուժով մի՛ նայիր ինձ՝ որ տաղտկալի տիղմ եմ. մի՛ հալածեր զիս իբր կռուամարտիկ՝ որ զզուելի աղտեղութիւն եմ. դժոխքի իբր նիւթ մի՛ պահեր զիս՝ որ նետուելիք գայթակղութիւն մ'եմ. դարձ-

տալ մի՛ յանդիմաներ զիս, որ այսքան բազմա-
դիմի խօսքերով կշտամբուած եմ։

Գ. Ահա՛ ասոնք են սրտաբեկ և Թախծալից աղաչանքները ամենաթշուառ և մութ գերեզմանին. որոնք Թախանձանքներուն համեմատ՝ Քու օրհնեալ խօսքդ անոնց՝ անփոփոխ կերպով ընդունելութիւնը Թող հաստատէ, որովհետև հիմայ՝ երբ իբր կենդանի կը խօսիմ, մեռած եմ, բազդատմամբ Քեզ որ անհասանելի ես. ինչպէս որ մահուան սատակումով կորսուելու ատենս ալ, Քու ամէն բանի կարող հրամանովդ՝ անեղծ եմ հաւատքովս։ Արդ՝ կ'աղաչեմ Քեզի, ո՛վ Տէր, Յիսուս Քրիստոս, ողորմութիւնով նայէ ինծի ու մի՛ Թողուր, որ անակից ըլլամ բռնաւորին (սատանային). և մահը զեկուցանող գերեզմանին (մէջ կատարուած) Թշուառ Թաղումին անկենդան Թընդիւնը՝ իբր Քեզ հաշտեցնող լացերու աղաղակներ ու հառաչի ձայներ լսելով յարգէ՛, ո՛վ միակ բարեգործ, հոգիները սիրող, զօրաւոր, մարդասէր. և Քու բարի Հոգիդ ինծի հետ Թո՛ղ բնակի, մաԹիս մէջ լոյս տալով ինծի։ Քու կենարար չարչարանքներուդ պաշտուած մասերը Թող միան ինծի հետ, որպէս զի՝ զիս՝ իբր գանձի աւանդ մը, քու վրադ պահելով կեանքի նորոգումին հասընեն. և չմաշող հոգեւոր զէնք ըլլալով, մինչ Թող մնան իմ քով իբր պարսատիկի քարեր՝ չար սա-

տանին գունդը հալածելու համար։ (Սատանին) ինձ դէմ մղած պատերազմը՝ Քեզմով, ո՛վ Տէր, թող անհետի, որովհետեւ եթէ (մարմինիս) քաղաքը առանց զօրքի (առանց հոգիի) և ազդարարող գործիքը (լեզու) անձայն մնացած (մեռած) տեսնելով պատերազմի ելլէ վրաս, Քեզ ունիմ մշտնջենաւոր և արթուն պահապան, ո՛վ Տէր։

Դ. Եթէ հիմակուընէ իսկ կանխելով վերջի օրէս առաջ, ճամբայ չունեցող արգելան պատրաստել փութայ ինձ (սատանան), Տէրունական աղօթքը (Հայր մերը) կը ղրկեմ անոր՝ իբր մահացու ծեծ. եթէ զիս վար գլտորելու հնարը գտնէ, Արարչին ծնրադրութիւնը կը ղրկեմ. եթէ յաջողի զիս գետնի մոխիրին մէջ թաթխել, Աստուծոյ երեսներուն անոր (հոգին) վրայ փակչիլը պիտի հալածէ զայն (սատանան). եթէ ցաւագին վիշտեր յարուցանէ ինձ, աշխարհի Փրկչին արիւնազանգ առատ քրտինքը զայն պիտի չարչրկէ. եթէ հոգիս արգիլէ բարի ճամբաներէն, ամէն բան Ստեղծողին կապանքը պիտի թոյլարէ զիս. եթէ բռնադատէ զիս որ Աստուծոյ դէմ կռուողներու հայհոյութեան նման՝ լոյսի պարգեւներն ուրանամ, զանոնք ալ (Հրեայները) անոր (սատանին) հետ պիտի պապանձեցնէ. եթէ նետերու գաղտնի հարուածներ արձակէ ինձ, Հօրը կապարճին փոքր աղեղին ճարտարահնար կարթերը պիտի հանդիպին

անոր։ Եթէ խաւարական լոյսի քօղով՝ աչքս մըթանելու չափ անամօթանամ, ամենուն ամբողջութիւնն եղողին (Քրիստոսի) լաթով ծածկուած գըլխուն տրուած կռուփի հարուածները զայն պիտի տանջեն. եթէ մոլեգնի ձեռքիս (աղօթելու) վըստահութիւնը կապել, ստեղծողին աջին մատուցուած եղէգը զայն չարչարելով պիտի պապանձեցընէ. եթէ ծաղրական նախատինքներով զիս խայտառակէ, Ամենազօրին՝ ծաղրերու համբերելը՝ զայն պիտի հեգնէ։ Եթէ յուռութներու բժժանքով (կախարդական թուղթ) զիս կախարդել ուզէ խորամանկարար, Հզօր Աստուծոյ երեսին (զարնուած) ապտակը սատակապէս պիտի ամչցնէ զայն. եթէ գիշերուան խոր մթութեան մէջ խաբէութեամբ կռուիլ յանդգնի, Քու լոյսիդ ճառագայթներուն երեւնալովը թող խայտառակուի ո՛վ Տէր. եթէ կէսօրուան տաքին նեղութեանը տոչորող մահացու խորշակով զիս որմատախիլ ընել կարծէ, լուսոյ նշանիդ զօրութենէն խլուելով թող չքանայ։ Եթէ հնարը գտնէ փչումի շնորհէն զիս ունայնացընելու, Թուքը զոր իմ տեղս ստացաւ Քերոբէներուն Տէրը, զայն թող ամչցնէ։ Եթէ խածնող ակռաներ ցուցնէ ինծ, Երկնաւորին բերնին լռութիւնը թող զայն պապանձեցնէ, եթէ անուշ խածատուններ զգացնէ հոգւոյս, ամէնքը ստեղծողին (տրուած) բեւեռի հարուածները զայն թող

կ՚ընեն։ Եթէ անիրաւ խորհուրդներու ընթացքին մէջ մոլորեցնէ զիս, Անհասանելիին աչքին (զոր նուած) գամերը զայն թող կոպեն. Եթէ յաւէ հրապոյրներով որբշաւեցնէ զիս, բարերարին խըմ-ցուելու համար լեղիին հետ խառնուած քացախը թող դառնացնէ զայն։

Եթէ (Ադամի) առաջին անգամ ծառէն ուտե-լուն զիս պատասխանատու նկատէ, Խաչին առա-կալի խորհուրդովը բանալով թող դատապարտուի յաւիտեննապէս. Եթէ Տէրոջը հնազանդելու հրա-մանին դէմ ընդվզել ավրեցնէ անձիս, Անսահմա-նելիին յօժարակամութեամբ վէզ ծռելը թող կոր-ծանէ զայն. Եթէ զիս մեռցնելու տարիճան հոլա-ծելով վիրաւորէ, Ադամը ստեղծողին կողը մըխ-ուած սուսար տէգը զայն թող պատառէ. Եթէ դժո-խային վիշտերու դառն ցաւերով զիս շրջապատէ, Ամենակալին պատանքի կտաւը զայն թող կաշ-կանդէ. Եթէ խարդախութեամբ մահուան ան-դունդները նայիլ տայ ինձ, կենդանիին մահուան քարին (գերեզման) մէջ բնակիլը զայն թող մեռ-ցընէ. Եթէ իմ մարդկօրէն գայթակղութեանս վրայ խնդայ, կամաւ ծռմռկելով կրկնապատիկ թող կորանայ, քանի որ անմահ Աստուածը փառ-քով յարութիւն առնելով իրեն հետ նորոգեց ընդ-հանուր մեռածները. Եթէ հազար տարուան փոքր կապանքներուն (Յայտն. Ի. 2. 3.) քակուելուն

վրայ ուրախանայ, իսկոյն Թող դողա՛յ, վերջին կալանաւորմանը համար որ անողոքելի շղԹաներով պիտի կաշկանդուի սատանայէս, անվերջ տանջանարանի տագնապին մատնուելով։ ԵԹէ առաջին հարուածին համար դժուարանայ (սատանան), անոր Թող պատմուի չմարող դժոխքին մէջ վերջնականապէս կորսուելով ստոկելու դոյժը որ պատրաստուած է անոր ու իր հրեշտակներուն, մեծ օրուան (վերջին օրը) մեծ ատեանին մէջ։

Ե. Իսկ ես՝ Քեզ ապաւինած եմ ո՛վ Տէր Յիսուս, միակ Թագաւոր ու զօրեղ Ինքնակալ. երկինքը երկիրն ու անոնց ամբողջ զարդերն Ստեղծող, Քու գալստեանդ կը սպասեմ ու Փրկչիդ ողորմուԹեանը սպասելով կը յուսամ. աչքդ կ'իյնամ ու գարշապարիդ հետքերը կը համբուրեմ. պարտուԹիւնս կը խոստովանիմ ու մեղքերս կը հրապարակեմ. յանդիմանուԹեան քարերով անձս կը կոծեմ և սրտիս հառաչանքներովը կ'այրիմ. խղճիս խայԹէն կը խոցոտիմ ու շունչիս բոցովը կը մխամ, արցունքներուս աղի ցօղովը կ'այրիմ ու երիկամունքներուս կսկիծներովը կը տոչորիմ. յուսահատ շունչով կը ցամքիմ և դառնաշունչ հովով կը մարիմ. Թախանձանքի խօսքերովս կ'երերամ և աղիողորմ հծծիւններով կը դողամ, տաժանելի տանջանքներով կը տուայտիմ ու հոգւոյս տագնապովը կը տառապիմ. մրրիկնե-

րու հորուածներովը կը ծփամ ու ալիքներու բաղխումէն տակնուվրայ կ'ըլլամ. համբաւը լռելով կը սարսիմ և վախին յիշատակովը կը կորսուիմ. ատեանին կերպարանքէն կը հալիմ և Մեծիդ սպառնալիքովը կը մեռնիմ։ Լսէ ինձ ո՛վ առատապէս Գթացո՛ղ, Բարո՛ղ, Մարդասէ՛ր, Համբերող, մտքէ վեր Քաղցրութի՛ւն, բարի Օ՛ր և տենչալի Ցորեկ։ Որովհետեւ կարող ես ամէն բանի, և հոգիս ելած ատեն զայն մեծապէս փրկելու, և Քեզ՝ Հօր և Սուրբ Հոգիիդ հետ փառք կը մատուցանեմ միշտ. Ամէն։



Նոյն այն Հոգւոյն ողբերգակից մաղթանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած։

## ԿԷ. ԽՕՍՔ

ԽԻՍՏ արդարացի է թէ, չարիքներու նախահօր՝ սատանէն աւելի, ի՛մ վրայ իրաւունք ունի Քրիստոս Աստուած։ Որովհետեւ անոր (սատանին) համար՝ այն պատճառով յայտնուեցաւ որ, անոր գործերը լուծէ. իսկ ինձ համար՝ որպէս զի զիս — որ իր հինցած պատկերն եմ — նորոգէ. մարդկային բնութեան ամբողջութիւնը իր Աստուածային մեծ կերպարանին իսկութեանը վրայ առնելով

իրեն միացուց իրական միաւորութեամբ։ Շատ պարգեւներ կան՝ որ շնորհուած չեն անոր (սատանա-յին), իսկ ինձ ամէնքը լեցուց առատութեամբ. անոր համար բնաւ չէ չարչարուած. ինձ համար ամէն օր կը պատրաստուի. անիկայ հաղորդակից չէ կեանքին, և ես միշտ կը վայելեմ զԱյն փըր-կուելու համար. անիկայ հալածուած է Խաչով, իսկ ես զօրացած եմ Անոր նշանովը։ Անիկայ ար-տաքսուած է լոյսէն, իսկ ես միացած եմ փառ-քին. անոր՝ երկրի վրայ իսկ հանգստութիւն չխոս-տացուեցաւ, իսկ ինձ՝ երկինքը սեփականեց. անոր՝ յոյսի հաւատալիքը կտրեց, իմինս առանց խզուելու կը մնայ միշտ. զայն արգիլեց խոզերու երամակին մէջ, իսկ իմ մէջս Ինքը զօրացաւ. անիկա կարիճներուն օրինակ եղաւ, իսկ զիս իբր ճառագայթ նշանակեց, զայն սողուններուն նմանցուց, զիս իր անունովը կնքեց։

Բ. Իսկ ես ինձ այնչափ բարիք ընող Աստու-ծոյ երախտիքները լքեցի և չարին ետեւէն գնա-ցի, անոր հետ դժոխքին յատակը նայելու համար. ահա անարժան եմ բարիքի. ապերա՛խտ եմ. անըն-դունա՛կ եմ սիրոյ. մեղքի կապերով կաշկանդուած եմ. երիկամունքիս խորերէն վիրաւորուած եմ. արմաւենիի ծառ մ՚եմ կտրատուած. գինի եմ քացխած. ցորեն եմ հեղեղէ քշուած. մուրհակ մ՚եմ աւրուած. վճիռ մ՚եմ պատռուած. կնիք

մ'եմ այլակերպուած. Նմանութիւն մ'եմ փոխուած. վերարկու մ'եմ այրած. բաժակ մ'եմ կորսուած. Նաւ մ'եմ ընկղմած. մարգարիտ մ'եմ մանրուած. Թանկագին քար մ'եմ ծովը սուզած. տունկ մ'եմ չորցած. Նեցուկ մ'եմ խորտակուած. փայտ մ'եմ բոլորովին փտած. (Մարդակերպ լոշ տակ) մանրագիր մ'եմ ապականուած. տուն մ'եմ տապալած. վրան մ'եմ խարխլած. բոյս մ'եմ արմատէն քաշուած. ձէթ եմ աղբանոցին մէջ թափուած. կաթ եմ մոխրակոյտի վրայ վազած. մահապարտ մ'եմ մարդասպաններու գունդէն, Որովհետեւ մարգարէներուն ձայնովը, Բաբելոնի առակովը, Երուսաղէմի հետ միշտ խրատուած է ողբալի անձս, սակայն բնաւ չէ զգաստացած. որ հոս արհամարհուած եմ ու հոն խայտառակուած. հոս պարտաւորուած եմ ու հոն յանդիմանուած. հոս ձաղկուած եմ ու հոն նախատուած. հոս թշնամանուած եմ ու հոն յանդիմանուած. հոս ապշած եմ ու հոն լքուած: Հոս հեծեծանք ու հոն հառաչանք. հոս կասկած ու հոն կատարած. հոս խղճի խայթ ու հոն հատուցում. հոս արկածներ իսկ հոն հանդէսները դատաստանին, ուր ո'չ արդարացումի խօսք կայ, ո'չ պաղատանքի ձայն. ո'չ օրերը համրանք ունին, ոչ ալ ժամանակները վերջ. ո'չ յոյսի ճամբայ կայ, ոչ ալ ողորմութեան դռներ. ո'չ պաշտպանութեան աջ կայ, ոչ ալ այցելութեան ձեռք:

Գ. Այլ Դո՛ւն, ո՛վ ապաւինութիւն, Դուն Ինքդ փրկութիւն, Դուն այցելութիւն, Դուն քաւութիւն, Դուն երջանկութիւն եւ. բժշկութիւնը Քեզմով է. Դո՛ւն կ'ողորմիս ո՛վ միակ Հզօր, կենդանի, անբացատրելի Տէ՛ր Յիսուս Քրիստոս. Բարերար Աստուած. օրհնուա՛ծ, օրհնուած և դարձեալ օրհնուած ես. Սուրբ Հոգիիդ հետ յաւէտ բարձրացած ես Մեծիդ իսկութեան Հայրենի փառքովը մինչեւ յաւիտեան, ամէն:

Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներէն
ու ողբախառն հեծեծանքներէն նո՛ր յաւելուածը:
Սրտի խորերէն խօսք առ Աստուած:

## ԿԸ. ԽՕՍՔ

Եթէ հիմա ի՞նչպէս դադրիմ նոր ողբեր յօրինելէ և ի՞նչպէս ցամքին հեղեղները արցունքներուս, հանդէպ ահարկու յիշատակին վերջ գրածներուս, որոնք Աստուծմէ հասած սպառնալիքներ են ինծի: Որովհետեւ եթէ աչքիս մէջ դնեմ յորդահոս ծաւալող ջուրս գետերուն թիւերը և անոնց ակունքը — որոնք լիապէս բաւելով ամէնուն ալ բաշխումին՝ Եդեմն ու երկիրը կ'ոռոգեն առ հասարակ — պիտի չբաւեն անձիս մեղքերուն կրակին սաստկութիւնը զովացնելու: Եւ կամ Սուրբ

Մարգարէին իղձը եթէ կրկնապէս կատարուի իմ վրայ, և գլուխս առատ ջուր ըլլայ ու տեսողու-թեանս երակները (աչքերը) յորդահոս աղբիւրի ակեր դառնան, չեն կրնար չափել հոգիիս խոր-տակումին վանքը. և ո՛չ իսկ բանահիւս լալկան քնարներու սիրտ ու հոգի մորմոքող ընդհանուր ե-ղերերգները կը բաւեն (հոգիիս ենթարկուած) վտանգին աղէտները երգելու և կամ անոնց վրայ նուագներ յօրինելու։

Բ. Ի՛մ ծնած օրս պէտք է անիծուած համա-րել և ոչ թէ Յոբինը ու Երեմիային. որովհետև տարագրութեան օր չէ անոնցը՝ այլ ուրախութեան որոնցմէ մէկը չարժեր աշխարհ. ուրեմն նկատի առ-նելով զիս, որ արժանի չեմ լոյսի և կամ մա-նաւոր բարիքի, անիծեցին այն հանդիպած օրը ուր գտնուեցայ ես՝ որ կորուստի զաւակ եմ, մահ ու մահուան դիրացի, մեղքի մշակ եմ ու անօրէնութիւններու արբանեակ։ Ես՝ որ հաստատ չկեցայ կեանքի ուխտին վրայ զոր Դուն սահմա-նեցիր, ո՛վ Բարերար Աստուած. Քու կենդանու-թիւն տուող ու անմահացնող պատուէրներուդ չհետեւեցայ. չաշխատեցայ արմտիք հնձելու, որով ձմեռնամուտի փոթորկայոյզ օրերուն կերակրուե-լու պատրաստուէի. ո՛չ ամուր պատ, ոչ ալ հաս-տատ ձեղուն կառուցի տանս համար որով խառաչունչ մրրիկէն պահպանուէի. անվերջ ճամ-

բուն համար պաշարի կառուցանք չհամբարեցի որով սովի տագնապս փարատէի. աղերսալից աղօթքներ չպատրաստեցի քեզ, որոնցմով առա-ջեւդ կանգնիլ համարձակիմ. վարքի մաքրութիւ-նով՝ փրկութեան թռչակ չհայթայթեցի որ նորա-գութիւնք երաշխաւորէ ինձ. զիս մատնող (սա-տանին) հետ երբ աշխարհի ճամբէն կը քալէի, ընտիր հաշիւ չտուի որ հոս եղած ատենս իսկ ազատէի (երկնաւոր) դատաւորին ձեռքէն. ձեռ-քերս օրհնութեամբ լեցնելով ատեան չկանգնե-ցայ, որով մաքրուելով մասնակից ըլլայի օրէնս-դիրին (Մովսէս)։ Ո՛չ դէմքս զգուշացուցի, ոչ ալ թիկունքս պատապարեցի. ո՛չ աջս զինեցի (բարե-գործութիւնով), ոչ ալ ձախս պաշտպանեցի, որով (հոգեւոր) պատերազմներու վտանգէն ազատէի. երկիւղիս չհագուեցուցի (հաւատքի) զրահը եւ ոչ ալ (մեղքի դէմ) կռուողս սպառազինեցի (աղօթ-քով) որով կարենայի ճակատամարտիլ (սատանին դէմ)։ Պտուղներու երախայրիքը չքաղեցի, եաքի ցանածներուն ալ չհասայ եւ հիմա բարիքներէ զուրկ՝ չուառած եմ. մաքրութեան ծաղիկ չու-նիմ, ոչ ալ ողորմութեան իւղ եւ գիշերուան խաւարին մէջ անլոյս (մնացած եմ). մահուան քունով քնացած եմ ու Հրաւիրողին փողին տագ-նապը զիս կը փութացնէ. հարսանեկան լաթը կրկնապէս մերկացայ, վարքի ձէթը դարձեալ հեռա

չառի, և հարսնիքին մտնելու դուռը անհաւատիկ կը փակուի։

Գ. Արդ՝ այսչափ վշտերով՝ ի՞նչպէս մխիթարուիմ և կամ խաւարի տարակոյսներուն ո՞րքանին հետ կեանքի յոյսին լուսաւորութիւնը խառնեմ. և կամ ո՞ւր կեցնեմ ոտքիս կրունկը, և կամ ո՞ր վստահութեան յառեմ աչքերս, և այս ծփանքներուս մէջ ի՞նչ տեսակ անդորրութեան ակնկալեմ և կամ ո՞ր ըղձալի դիւրութեան ձեռք կարկառեմ։ Որովհետեւ եթէ երկինքի բարձր ձեղունին (յառեմ աչքերս) անկէ՝ Սոդոմի կրակն անձրեւեց, ինչպէս ըսուած է. իսկ եթէ երկրի խոր յատակին, ասիկա իր յափշտակող կոկորդը բացաւ ու Դաթանը կլլեց բանակներովը Աբիրոնի։ Եթէ փախչիլ յանդգնիմ Բռնողէն, գուցէ բռնէ զիս վիշապը անհոգին. եթէ գազաններէ ոմանց հետ թափառիմ, անոնք փութկոտ են աւելի Ստեղծողին վրէժը խնդրելու ինձմէ, քան երբեմն Բեթելացի քրմորդի մանուկներէ Եղիսէի վրէժը։ Եթէ ամէն տեղ տարածուած պարզ օդին (յուսամ) անիկա չօչափելի խաւար եղաւ Եգիպտացիներուն, եթէ բարձունքի թռչուններուն՝ անոնք զոհի սպանդանոցը կանչուած են արիւնաշաղախ դիակներ ուտելու. եթէ տկարներուն դէմ խիզախեմ, պիծակները կը փճացնեն զիս. առիւծներու պէտք չունիմ։ Եթէ գիշատող արջերէն ազատիմ, արհան

ծարաւի մոծակները պիտի պահպանին ինձ։ Եթէ տեղ մը անհոգաբար նստիմ, անպիտան մժղուկները հրահրած կրակի ճարճատուն կայծերուն նման վրաս պիտի մաղուին։ Եթէ մի եղջերուի եղջիւրէն փախչելով ազատիմ, մորմոքող մուներու անզօր ճանկերը զիս պիտի կեղեքեն։ Եթէ ամբարանոցներու սենեակին խորշերը մտնելով պահուըտիմ, մեղքի օրինակ եղող տաղտկալի ու աղտոտ գորտերը զիս պիտի գանեցնեն։ Եթէ արտի մը մէջ կենալ փորձեմ, չանաճանճերու գունդը պիտի շրջապատէ զիս։ Զանց կ'ընեմ առաջ բերել զօրաւոր զօրքը խառնիճին ու ջորեակին (մանր մարախներ), ինչպէս նաեւ թունաւոր թրթուրները, անկենդան կարծուած մանրէները, ջուր կարծուած (կամ ջուրէ կարծրացած) կարկուտն ու ապականող եղեամը, որոնք թէեւ արտաքին երեւոյթով անզէն ու խիստ նուաստ կը թուին, բայց երբ Աստուած ակնարկ մը ընէ, յաւէտ կարողաբար ուժգնութեամբ զարկին, հանեցին, յաղթող կերպով հալածեցին հպարտ ամբարտաւանութիւնը Փարաւոնի թռնութեան խիստ գաւազանին։ Ասոնք նմանութիւնն են չորչարող թագուն պատիժներու որոնք չեն երեւար, գաղտնաբար կը վնասեն մեռցնելու աստիճան հոգին տանջելով և զրկուեցան պատժելու համար անօրէնութիւնը (հին) Եգիպտացւոց։

Դ. Իսկ Դուն ո՛վ ամենակարող Արարիչը ամէնուն ու Տէրը բոլորին, ատելիներէս ալ զա-նոնք հեռացո՛ւր. և ինձ կրկնապատիկ գթութեամբ ողորմէ՛, ձեռ՛քդ երկնցնելով փրկէ հոգիս որ տարակուսած, գանակոծուած, չարչարած ու մահ-ուան դատապարտուած եմ։ Որովհետև Դուն մի-նա՛կ փառաւորուած Աստուած կը ճանչցուիս միշտ, Հօր ու Սուրբ Հոգիիդ հետ, մինչև յա-ւիտեան. Ամէն։



Նոյն այն Հոկոզէն ողբերգայէց ճողթանդներուն ու ողջախուան ընծընծանդներուն նո՛ր յաւելուածը։
Սրտէ խորերէն խօսք առ Աստուած

ԿԹ. ԽՕՍՔ

ՀԻՄԱ ո՛վ Տէ՛ր ու Աստուած, զիս կեր-տող Մեծ արուեստաւորի ճարտար ձեռքիդ մէջ — մաքրող հալոցի մէջ եղածի նման — Քու սիրոյ խնամովդ միշտ կ'եռամ ու բնաւ չեմ զատուիր, կցուելու համար միշտ կը խառնուիմ ու երբեք չեմ միանար. ահա ո՛վ երկնաւոր Արծաթագործ, որ զիս կերտող ճարտարապետն ես, Մարգարէին յայտնի առակին համեմատ, պարապ տեղը յոգնե-ցար ինձ համար ու չարութիւնս չհալեցաւ. որ ինքնաբերաբար չարաչար յիմարանալով՝ դեռէն

խարուած ողորմելի խեղագարի մը նման անկարգ խօսքեր ընել կը յանդգնիմ, ու այսպէսով՝ հաշտութեան հնար մը գտնելէ աւելի, պարագս կ'աճեցնեմ։ Եւ որպէս զի յաւիտենական աշխարհին մէջ պատրաստուած տանջանարանները՝ անծանօթ դէպք, անսովոր պատահմունք և աննման հանդիպումներ չթուին ինձ, բոլորովին անմոռաց պահեց ոռս՝ իմ այս մարմնիս մէջ, միացորդ մասը նախահօր տրուած անէծքին, որուն փոքր ու աննշան (վարը գրուած) տարբերէն, պէտք է մեծը հեռացնել։

Բ. Փորի մէջ ինքնաբերաբար գոյացած՝ ճապուկ շարժումով խաղցող տեսակ տեսակ ճճիները. գազանապէս կրծող աղիքի որդերը. կրակի նման այրող՝ Թարախոտ ուռեցքները. բոցի պէս կծող կարմիր բշտիկները. անկերպարան անիծները, երամակները՝ կսկծցնող, քերուըտցնող, աղտոտ ու քրտինքէ գոյացածներէ ոմանց (ոջիլ)։ Գիշերը կռուըտող դեւերուն ու խաւարասէրներու ինքնագլուխ զինուած բարբարոս գունդերուն նմանող տապաստակը ուրիշ վայրենիներու (լու) որոնք արիւնկզակ գայլերու գազանութեամբ գլխահակ քալուածքով, մութ գոյնով, վար ծռած սրածայր կտուցով — որ կարիճի խայթոցի կը նմանի — դժնդակ փուշով խոցոտածի նման՝ կը ծծեն, կը քաշեն խոնաւութիւնը արեան ու հանգիստի ան-

կողինը, յոգնութեան տանջանօրան կը դարձնեն։ Եւ երբ մէկը ձեռք երկնցնէ անոնց՝ վայրկենական հատուցում մը ընելու համար, (մեռցնելու), չու-տով կը զգան վտանգը հեռուէն զոր ազդեցին մարմինին, և իսկոյն՝ իրենց լերկ փոքր հասակո-վը, թեւաւորք նման կը թռչին ու մարախի պէս սաւառնելով, հոս հոն կը դեգերին, և դաւող ազուէսներու խարէպատիր նենգութիւններով՝ խո-րամանկաբար կը խուսափին շատ մը փախուստի ճամբաներու մէջ պտուտքելով, որպէս զի մեռ-նելու երկիւղէն ազատին։ Ու իրենց այնքան աղքատ ու չքոտի անձովը՝ չէ թէ միայն ռամիկ-ներն ու խառնիճաղանճ ամբոխը, այլ հզօր ու ահագին մեծամեծներն անգամ կը փախցնեն, կը հանեն, կը տարագրեն իրենց ապարանքին վեր-նայարկի դահլիճը. և կամ կ'ստիպեն զանոնք թագօթեայ տեղ պառկիլ. այն քաջարի անձինքը որոնք հին դարերու մէջ ամբոխներու իշխեցին, ժողովուրդներու տիրեցին ու ազգերու քաղաք-ներն առին, իրենց զօրաւոր ձեռքին պարտու-թիւնը իրենք իսկ կը վկայեն, խոստովանելով թէ, որովհետեւ մեծերուն (լուերուն) բռնութեան չկըր-ցինք դէմ դնել, անոր համար փախչելով հոս հա-սանք։

Գ. Եւ ինչո՞ւ զբաղիմ, աննշան, փոքր, ծաղրելի ու տարօրին գոյութիւններով, որոնք հան-

դերձեալ աշխարհը ինձ յիշեցնելու համար, Աստուածութեան զօրե՛ղ ու անհերքելի ջատագովներն են ու անօրինացած մարմինիս ընծայած դառն պտուղները։ Անոնց կարգէն է նաեւ գինին՝ եկամուտ ու մահացու ախտերուն եւ կոյտը անզգօքելի ուտիճներուն, որոնցմէ կարելի չէ ազատիլ, բայց միայն՝ մարմինին ենթարկուած տանջանքներովը՝ ապագան իմաստաւորել տանջմով. և կարելի չէ անոնց ձեռքէն փախչելով՝ ապաստանարան գտնել, բայց միայն Քու կամքիդ հրամանովը, որուն առջեւ կը տկարանան մարդկային կարողութիւններն ու հնարները։ Իսկ Դո՛ւն, ո՛վ Բարերար, ամէնէն ալ ազատելու բաւող հնար ունիս, եթէ ուզես փրկել, նորոգել, քաւել, բժշկել և կենդանացնել, և ամէն բանի մէջ միշտ փառք թող ընծայուի Քեզ յաւէտ. Ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։

Սրտէ խորերէն խօսք առ Աստուած

## Հ. ԽՕՍՔ

ԵՒ որովհետեւ գոյութենէ զուրկ համարուող այս փոքրիկ երկրայիններէն դէպ ի մեծագոյն տեսակը պիտի բարձրացնեմ խօսքիս ընթացքը, պարզեմ ուրեմն անոնց առ Ահաւորիդ իրաւունքներուն տեսարանը, ապացուցանելու համար թէ, այս երկրաւորներ եթէ նախածանօթ նահապետներուն պէս Աստուծոյ մօտ, կամ մարգարէներուն պէս մաքուր, կամ առաքեալներուն պէս անբիծ, և կամ մարտիրոսներուն պէս ընտրելագոյն ըլլան իսկ, անոնցմէ (հոգւոյ) փրկութիւն յուսալ բոլորովին անօգուտ է, եթէ դուն անսպառ բարիքներովդ, անփոփոխ խնամքներովդ ու անպակաս ողորմութեամբդ չմարդասիրես ինձ։

Բ. Որովհետեւ եթէ նոյն իսկ Աբրահամին աղաչեմ, ծարաւէն պապակած մեծատունին տապը վարդապետելով, կաթիլ մը ջուր չի կրնար տալ ինձ, անոր համար որ ինքն ալ իբրեւ մահկանացու, ստիպուած է խոնարհիլ անհնարաւորին առջեւ։ Իսկ եթէ Մովսէսին՝ անիկայ ալ ակարութեամբ զգածուած՝ չկրցաւ փրկել մարդը, որ անհրաժեշտ պէտքը գոհացնելու համար, չարաթ

օրը փայտի կրկում կը ժողվէր։ Իսկ եթէ Ահա-րոնին՝ ինքն ալ մաղթողի մը կարօտ եղաւ։ Եթէ Դաւիթին՝ անիկա ալ իր առաւելագոյն բարիքնե-րով մէկտեղ մեղադրանքէ զերծ չմնաց։ Իսկ եթէ Նոյին, Յոբին ու Դանիէլին՝ արդէն Եզեկիէլ մար-գարէն յայտնէ անուանէ յիշատակելով զանոնք, կարեւոր մեկնութիւնը տուաւ, երբ Աստուծոյ ներ-շնչմամբ կը գոչէր. «Կենդանի եմ ես, կ՚ըսէ Տէրը, որ անոնք իրենց աղջիկներն ու տղաքներն իսկ չպիտի կրնան փրկել վերահաս բարկութե-նէն, բայց մինակ իրենք պիտի ազատին»։ Իսկ եթէ Հաւատոյ Վէմ ըսուած Պետրոսին դիմեմ, անիկա ալ Քու խնամքներէդ զրկուելուն պէս, կիրքերու իշխանութեան ենթարկուեցաւ։ Զանց կ՚ընեմ յիշատակել մարդկային տեսակ տեսակ պէտքերու առջեւ խոնարհողներու ստուար բազ-մութիւն մը, թէեւ յաւէտ երջանկացած ըլլան անոնք։ Ասոնց կարգէն է Յովաս անուն մարգարէ մը, որուն՝ աստուածային սպասարկութեան մէջ գործած մարդկօրէն գայթակղութիւնը չարերուն անհասկնալի կը մնայ, թէեւ զանազան մեկնու-թիւններով ալ կը ձեւափոխուի։

Եւ որովհետեւ (մեղքէ) փրկելու խնդրոյն մէջ մարդիկներու կարողութեան սահմանը չափուե-ցաւ, ու ապացուցուեցաւ որ անոնք ալ Բարերա-րէդ ողորմութիւն, Ամենակալէդ զօրութիւն,

ղին անունը կը փառաւորեմ, ու Անոր շնորհն ամէնուն կը բարեհռչակեմ, և այս խօսքերով կը խոստովանիմ անոնց վարքերուն բարձրութիւնը, յաւէտ ողորմութեանդ դեղին կարօտ ըլլալու պայմանով։

Ահա Դուն որ կեանք, փրկութիւն, բժշկութիւն, անմահութիւն, երանութիւն, լուսաւորութիւն ես, Դո՛ւն թեթեւցուր մեղացս ծանր բեռները, որ իմ չարունակական ողբերէս ու ձանձրացուցիչ թախանձանքներէս ազատիր. Դուն որ մարդիկներու փրկութենէն տարբեր բանով չես անանիր, և յաւէտ օրհնուած ես, ամէն։

---

Նոյն այս Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն ու ողբական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։

Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## ՁԱ. ԽՕՍՔ



ԵՐՋԱՆԻԿ ու փառաւոր են խումբերը սուրբերուն, որոնցմէ ոմանք թէև քիչ մը սահեցան, բայց զօրաւորապէս հաստատուեցան. Թէև թեթեւ մը խախտեցան, բայց հոգին մաքրող ամենամեծ բացին նշոյլովը լուսաւորուեցան։ Առաջին պարագան (խախտիլը) մարդկային բնութեան տկարութիւնը կը

յայտնէ առ հասարակ, իսկ երկրորդը՝ (վերահաստատութիւնը) անոնց՝ (սուրբերուն) բնութեան օրէնքներէն գերազանց վարքն ու հրեշտակական առաքինութիւնները կ'ապացուցանէ։ Արդ՝ անոնք, Քրիստոսի Հօր՝ Աստուածութեան ամենիշխան բերնէն օրհնուած, ընտրուած, օծուած, խնկուած ու բարեբանուած են և իբրեւ Քրիստոսի անդամները պաշտուած և պատրաստուած են իբր Սուրբ Հոգիին օթեւանները, որոնց մէջ հնարքը կամ չոչորդն իսկ չկայ մութին, այլ կատարեալ անկեղծութիւն և լուսաւոր արդարութիւն (և Աստուծոյ նմանութիւն) որչափ որ կարելի է Աստուծոյ մարդը Աստուծոյ նմանցնել։ Պարզերես (են անոնք) ու պատճառ չունին ամչնալու. անոնց կրօնքը բարձր է ու անխոնարհելի, կեանքը՝ զգաստ է և անստգիւտ. անոնց՝ Աստուծոյ մատուցած պաշտօնը հաստատ է և անփոփոխ. անոնց ընթացքը արիական է և անկասելի, ճշմարտութիւնը միօրինակ է և անցնդելի, դիմադրութիւնը (սատանին դէմ) զօրեղ է և անվանելի. տեսողութիւնը՝ պայծառ է և անշփոթ. անոնց իմաստասիրութիւնը երկնային է ու անմաշելի. պատկերը՝ մաքուր է և անաղարտելի։ Որոնց կերպարանքովն ու անուններուն յիշատակութիւնովն աղաչելը՝ Աստուած իսկ սորվեցուց և Քու Արարչական խօսքդ զմեզ լուսաւորեց թէ, (հոգեկան) խռովութիւնները անոնցմով հաշտութեան կը փոխուին։

ԱՍՏՈՒԾՈՅ ՀԱՇՏՈՒԹԻՒՆԸ ՀՐԱՒԻՐՈՂ ՊԱՆԾԱԼԻ ԽՕՍՔԵՐ

Բ. Ես որ անպիտան եմ ամէն կերպով և որչափ որ կրնայ ըսուիլ պարսաւուած եմ. որ կը քնանամ՝ մինչդեռ արթուն եմ. կը թմրիմ՝ մինչդեռ զգաստ կ'երեւամ. կը գայթակղիմ բարեպաշտացած պահուս իսկ. կը սխալիմ՝ երբ կ'աղօթեմ. կը կասիմ՝ երբ կը վազեմ. արդարացած ատենս իսկ կը մեղանչեմ. խաղաղացած ատենս իսկ կը վրդովիմ. մինչդեռ կ'արշաւեմ դէպ ի ետ կը հակամիտիմ. քալած ատենս կ'ընկրկիմ: Լոյսի բաժնին մէջ մութ ալ կը յարեմ, անուշ համին մէջ լեղի օշինդր կը խառնեմ. բարիի ոլորուածքին հետ չարիք կը հիւսեմ. կանգնած ատենս կրկին կը գլտորիմ. կը ծաղկիմ ու պտուղ չեմ տար, կ'ըսեմ ու չեմ ըներ. կը խոստանամ ու չեմ կատարեր. կ'ուխտեմ ու չեմ վճարեր. կ'երկնցնեմ ու դարձեալ ետ կը քաշեմ. կը ցուցնեմ ու չեմ ընծայեր. կը մօտեցնեմ ու չեմ նուիրեր. երբ վէրքս բժշկուի կրկին կը խոցոտիմ. երբ հաշտեցնեմ կրկին կը խռովցնեմ. զուր տեղը (յախորտանքով) հրապարակ կ'ելլամ ու արդարացի կերպով կը պարտուիմ. կը գրուիմ ու իսկոյն կ'աւրուիմ. կը նաւարկեմ և ճամբան կը թուլնամ. կը սկսիմ և վերջաւորութեանը չեմ հասնիր. կը հաստատուիմ ու դարձեալ կը խախտիմ. կը լեցուիմ ու դարձեալ կը թափուիմ. հոս կը հաւաքուիմ ու հոն դէպ ի

վար կը հասնիմ. կը դիզուիմ և անմիջապէս կ'այրիմ. հիմ կը ձգեմ և գլուխ չեմ հաներ. քիչ կը վառուկիմ ու բիւրաւորներ կը վառնեմ. Նուաղ կը գանձեմ և անհոգիւ կը սպառեմ: Ուրիշները կը խորտակեմ ու ես ինքս անփորձ եմ. մինչ կը տարվիիմ և դարձեալ գիտութեան ճշմարտութեանը չեմ կրնար հասնիլ: Մարած չարիքը կ'արծարծեմ նոյնչափ. քիչ մը կը քաջալերուիմ և չափազանց կը յուսահատիմ. կը լոքուիմ և անմիջապէս, հո՛ն իսկ կը թաւլնամ, աւիկայ կը կարկառեմ ու զայն կը պատռեմ. եղինձը (բոլորդան) կը բրցնեմ ու տատասկ կը տնկեմ: Երբ (մտքով) վերանամ անմիջապէս ստորնագոյններուն կը դառնամ. աղաւնի կը մտնեմ բոյնը ու անկէց ագռաւ կ'ելլեմ. քիչ մը ճերմակ կուգամ ու սուրալով կատարելապէս սեւցած կը վերադառնամ. ինձ համար կ'ըսեմ թէ Քեզ կը դառնիմ, ու սպաննողին (սատանայ) կը նուիրուիմ, երբ դէմդ ելլամ, թիկունքս կը դարձնեմ: Կը մաքրուիմ բայց կը մրոտիմ, կը լուացուիմ և անով կ'աղտոտիմ. Դաւիթին կերպարանքը կ'առնեմ և Սաւուղի գործերը կը կատարեմ. շրթունքներովս շիտակը կը խօսիմ ու երիկամունքներովս կը ստեմ. աջովս կը մատուկարարեմ ու ձախ կողմովս կ'ուրեմ: Ծորեն ցանելու տեղ որոմ կը սերմանեմ. բարձրագոյն խորհուրդներէն ստորնանալով ինքնութեանս կը դառ-

նամ. երեսանց հրեշտակ կը ձեւանամ եւ խորհուրդներուս մէջ սատանայ կը դառնամ. ոտքի վրայ կը հաստատուիմ ու միտքով կը տատանիմ. կեղծ ձեւեր կ'առնեմ եւ իրականութեան մէջ կը խոտորիմ. ինքզինքս արդար կը ցուցնեմ եւ ամբարշտութիւն կ'արդիւնաւորեմ.

Հեզերուն կարգը կը դասուիմ ու դեւերուն հետ կը պարեմ. մարդիկներէ կը գովուիմ եւ Տեառնէդ կը պարսաւուիմ. հաղածիններէն երանութիւն կը ստանամ ու լոյսի զաւակները կը ցաւին վրաս. յետին ռամիկին կը հաճոյանամ ու մեծ Թագաւորից աչքէն կ'ելլեմ: Դատաւորին օրինաւոր ատեանը ձգելով խաբեբաներուն կ'աղաչեմ. վեհերու սուրբ ատեանէն արտաքսուելով ռամիկներուն մէջ կը խառնուիմ. մարմնովս դուրսէն կը պճնուիմ ու անձովս հոգի գոյնով կը ճանչցուիմ. դաշինք հաստատելու համար կը մօտենամ եւ ուխտս կորսնցնելով դուրս կը վռնտուիմ. այսօր մաքուր հոգի կը կրեմ եւ վաղը մոլի խելագար մ'եմ. Տիրոջը պատուէրը լքելով օձին թելադրութեանը կը հետեւիմ. հզօրապէս կ'արիանամ ու դէշ կերպով կ'ընկրկիմ. օրուան ծանրութիւնը կը քաշեմ ու վարձք ստանալու ժամուն անվարձք կը մնամ. հեռուէն կը ճոռոմաբանեմ եւ պատասխանատուութեան պահուն կարկելով կը պապանձիմ. արեւծագին հարուստ կ'երեւամ ու

մայրամուտքին պարապ կը դեգերիմ. ծերերու-
ախտոր բազմելով խելագարներուն կը կցոր-
դուիմ. ցաւով կը քնանամ ու արհաւիրքներէ
զարհուրած կ'արթննամ։ Կամքին արտը չարա-
չար կերպով կը հերկեմ, փութկոտ խնամք տա-
նելով որ չարիք արդիւնաւորէ։ Ես որ միշտ
անառակ որդի, անփորձ տարագրուած, անզիղջ
խոտորած, անմխիթար տրտմած, ինքնաբերաբար
գերի վարուած, մահուան և ապականութեան
ծառայող անողոքելի տանջուած, անփրկելի մատ-
նուած (սատանին), անպատուաստելի կտրուած,
անարծարծելի մարած, անկազդուրելի խորտակ-
ուած, անվերականգնելի կերպով կործանած եմ
(հոգիով)։ Եւ եթէ անօրհնացած անձիս աւելի
սաստիկ նախատինքներ պէտք է ընել հոս, անհա-
ւասիկ կը գրեմ, կը գրեմ ու չեմ խնայեր ինձ՝
որ դժոխքին համար պատրաստուած խուց եմ
և երկնային Նոր Ադամին նախանձի զաւակը,
ինչպէս և առաջին Կայէնը հինին և հողեղէնին,
որ հոս իսկ անձիս վրայ կը կրեմ ամբողջ
նշանը ամբաստանութեանս ոչ թէ մահէ ազատ
մնալը, այլ զի՛ս յանդիմանող խօսքերս։

Գ. Արդ՝ ո՞ւր են փրկութիւններն, ո՞ւր է հա-
ւատքի սկզբնահայրը որ յուսահատելու տեղին մէջ
(դժոխք) իմ անգթութեանս չարիքը կրկնէ. (ո՞ւր
է) մեծը մարգարէներուն որ խօսքի քարերով

հարուածէ, բարի գործով փառաւորուած քաջը՝ (Եղիազարի որդին Փենեհէս) որ Նիզակին սուրինով չարաչար պատկեցինէ. Ճշմարիտին (Քրիստոսի) պատկերը՝ (Յեսու) որ Աքարի համայնքին հետ չնչէ. վէհերու Աստուածարեալը՝ (Դաւիթ) որ արագողներու (Փաղաւոնացիներու) վրէժին մատնէ. մարգարէ ծնած Տեսանողը՝ (Սամուէլ) որ Ամաղէկացիին հետ Տիրոջը առջեւ սպաննէ. Աստուծոյ Նախանձախնդիրը՝ (Եղիա) որ երկինքէն տեղացած բոցով լափէ. չուքին (հին օրէնքին) բավանդակութիւնը (Յովհաննէս Մկրտիչ) ու Նորին (օրէնքին) սկիզբը՝ որ հեծանոցին ընտրութեամբը հոսէ. Առաքեալներու պետը որ Սափիրային հետ մեռցնէ. հոգիին քննութեամբ զարմանալին՝ (Պօղոս) որ մահուան բուրումը կեանքի քարոզէն հետ խառնէ ինձ։ Արդ՝ անաչառ են ինձ նկատմամբ նաեւ կանոնները երջանիկներուն. և Վերնայինին ուժգին հրամանները գործադրելու քաջ սպառազէններ են, հրեշտակներուն հետ՝ նաեւ մարդիկ, երկրի տիեզերքին հետ տարերքներն ալ, անդգամներուն հետ՝ շարժուններն ալ, որոնցմով դատուելով մինչ չարչարուելու կը դատապարտուիմ իբր յիշատակն ու օրինակը ապագայ սոսկալիներուն (տանջանքներուն)։ Ապրելու վստահութիւնս՝ փոթորիկի հովէն յուզեալ մրրկած ալիքի նման կը մնայ անհաստատ ու անկայուն։ Եւ եթէ

մէկը իմաստութեամբ քննելով փնտռէ, լողացողներու բազմատեսակ զանազանութիւնը՝ մանրերը ու փոքրիկները մեծերուն հետ դառնալով որոնք անթիւ անհամար քանակութեամբ՝ անքաւ երամներով թնդալով կ՚եռան, կը զեռան, կը ոլանան մարմինիս ծովուն մէջ, այնպիսին պիտի վկայէ ու հաստատէ թէ ճշմարիտ են ըսած ու գրած խօսքերս։

Դ. Իսկ Դո՛ւ ինքդ որ օրհնաբանուած անմահ թագաւոր ես, ո՛վ բարի, երկնաւոր, մարդասէր Քրիստո՛ս, Կենդանի Աստուծոյ մէկ հատիկ Որդին, Դո՛ւն որ հզօ՛ր, բարձրացեա՛լ, անքննելի, մտքէ վեր, քաւող ու ահաւոր ես, յանդիմանէ ձմեռը՝ հոգիս ծփացնող փոթորկայոյզ ալիքներուն. արիւնս խռովող մոլեգին շարժման ծարաւը դադրեցո՛ւր. ցնդած մտացս վայրագութիւնը զսպէ, սանձերու և երասաններու կապովը բռնելով։ Մեծիդ հրամանովդ խաղաղութիւն թող ժամանէ ինձ որ ամէն բան տակնուվրայ ընող բուքէն տատանած եմ, տապեցո՛ւր, ջախջախէ՛ բազմագլխեան անդամները ցամաքի վրայ ապրող ծովահէնիս որ ուրուականն է ամօթալի գաղանիքներուս. (ակնարկութիւն Յաշխանի)։ Այս ողբերգութեան մատեանին նորընծայ գրերուն ողորմութիւն հայցող Թախծագին ձայնը իբր մտքով մատուցուած (Յուշխանու) աղօթք ընդունէ։ Զքնող

կերպով ապրելով փրկաւող մարգարէին նման՝ մահուան խոր անդունդներէն հանէ. անձս դատող խոստովանութեան խօսքերս ընդունէ իբր անուշ հոտ. դառն վիշտերս սաստիկ հառաչանքներուս մխիթարութիւն շնորհէ որ յուսահատած եմ։ Ու Քեզ՝ Հօր ու Սուրբ Հոգիովդ յաւէտ փառք, պատիւ և իշխանութիւն. ամէն։



Նոյն այն Հոչողին աղերսալից մաղթանքներուն
ու աղօթական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## ՃԲ. ԽՕՍՔ

ԲԱՅՑ ձե՛զ կ՚ըսեմ ահաւասիկ, ո՛վ ճգնաւորներու խումբեր ու կրօնաստաններու աշակերտներ (վանքերու միաբանութիւններ), որ անբաւ բարիքներ ակնկալելով ու պարգևներ յուսալով՝ ձեր ձեռքերուն մերկամարմին մատուըներովը (անզէն) զինուած էք՝ Տիրոջ ծառայելու համար. ձե՛զ ընծայեցի խօսքի խորտիկներով պատրաստուած այս սեղանը, հոգիներու փրկութեան ու շինութեան համար ընդունեցէ՛ք խոստովանութեան այս աւանդութիւնը։ Անով գիտցէ՛ք մեր ծարմիններուն պարտութիւնը. յիշեցէ՛ք մարգարէական խօսքը, խրատ սեպելով մեզ՝ առաքելո-

կանխէն հետ թէ «Ամէն մարմին թող չպարծենայ Աստուծոյ առջեւ» և թէ «Արդար չկայ բնաւ, ո՛չ իսկ մէկ հատ»: Տէրունական խօսքը մի՛ մոռնաք «Պատուէրները կատարելէ ետք իսկ, անպիտան ծառաներ նկատեցէք զձեզ»: Չըլլայ որ որսեր դառնաք խաբողին, զգուշացէք գիրքին խօսքէն ալ թէ «Ընտրուածներն են անոր (սատանին) կերակուրները»: Որովհետեւ ե՛ս իսկ որ այս մատնաւոր նուաղ պտուղը ձեզ ջամբեցի, կը խոստովանիմ անձիս համար թէ, համաւոր մեղադրանքներ ու բիւրաւոր բամբասանքներ ունիմ անբժշկելի մեղքերու. սկզբնահայրէն (Ադամ) սկսելով մինչեւ անոր վերջին սերունդը, ամէնուն ալ գործած չարիքներուն պարտական սեպեցի զիս կամաւոր յանձնառութեամբ:

Բ. Անպարտ մէկու մը այս խօսքը լսեցի ու չհաւնեցայ, որ անվայել կերպով կ'ըսէր Անոր — որուն առջեւ երկրածին մարմինը չկրնար արդարանալ — թէ «Բնաւ չչնացայ, չպոռնկացայ և ո՛չ աշխարհի մահացու վայելքներէն մէկը ճաշակեցի»: Ասիկա թէեւ անօրէնութենէ չտարբերիր, բայց Տէր Աստուածը այս բաները թող ներէ՛ անոր, եթէ իրաւացի իսկ ըլլայ այս պարծանքը՝ անով՝ ոչ այնչափ առաջացաւ, որչափ ետ ինկաւ, երբ՝ Իսրայէլի ժողովուրդին կողմէ Զաքարիայի խօսքով ըսուած այս անվայել բաները կրկնեց

«Օրհնեալ ըլլայ Տէրը, մեծացանք» ինչ որ Փարիսեցիին ձայնին կը նմանի։ Բայց ես որովհետեւ գիտցող Աստուծոյ դատաստանին ենթարկուած եմ, որ կշռելով մտքիս աներեւոյթ մեղքերը, անանցմով կը համարի զիս դատել խիստ իրաւացի փոխարինութեամբ, կերպարանքս չփոխեմ Տեսնողին առջեւ. չկեղծաւորեմ Քննողին հանդէպ. չստեմ Անոր, որ չգործածներս իսկ կը նշմարէ. խաբէութեամբ աչքը չմտնեմ Մեծին. բարիի համարձակութեան տեսարանին տակ չարիքը չքօղարկեմ. Իբր ընտանի պատկեր՝ չը յարգեմ բնաւ զիս որ ապիկար եմ. օտարոտի զարդերով-չխենեշնամ անպատկառօրէն. չպճնուիմ՝ ուրիշին պայծառութիւնովը. արդուզարդ չյարմարցընեմ դէմքիս ազեղութեանը։ Ինձ նման և ո՛չ մէկը մեղաւոր է. ո՛չ մէկը անօրէն, ո՛չ մէկը ամբարիշտ, ո՛չ մէկը անիրաւ, ո՛չ մէկը չարագործ, ո՛չ մէկը վրիպած, ո՛չ մէկը սխալած, ո՛չ մէկը մոլեգնած, ո՛չ մէկը խարդախուած, ո՛չ մէկը չաղախուած, ո՛չ մէկը ամչցած, ո՛չ մէկը դատապարտուած. մինակ ես եմ և ուրիշ ոչ մէկը կայ. ամէնքը ես եմ ու ամէնքը վրաս են։ Ո՛չ հեթանոսները՝ որովհետեւ չէին գիտեր. ո՛չ Հրեաները՝ որովհետեւ կուրցան. ո՛չ ազգէաններն ու խառնիճաղանճ ամբոխը՝ որովհետեւ զուրկ էին խելքէ։ Վարժապետ կանչուեցայ որ դատախազ եմ անձիս. ուսուցի ուրիշ ան-

ուսանեցայ և Աստուծոյ մատուցանելիք գովեստը ուրեցի. բարի ըսուեցայ որ խեղճութիւնը ժառանգած եմ. մարդիկները մաքրութիւնս վկայեցին, որ անմաքուր եմ Աստուծոյ առջեւ. արդար սեպեցին զիս, որ կատարեալ ամբարիշտ եմ. մարդիկներու գովեստովը հեշտացայ, որ ծաղրուիմ Քրիստոսի ատեանին առջեւ. աւազանէն առնուան (Գրիգոր) կանչուեցայ, ու ես մահուան քունովը ննջեցի, փրկութեան օրուան հնչողը (Գրիգոր) յորջորջուեցայ, բայց արթուն պահուելիք աչքերս փակեցի: Ահաւասիկ դատաստան, ահա՛ յանդիմանութիւն, ահա՛ նոր կշտամբանք, և (Գրիգոր անունը) հին դատապարտութիւն, ահա՛ դէմքի ամօթ և հոգիի տագնապ, ահա փնտռուիլը փոքրիկներուն և կշռուիլը մեծամեծներուն:

Գ. Իսկ մինակ Դուն, ո՛վ մարդասէր, անոխակալ ու համբերող Տէր Աստուած. մեղաւոր անձիս, ինքնաբերաբար ուղղած այս կսկծեցուցիչ նախատինքներս, անոր՝ ահաւոր օրուան վերջին դատապարտութեանը տեղ սեպէ: Ասոնք՝ զոր ես ինծմէ անձիս դէմ գրեցի, չլսեմ Քեզմէ ո՛վ Գթած: Կանանական պարտաւորիչ ապաշխարութիւնս վերցո՛ւր, հեռացո՛ւր ինծմէ, որ հոգիս անենջանքովը կապուած եմ Քեզ հետ: Հանէ՛ վրայէս խայտառակութեան ամօթալի նախատինքը. կարող աջովդ ծածկէ ադեղ երեւոյթը մերկ մարմ-

նոյն. հանգիստի հրաւիրէ զիս որ ուժգին մեղքերու բեռներու տակ ճնշուած եմ. բարութեան ճամբայ մը գծէ ինծ, որմէ կեանքիդ հասնիմ. ողորմութեան յիշատակ և մտնելէ ետք ալ կատարեալ կեանք պահէ՛ ինծ, որ երկինքի մէջ օրհնուած, երկրի վրայ գովուած ու ամէն բանի մէջ բարեբանուած ես յաւէտ. ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն
ու աղօթական հեղեղանքներուն նո՛ր յաւելուածը.
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

ՀԴ. ԽՕՍՔ



՛վ բարձր զօրաւոր ու ահաւոր Թագաւո՛ր, Դուն միայն որ օրհնուած Տէր ես, Յիսուս Քրիստոս, ապրելէ յուսահատածներու (սահմանուած) սատկեցնող անէծքները՝ տարեցնող օրհնութեան կը փոխաանակնկալ կերպով, ու վհատեցնող պարտաւանքները զուարթացնող գովեստի. ամչնալու տեղ՝ համարձակութիւն (կուտաս), պատկառելու տեղ՝ պատիւ. տարագրութեան տեղ՝ բարութեան յոյս, բաժնուելու տեղ՝ միանալու ակնկալութիւն. պատուհական խօսքերու տեղ՝ մեղմացուցիչ ափո-

փանք եւ մէկ անգամ դատապարտուելու տեղ՝ (հոգիի) կրկնապատիկ ազատութիւն։

Բ. Ո՛վ Տէր ողորմէ՛ մեռնելու դատապարտուած մեղաւորիս. վերջին շունչս արձակած պահուս, երբ արկածալից ուղեւորութեան անազատելի ընթացքն ու անփախչելի ճամբան աչացս առջեւ բերելով մտքիս տեսութիւնովը վտանգին ամբողջութիւնը նշմարեմ ու ողորմագին նայուածքներով աչքերս դէպ ի բարձրերն ուղղեմ լալահառաչ, ու երբ բնակարանիս յորկէն պատուհանէն՝ դուրս ելլելու ճամբուն նայելով՝ թշուառացած կիսամեռութեամբ, այլայլած դէմքով, երերուն մատուըներով, խեղդուկ հառաչով, նուաղկոտ հեծկլտուքով, նուրբ ձայնով, բազմադիմի տարակոյսներէս սաստկապէս արտմած, աներբեւոյթ խորշերու մէջ գործած չարիքներուս վրայ ողբալով հառաչեմ, այն պահուն իսկ անսպառ կարողութեամբդ կրնաս հրաշք գործել, ո՛վ Բարեգութ, ըսելով թէ «թո՛ղ ողջննայ խորտակուած հոգիդ» եւ կամ «թո՛ղ ներուին քեզ՝ գործած մեղքերդ» եւ կամ թէ «մեղքերէ մաքրուեցա՛ր, երթաս բարով»։ Եւ ինչ որ այն ժամուն (հոգիս փչած ատեն) չեմ կրնար պաղատիլ, մարդասիրաբար ընդունէ այսօր, ո՛վ Համբերո՛ղ, Առատաշնորհ և ամէնքը Ապրեցնող։ Եւ որ հիմա խորախտաձայն ճարտարախօսութեամբ կը հպարտա-

նամ գլուխս վեր բանած, այն ատեն անկենդան դիակ մը դարձած, պիտի երևնամ պատկերն, պապանձած լեզուով, կաշկանդուած ձեռքով, լքուած անդամներով, գոցուած շրթունքով, փակուած աչքով։ Իբր անշարժ տախտակ, կիսայրեաց կոճղ, անզգայ արձան, անխօս պատկեր, անշունչ գոյութիւն, ողորմելի առարկան, լալիք կերպարան, ողբալի օրինակ, եղկելի դէմք, արտասուելի նմանութիւն, լռած լեզու, ցամքած խօս, թափուած ծաղիկ, ծիւրած գեղեցկութիւն, մարած ղամբար (լամպա), պարապ կոկորդ, խոպան արտ, կղպուած լեզու, ցամքած աղբիւր, թալկացած մարմին, լուծուած փոր, քակտուած տաղաւար, կոտրուած ոտեր, բաժնուած յօդեր, կտրուած ծառ, սղոցուած արմատ, լքուած տուն, հնձուած արտ, արմատէն կտրուած բոյս, օտարացած բարեկամ, մոռցուած պահեստ, թողուած աղաեզութիւն, մերժուած ատելի, վերցուած խոչընդոտ, անարգուած կմախք ու իբր ոտնակոխ եղած անպիտան։ Կարօտ՝ ուրիշներու մաղթանքին, որոնք թշուառիս հաւատքը՝ լալահառաչ ձայնով նուագելով, արցունքի ցօղով դէպ ի բարձրերը՝ Բարերարիդ գթութեան առջեւ կը տարածեն զայն։ Առաջ կը բերեն (անձիս զղջալով) Քեզ դառնալը զոր կ'օրհնեմ, խաչիդ փրկարար նշանը՝ որուն կ'երկրպագեմ. յարութեան ճշմարտութիւնը՝ որուն

կը հաւատամ. փառքիդ յայտնութիւնը՝ զոր կը փառաւորեմ. դատաստանիդ ահաւորութիւնը՝ զոր կը խոստովանիմ. յանդիմանական խօսքերդ որոնցմէ կը սոսկամ. ինձ ուղեկցութիւնը սուրբ Հոգիիդ՝ զոր կը պաշտեմ. խաչակնքութիւնը օծումիդ, զոր նաեւ կը համբուրեմ, Քեզ հետ (յաւիտենականութեան մէջ) Թագաւորելը ո՛վ Տէր Յիսուս, որուն կը պաղատիմ։ Արդ, լքուեցայ, մերժուեցայ, վերցայ, բաժնուեցայ, փախայ, ուրացայ, աշխարհային կեանքի հաղորդակցութիւնը տեղի տուայ, բայց Քու տուած յոյսիդ պարգեւը, Յայուն է անջինջ յիշատակարան պահուեցաւ ինձ։

Գ. Ողորմութեամբ նայէ ինձ որ չուարած եմ վտանգներէ, ո՛վ միակ Բարեգութ, փառաւորուած Աստուծոյ Որդին. քաւել, բժշկել, կեանք տալ, պաշտպանել, նորոգել, նկարել, կանգնել, հաստատել, երջանիկ անսպառութեամբ կրկին ստեղծել՝ Քու կարողութեանդ յատուկ է միայն, Դուն կը փրկես, Դուն կ՚ողորմիս. անկարելին գոյութիւն չունի Քեզ համար, այլ կատարեալ զօրութիւն, բարձրութիւն, իշխանութիւն, անվերջ Թագաւորութիւն, իսկութիւն ինքնութիւն ամէն տեղ լեցնող ընդարձակութիւն, բարերարութիւն, լուսաւորութիւն ես։ Տիրապէս փառաւորուած ես՝ անպակաս եւ անյաւելուած, սուրբ Երրորդութեանդ անթարգմանելի խորհրդովը օրհնուած ես.

նաեւ յաւէտ գովաբանուած նոյն հաւասարութեան եւ միապատիւ զուգակցութեան պաշտամամբը, երէկ եւ այսօր եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

---

Նոյն այն Հոգւոյն ողբերգալից մաղթանքներուն ու աղերսական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը.

Սրտի խորերէն խօսք առ Աստուած

## ՀԴ. ԽՕՍՔ

Ո՛Վ երկնաւոր Թագաւոր, տէրը ամէնուն, ամէն բանի համար ամէն առթիւ միշտ համբերող, կենդանի Աստուծոյ անքննելի Որդին. Ահաւասիկ ողորմիլը բուն իսկ այն ատեն մեծարժէք է երբ այլ եւս ակնկալութիւն չկայ առաքինութենէ. այն ատեն (թանկագին է) բարեգործելը՝ երբ խափանուած են արդէն մեղքի հնարքները: այն ատեն (նուիրական է) մարդասիրելը, երբ տկարութեան վտանգը տիրած է՝ ներսէն ու դրսէն պաշարելով. Հո՛ն է (որ պիտի փառաւորուի) բժշկութիւնը Քու Աստուածային ձեռքիդ, երբ կենդանութիւնը խոյս տուաւ բոլոր անդամներէն, այն ատեն (խնկելի է) այցելութիւնը, երբ հնարքի ճամբայ չկայ այլեւս. Այն է Քու մեծութիւնդ՝ երբ յուսահատելի վէրքը բուժես. այն է սովորականը Քու ընտանի բնութեանդ. եթէ անակընկալ ժամու մը պահուն (հոգիի) փրկութիւն յար-

մարգնես։ Այն է հանդէսը Քու յաղթանակիդ, եթէ կեանքի փակուած մուտքը՝ վերջին շունչիս բանաս. այն են Քու վայելուչ շնորհներդ, եթէ իմ չարիքներս մոռնալով Քու բարիքներդ յիշես։ Այն ատեն անախտակալ (քէն չպահող) եւ՝ եթէ բազմերախտ (էմէքտար)ներուդ հետ ինծ ապերախտիս ալ խնամք տանիս։ Առանցմով ճանչնալով պիտի հաւկնամ թէ առջի գթութեամբդ ընդունած ես իմ այս խօսքերուս նուէրն (աղօթք), եթէ չար սովորութիւններս անհետացընես վրայէս։

Բ. Ընոր համար բանաստեղծութիւններ կը յօրինուին ու նուագերգութիւններ կ'եղանակաւորուին, երբ բարի Տէրը՝ բարեգործներու հետ պարգեւ տայ չար ծառային. որ երբ արդարացի կերպով բանտը պիտի մնար, Անիկայ՝ արքայական (հոգեւոր) ապարանքներու մէջ հանգստացնէ զայն. երբ հրաւիրուած է ցեխոտ փոսի մէջ (նետուելու), Անիկայ ամենաբարձր հրաւիրեալներու բազմոցին վրայ փափկացնէ. մինչ սպասէ որ աչքերը փորեն, Անիկա՝ բարձրերուն ուրախութիւնը ցուցնէ. մինչ ակնկալէ որ մատուըները կտրեն, Անիկայ համարձակութեան մատնին նուիրէ. մինչ գաւազանի հարուածներուն սպասէ, Անիկայ՝ գթութեամբ գրկէ զինք. մինչ կորսուելու պատրաստուի, Անիկայ ներկայանալի ընէ խիստ շատ տեսնողներու. մինչդեռ մահուամբ

տանկէլ ակնկալէ, Անիկայ կեանքի հետ փառք ալ ընծայէ. մինչ սպասէ որ գլուխը կտրեն, Անիկայ զայն (գլուխը) պսակով պայծառացնէ։ Ո՛վ Գթած, ասո՛նք են օրհնութեան պտուղները Քու սքանչելի արմատ ունեցող ճիւղերուդ, ասոնք են կեանքի պտուղները Քու արարչական հրամաններուդ. ասոնք են մեր սրտի իղձերը. Քու խոստովանած տենչանքիդ համեմատ (մեղաւորին մահը չեմ ուզեր, այլ անոր մեղքէ դառնալով ապրիլը). ասոնք են նշոյլները լոյսին, Քու ամէն կողմ սփռուած ճառագայթներուդ. այս է ախորժած կերակուրը Քու քաղցրութեանդ որ բարեբանուած է։

Գ. Մինակ Քուկդ են ասոնք, Տէ՛ր, քեզմէ ազդուելով գրեցի ես զանոնք. առ Քեզի յատուկ աղերսներով կ՚աղաչեմ, ո՛վ Օրհնուած, Քուկիններէդ պարգեւելով շնորհէ՛. առակին աղերսանքին համաձայն՝ Քու բարի գանձերդ բա՛ց Ո՛վ Տէ՛ր։ Քու բարիքներու ամբարանոցիդ մէջ՝ մի՛ խառներ իմ չարիքներս. Քեզ տալի եղած ոխն ու բարկութիւնը մի ամբարեր գթութեան ողորմութեան հետ զորս կը սիրես. Քու պաշտելի ստացուածքիդ մէջ, մի պահեր մթութիւններն ու դաժանութիւնները որոնք անախորժ են Քեզ, և մեղքերն ու թշուառութիւնները որոնք վնասակար են ինձ։ Կեանքի մատեանիդ մէջ՝ օրհ-

Նուաճ Աչովդ՝ մի՛ գրեր իմ անէծքի պարտամուրհակը. այլ իմ անհնար ողբածներս, այն պարտագային իսկ շատ դիւրին և հեշտ ցուցնելով ինձ. անոնցմով կրկին աւելի եւ մեծացնես անունդ ո՛վ Տէր։ Պարտքերս խիստ շատ են ու չափէն աւելի. բայց ոչ այնքան հրաշալի են, որչափ Քու ողորմութիւնդ. առատ են մեղքերս, սակայն յաւէտ նուազած են Քու ներողութեանդ առջեւ. առատ են չարութիւններս, սակայն ամէն բանի կը յաղթէ Քու մարդասիրութիւնդ ո՛վ Հզօր Ամենակալ. ինձ համար, անհամար են բիծերը անձիս, իսկ Քեզ համար՝ սահմանափակ են անոնք։ Մեղքերու զէնքերը զոր ես ամօթապարտս պաղատերեցի, ո՛չ այնքան զօրաւոր են կենդանութիւնս մահացնելու, որչափ Քու մահուանդ յիշատակը, ո՛վ Կենդանի Տէ՛ր, կործանողին (սատանայ) քանութիւնը հալածելու։ Քի՛չ մը մութը ի՞նչ ազդեցութիւն կրնայ ընել Աստուածային ցորեկին. թեթեւ մշուշը ի՞նչ կրնայ ընել Մեծութեանդ ճառագայթներուն. ակար մարմնոյս խակութիւնն ու հեշտանքը ի՞նչպէս բարձրանալով պիտի կշռուի խաչին վրայ Քու կրած տանջանքներուդ հետ։ Տիեզերքի բոլոր մեղքերուն կոյտը ի՞նչ կրնայ երեւնալ Ամենակալիդ առատաշնորհ աչքերուն. հողի կոշտ մը՝ որ դիւրաւ կը փխրի, տեղի տալով բախումին կարծրութեանը եւ իբր պղպջակ մը

անձրեւի, որ Քու կամքիդ բազմազեղ հոսումին առջեւ ոչնչանալով կը պայթի իսկոյն։

Իմ յանցանքներս քաւելու համար, ժամանակի երկարաձգման ի՞նչ պէտք ունի Քու զօրութիւնդ որ ամէն բան հնարաւորելու կարող է։ Ո՛չ ակընթարթ մը, ո՛չ արագ անցնող դոյզն տեւութիւն մը, ո՛չ փայլակի նման թեթեւ նայուածք մը, ո՛չ կիսատ դանդաղութիւն մը, ո՛չ փութկոտ ոտքերու քայլափոխը. ո՛չ մէկ կանգուն բարձրութենէ կաթիլի մը անկումը. ո՛չ գիծի մը մտքով ըմբըռնումը, ո՛չ լոյսի նշոյլներուն արագութիւնը, ո՛չ չնչաւորութիւնը. և ո՛չ մէկը այս անհաստատ ու անյարմար օրինակներէն — որոնք անմիջական կերպով ու խիստ արագութեամբ տեղի կ՚ունենան — այնչափ դիւրութեամբ կը գործադրուի, որքան Քու զօրութեանդ՝ մեղացս սառնամանիքներուն պահեստը աւրելը, ցնդեցնելն ու հալեցնելը, ո՛վ ամէնուն Աստուածը Տէ՛ր Յիսուս Քրիստոս. Դուն որ կենդանի Աստուծոյ անքննելի Որդին ես։ Որ բարիներուն հետ՝ չարերուն ալ կու տա՛ս, արեւին քաղցրութիւնը կը պարգեւես և երկուքին վրայ ալ կ՚անձրեւես անաչառաբար։ Իրաւացի կերպով կը կշռես, կը սահմանես նաև նեղութեան փորձանքներն ալ հաւասարապէս, անոնց որ մե՛ծ հանգիստին արժանի են ու պարգեւին կ՚սպասեն, փորձութեան փոքրիկ խթանով հաս

*իսկ վճարել կուտան իրենց քչիկ մը պտուղը. իսկ անոնց՝ որ երկիրը ընտրեցին, ողորմութեամբ կը ներես. և ատոնց ալ անոնց հետ խնամ տանելով կ'սպասես միշտ որ քեզ դառնան. Եւ փառք կը մատուցուի քեզ որ ամէն առթիւ հրաշք գործելու ամենակարող բարեխնամող ու համբերող ես ու յաւէտ Օրհնուած. ամէն։*

---

Նոյն այն [illegible] աղերսալից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։

Սրտի խորերէն խօսք առ Աստուած

**ՀԵ. ԽՕՍՔ**

*ԱՐԴ՝ զմայլումով ընկղմած ու խապօռ-ծածկուած եմ Մեծութեանդ երախտիքներուն անճառելի առաւելութեանն ու բազմամասն առատութեանը մէջ, որոնք ամենապատար և անպակասելի լրումով պաշարած են (մարդիկը) աջէն ու ձախէն, երեսէն ու ետեւէն՝ անթիւ անհունութեամբ։*

Մեկնելով կը զետեղենք հոս դարձեալ՝ կրկնութիւնը այն աւանդութեան, զոր Առաքեալները Աստուածային հոգիէն ազդուելով՝ սահմանեցին եկեղեցւոյ դաւանութիւնը լու-

սաքանելու համար։ Խորհրդածութիւն մը նաեւ անոնց՝ նիւթեղէն եկեղեցիին նկաս-մամբ, որով ցոյց կը տրուի անոր երանելի կերպագրութիւնը (պատկերին գծագրութիւ-նը)* որ խելքէ վեր է։

*Բ. Ճշմարիտ դաւանման գովեստի աւանդը՝ հոս դարձեալ կը մատուցանեմ, կ'ընծայեմ։ Որ-պէս զի ինչպէս որ երբեմն հերձուածողին չարա-փառութեամբը, (բամբող սատանին մոլորցնող վարդապետութիւնովը) անոր ոսկալի խաբէու-թեամբն ու նենգողին կարթովը կորսուելով դուրս վռնտուեցայ ու ելայ դրախտէն, հիմա այս միա-ցընող ուղիղ ամբողջութեամբն ու շնորհի ճշմարիտ աւանդովը կրկին վերանամ ու լուսեղէն թեւերու թռիչներով երկինք հանիմ։*

*Գ. Այլ՝ իմ գովելի ու պանծալի մայրս, ամէն կոյսերէն աւելի իսկապէս կոյսը, մեծ և երջանիկ*

---

*(*) Նարեկներէ ոմանք միջոցէն յաւելուած չեն դրած այս Գլուխը և իբր Վերնագիր այս կտորը դնելով՝ տակէն սկսած են Ա. հատուածը որուն յարմար շարունակութիւնն է նաև Բ. հատուածը. Ասիկայ աւելի ստոյգ թուեցաւ մեզ, բայց որով-հետեւ մեծամասնութիւնը այնպէս չէր, ստիպուե-ցանք մենք ալ մեծամասնութեան հետեւիլ։*

դժխոյ անսասան (եկեղեցին), որուն արգանդը (աւազան) յղացաւ զիս և անկէ հոգեւոր երկունքի ցաւերով ծնայ, պէտք է որ կանոնաւորաբար սահմանուած խօսքերով արձանագրեմ զայն այս գրքին մէջ. որպէս զի ճանչցուի, ցոյց տրուի. ապագային ուրիշ ազգերու ալ պատմուի այն Գավելիին (եկեղեցի) փառքին քանակութիւնը թէ, Երրորդութեան դաւանութիւնն յիշատակող այս հաւատքի ճաշին մէջ, արժանաւոր պաշտօնով պատուուած է իբր մաքուր մարմինը՝ Գլուխին հետ (Քրիստոս). որ մարդ եղած Խօսքն է Աստուծոյ։ Արդ՝ հոգենկար պատկերի այս օրինակ խօսքովը, զոր կը յօրինեմ (եկեղեցւոյ) յուսոյ խորանին համար. ընդունէ՛ զիս, ո՛վ Գթած. Օրհնուած. քաւելով ու մաքրելով զիս ասոր մէջ (եկեղեցիին)։ Ասով՝ հանէ՛ հոգիէս նախատինքները մեղքերուս. տուր հովանիին տակ՝ անմեղութեամբ ու անբծօրէն նստեցուր զիս. մարգարէին խօսքին համեմատ, որ Քեզ կ'ակնարկէ ո՛վ Յիսուս, Դաւիթին տանը միացուր զիս որ տկար մ'եմ ու անկէ Քու Աստուածային տունդ փոխադրէ. (եկեղեցին) մտնելս պարապ՝ ու անկէ ելլելս անօգուտ հետեւանք թող չունենայ. տաք հաւատքս ցուրտ մի՛ սեպեր, և ողջոյնի համբոյրս անկարգ բան մը մի՛ նկատեր. պաշտօնս անընդունելի մի՛ համարեր, ո՛չ ալ երկրպագութիւնս՝ անխորհրդա-

բար (մեքենաբար) կատարուածի նման թող լքուի Քեզմէ. անպտուղ թող չըլլայ տեսքը պատկերին (եկեղեցիին) և ոչ ալ անմնչոյլ՝ սքանչելիութիւնը կերպարանքին. ողջակէզի զոհը անկրակ թող չմնայ և ոչ ալ այս հացին ուխտի պատարագը դուրս թող ցրուուի. լոյսի ճաշակդ մանուան (ճաշակ) թող չըլլայ ինծ և ոչ ալ կողերուդ արեան բաժակը պատճառ ըլլայ դատապարտութեանս ։

Դ. Քեզ կ'աղաչեմ, ո՛վ Տէր Յիսուս, որ Մէկն ես Երրորդութենէդ և որով Քու Հայրդ ու Սուրբ Հոգիդ ճանչնալու գիտութիւնը ճաշակեցինք. որովհետև Քեզմէ իսկ սորվեցանք եկեղեցիին ամէն բան պարգևող կարգերը. և ասոր մէջ, — որ սրբավայր է աղօթք նուիրելու և կեանքի փրկութեան բարիքներուն լուսարանը — ձեռքերու բարձրացումով՝ տարածելով մեր արտերը, խօսքի այս կնդրուկը, այս բարեշնորհ ձայնով կ'ընծայենք Քե՛զ միշտ, որ ասոր (եկեղեցիին) մէջ կը բնակիս ու ամէնուն կը տիրես ու երիցս սուրբ ես ։

## Նիկիոյ մէջ սահմանուած Աստուածային աւանդութեան խօսքին վրայ ուրիշ խորհրդածութիւն մը.

Ե. Օրհնութեան երգերու բարձրաձայն նուագներով ու հաւատքի պաշտելի խօսքով կը փառա-

ւորենք սկիզբ չունեցող Երրորդութիւնը, որ բարի հրամանովը գոյացուց բոլոր արարածները. Որ բարձր է անհամեմատ կերպով, Որ խելքէ վեր է ու մաքով չըմբռնուիր, զգայարանքով չըզննուիր ու անպարագրելի է արարածներէն. Որ սահմանող է վերին երկինքին ու ներքին անսահման խորերուն. ապառումներու լրումն է (չապառիր) և սկզբնաւորութիւններու ամէնէն առաջինը, Միութիւն՝ երեք անշփոթ կերպարանքներէն և Երրորդութիւն՝ միակ անբաժանելի իսկութենէն. Որ մաքի նրբութենէն վեր՝ բովանդակ ամէն տեղ տարածուած է։ Որ անփոփոխ բարի, անխախտ ուղղութիւն, սիրոյ անխառն կերպարան, անյաջորդ մեծութիւն, անխոնարհելի բարձրութիւն, անեղծ տեսիլ, աննուազելի բարերարութիւն, կայուն կամք, կենդանի հրաման, փրկչական ակնարկութիւն, ճշմարիտ երանութիւն. հաւասար ակնկալութիւն, անսուտ խոստում. արգասաւոր աւանդ, առոյգ աւետիս, ձեռք չհասնելիք բարձրութիւն է։

Զ. Մէկ Հայրը միակ Որդիէն, միակ Հոգիովը պատուուած. բոլորովին զերծ չարէ, բարութեամբ ամենահարուստ. օրհնաձայն գոհաբանութեամբ ու անքննելի ներբողով գովուած։

Է. Համապատիւ Կցորդութիւններէն, անպատմելի Ազգականներէն, եռալուս Զուգակցութիւններէն ու Անյաւելուածեան Լռութիւններէն՝ բարձ-

բեալ ու ահաւորանաւն մէկը՝ որ Հօրը նման կը պատ-ուաստուի, ինքնիշխան կամքովը ու սուրբ Հոգիին գործակցութեամբը՝ խոնարհելով իջաւ երկինքէն, անպակաս մնալով իր ընտանի փառքէն հաճեցաւ մտնել Աստուածածին Կոյսին մաքուր արգանդը մայրենի, ուր աճեցուց օրհնութեան բոյսը՝ լոյսի բնակարանն եղող մաքուր արաին մէջ. ամենակա-տարն Աստուածային էութեանը՝ գոյակից ընելով նաեւ (մարմինը) անբաժանելի միաւորութեամբ. Աստուածային հոգիին մէջ հրաշալի կերպով բա-ղադրեց նաեւ գոյութիւնը բանական հոգիին՝ թափանցական խառնութեամբ։ Որով կրթիչ սան-ձերու խստապինդ երասանովը իմ ստահակութիւնս հանդարտեցուց. Եւ կամաւ ընծայուելով խաչին՝ կեանքի պտուղին ծառիկը՝ անմահութեան տուն-կին գագաթը բարձրացաւ. Մահուամբ վիրաւոր-ուեցաւ Աստուածութիւնը՝ բնաւ չբաժնուելով մարդկային մարմինէն, որով կենսատու ըրաւ դա-տապարտութեան գործիքը, Արարչութեան իսկու-թիւնը (Աստուածութիւնը) անոր (խաչ) վրայ յաւէտ անբաժանելի մնալով, վշտացած նիւթական մար-մինէն։ Դժոխքի մութ անկիւններն իջնելով, բաժ-նողին (սատանայ) կապանքներէն ազատեց իր ստեղծածը որ կողոպտուած էր. Եւ խոր քունէ արթնցողի նման, ետ ընելով մահուան դիմումը՝ կանգնեցաւ, կենդանացաւ Աստուածապէս՝ երկի-

րէն ելած կեանքի Հօրն ու Հովիւը բանաւորնե-րու հօտին։

Աշխարհի մէջ հաւատացուեցաւ ու բնաւ չդադա-րելով նոյնութեամբ երեւցաւ, ինչպէս ամբողջու-թեամբ եկաւ, բովանդակապէս ալ համբարձաւ, նախկին պարզութեան արարչական փառաւորու-թիւնովը՝ բազմեցաւ, նստաւ գերունակ գահոյքը վրայ։ Զոր կը խոստովանինք բարերար Աստուած և տէրը ամէնուն. որ մեծ օրուան մէջ՝ արդա-րացի ընտրութեամբ կը դատէ բոլոր երկիրը. որ ինքն է սկիզբը ու ինքն է վերջը, նոյն է առջինը և նոյն է ետքինը, որ անպակաս բովանդակու-թեամբ անմատչելի լոյսի մէջ կը թագաւորէ։

Ը. Հօր ու Որդիին հետ կ'օրհնաբանենք նաև անբաժանելի բղխումը Հոգիին, որ փառակից է Անոնց տէրութեան։ Որ ամէնքը ստեղծեց և կեն-դանի կը ծնի ամէնքն ալ։ Որ դեռ սկիզբէն իսկ, երբ համատարած մթութեան մէջը՝ ընդհանուր աշխարհի վրայ տիրած էր, երկրի ամէն կողմերը տարածուած, ծովուն անհուն ջուրերուն վրայ կը շրջէր, կը նկարէր ու կը պատկերացնէր լոյսի տուրքը Աւազանը՝ (Մկրտութեան) ներկայ խորհուր-դը կատարելու համար։ Նա՛խ շինեց՝ ու հիմա ալ կը գործէ. գոյացուց, ու մինչ առաքեալներ, սքանչելիքներ, սրբազան նախատեսութիւններ, Աստուածօրէն ներգործութիւններ, զարմանալի գօ-

րութիւններ կը կատարէ. մարգարէներ, առաքեալներ, և հանճարեղ կրթութեան վարժեցնող վարդապետներ, (կը ներշնչէ)։ Քրիստոսի արքայար արեան մատուցումը յարդարեց, անձերու քաւութիւն և մարմիններու առողջութիւն հրամայեց ողորմութեամբ՝ Քրիստոսի նման։

Ջուրէն աւելի գերազանց կերպով մկրտեց. միակ իր կարողութիւնովը նորոգեց, լուսաւորեց. նոյն բարեգործութեամբ միշտ կը զօրանայ։ Միածնին Աստուածութիւնը վկայեց՝ Յորդանանու հոսանքին մէջ, Թափօրական լերան վրայ՝ ամպի օրինակով տեսնուելով՝ Հօր ձայնով երեւցաւ։ Նոյն նմանութեան (ամպ) օրինակով Յակոբեան տոհմին հովանի եղաւ, երբ Եգիպտոսէն կ'ելլէին. Մովսէսի զօրավարական համբորդութեանը մէջ՝ սատարիկ հովով՝ Փարաւոնը ընկղմեց։ Քահանաներ կը կատարելագործէ, իմաստուններ կը կազմէ. Թագաւորներ կը զօրացնէ. քաւութիւններ կ'ընծեռէ, մեռածներուն կեանք կը շնորհէ որ յարութիւն առնեն՝ նորոգուելով։ Նոյն ինքն է Օծումը՝ մարդացած Աստուծոյ, Որդիին մեծութեան պատւակից՝ ու մշտնջենաւոր հաւասարութեամբ՝ Հօր հետ երկրպագուած, անսահման փառաւորութեամբ յաւէտ օրհնուած, ամէն։



Պիղծ աղանդաւոր Թօնդրակեցիներու դէմ — որոնք Նոր Մանիքեցի՝ այսինքն Պօլիկեան-ներն են — սուրբ եկեղեցւոյ խորհուրդին վրայ՝ Անոր (Նարեկացիին) ըսածն է։

*Թ. Ուղիղ հաւատքով կը դաւանինք ու շըր-թունքներու անխոտորնակ ամբծութեան համբոյ-րով կ'ողջունենք՝ Աստուածային ընակութեան համար չինուած եկեղեցիին՝ անշունչ քարերէ կա-ռուցուած այս խորանը։ Որ երկինքն ալ գերա-զանցեց՝ իր ամէնէն աւելի զարդարուած բարձ-րութեամբը. որ նոյն իսկ առաքեալներու դասէն հիմնուեցաւ, երկնայինին աշակերտներէն օրհ-նուեցաւ, Խօսքին (Քրիստոս) սպասաւորներէն պաշտօն ընդունեց։ Կեանքի այդ գանձը՝ Վերնա-տան սրահէն սկիզբ առաւ, այն խորհրդակատար տեղէն՝ զոր Աստուծոյ Հոգին լեցուց, Պէնտէկոս-տէի մեծ օրը՝ անոր մէջ զօրութիւն փայլեցնելով։*

*Ցուցնելու համար թէ, այս եկեղեցին կանխա-մեծար առաւելութիւն ունի սրբութեան շնորհը վայելելու, լոյսով նորոգուելու բարի փառքը՝ նախ բարեբաստիկ տան (Վերնատուն) տրուեցաւ և ետքը անոր մէջ բնակողներուն (Առաքեալներուն)։ Ուրկէ՝ (եկեղեցիէն) Աքելի՝ մահ գուժող արիւնէն յաւէտ գերազանցաբար՝ և բերկրութեան մեծա-ձայն բարբառով՝ բաշխուելով կը մատուցուի*

արիւնը զօրաւոր Աստուծոյ, տար (եկեղեցիին) մէջ աղդելով կենդանութիւնը անմահութեան։ Որովհետեւ և ոչ մէկը կրնայ երկինքին տակ արեւուն դիմաց՝ այս ահաւոր խորհուրդին ապաստարկութեանը ձեռնարկել, եթէ տար (եկեղեցիին) թեւին տակ չպահպանուի. մանաւանդ որ երկինքով չբաւականանար տէրունական մարմնի այս նուէրը, եթէ օրհնութեան այս ձեղունը (եկեղեցի) ծածկոյթ չունենայ. որովհետեւ՝ օրէնքին համեմատ՝ մահուան անէծքով կ՚արտաքսուի այն մարդը որ վկայութեան այս խորանէն դուրս Աստուածային պատարագը կը մատուցանէ. մանաւանդ որ արեան պարտական կը կանչուի այն՝ որ հոգիին օրինակ եղող արիւնը՝ այս նուիրատան չընծայէ։ Քրիստոսի մահովը մէկ անգամ միայն կը լուացուի (մարդ) տար (եկեղեցի) մէջ (մկրտուիլ). որպէս զի Աստուածութիւնը չանարգուի ազէտներէն ու նախկին չարչարանքը չկրէ՝ Զինք ճանչցողներէն ալ։ Մէկ անգամ միայն (կ՚ընդունի մարդ) լոյսով օծուելու ձեռնադրութեան պատիւը, որ անբծութեանը մէջ խաբէութիւն չմանէ։ Ապաշխարութեան փոխարէն արուածէն զատ իբր շնորհ՝ մէկ անգամ քաւութիւն կը ստանայ մարդ (մկրտութեամբ), որպէս զի ճշմարտութիւնը արտաքին ձեւերով չխարդախուի։ Ապառնի ընտրութեան (յաւիտենական դատաստան) համար մէկ հաւատք միայն (կը

քարոզուի եկեղեցւոյ մէջ), որպէս զի հատուցումի ապառնալիքը օտարօտի և նորանշան զրոյց մը չկարծուի (մեղաւորներէն)։ Մեր երկու գոյութիւններուն (հոգւի և մարմին) համար՝ մէկ արդարացի կշտամբանք միայն (կը քարոզուի եկեղեցիին մէջ). որպէս զի չկարծուի թէ մարդուս երկու կէսերուն՝ ներքինին ու արտաքինին չարի բարիի զատ հատուցում պիտի ըլլայ անմահ յարութեան պահուն՝ երբ արքայական որդեգրութիւնը կատարուի. այլ երկրայինին (մարմին) մասնակցութեամբը յայտնապէս պիտի ճշդրտուի առաւելութիւնը երկնային թագաւորութեան։ Արդարներու անեղծ մնալուն կենդանարար յոյսը մէ՛կ է, (կը քարոզէ եկեղեցին) որպէս զի ունկնդիրները հասկնալով հաւատան թէ, ստոյգ են խոստացուածները։

Ժ. Այս պաշտելի դշխոն՝ անշուշտ եկեղեցին՝ կեանք կուտայ և մահուընէ կ'ազատէ, յարմարապէս ուտուելու սահմանուած Ադամեան պտուղին նման. իր անշնչութեանը մէջ՝ բանականներէն աւելի գերազանց կերպով հրաշք կը գործէ. մինչեւ իսկ (զմեզ) կը կատարելագործէ և նորոգելով կը հաստատէ, մեր վրայ կրկին նկարելով լոյսի փառքին կերպարանքը։ Ձեւով ու մեծութեամբ երկնային կամարին ալ նմանցուած է եկեղեցին, որ հոն բնակող հոգեղէն զօրքերէն

տամբ կառուցուեցաւ։ Հոգիներու թեթեւացումին հետ՝ մարմիններու ալ նոր թեւ կուտայ, պատուականին (հոգի) հարատեւութեամբը՝ անարգը (մարմին) մեծարելով։ Իր մեղքերովը չաղտոտիր (եկեղեցին), եթէ չար մարդիկներէն ու անհաւատաներէն չկոխոտուի։

Մեր խելքին սահմանին յաղթող զարմանալի նմանութիւն մ'է եկեղեցին. անքանը բանաւորէն կառուցուելով կ'օժանդակէ անոր՝ իբր վեհագոյնը՝ խիստ նուաստի։ Մարդէն մեծ է (եկեղեցին), որքան ընտրուած Մովսէսէն մեծ է, անոր յաղթող ցուպը. առաւելութիւն ունի բանաւորէն՝ որքան Ահարոնէն՝ ծաղկած խորհրդաւոր գաւազանը անոր. գերազանց է մտաւորներէն. որքան՝ գետը ճեղքող սքանչելահրաշ մաշկեակը որ փայլեցաւ արուեստով՝ Եղիայէն ու Եղիսէէն. Սրբազան ձեռքերուն՝ կրկնապատիկ և ամենակատար օգնութիւն կը պարգեւէ, մաքրելով զանոնք քան թէ զինելով. քարի և հողի գոյակայ նիւթական մարմին մը՝ (եկեղեցին) որ հարազատ է սուրբերուն և զգայուններուն։ Իբր անմահ վէմը կենդանի, թէ՛ կը կործանէ և թէ կը կանգնեցնէ. իբր դատաւորը ամէն հոգիներու, հրաշալի ազդեցութեամբ թէ՛ կ'անիծէ և թէ՛ կ'օրհնէ, իբր աներեւոյթները տեսնող՝ մէ՛կը կը խայտառակէ իսկ միւսը կը հովանաւորէ. իբր արարածներուն տիրող

հրամանատարը անունովը նշանակելով՝ իրեն կը կանչէ ։ Յուլիանեան լեգէոն դէտ՝ անհարուածելի է իր դէմ կռուողներէն. հօգեւորները կ'որոռայ, երբ լարուած հնարքը՝ Մեծ Արուեստագէտին. Քրիստոսի քայլերուն հետեւելով անմեղ և անախտ կերպով կը քալէ. տառնի ամենալու պատուհաս ունենալու՝ բարձր հոխութեամբ. համարձակապէս գլուխ կը բարձրացնէ, գովութի նման ։

ԺԱ. Այն ատրճան մեծ է որրութիւնը (եկեղեցիին) որ, մինչեւ իսկ Աստուծոյ պատկերին վրայ ստեղծուածներուն մէջ ալ խտիր կը դնէ կանոնով (երախայ, ապաշխարող, միրտուած, են.)։ Ընտրութեան չափ մը փորձերէն ետք եթէ մարդ մը սխալելով համարձակի մանել անոր դուռթէն ներս, անիկայ (եկեղեցին) չպղծուիր, այլ կ'ընդունի անպատրաստներու թերութեան համար. չնզովուիր, այլ կը ներէ չնորհին չափը չգիտցողներուն, ինքն իր գլխուն՝ իր յանցանքներուն պատճառով չլքուիր (փակուիր), այլ մեր գործերէն կը խանգարուի տիրական անճառելի խորհուրդին համեմատ՝ կենդանութիւն տուող ոտքերը երկու անգամ բանել չթողլարեր (ինչպէս Քրիստոս իր ոտքերը երկու անգամբանել չթողլաեց Մագթաղինացիին (Յով. Ի. 7) այլ ուրիշ խուղարկեր կիներու հետ՝ մէկ անգամ (Մատթ. ԻԸ. 9) զոր

կը մեկնեն թէ ներելի չէ մէկ օրուան մէջ երկու անգամ Ս. Հաղորդութիւն ընդունիլ)․ միեւնոյն օրը երկու անգամ չի ցուցներ նոյնը (չթոյլատրեր մէկ օրը երկու անգամ պատարագել միեւնոյն եկեղեցիին մէջ) որպէս զի տանց ընտրութեան մատուցանելով չհայրատատկուն նուէրը (պատարագ)։ Ինչ որ գերծ է ամէն ապականարար ախտէ, զօրեղապէս կը վշտակցի մեր ցաւերուն ու կը լրացնէ մեր պիտոյքը․ տանց ձայնի՝ հրամանով կը դառնէ երկու ալէր։

ԺԲ. Նաւս (Նոյի տապանէն) կրկնապատիկ երջանիկ տապան մ'է մաքրող (եկեղեցին), որ աշխարհային ալիքներէն խեղդուելէ կը պահպանէ։ Ո՛չ թէ անդրան գաղաններու չար մը դասակարգով ու քիչ մարդով (տապան մ'է) այլ՝ երկրայիններուն հետ երկնայիններն ալ իր մէջ կը հաւաքէ․ ո՛չ թէ խառնած ալիքներու վրայ կը տարուբերի, այլ երկինքի բարձրերը կը վերանայ։ Իբր Աստուծոյ Հոգիէն հրահանգուած աշակերտ՝ նմանութենէ կը փախչի, (չինութեանը առթիւ) մարմնոյն արուած հարուածները՝ ո՛չ թէ մահուան բողոքը՝ այլ կեանքի ասկոփը կը ցուցնեն, ո՛չ թէ Նոյով ձեռնարկուած է գործի, այլ ամենազօրին հրամանով կը շինուի․ ո՛չ թէ Մովսէսը՝ Բեսելիէլ ճարտարապետին հետ՝ այլ Աստուծոյ Միածինը Սուրբ Հոգիով կը պատրաստէ զայն․ ո՛չ թէ

(Նոյի տապանին նման) միշտ շարժող ու տեղ փոխող՝ այլ մշտնջենական անսասանելի հիմի վրայ կառուցանելով կը հաստատէ զայն։ Դարձեալ փայտեղէն անխօս (ուխտի) տապանակին նման տախտակներով զամուած՝ թէեւ անզգայ՝ բայց կ'առաջնորդէ մեզ որ տեսողութիւն ունինք. անչափելի Աստուծոյ կերպարանքին նման առջեւէն քալելով լուսեղէն կեանքը վայելել տալու համար տեղ կը պատրաստէ մեզ։ Ոզիէլի (Ոզա) նման անմիջապէս կը սատկեցնէ զայն (Բ. Թագ. Զ. 1—8) որ իբր խաչ ուսին վրայ չկրեր զինք (տապանակը՝ եկեղեցին). վայրկենաբար սպաննելով իսկոյն կը փճացնէ, եթէ՝ անասնական լծակցութեամբ՝ աշխարհասիրաբար՝ գետնակոխ, ստորին սայլի մը վրայ բեռցուելով տարուի՝ ձեռքով զննուելիք անարժէք ամանի նման։ Ո՛չ թէ մարդու լեզուով, այլ հրեշտակներուն խօսքով կը խօսի. թէեւ ականջ չունի, բայց շուտով ուշադրութիւն կ'ընէ ու կը լսէ. թէեւ խօսքի նմանող ձայն չունի, բայց Յիսուսի գործերուն պատգամները համայն ազգերուն կը պատմէ ու կը հռչակէ. թէեւ խաղացող շարժականութենէ զուրկ է, բայց Աստուածային կենդանի հագագի մը նման կ'ազդարարէ։

Ինչպէս որ տապանակը՝ Բարձրեալ Աստուծոյ անհամար գունդին նման, երկու հազար կանգուն

հեռուէն կ'ուղեկցէր՝ եբրայական անսուրբ ամբո-
խին (անապատի հարուածէն) կենդանի մնացած
զօրքերու գումարտակին, (Ցեսու Գ. 4) հիմա
(այս տապանակն ալ, եկեղեցին) Թէև ջիղերու և
ոսկորներու յօդուած չունի, բայց Եբրայեցիներուն
հետ՝ երբ անմաքուր՝ իրմէ կ'անջատէ մեղքի ախ-
տով՝ բորբոտքածները ու հեռուէն կ'առաջնորդէ
անոնց. Նման (Փառաւոնի) տաժանելի ազխատչի-
նութենէն ազատողներուն (Իսրայելացիք)։ Նոյն
իսկ մարմնացած Աստուծոյ էութիւնն ալ այս վէ-
մին անուանը նշանակուեցաւ կողին պատռուած-
քէն ամէնքն ալ յագեցնելով։ Չէ Թէ արիւնին
երակներու մէջ ըրած շրջանները, այլ երկնային
լոյսին շառաւիղներն են որ Թափանցիկ միու-
Թեամբ կը կենդանացնեն ասիկա (եկեղեցին) ու
նորոգելով գոյութիւնը կը պաշտպանեն անոր. ոչ
Սողոմոնի կամ Զօրաբաբէլի մարդկային վերա-
տեսչութիւնը, այլ ամէն բան Ունեցողին խելքն է
որ կը գծագրէ զայս. ոչ Թէ նուիրականութիւն
չունեցող՝ ուսուելիք հասարակ իւղով՝ Ցակոբի
ձեռամբ կը պարարի, այլ Ահաւորին արիւնովը
ու Մեծին փառքովը կ'օծուի։ Ասոր զաւակները՝
ո՛չ Թէ երկրային նիւԹէ շինուած տունը, այլ Աս-
տուծոյ լոյսին երկնային մարմինը կը կնքէ ու կը
ձեռնադրէ. ոչ Թէ երկրային աշխարհաճէրներ կը
յղանայ, այլ ժառանգներ կը կրթէ երկնից արքա-

թեան. իր ծոցին մէջ գգուածները. Աբրահամու գիրկին կը նուիրէ։ Այս հարսին (եկեղեցիին) փեսան՝ կենդանի Աստուծոյ որդին է. տօնը խընճոյքին օրիորդները՝ հայրապետներու դուստրներն են։ Ասիկայ՝ մոռացութեան կը մատնէ կուսպաշտական այն բոլորաւանդակներն ուր դեւեր կը բնակէին, որովհետեւ երկնային Աստուածը կը ճանչցնէ. կատարելապէս օտար է քանդակուած կուռքերէն, որովհետեւ ասոր ամբողջ քարերուն վրայ Քրիստոս է որ կ՚երկրպագուի. անտառներու ուրուական իղձերուն բացարձակ քակտումն է (կռապաշտութեան) որովհետեւ աշխարհի բոլոր մայրի ծառերէն կեանքի փայտին նմանութիւնը կը շինուի և Տիրոջ կը նուիրուի ասոր մէջ. խորտակումն է կռապաշտական խարեբայութեանց՝ յուռութքի (Թըլըսըմ) ամբողջ քարերուն, որովհետեւ դրոշմուած քարը՝ կարկեհան (չամչըրագ) ակով և կենդանի վէմով հոս կը հաստատուի։

ԺԳ. Այս չքնաղ տունը որ զԱստուած կ՚ընդունի, միեւնոյն ժամանակ ազատ է ամէն կարգի ծառայութենէ (հարկէ)*. ոչ թէ վերին Սիոնին

---

(*) Օսմ. մեծազօր Սուլթաններն ալ եկեղեցիները միշտ ազատ կացուցած են ամէն կարգի տուրքէ և հարկէ. ինչպէս նաև Աստուծոյ նուիրուած բոլոր Աղօթատեղիները։ Ծ. Թ.

իրր օրինակը՝ այլ նոյն ինքն ճշմարիտ (վերին Սիօնը) կը ճանչցուի․ չէ թէ հաստատչութեան կապով՝ իբր բուդին և կամ (հին) օրէնքին լուծովը՝ պաշտամաւորութեան տեղ մը, այլ իբր պարգեւարանը տիրական բարերարութեան՝ կը համբուրուի մեզմէ։ Բնաւ չխախտիր, ուրիշ ձեւի մը կերպարանքին փոխուելով, այլ փառքի նոյն չքաւորութեամբ մեծապէս կ'ընդարձակուի․ այն այս՝ որ երկինքն է, լուսապայծառ կերպով կը հռչակուի երկրի վրայ։ Ինչպէս առանց Քրիստոսի Հօրը, նոյնպէս ալ առանց այս մօր արգանդին՝ կարելի չէ հոգիի կատարելութիւն ստանալ։ Եթէ այս տան մէջ չօթեւանի, անտուն կը շրջի Անբովանդակելին (Բ. Թագ. է. 1-7). ամէնուն Տէրը գլուխը հանգչեցնելիք տեղ չունի, եթէ այս կեանքի կայարանը մտնելով չհանգստանայ։ Երկինքի վերնային կամարէն աւելի՝ այս նիւթեղէն բնակարանով կը պարծենայ (Աստուած)։ Աստուածեան անբաւ լոյսը — որ մարգարէին (Մովսէս) դէմքն ու աստր՝ (եկեղեցիին) նմանութիւնն եղող տաճարը ողողեց, և որուն փառքին երեսէն փախան (Իսրայէլացիք) ու (քահանաները) եկեղեցիին նմանութիւնն եղող տաճարին մէջ չդիմացան կատարելու գովեստին մեծահանդէս տօնը անոր. — բանականներուս դատէն՝ համախումբ կը նուաղուի աստր մէջ։ Վայելքի դրախտէն աւելի, հոս է որ կ'օրհնուի (Աստուած) երկին բազմանքով։

ԺԴ. Երկրաւոր, չնչաւոր, մարմնաւոր մայրէն աւելի, այս հոգեւոր, երկնաւոր, լուսաւոր մայրը գգուեց զիս իբր որդի. Քրիստոսի արիւնն է կաթը աստ ծիծերուն։ Եթէ ո՛ և է մէկը Աստուածածնին իսկ նմանցնէ զայս (եկեղեցին), անօրինած չըլլար։ Փրկութեան խաչին նշանին նման, զարմանալի զանազանութեամբ բազմօրինակ արուեստներ կատարելով հրաշք կը գործէ և զօրութիւնք կը ցուցնէ. աստ մէջ հաստատուած է ու կ'երեւի բեմը ահաւոր ատեանին. խորթարարոյ հերձուածողներուն մոլեգնոտ բերանները աստ կը կարկուին։ Իմացական և լանաւոր քարեր ալ ունի, անմաքուր գաղանամիտները զատելով կը տարագրէ ու կը հեռացնէ։ Աստուածներ ալ կը ծնի արարածներէն։ որոնք մաքուր պատկերներն են միակ Աստուծոյ՝ Քրիստոսի։ Իր դիրքը դէպի արեւելեան կողմն է, մեր առաջին բնակութեան համար խոստացուած տեղը (դրախտը). իբր ձեռքով՝ յայտնապէս կը ցուցնէ Աստուծոյ գալստեան հետքը։ Տիրոջը փայլակի առակը աստ բերելով մեզ կը վարդապետէ. Քրիստոսի վերջին օրը երեւնալիք փրկութիւնը՝ արուեստակին ծագումի ճամբովը կը թարգմանէ արարածներուն։

Ցաւեր կը հալածէ. ախտաժէտներ կը բժշկէ. դեւերու բռնութիւններուն կ'իշխէ։ Աստ (եկեղեցի) փորին արգանդը՝ կեանք տուող աւազան

է․ տօսր հարսնիքին մէջ առաքեալներու գաւերը կը պարեն։ Ա՛յնչափ ճոխացաւ ու երանութիւնով բարգաւաճեցաւ որ, մինչեւ իսկ նոյն ինքն Փրկիչին անունովը կանչուեցաւ վայելչապէս․ լոյսի Տիրամօր անունովը՝ յորջորջուելով կընքուեցաւ ու անուանուեցաւ իբր մերձաւորներէն Միածնին։ Հանդարտ նաւահանգիստ է ծփացող մեղաւորներուն, խրախճանութեան տեղը՝ երկնայիններու դասին եւ անախտալելի բժշկարանը՝ շուարած պարտաւորներուն։ Անպատմելի Երրորդութիւնը՝ ամէն առթիւ օրհնուելով՝ կը փառաւորուի ասոր մէջ։

ԺԵ․ Եթէ մէկը չար ձեռք մը վերցընել յանդըգնի՝ վերին արքայութեան վրայ, եւ այս ձեռակերտ եկեղեցիին սահմանուած աւանդութիւնները՝ մարմնաւոր գիւտ մը, կամ մարդկային հնարք մը եւ կամ աշխարհային արուեստ մը սեպէ եւ չխոստովանի թէ, տեսանելակչիս կեանքի պարգեւ, Աստուածային ակնկալութիւն, Սուրբ Հոգիին յայտնութեամբ Լուսով նորոգուած կանխագրութիւն, Բարձրեալին երախտիքներուն ամենապարգեւ լեցունութիւնը, ստեղծողին կամքին օրհնուած խորհրդարանը եւ առաքեալներու ալ ձեռքին բարեհանճար հիմնարկութիւնն է (եկեղեցին) եւ միեւնոյն ժամանակ չըսէ թէ, երկինքի դուռը, կենդանի Աստուծոյ քաղաքը եւ ապրողներու մայրն է ան՝ պարտաքէ ազատ եւ նշգրիտ նմանու-

*Թիւնը՝ մեր բանականի երեւոյթին, իմանալին՝ մեր հոգիին խորհուրդին, ու շօշափելին՝ մեր մարմնոյ պատկերին ; և թէ Քրիստոնեան Նշանով պայծառապարծ պատկանելով՝ դերբազանց նոր որդութիւն մ'է հին օրէնքին անճառելի Սրբութիւն Սրբութեանցէն աւելի, այս կարգի չխոստովանողները իր երեսէն կը մերժէ ամէն բան ունեցող Հայրը՝ Իր Էակից Խօսքին ձեռքովը, անկէ վերցնելով շնորհի աւանդը՝ Իրեն փառակից Հոգիին. այս աստդատարի կենաց դուռը պիտի փակէ՝ անոր երեսին։ Իսկ մենք ինչ որ գրեցինք, կը վկայենք ալ անոր համար. հաւատալով մեր դատակարգածներուն. ամէն բան ունեցող Երրորդութեան և միակ Աստուածութեան փառքին ու անունին համար, մինչեւ վերջը. ամէն։*

**Երրորդութեան նկատմամբ իմ հաւատքս այն է (ինչ որ գրուեցաւ այս գլխուն առաջին մասերուն եւ ԼԴ. գլխուն մէջ), իսկ իմ յուսափառ մօրս (եկեղեցի) համար խոստովանած դաւանութիւնս այս է։**



Նոյն այն աղօթքին աղերսալից մաղթանքներուն ու աղաչական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։

Սրտի խորերէն խօսք առ Աստուած

## ՁԶ. ԽՕՍՔ

Ո՛վ ողորմած, առատագութ, հզօր, ահաւոր, մարդասէր, օրհնուած, կենդանի ու մտքէ վեր Աստուած, ձեռնարկ մը չի կայ որ առանց քու հրամանիդ գլուխ ելլայ, ինչ որ վեր է մտքի դատողութենէն։ Սուր փուշերու տեղ Դուն ես որ քաղցրութեան պտուղ կը հասուցանես, ո՛վ Սկզբնահայրը կեանքի այս նոր և զարմանալի կանոնին. որովհետեւ թշնամիին բարիք ընելու, զինքը հալածողին համար աղօթելու, վիրաւորողին փրկութիւն հայցելու և սպաննողին ներում խնդրելու հրաշքի պտուղը քեզմէ ընծայուեցաւ. որուն քաղցրութիւնը օրինակով չի բացատրուիր և որ ախորժելի է Քու բարեբանեալ կամքիդ և ճաշակելի՝ Քու գովուած շրթունքներուդ, ո՛վ հոգին մեր երեսներուն և զօրութիւնը մեր գեղեցկութեան՝ բարձրերէն օրհնուած Տէր Քրիստոս։ Սակայն երկրաւոր և յոյժ անպիտան մարդիկ չարիք փոխանակեցին բարիք մատուցանող ձեռքերուն. իսկ Դուն որ Լոյս՝ և լոյսը պարգեւող ես՝ անէծք չես լսեր, չարիքէ չես ախոր-

ժիր, կարուստ չէր կամենար, մահ չէր ըղձար (մեղաւորներու), խռովութենէ չէր յուզուէր, ցաւմունքը չէր տխրեր վրան, բարկութիւնը չէր հարկադեր զքեզ, սէրդ չէր մթըններ, գթութիւնդ չայլայլէր, բարութիւնդ չէր փոխուէր, ո՛չ կռնակդ կը դարձնես և ո՛չ ալ երեսդ անդին կ'ընես, այլ կատարեալ լուսաւորութիւն ես և ընդնշմարանքը փրկութեան։

Բ. Եթէ քաւել ուզես, կարող ես, եթէ բժըշկել՝ զօրաւոր ես, եթէ կենդանացնել՝ բաւական ես, եթէ շնորհել՝ առատ ես. եթէ ողջնցնել՝ հնարաւոր ես. եթէ պարգևել՝ լիառատ ես. եթէ արդարացնել՝ հնարագէտ ես. եթէ մխիթարել՝ ամէնիշխան ես, եթէ նորոգել՝ ամենակալ ես. եթէ հրաշք գործել՝ ամէնուն թագաւորն ես. եթէ կրկին հաստատել՝ ստեղծող ես. եթէ երկրորդ անգամ գոյացնել՝ Աստուած ես. եթէ հոգալ մեր տեղ՝ ամէնուն Տէր ես. եթէ մեղքէ ազատել՝ այցելու ես. եթէ ինձ՝ անարժանիս ընձեռել՝ Օրհնուած ես. եթէ որսացողէն (սատանայէ) զերծ պահել ուզես, Փրկիչ ես. եթէ Քուկիններէդ մեզ առատաձեռնել՝ հարուստ ես. եթէ .դեռ մենք չուզած Դուն երկնցնել կամենաս, անկարօտ ես. եթէ ներողութենէ լոյսը հանել ուզես, հանգստացնող ես. եթէ ուզես կանչել զիս որ վերջը մնացած եմ, Անսամակալ ես. եթէ հաստատել ուզես զիս որ խախտած եմ, վէմ ես։

Եթէ խմցընել ուզես ինծի որ խիստ ծարաւած եմ, Աղբիւր ես. Եթէ ուզես ծածկուածներն երեւցընել՝ Լոյս ես. Եթէ ինծի օգտակարները ճանչցնել՝ Բարի ես, Եթէ բիծերը (մեղքերը) անտես ընել՝ Համբերող ես. Եթէ չուզես ինծի դէմ դատ վարել՝ որ փոքր եմ, Բարձրեալ ես. Եթէ ինծի՝ ծառայիս ձեռք երկնցնել ուզես, Բռնեղ ես. Եթէ Քու ողջովդ զիս պաշտպանել ուզես, Խնամող ես. Եթէ դարման ընծայել ուզես ինծի որ վհատած եմ, Կերակրիչ ես. Եթէ պարարեցնել զիս որ տգէտ եմ, Վարդապետ ես. Եթէ ընդունիլ զիս որ Քեզ դիմած եմ, Ապաւէն ես։

Դ. Արդ՝ ո՛վ ողորմած Տէր. Քուկդ են ասոնք. ո՛չ թէ միայն գրուած են, այլ՝ կատարուած և գլուխ հանուած են, ո՛վ Նախահայրը համբերող Նահատակ վկաներուն. որ իմ փրկութեանս համար պատերազմի ասպարէզը իջար զօրեղապէս, որպէս զի չարչարանքի հարուածներուն կրթութեանը վարժումով կակղցնես կարծր բռնութիւնը գոռոզ մարմնոյս. ու անպարտ մարմնոյդ վրայ կրելով մեր բնաւորութեան տաժանելի տագնապը տուգանքին, Քու վրայ օրինակելով՝ արդեամբ ցուցընես գթութիւնդ մեզ նկատմամբ, որ յաւէտ օրհնուած ես. Ամէն։

Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն ու
ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## ՀԷ. ԽՕՍՔ

---

### (ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹԻ ԱՌԹԻՒ)



ՅՍՕՐ օրհնաբանուած և լուսով նորոգուած օր մ'է, ուր ընտրութեան կշիռը տեղի կ'ունենայ երկու դատակարգին. հոգւով բարձրացածները կը խոնարհին և կործանածները կը վերականգնին, ու արարածներն որ խախտուած էին, բոլորովին տարբեր էութեան մը՝ երկնային անփոփոխ կեանքին՝ կը փոխադրուին։ Մեծ Պահքի այս սարսափելի Ուրբաթ օրն, յորում պատեհ առիթ ներկայացաւ ինձ զուարճախառն երկիւղով գրել այս հառաչանքի ողբերգութիւնը, ահա հոս փափաքելի կը թուի ինձ ըսել, ինչ որ իմ տեղս կրեցիր, ո՛վ ամէնուն Աստուածը։

Բ. Իմ կերպարանքովս՝ Քու ստեղծածիդ ատեանը կանգնեցար. Դուն որ խօսելու կարողութիւնը տուած էիր, չխօսեցար. Դուն որ լեզուն ստեղծած էիր, բերան չբացիր. Դուն որ երկիրը կը դողացնես, ձայն չհանեցիր. Դուն որ ամենուն

վրայ ազդեցութիւն ընող մեծ փողն ես, չամչե-ցիր։ Ո՛չ Քու երախտիքներովդ յանդիմանեցիր, և ոչ ալ իրենց չարիքներովը զանոնք պապան-ձեցուցիր․ զՔեզ մահուան առնչանքներու մատ-նողները չամչցուցիր։ Ո՛չ ընդդիմացար, երբ զՔեզ կապեցին և ո՛չ ալ վշտացար, երբ ապտակեցին․ ո՛չ Թշնամանք ըրիր, երբ երեսդ Թքին․ և ո՛չ ալ յաղթուեցար, երբ կռուփներով զարկին․ ո՛չ բար-կացար երբ ծաղրեցին և ո՛չ ալ երես ծռեցիր, երբ վրադ խնդալ սկսան։

Անկարող մէկի մը նման՝ հալածուածները մեր-կացուցին և դարձեալ հալածեցուցին, որպէս Թէ փրկանք չունեցող կալանաւոր մը ըլլար։ Եթէ եր-կու անգամ չխմէր լեղիի հետ խառնուած քա-ցախն, այն նախկին դառնութեան մաղձն՝ որ մԹերուած էր իմ մէջ, դուրս չպիտի Թափուէր։ Վհատութեամբ համը նայեցաւ ու անմիջապէս մերժեց տարակուսելով․ ապին մոլեգնաբար ու առանց պատկառելու երկրորդ անգամ առին։ Սոսկապէս ծեծելով՝ յետին աստիճան անարգու-Թեան դատապարտեցին խառնիճաղանճ ամբոխին մէջ․ Նախատելու համար առջեւը ծնրադրեցին և արհամարհանքի պսակը դրին գլուխը։

Գ․ Հանգիստ չտուին Քեզ՝ կենդանարարիդ, այլ մահուան գործիքը կրել առաջարկեցին․ իբր երկայնամիտ՝ ընդունեցիր, իբր հեզ՝ առիր․ իբր

համբերող՝ վերցուցիր․ դատապարտուածի մը պէս տառապանձնեցիր վշտերու փայտը․ հովիտի շուշան ծաղիկներու նման ուսի վրայ կրելով կեանքի զէնքը, որպէս զի դատապարտութեան տեղւոյն մէջ, գիշերային արհաւիրքներէն պահպանէ իր շինած այս մարմնեղէն գահաւորակն, ու այնպէս զգացնել տայ թէ, խնջոյքի, խրախճանութեան մէջ կը գտնուի։ Ողջակէզի նման դուրս հանեցին․ Սարեկայ խոյին նման եղջիւրներէն կապելով կախեցին․ մատաղի նման խաչի սեղանին վրայ տարածեցին․ չարագործի մը պէս բեւեռներով գամեցին․ ապստամբի մը պէս կապեցին։ Նկատեցին զՔեզ իբր աւազակ՝ որ երկնաւոր խաղաղութիւն ես․ իբր տառապած՝ որ անկողոպտելի մեծութիւն ես, իբր քամահրուած՝ որ քերովբէներէ կը պաշտուիս․ սպաննուելով մեռնելու արժանի՝ որ կեանքի սահմանն ես․ օրէնքի դէմ հայհոյող՝ որ աւետարանին նկարիչն ես․ գիրքերն համառօտող, որ մարգարէներուն կատարելութիւնն ու տէրն ես․ ծնողիդ կամքին հակառակող՝ որ հօրդ անքննելի խորհուրդներուն կնիքն ու փառքին ճառագայթն ես․ իբր տարագրուած՝ որ էակապէս օրհնուած ես․ իբր նզովուած՝ որ օրէնքին կապերը լուծեցիր, իբր վտարուած կալանաւոր մը՝ որ այրող կրակ ես․ իբր պատժուելու արժանի՝ որ երկինքն ու երկիրը կը դողացը-

նեա. իբր ձերբակալուած հողածին մը՝ որ անմատուչելի լուսով ծածկուած եմ։

Դ. Կ'երկրպագեմ Ողորմածիդ գթութեանդ, ու Բարերարիդ համբերութեանդ ո՛վ ամենուն Տէրը, որ ինձ՝ ապերախտ ու անօրէն ծառայիս համար, այս ամէնը յօժար կամքով ու հաւանողական հաճութեամբ մարմնոյդ վրայ միացնելով ընդունեցիր, և մինչեւ գերեզման՝ կատարելութենէդ բան մը չպակսելով, ո՛վ անքննելի Աստուա՛ծ, ամբողջ նոյնութիւնովդ այն նախատինքները կրեցիր անճառելի համբերութեամբ։ Լոյսի ինքնիշխան բարձրութեամբդ յարութիւն առիր, աննուազ մարմնով և անթերի աստուածութեամբ։ Փառքով օրհնուած, գթութեամբ գովուած, ողորմութեամբ միշտ բարեբանուած ես մինչեւ յաւիտեան. ամէն։



Նոյն այն Հոգիին աղբերակէն մաղթանքներուն ու
ողբական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

ՀԸ. ԽՕՍՔ



Ես հիմայ հողէ ստեղծուած կերպարանքովս երկրի վրայ ինկած, ու ծնրադրական երկրպագութեամբ գետին խոնարհած, կենդանութիւն շնորհող ոտքերը կը համբուրեմ ողորմած Թագաւորիդ, այս մաղթանքներն ընծայելով Մեծութեանդ.

Բ. Տէ՛ր, կ՚աղաչեմ, միա՛կ խնամակալ, մարդասէ՛ր, գթա՛ծ, ա՛պրեցնող, զօ՛րաւոր, ա՛յցելող, պ՛աշտպան։ Պարապը թող չերթան հոգիս փրկելու համար կրած յոգնութիւններդ, ո՛վ Աստուած, որ ինծի համար մարդ եղար։ Ապարդիւն թող չըլլան քրտինքի կաթիլներն արեան հետ խառնուած՝ զորս թափեցիր Մատնութեան գիշերը. արտասուքդ թող չցամքի այն լուսեղէն երախտիքներուն վրայ, զորս ձրի և առանց փոխարինութեան պարգևեցիր ինծի թշուառիս. Թող չջնջուի շնորհներուդ աւետիքը, զոր կողերէդ հոսած կաթիլները նորոգեցին, անօգուտ թող չըլլայ աշխատութեանդ պտուղը զոր ինծի կորստեալս մատուցիր։ Վճարուած գինն թող չպարծի թէ իւրացուցած

է ինչ որ քունկդ էր. կամքովդ յաղթէ՛ սատանային փափագներուն. դարձեա՛լ թող ապշի այն, որ արդէն զարհուրած էր. կրկին թող խայտառակուի, որ վերջնականապէս դատապարտուած էր։ Մի՛ խնայեր [illegible] խօսքդ, որ կրկին քեզ կը դարձնէ ստեղծածներդ, որք քեզ նուիրուած էին։ Անբացատրելի բարիք ըրիր յուսահատութեան անակնկալ պահուն, երբ բոլորովին սպառած ու դադրած էր շարժումն ու կենդանութիւնը։ Դուն որ անմահ էիր, մեռար, ու արդէն մեռածները նորոգեցիր. եթէ օրէնքին փոխադարձ հատուցման (աչքի տեղ աչք) կանոնը փախեցիր, արդ դիւրինը, հեշտն ու առելի կարելին մի՛ արգիլեր, ո՛վ ողորմած, բարեգութ, օրհնուած և համբերող Թագաւոր Աստուած։

Հրամայէ՛ ամէն բան ընելու կարող խօսքովդ — որով լոյսի գոյութիւնն ստեղծեցիր առաջին օրը — և անմիջապէս դէպ ի լուսաւորին փոխուիմ։ Եւ որովհետեւ ես փնտռելու հետամուտ չեղայ զՔեզ որ լոյս ես, Դուն զիս ուզելու եղի՛ր, ո՛վ Հօրդ կերպարանքին ծագման ճառագայթը, ու ես պատժապարտ ծառաս Քեզմէ շնորհ և ողորմութիւն առած սկսուիմ։ Պարտքերը վճարելու համար նոր պայմանաժամ խնդրելու ատենը չէ՛ այլեւս. երեսդ շնորհէ՛ ինձ [illegible], ո՛վ լոյս, որ մթութեան մէջ կը լուսաւորես վհատած

էրր մեղադրուած․ ինձ հետ մի՛ զարգացներ ա-նէծքի ծառը․ վրաս մի՛ արձակեր վնասակար տե-րեւները, մի՛ ծլեցներ մեղքերուս ծաղիկը․ մէջ-տեղ մի՛ հաներ դատապարտութեան վճռագիրը․ երեւան մի՛ բերեր պտղոյն գոյութիւնը․ մատնե-րուդ ծայրովը — որք երկիրը ստեղծեցին — մի՛ համրեր գործած մեղքերս․ սոսկալի ընդդիմախօ-սութիւն մը չընե՛ս անօրէնութիւններս յիշատա-կելու համար․ կամքիս մի՛ ձգեր հոգւոյս աւանդն որ գերութեան չվարեմ զայն․ մի՛ փառաւորեր զիս հոս՝ որպէս զի միւս աշխարհին մէջ չդատա-պարտե՛ս․ անցաւոր կեանքի զոյզն վայելքի փա-խարէն յաւիտենական երջանկութիւնը մի՛ տու-ժել տար ինձ․ անվերջ փառքը, այս կարճ օրերուն հետ մի՛ չափեր․ յաւիտենական արքայութեան ան-խախտ կեանքը աշխարհի ցաւերուն և վիշտերուն հետ մի՛ փոխեր․ անբացատրելի լոյսը այս մթու-թեան շուքին հետ մի՛ փոխարիներ։

Ձեռքէդ մի՛ ձգեր մտքիս սանձը, ո[illegible] ճամբաներու չհեռանեմ․ հանգըստանալու համար բաւական մի՛ սեպեր ինձ այս կեանքի կամուրջը․ շուքի մէջ մի՛ պահեր հովիտն հանճարիս, որպէս զի հանդերձեալ կեանքը պարզէ առջիս։ Եթէ գործած անթիւ չարիքներս հաշուի առնես, պէտք է ողջ ողջ մեռնիմ․ եթէ արտիդ մէջ ամբարես զանոնք, հո՛ս իսկ բանկելով պէտք է սատանց բոցի

այրիմ. եթէ անօրէնութիւններս քննես, դեռ առաւանդ չելած՝ վերջնականապէս պիտի հալիմ. եթէ մեղքերս ինձ հետ աճին, անոնց մէջ խեղդուելով պիտի կորսուիմ։

Դ. Աչքդ վրայէս միշտ անպակաս ըրէ՛, ո՛վ զօրեղ և ամէն բանի կարող, որպէս զի չարութիւններս փախչին ու Քու բարիքներդ գան յաջորդեն անոնց։ Ո՛վ Գթած, Խնամակալ, գովուած, չմարող Լոյս, խելքէ մտքէ վեր այժովդ հրամանն ըրէ՛ որ բոլորովին նորէն շինուի անդամներուս այս մարմնեղէն շէնքն, ու չլքանելու պայմանով հանգչիս ու ախորժ տենչանքով բնակիս, Քեզ հետ միացնելով հոգիս։ Վերջնականապէս մաքրես մեղքերուս աղտեղութիւններն ու անարատ ըլլալու պատրաստես զիս, ո՛վ ամենքն ապրեցնող Թագաւոր Աստուած, անմահ Տէ՛ր Յիսուս Քրիստոս, մինչև վերջն օրհնուած ես, ամէն։



Նոյն այն հաւատքին աղերսալից մաղթանքներուն ու-
ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած

## ՀԹ. ԽՕՍՔ

Յիշէ՛ ո՛վ Տէր, գթութեանց տէ՛րը, Դուն որ իրաւունքը կը սիրես, ո՛վ ճշմարիտ Աստուած. կրկին նայէ մեր բնութեան կերպարանքին որ սխալական է միշտ. զննէ՛ դարձեալ՝ ամէն կողմ ընթանալով տարածուող արեանս շարժողութեան ճամբան (բազկերակ), իբրեւ բժիշկ մօտեցիր նայելու, որովհետեւ թերի խորհուրդներու խակ մըտաքով հաստատուած մարդ եմ, բան մը՝ որուն համար՝ Դուն իսկ վկայեցիր, (Ծննդ. Ը. 21) որ դեռ չգործուածները գիտես և խաւարի ստութենէն մաս չունիս։ Ուրեմն փոխանակ Քու խօսքդ սուտ ցուցնելու, իրաւունք է որ զիս՝ իբր երկրի վրայ ծնած մահկանացու մարմին՝ կրկին յաղթուած նկատեմ մարդկօրէն վրիպանքներով սխալող մեղաւորներուն հետ։ Որովհետեւ արդարօրէն գիտես թէ, չա՛ր է մեր խմորը և բնածին՝ մեր չարութիւնը. և հոգեհանճար Իմաստութիւն կանխազեկուցանող տառերին համեմատ, յաւէտ չեն փոխուիր մեր խորհուրդները։

Բ. Թեթեւցո՛ւր սաստկութիւնը տանջանքներուն, որ պատրաստուած է և կը սպասէ ինձ,

Նետելու զիս գեհենին մէջ իբր զորդը յաւիտենական մահուան որ որդի եմ դժոխքի. վերցո՛ւր վրայէս ամօթապարտութիւնը, որ պահուած կը մնայ ինձ Թշուառիս. յայտնուելու համար Դէմդ ելլելու վերջին դատաստանին։ Կանուխէն պարգեւած ողորմութեանդ՝ խաղաղութեան խրատ ընծայէ ինձ, որպէս զի աչացս առջեւ գալով չկերպաւորուին ու կենսաբեր զղջումի տեղ անյուսալի ապշութեան չենթարկեն զիս Ահաւորին անտանելիները. ահաւոր դատաստանը. չխաբուող և չկաշառուող դատաւորը. սոսկալի ամօթը. սարսափելի կշտամբանքը, անփախչելի յանդիմանութիւնը. անսպառելի տագնապը. անխրախոյս վախը. անվճարելի դողացումը. անսփոփելի լացը. ակռաներու անբժշկելի կափկափումը. անողջանալի ապականութիւնը. Քու Աստուածային խօսքիդ սարսափելի անէծքը. գութին փակուիլն ու ողորմութեան արգիլուիլը։ Որոնք երբ երկինքը գալարի (ոլորուի) և երկիրը կարծր ցամաքին հետ դղրդի, ալեկոծուած ծովուն կուտակուած ալիքներուն նման փախչիլ ցուցնելով՝ երկու կողմէ կեցած՝ իրարու ճամբայ կը խափանեն։ Ու երկրի խորքերուն ուժգին բախումին Թնդացումէն՝ լայնատարած Թանձր գետինը կ'երերայ կը խախտի հիմէն՝ լեռները տապալելով ու հարթելով. կը հալին կ'այրին բնական քարերն ու տարերքներէ

գոյացած ամէն. իրերը՝ երկինքը՝ անեղծանելի փոփոխութեամբ կ'այլայլի և տարրածները իրենց տարերքներով նոր կերպարանքի կը փոխուին։ Ծածկաբար գործուածները հրապարակ կ'ելլեն և մեր անհրեւոյթ մեղքերը կը յայտնուին. մեր մարմնին վրայ կը նկարուին մեր վարքերուն ներգործած արդիւնքը։ Երկինքի Թագաւորը՝ հատուցման վճիռը ձեռքը՝ կը նստի ատեանը։ Այն ատեն եօթնակամ անգամներ վա՜յ ինձ կրկնապատիկ ողորմելիութեամբ. այս Թիւին կշիռին չափ (վա՜յ) որ Թիւերուն անհունութիւնը կը նշանակէ։ Այն վտանգի մեծ օրը ինչ ընէ ողբալի հոգիս. որովհետեւ յիշատակն իսկ իրական հանդիպումին չափ սաստիկ է անոր, որուն նմանութեան օրինակը առաջ բերել ուզելով մարգարէ մը՝ (Ամով., Ե. 18-20) անապատեցի փախուստին տեսարանքի տագնապն ու նեղութիւնը կը բացատրէ ըսելով «օրինակի համար եթէ մէկը առիւծին ձեռքէն փախչի ու արջ պատահի անոր, ու արջին երեսէն փախած տուն մը մտնելով երբ ձեռքը պատին կռթնցնէ օձ խածնէ զայն» և դարձեալ կրկնապատիկ կը ստակացնէ (մարգարէն) քաամնելի տեսարանը նոյն իրական պատկերին երբ կ'ըսէ «աւէրումի օրը մութ է. խաւարի և մութի օր, ամպի և մառախուղի օր»։

Գ. Երբ կենակից պահապան հրեշտակը, որ

ղօրաւոր հոսող է. իրաւամբ ամբարտաւանած է, և հատուցում ընող Ահուրոր՝ արդարութեամբ յանդիմանէ, (երկնաւոր) Թագաւորին սպասաւորները՝ տուանց խեղդելու կը փութան հրաւէր կարդալ, ոմանց՝ այրելու և ոմանց ալ՝ ամօթի դատապարտուելու, ոմանց ծծմբով լեցուած դէմք կը ցուցնեն իսկ ինծ՝ ահարկու և քամահեցնող երես կ'երևցնեն, ոմանց լուսով զարդարուած պսակ կը մատուցանեն, և ուրիշներուն՝ մահուամբ կորուստը կը գուժեն, արդարներուն աւետիք ձայն, իսկ ինծ՝ անվերջ վիշտի գոյժ կուտան։ Երբ բարիներուն համար յաւէտ մեծնի յաղթութիւնը մահուան, ինծ՝ չարագործիս համար կրկնապատիկ մշտնջենականութիւն կ'սպառնայ ան. ուր դրան զարնելը բնաւ ազդեցութիւն չունենար, գթութիւնը սպառած ըլլալով ինծ համար։ Երբ զարմանալի հրաշքներու տամարները բացուին, որոնց մէջ նշանակուած են գաղտնիքները իւրաքանչիւր անհատի հիմնակուան վարքերուն և մարդկային բնութեան գործերուն, որուն համար ստեղծուեցան բոլոր արարածները, երբ իւրաքանչիւր մարմնի վրայ անպակաս դրութեամբ իրենց երեւին անոնք և աշխարհային հատողութեան անմատչելի ու խելքէ մաքէ վեր եղած խոր գաղտնիքները մեր աչաց առջև կերպաւորեն, երբ ողբերու և արցունքներու չահեկանութիւնները եր-

կինքը կը դրաւեն հիմա, հօն՝ ուր ժամանակը անցած անձայնութիւն՝ կ'որհամորհուին ու կը լքուին, ուկէ՝ կանուխէն չղրկուած հառաչանքի հեծեծանքները՝ բնաւ կարելի չէ գտնել հոն. խարելով ցանուած ողորմութիւնները պայծառ կերպով վառելով չեն երթար (մարգոց) առջեւէն։ Որ Տապանը՝ առաջին յանցաւորներուն և Կտակարանը Տէրը անարգողներուն և հիմակուաններուն ահաւոր նշանը՝ դէմ ելլելով դատախազ կը կանգնին մեծաձայն և այն սոսկալի ատեղը՝ մէկը՝ կցորդուելու հայրենի ուխտը, մէկը անաւաններու վկայութեան խորանը և մէկը մեծ Աստուծոյ արիւնը իբր իրաւացի ամբաստանութիւն կը պարզեն առջին։ Եւ որ ամէն իսկ՝ ձեռքովս ատեան ատեան տանջանարաններ պատրաստեցի անձիս, ինչպէս մխիթարութիւն որ յոյս նուաղած է. որովհետեւ՝ եթէ լուռեղէն զօրքերը՝ երանութեամբ փառաւորուած արդարներու դասերուն հետ դողալով կը սարսին ու մեծ դատաստանի ատեանին ահաւոր տեսարանին չեն կրնար ներկայանալ, ես որ աւանդը կորսնցնող թշուառ մը ու սատակումի դաւաճ եմ, ո՞ւր պիտի երեւամ. որ չէ՛ թէ միայն պիտի չպատկուիմ, այլ պատուհաս անտանելի է և կորուսիլս անվերջ։

Դ. Արդ, ո՛վ ամէնուն պարգեւող անհաս Զօրութիւն, փութա՛ փրկութեան ձեռք կարկառել

ինձ, որ գերի եղած եմ կորսուելու, որպէս զի Քու օգնութեամբդ կրկին ես գտնամ դժոխքի դռներէն և ամէն կերպով պատրաստուելով ճամբայ ելլեմ անվտանգելի պայմաններու մէջ և պատիժներէ ազատիմ. մաքիա ահաւութիւնով ապէ իսկ տեսնելով պարագային դէպքերը, ան- ջանքներու առաքինութեան երկիւղալի լուրումը ու ահաւորութեան համբաւովը քաւականանալով, Քու բարի կամքովդ ղերծ մնամ անանցմէ ու տա- րիմ. և ասիւծներու կորիւններուն չմատնուիմ, որոնք՝ Քեզմէ կ'ուզեն զիս, իրենց գազանական ակռաներումս յուաել հասցնելու համար, որպէս զի զիս, որ հոս պարարած եմ, մահուան փորը լեցնելով. հոն քաշեն, հալեցնեն ուր անդադար կը պահուի յաւիտենապէս այրողին միացորդ մթեր- քը: Որովհետեւ մինակ Դո՛ւն կրնաս սատակումի ժանիքներէն՝ կեանքի ու երջանկութեան դար- ձնել, ո՛վ ամէնուն ապաւէնը, լոյսի Թագաւոր, Տէր Յիսուս, Քրիստոս, որ յաւէտ օրհնուած ես: Ամէն:



Նոյն այն Հոգւոյն աղերսանաց մաղթանքներուն ու աղօթական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։ Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

---

## Ձ. ԽՕՍՔ

Արդ՝ այսչափ յուսահատուԹիւններէ և ահարկու սրտաբեկուԹիւններէ պահուըստուելու աստիճան տաղտկացած՝ Աստուածային բարկուԹիւններէ խիստ նեղն ինկած՝ սրտովս հոգւով Քեզ կ'աղաչեմ, ո՛վ Սուրբ Աստուածածին, Որ մարդէ (գոյացած) հրեշտակ, մարմնով անձնուող Քերովբէ, երկնաւոր Թագուհի, օդի նման զուտ, լոյսի պէս մաքուր, արուսեակին բարձր տեսքին նման յստակ ես ու աւելի գերազանց՝ ՍրբուԹիւն ՍրբուԹեանց բնակավայրէն ուր ներելի չէր ոտք կոխել. երանելի խոստումին տեղը՝ չնչող եդեմ, և բացեղէն սրով պահպանուած կեանքի ծառն ես անմահուԹեան՝ բարձրեալ Հօրմէ զօրացած ու հովանաւորուած. Հոգիին հանգիստովը պատրաստուած և մաքրուած և Որդիին բնակուԹեամբը կանխաւորուած և բնակուած։ Հօրը միածինը՝ Քու ալ Անդրանիկդ է. ծնունդով Որդիդ, իսկ ԱրարչուԹեամբ Տէրդ է։ Ո՛չ միայն մաքուր ես անաղտ, այլ և անբիծ բարի. ո՛չ միայն անարատ սուրբ՝ այլ և խնամակալ բարեխօս ես։

Ընդունէ՛ մաղթանքի այս աղերսներս որ զՔեզ կը դաւանիմ (Աստուածամայր) ու անոր հետ նախկին խօսքս ալ (ԳՈՒՄԱՐՔ ԽՄԲԻՑ սկզբնաւորութեամբ Աստուածածնայ համար գրածը) — զոր Քու մեծ ներբողիդ համար յօրինեցի — խառնելով Քու պաղատանքներուդ, ներկայէ՛, ընծայէ՛, հիւսէ՛, միացո՛ւր մեղաւորիս դառն հեծեծանքները Քու երջանիկ և խնկաւէտ հայցուածներուդ, ո՛վ օրհնութեան Պտուղին Կեանքի Ծառը, որպէս զի Քու օգնութիւններուդ ու բարեգործութիւններուդ արժանանալով ու Քու մաքուր մայրութեանդ ապաւինելով ու անկէ լուսաւորուելով, ապրիմ Քու զաւկիդ և Տիրոջդ՝ Քրիստոսի շնորհիւ ։

Բ. Ո՛վ խոստովանուած մայրը կենդանութեան, աղօթքիդ թեւերովը օժանդակէ՛, իմ՝ երկրէ հովիտէն մեկնելուս ալ, որ առանց չարչարանքի հետեւիմ պատրաստուած օթեւաններու կեանքին, որպէս զի թեթեւնայ վերջաւորութիւնս (մահ) որ ծանրացած եմ անօրէնութիւնով. Նեղն իյնալիք օրս՝ ազատութեան տօ՛ն ըրէ, ո՛վ Եւայի ցաւերը բժշկող. բարեխօսէ՛, խնդրէ՛, աղաչէ՛, որովհետեւ խելքէ վեր մաքրութեանդ հետ՝ կը հաւատամ թէ խօսքդ ալ ընդունելի է ։ Արտասուքով օգնէ՛ ինծի որ նեղն ինկած եմ, ո՛վ գովուածը՝ կիներու սեռէն. ծունկ չոքէ՛, որպէս զի հաշտութեան

արժանանամ, ո՛վ Աստուծոյ ծնողը. ինծ թշուառ-
ուիս հետ հոգա՛յ, ո՛վ խորանը Բարձրեալին. ձեռք
տուր ինծ որ ինկած եմ, ո՛վ երկնային տաճար.
Քեզմով փառաւորէ Որդիդ, որ երբ Աստուած
հրաշք գործէ՝ քաւութիւն և ողորմութիւն շնոր-
հելով ինծ, ո՛վ Աստուծոյ Մայրն ու Աղախինը.
ինծմով թո՛ղ բարձրանայ Քու պատիւդ և իմ
փրկութիւնս թո՛ղ ցուցուի Քեզմով։

Գ. Եթէ զիս գտնես՝ ո՛վ Տիրամայր. թէ
ինծ ողորմիս՝ ո՛վ Սրբուհի. թէ չահիս զիս, որ
կորսուած եմ՝ ո՛վ Անարատ. թէ խնամես զիս,
որ տապալած եմ՝ ո՛վ Երջանիկ. թէ առաջ քա-
շես զիս, որ ամօթապարտ եմ՝ ո՛վ Բարեշնորհ,
թէ միջնորդես ինծ, որ յուսահատած եմ՝ ո՛վ
միշտ սուրբ Կոյս. թէ ընտանեցնես զիս, որ մեր-
ժուած եմ՝ ո՛վ Աստուծմէ մեծարուած. թէ իմ
վրայ գթածութիւն ցուցնես՝ ո՛վ անէծքները Քա-
կող. թէ հաստատես զիս, որ կը ծփամ՝ ո՛վ Հան-
գիստ. թէ խռովութեան յուզումներս հանդարտե-
ցընես, ո՛վ Խաղաղարար. թէ հնարք սորվեցնես
ինծ, որ սխալած եմ՝ ո՛վ Գովուած. թէ ինծ
համար ապարէզ իջնես, ո՛վ մահը ետ դարձնող.
թէ իմ լեղիութիւնս անուշցնես, ո՛վ Քաղցրու-
թիւն, թէ զիս բաժնող անջրպետը քակես, ո՛վ
Հաշտութիւն. թէ իմ անմաքրութիւնս վերցնես,
ո՛վ ապականութիւնը ոտքի տակ առնող. եթէ

փրկեց զիս, որ մահուան դատապարտուած եմ՝ ո՛վ կենդանի լոյս. Թէ լալու ձայնս կորեց՝ ո՛վ Ուրախութիւն. Թէ կազդուրեց զիս որ ջախ-ջախուած եմ՝ ո՛վ կենաց Դեղ. Թէ ակնարկ մը նետես վրաս, որ կործանած եմ՝ ո՛վ Հոգիով Լեցուած. Թէ ողորմութեամբ հանդիպիս ինձ՝ ո՛վ Նուիրական Կտա՛կ, որ միակ օրհնուածն ես անբիծ-ներու չրթունքով ու երջանիկներու լեզուով. ահա Քու կուսական կաթիդ անձիս վրայ ա-ղացած մէկ կաթիլը՝ կեանք տալու բաւական է ինձ՝ ո՛վ մայրը Բարձրեալ Տիրոջ՝ երկինքն ու համայն երկիրը Ստեղծող Յիսուսի։ Զոր անճառելի կերպով ծնար բովանդակ մարմնովդ ու կատար-եալ Աստուածութեամբը, որ Հօր ու Սուրբ Հո-գիին հետ փառաւորուած է էութեամբ և անքննելի է մեր բնութեամբ միանալովը. որ կատարելու-թիւն է և ամէն բանի մէջ կայ, Անոր փառք մինչեւ յաւիտեան. Ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղբերակից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։ Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## ՁԱ. ԽՕՍՔ



ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ մաղթանքներուն հետ, անոր աղերսագին հայցուածները նաև երկնային անմահ լուսակերպ հրեշտակներուն, որ իրենց մաքուր բերնին ամէնօրեայ աղօթքներով՝ առանց լռելու կը կանչեն ինծ համար։ Ո՛վ Բարեգութ, ընդունէ՛ աղօթքը անոնց, որոնք չարիքի անվարժ, բարիներ են Քու բարերարութենէդ բարեգործուած և ամէնուն իշխող հրամանովդ ստեղծուած. Բարձրեալիդ հրամանին պատրաստ՝ հզօր զօրքեր են մաքուր, սուրբ, անարատ, օրհնուած, վայելուչ, յաղթող և անպարտելի և մտքով տեսնելու մասին խիստ արագընթաց։

Բ. Որոնք բարեխօսները, պատրաստողներն ու նաև խնամակալներն են պտուղը կորանցնող Թզենիի ծառին, որ աշխարհի այգիին մէջ երկար ժամանակէ ի վեր արմատացած՝ դանդաղ ընթացքովը զրկուած է պտուղէ երեք տարուան դատարկութեամբ՝ ինչ որ աշխարհի ամբողջ ժամանակամիջոցը կը պարունակէ, անցեալը ներ-

կային և ապագային հետ, զարդարուած՝ անշահ տեսլեններով որ ճշգրիտ պատկերն է մեր Թշուառ մարդկութեան։ Անոնք (հրեշտակները) միշտ կը դեգերին մեզի հետ, կարեկցելով մեր կրածներուն վրայ. մեր բարեմասնութիւններուն կ'ապատեն և յաւիտենական կենդանութեամբ մեր փրկութեան համար կ'աղօթեն, սա խօսքը ըսելով. «Ձեռքիդ գործերը անտես մի՛ ըներ»։ Արդարեւ մերն են այս աղաչանքները՝ Բարերար Աստուածութենէդ դասակարգուած, որ մեզ համար աղօթեն անոնք, որովհետեւ անոնք խօսքով ստեղծուած են և մենք ձեռքով գործուած։ Որոնք Միածնիդ հետ պիտի գան, հատուցումի դատաստանին սոսկալի վկաներն ու երկրային յանցաւորներու ճշմարտախօս դատախազներն ըլլալու և ահաւոր ատեանին առջեւ Իրաւունքով պիտի յայտնեն մեզ նկատմամբ մատակարարուած խնամքը, որոնք հոն ալ ազդուելով պիտի կարեկցին ու հառաչելով պիտի կանչեն իրենց մշտնջենաւոր նուագը «Ողորմէ՛, Դուն ստեղծեցիր, մի՛ կորսնցներ»։

Գ. Արդ, անմահ վեհերու գոհաբանական խնդրուածքներուձայնին հետ մեր հեծեծանքներն ալ հասուրսա՛, ո՛վ ամէնուն Արարիչը. որ գթութեամբդ կը գերազանցես, երկնայիններն ալ, երկրայիններն ալ. որովհետեւ դո՛ւն ես որ կը բա-

րերարեա անոնց ա՛լ, մեզ ալ։ Եւ բարեգործութեանը համար այն անապատներուն, հրաշալի տեսքով կրակի նմանողներուն, յստակ մաքուրներուն, անմեղներուն, բոցեղէններուն, հոգեղէններուն և անվանելիներուն — որոնք յարաճուն առաւելութեամբ և առատ զուարթութեամբ գերազանցապէս փայլելով իրենց բարձր աստիճանին մէջ, Աստուածասիրութեան ինքնածին կրակովը իրենցինին նման՝ անցաւոր ջերմութեամբ կը բռնկցնեն նաեւ մեր անբարբառ, մարած սառնածին սիրտը— շնորհ ըրէ որ անաղօտ կերպով այրի ա՛ն (մեր սիրտը) այս խորանին մեծախորհուրդ սեղանին վրայ և առանց քնանալու ու դանդաղելու, սպասենք ամէնքը Ստեղծող և ապրեցնող կամքիդ երանական հրամաններուն, քերովբէական առաքինութեամբ անբաժանելի կերպով Աստուծոյ միանալով։ Որոնք (հրեշտակ) երկնաւոր մեծ պետութիւններ, երկնաւոր Աստուծոյդ անբիծ ահաւոր զինուորները, ազատազնեալ պաշտօնեաներն են և լուսեղէն ամպէդ ցոլացած նշոյլները։

Դ. Որոնցմով՝ ինձ հոգեղէն մեզաւորիս ալ ողորմիլ մարդասէրէ ո՛վ Յիսուս, իմ հրեշտակիս աղաչանքով քու լուսեղէն, բարի ճամբուդ մէջ դարձուր զիս ո՛վ Տէր, որպէս զի հոգիս պաշտպանելու աւանդը զոր այս աշխարհիս մէջ անոր (պահապան հրեշտակ) տեսչութեան յանձնեցիր,

սրտի ուրախութեամբ իմ վրայ բերկրելովս իբր անմեղադրելի՝ Քեզմէ օրհնուելով՝ խնդումներս զուարթութեամբ Քեզ բերէ ու ընծայէ, կենդանիներու խնճոյքին և անոնց բերկրանքի պարահանդէսին մէջ, ո՛վ գովելի. ողորմած և խելքէ վեր բարձրութեամբ փառքի Թագաւոր. Եւ Քեզ՝ որ անքննելի ես անհասանելի Հօր հետ ու ընկերակցութեամբ անճառ Հոգիիդ փառք պատիւ ու երկրպագութիւն կը վայելէ մինչեւ վերջը. ամէն.

*Նոյն այն Հօգոյն աղերսալից մաղթանքներուն ու աղօթական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։*
*Սրտի խորերէն խօսք առ Աստուած.*

## ՁԲ. ԽՕՍՔ



Ո՛վ բարերար Տէր Աստուած, Դուն որ պարգեւներ շնորհող Թագաւոր. կեանքի պատսպարան, լուսոյ կերպարան, լոյսնարձակ հանգստարան ես, ինծի մեղաւորիս համար եկար մարմին առիր, խելքէ մաքէ վեր բաներ գործեցիր, հրաշքներ կատարեցիր մինչեւ որ մարդկութիւնը — զոր անթերի աստուածութեանդ հետ միացուցած էիր — կատարելութեան հասցուցիր։

Բ. Արդ, սուրբ առաքեալներուդ համար, որոնք քու երկինքն ստեղծող ձեռքերէդ ձեռնադրուեցան

ու Սուրբ Հոգիովդ օծուեցան, և որոնց արժանաւոր գովեստն—զՔեզ փառաւորելու նպատակով—կարողութեանս համեմատ ուրիշ անթիւ գրեցի, այն ընթերցողներուն յիշատակին սիրոյն համար, ինձ ալ ողորմէ, ո՛վ ամենուն Տէ՛րը։ Անոնցմով թող բացուի ինձ ճամբայ մը, որ դէպի փափաքելի (յաւիտենական) երանութիւնն առաջնորդէ զիս, և անոնց հովուելու բարի ձայնը, կենդանութիւն աւետող աղջոյնի նման քաղցր թող հնչէ ականջիս։ Կեանքի առաջնորդներուն, առաջին անգամ պատուոյ արժանացողներուն, փառաւորուած դասակարգին, խօսուն դէտերուն, բարձր աւետարանիչներուն, պանծալի իշխաններուն, լուսեղէն պսակով զարդարուածներուն, շնորհքին զօրութեան անկապտելի զարդովը պայծառացողներուն և սիրական լուսին զուարթարար իւղովը պսակուողներուն հետ, ես ալ մասնակից ըլլամ անեղծ (հոգեւոր) փրկութեան ըղձալի յոյսին։

Գ. Քու մեծութեանդ հրամանին աշակերտողներուն և նահատակութեամբ ընտրուած (այն հին հեթանոսներուն ատենուան) մարտիրոսներուն հաճոյական և ընդունելի մաղթանքներն ու քրտինքով ձօնած, չարչարանքով նուիրած և (մեղքերուն քաւութեանը համար) արիւնով ընծայած աղաչանքներն յարգէ, ո՛վ Բարձրեալ Աստուած Քրիստոս, որ ես ալ նորէն մասնակից ըլլամ ա-

նեղծ (հոգեւոր) փրկութեանդ, նման այն մարտիրոսներուն, որոնք իրենց մահացու և վշտաչարչար մարմնով, վտանգուած ու տկար անդամներով, երկրաւոր ու հողեղէն կազմուածքով Բնութեան չորս տարերքներուն հետ մաքառելով, պսակուեցան, բարձրացան և հոգեկան կենդանութիւն ստացան։ Մարգարէին ըսածին նման, քաջօրէ կերպով ելան երկրէն, ճշմարտութեան վկաներն եղան՝ տոկալի մահուան դիմագրաւելով։ Անկէ իսկ իրենց յուսոյ աչքով կը տեսնէին այն հոգեւոր բարիքներն որոնք ծածուկ են, չեն տեսնուիր, բայց միայն կը հասկցուին։ Առաքեալներու աշակերտներն ու անոնց չարչարակիցն ըլլալով, գործով ալ անոնց հաւասարեցան կատարելապէս, ու կը պարեն անվերջ երանութեան խրախճանքներուն մէջ։

Դ. Ո՛վ Աստուծոյ որդին, զիս՝ պատժապարտ մեղաւորս ալ ընդունէ՛. արժանաւոր մաղթանքներուն ու նուիրական խնդրուածքներուն համար՝ սուրբ ճգնաւորներուն, առաքելական հայրերուն, կրակով ու սրով խոշտանգուողներուն, արիւնով ներկուող (հին) մարտիրոսներուն, ու Քեզ հետեւողներուն, որոնք անյաղթելի քաջութեամբ և հաստատակամ զգաստութեամբ, իրենց գուող մարմնոյն յուռի կիրքերուն բռնութեան հետ արիաբար կռուելով, վռնտեցին անմարմին սատա-

նան։ Կեանքի ասպարէզին մէջ շարունակ մաքա-ռեցան, աշխարհի լայնածաւալ ծովու ալիքներէն, մարմնական թանձր նաւով թռցնելով իրենց թե-թեւ հոգին, կեանքի նաւահանգիստն հասցուցին զայն, առանց զզուելու այս ծանր աշխատութե-նէն։ Եւ երբ երկնային կեանքի սիրահարներ, չխորհելով իսկ իրենց ետին ձգածներուն վրայ, պայծառ ճոխութեամբ զարդարուած յաղթութեան թագով (առաքինութեամբ) համարձակապէս պըճ-նուեցան։

Ե. Եւ ահա իմ անմաքուր խօսքերս, խառնե-լով փառաբանական աղերսանացը վերոյիշեալ եր-ջանիկներուն, որ ինձ համար կը թախանձեն քեզ հաճութիւն առթելով, ես ալ անոնց հետ կը միա-նամ իբր անուշին քով լեղի, ողորկ ընձիւղին քով փշալից տատասկ, վայելուչին քով տգեղ, գեղեցիկ մարգարիտին քով տիղմ, յստակ ոսկիին քով հող, պայծառ արծաթին քով անարգ քար, ճշմարտութեան քով սուտութիւն, և կամ կակուղ հացի խառնուածքին մէջ ակռայ առնող աւազ։ Արդ, ո՛վ Հզօր, Հնարագէտ, Գովուած, անոնց իմ մասին խնդրածներն և իմ ալ անոնց հետ ու զանոնք գովելու, հոգիս փրկելու ու Քեզ փառա-ւորելու համար ըրած աղաչանքներս ընդունէ. Դուն որ ամէնուս կը գթաս. Բարերար, Օրհնեալ, Համբերող ու Կարող ես. ոչ կարելի է զՔեզ

քննել, ոչ Քու վրայ ճառել, ոչ կ'եղծանիս և ոչ ալ ապեղծուած ես։ Պարգեւները Դուն կուտաս, շնորհներդ Քեզմէ կը բղխին, և ամէն բարիքնե-րուն պատճառն ու սկիզբը Դուն ես։

Չես դատապարտեր, այլ մեղքէն կ'ազատես. չես կորսնցներ, այլ կը գտնես, չես մեռցներ, այլ կ'ապրեցնես, չես տարագրեր, այլ կը ժողվես. չես մոռնար, այլ կը փրկես. չես ընկղմեր, այլ վեր կը հանես, չես գլորեր, այլ կը կանգնես. չես անիծեր, այլ կ'օրհնես. վրէժ չես լուծեր, այլ կը ներես. չես թշուառացներ, այլ կը մխիթարես. չես աւրեր, այլ կը գրես. չես խախտեր, այլ կը հաստատես. ոտքի տակ չես առներ, այլ կը սփո-փես. մեռցնելու պատրուակ չես նիւթեր, այլ ապրեցնելու հնար կը խորհիս. սպաննել չէ կամքդ, այլ հոգին փրկելով ողորմիլ։ Այցելել չես մոռ-նար, բարիքդ չես դադրեցներ. գթութիւնդ չես արգիլեր, և ոչ թէ կորստեան վճիռ, այլ (սատա-նայէն) ազատութեան կտակ կը բերես։

Առատաձեռնութեանդ համար չեն թշնամաներ զՔեզ և ոչ ալ շնորհներուդ համար կը բամբա-սեն, պարգեւներուդ նկատմամբ հայհոյութիւն չեն լսեր և ոչ ալ ձրիաբար շնորհած բարիքնե-րուդ առթիւ նախատինք։ Համբերութիւնդ ո՛չ ոք կը պախարակէ և ներողամտութիւնդ ո՛չ ոք կը մեղադրէ. բարիքներդ բամբասանք չեն առթեր.

քաղցրութիւնդ անպատուութեան տեղի չի տար և ո՛չ ալ հեզութիւնդ քամահրանքի. տանց նկատմամ՛բ տրտունջ չուղղուիր քեզ. այլ անլռելի գոհունակութիւն։

Թօթափէ՛ մեղքերս, ո՛վ Զօրաւոր, քակէ՛ անէծքս, ո՛վ Օրհնուած, պարտքերուս համար ներողութիւն շնորհէ, ո՛վ Ողորմած, յանցանքներս ջնջէ, ո՛վ Գթած, մատիդ ծայրովը այցելութիւն մը ըրէ ինծի և արդէն՝ իսկ ամէն բան կը լմննայ։ Ասոնցմէ աւելի ի՞նչ կայ դիւրին քեզ, և կարեւորագոյն ինծի նման մեղաւորի մը համար, ո՛վ Տէր։

Արդ, վերակենդանացուր, Բարեխնամ, այս պատկերը, զոր Դուն ստեղծեցիր. փչէ՛ անոր՝ նորոգման շունչը լուսաւորութեան շնորհին. որպէս զի պաշտպանութիւն գտնէ ամէն առթիւ մեղանչող հոգիս։

Ո՛վ Ողորմած, անակնկալ ժամանակ մի՛ հրաւիրեր զիս այս առժամանակեայ կեանքը ձգելով անվերջ ճամբուն հետեւելու՝ երբ դեռ թոշակ մը պատրաստած չըլլամ ինծի համար. ծարաւութեան տեղս լեղի բաժակ մի՛ երկնցներ ինծի. հոգիիս փրկութեան օգտակար յաջողութիւնները մի՛ փակեր ինծի դէմ. ո՛վ Գթած, ու գիշերադէմ մահն տապաստակող աւազակներուն նման յանկարծ դէմս թո՛ղ չելլէ. ջերմութեան կրակն անպատրաստ

մէ՛կ պահուս արտօսր թո՛ղ չկտրէ ու ցամքեցնէ, և ո՛չ ալ լուսնի դիպուածներն (լուսնոտութիւն) հասնելով, գաղտնապէս ինձ վնասեն. մեղքերուս սառնասիրոյթը թո՛ղ չպահուի ինձ համար և ոչ ալ կեանքի ջուրերուն հոսանքները զիս ողողեն. Հանգստութիւնը մահ թո՛ղ չպատճառէ ինձ և ոչ ալ քունը կորուստ. չըլլայ որ ննջելը սատակում առաջ բերէ և նիրհելն ալ ապականութիւն գործէ. անյարմար վախճանը չյարձակի վրաս և ոչ ալ շունչս բռնուելով խեղդուիմ.

Դուն ես Տէ՛ր, Դուն գթած, բարերար, համբերող, ամէն բանի կարող, ամէն ինչ որ անհնար է կրնաս հնարաւոր ընել, ներել, հոգիս փրկել, լուսաւորել, վերահաստատել, գազաններու գիշատիչ ժանիքէն ու վիշապներու ակռաներէն փրկելով ազատել. անդունդներու խորերէն բերկրառիթ լոյսին առաջնորդել. ու մեղքի ալիքներուն մէջ խեղդուողը երջանիկ արդարներուն հետ փառաւորապէս նստեցնել. Ամէն մարդու ակնկալութիւնը Դուն ես, և թէ՛ երկնայիններն, ու թէ երկրաւորները, թէ՛ մեղքի տակ ընկճուածն ու թէ՛ արդարութեամբ բարձրացածը, թէ՛ տէրն ու թէ ծառան, թէ՛ տիկինն և թէ աղախինն հաւասարապէս շնորհացդ կարօտ ըլլալով, Քեզ կը սպասեն յուսալից, որովհետև ամենուն կենդանութեան շունչը Քու ձեռքդ է. Ու Քեզ՝ Հօր՝ ու Սուրբ Հոգւոյդ փառք կը մատուցանենք յաւիտեանս յաւիտենից, ամէն.

Նոյն այն Հոգւոյն աղերսալից մաղթանքներուն ու աղօթական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։ Սրտէ խորերէն խօսք առ Աստուած.

---

## ԶԴ. ԽՕՍՔ

Ով անքննելի բարձրեալ, անեզր զօրութիւն, տէրը արարածներուն, թագաւորը երկինքի, հրեշտակները ստեղծող, մարդերը գոյացնող, հրեղէնները հաստատող, պետը բարի հոգիներու, ապաւինելիք ձեռք, հանգիստի անդորրութիւն, լուսաւորութեան տեսարան, բերկրութեան պայծառութիւն, երանութեան համբոյր, կենդանութեան պատճառ, բանաւորութեան առիթ, անվըրտանգ փրկութիւն, խաղաղութեան առաջնորդ, ամուր պարիսպ, պահպանութեան պատուար, ցանկապատը՝ օրհնութեան մեծ բոցին, անոխակալութեան սահման. այս ողբերգութեան գրքին խոստովանութեան խօսքերուն մէջ բարութեամբ յիշէ նաեւ մարդկային ազգէ մեր ունեցած թըշնամիներն ալ և անոնց ողորմութիւն ու քաւութիւն շնորհէ։ Իմ վրայ ունեցած առատ սիրոյդ պատճառով՝ տուրքերը բամբասող մի՛ նկատեր զանոնք ու ինծի համար անոնց մի՛ բարկանար Տէր. այլ եթէ չարերը յանդիմանող և իրաւունքով նախատող՝ ներէ՛ անոնց յանցանքներուն։

Արդ՝ երկուքս ալ Քու առջեւդ կը ներկայանանք, ո՛վ Արդարադատ. անոնք որ իրաւացի կերպով կը բամբասեն, թերեւս քիչ վնաս կը հասցնեն մեզ. որչափ անթիւ այնչափ բազմօրինակ ու խաա-զանցութեամբս ես՝ Քեզ՝ ո՛վ ամէն բան պարգեւող։

Բ. Արդ՝ յիշէ մեծութիւնդ ո՛վ Տէր, իմ անարգութեանս նայելով. և երբ ես ատելիներուս համար բարիք կը խնդրեմ, դուն ալ Քեզ ատելի եղողներուն նկատմամբ անճառելի հրաշք գործէ՝ մեծութեանդ համեմատ։ Զիս խածնողները մի՛ սատկեցներ, այլ բարեփոխէ. երկրաւոր՝ անպիտան բարքերը խլելով, իմ և անոնց մէջ ալ բարիք տնկէ։ Մանաւանդ որ դուն լոյս ու յոյս ես և ես խաւար ու յիմար. դու իսկութեամբ բարի գովելի՝ և ես ամէն տեսակէտով չար ապիկար. Դուն տէրն ես երկրայիններուս ու երկնայիններուն. իսկ ես՝ շունչիս ու հոգիիս վրայ չեմ կրնար իշխել. Դուն բարձրեալ ես ու պիտոյքէ զերծ, իսկ ես տաժանակիր ու վտանգաւոր. Դուն վեր ես երկրային հոգերէ, իսկ ես անարգ կաւ եմ աղտոտ. Դուն՝ — մարգարէին ըսածին պէս — անբաւ բարձրութեան վրայ կը մնաս միշտ, ես յաւէտ կը կորսուիմ — ինչպէս դարձեալ ան կ'ըսէ — Քու վրայ չկայ մթութիւն կամ նենգութիւն, իսկ ես ամբողջութիւնն եմ անոր որ

տւանդս չպահեցի։ Հանէ՛ զիս (հոգիս) այս բանտէն, արձակէ՛ կապանքներս. ազատէ՛ շղթաներէս. փրկէ՛ խեղդուելէ. զերծ պահէ նեղութենէս. քակէ՛ երկաթներս, լուծէ պաշարումներս, փարատէ՛ երկմտութիւնս, սփոփէ՛ տրտմութիւններս, հանգստացո՛ւր զիս նեղութիւններէս. ցրուէ վշտերս. հանդարտեցո՛ւր խռովութիւններս, լացերս դադրեցո՛ւր. հեծեծանքներս անհետացո՛ւր, ողբերս հեռացո՛ւր, կազդուրէ զիս հեծկըլտանքներէս. ո՛վ ողորմող ու քաղցրութեան պարգեւ շնորհող Աստուած. մի՛ անտեսեր ու պարապ տեղը կորսնցներ զիս որ Քու հզօր արիւնովդ գնուած եմ. կանգնէ՛ զիս որ մահուան գուբը հասած եմ, վտանգաւոր հիւանդութեանս երեսէն։

Գ. Ահաւասիկ դիզուեցան, բարդուեցան չըրջանակները պարապն անցուցած տարիներուս, այն ատենէն ի վեր երբ յայտնի կերպով տեսնուեցաւ որ անպէտ եմ ո՛ և է բանի և մօրս սենեակին արտին մէջ փուշ եմ դժնիկ՝ մեղքէ ընձիւղուած. խոցոտող խայթոց մի՛ ըլլար ինձ, ինչպէս հոն՝ (պիտի ըլլաս) Յուդայի ցեղին ու Եփրեմի զաւկին (Ովսէ Ե. 12)։ Եւ որովհետեւ բարեսերմ ցորենին տեղ՝ խայթող, թունաւոր և թմրեցնող խոտեր անկելով բուսցուցի հոգիիս մէջ (Յոբ. ԼԱ. 40) գրքին խօսքին համեմատ, որ Աւետարանէն առաջ է (Յոբի գրածը Աւետարանի տրոմին առա-

կէն առաջ գրուած է), ի՛նչպէս չանուանեմ զիս, գարշելի արար՝ մեղքերու անիծաբեր փուշերով խեղդուած։ Յովսէփ ըսածին պէս, արդարութիւն չցանեցի, ի՛նչպէս կեանքի պտուղը քաղեմ ու ժողուեմ։ Մարգարէին Իսրայէլացիներուն համար ըսածին պէս, անձիս մաքրութիւնը ապացուցանող կուսութեան ստինքներս ինկան, կարո՛ղ ես ալ նոյնը հաստատել։ Յուդայի մոլի բարքերուն համեմատ կեանքիս անկողինը լայնցուցի, ընդարձակեցի դեւ հոմանիներու առջեւ։

Քու ձեռքդ է դարձեալ ամփոփել զայն նախկին զգաստութեանը մէջ։ Եթէ Տեսանողին (մարգարէ) հետ մարմնապէս կցորդուիլը (Ովսէի ամուսնութիւնը Ա. 3) անարատ հռչակեց պոռնիկը, դո՛ւն ով փրկութիւն որ հոգեւորապէս միացած ես ինձ, կրկնապատիկ մաքրէ՛ զիս. եթէ սա անկենդան արեգակը — որ երկիրս մատակարարելու համար ստեղծուեցաւ Քեզմէ — ճահիճներու և աղմուտ մորերու գարշ խոնաւութիւնը կը ցամքեցնէ ու խակ պտուղները կը հասցնէ, հապա Դո՛ւն ո՛վ ամէնքն ստեղծող Աստուծոյ Հոգիդ, ո՞րչափ կարողութիւն ունիս չարիքի աղտին տիղմը ու պիղծ մեղքերու մթերուած թարախը իսկոյն անհետացնելու։ Ասոր համար՝ կանուխէն իսկ փութացի այս խօսքերու դաստակերգութեան մէջ՝ Քեզմէ բարիք խնդրել ատելիներուս, ո՛վ գթա

օրհնուած, որպէս զի ամէնքը խնամող հզօր աչքէդ չի հեռացնես զիս, որ տարագրուած մահապարտ մ'եմ վնասակար. արդ՝ մարմնոյս խիստ մեղաւոր անդամներուն հետ կենդանացո՛ւր նաև բնութիւնը հոգւոյս, որ մինչև քուկիններուդ վրայ խորհի՛։ Իսկ մեզ բարիք ընողներուն համար բարիք խնդրել, բնութեան անբռնաբարելի օրէնքն է, որուն ինքնաբերաբար կը հպատակին ամէնքն ալ (անբան անասուններն ալ)։ Որովհետև այդ մէկ պատուէրը (բարիք ընողին բարիք փութացնել) ամէն հասակէ անձ կրնայ կատարել. իսկ առաջինին հետ միւս երկրորդն ալ կատարել (թշնամիին բարիք ուզել) Աստուածութեանդ նմանիլ է. այս պատճառով՝ բարերարներէս աւելի, թշնամիներուս համար աղօթելը նախադասեցի։

Դ. Արդ՝ մէկի տեղ երկու անգամ յիշէ՛ զանոնք, որ Քու անուամբդ բարձրանալով զիս անարժանս ընդունեցին. և արդարի ու մարգարէի վարձք տո՛ւր անոնց, ո՛վ ամենառատ բարերար և անոխակալ տէ՛ր, թէև ես յաւէտ թափուր եմ արժանիքէ, բայց անոնք՝ իրենց ունեցած հաւաքին ու ակնկալութեան յոյսին համեմատ՝ ողջամիտ կամքով կը նային ինձ՝ պարտաւոր գերիիս, որպէս թէ հոգիիս ծածուկ պահարանին մէջ ամբողջութեամբ ունենամ Քու տպրեցնող մասերէդ (առաքինութիւն)։ Եւ անտանելի քաղցր գթու-

թեամբդ ինձ մօտեցիր, Քու տիեզերական դատաստանիդ մէջ անխայտառակելի պահելով մաքրէ զիս՝ պատժապարտս, որ չեմ կրնար պահուըտիլ Քու տեսութենէդ և խաբել ուղիղ կշիռդ։

Սիրելիներդ կ'ախորժին երբ Քու վայելուչ շուքդ նկատել զիս անարժանս, (կրօնականի) բարեկերպ հագուստներուս արտաքին երեւոյթին նայելով. գաղտնի մեղքերս չե՛ն գիտեր ու երջանիկ կ'ըսեն թշուառիս. Դուն ալ, ո՛վ հնարագէտ, ամէն բան պարգեւող, օրհնուած, մարդասէր և ամէնուն ողորմող, ամենաթշուառիս հեծեծանք. ներսուն նայելով՝ անոնց հաւատքին համեմատ հաշտուէ իրենց հետ. վերջին դատաստանին ահաւոր օրը, երբ խիստ փորձէ մը ետք ընտրութիւն պիտի կատարուի, անեղծ մեծութիւնդ և անճառամ պսակդ նուիրէ՛, ընծայէ՛, պարգեւէ՛ անոնց։

Ե. Որովհետեւ՝ Քեզմէ տրուած խօսքով՝ (քահանայական իշխանութիւն) — որով կը յարգուինք ու կը հոխանանք — երկնային օգտաւէտ շնորհը բաշխելու համար, Դուն ես ստրուկիս ու տուածիս փրկութեան անսպառ և անվատնելի գանձերուն մեծ գրաւականը։ Զայն կեցնելու համար սահման հաստատէ ինձ, պատրաստական վստահութիւն կանգնեցուր ինձ, ո՛վ չփոխուող. աներկբայելի յոյսի ամրութիւն կանգնէ ինձ, ո՛վ օրհնաբանուած. Դո՛ւն, ո՛վ ամէնքը

խնամո՛ղ անաչառ, պաշտպանութիւն ամուր․ անդորր բարիք շնորհէ՝ որ խախտած եմ․ լոյսի ապաւինութիւնը՝ որ չուարած եմ․ մեծ երջանկութիւն՝ որ աղքատցած եմ․ կեանքի օգնութիւն՝ որ վհատած եմ․ անգայթակղելի օժանդակութիւն՝ որ լքուած եմ․ անսայթաք վերելք՝ որ ետ դարձուած եմ։ Որովհետեւ Քուկդ է այդ ամէնքը ու Քու ձեռքովդ կը բաշխուին ամէնուն կեանքին անհրաժեշտ պիտոյքները․ և Քեզ փառք կը վայելէ մինչեւ յաւիտեան․ ամէն։

Նոյն այն հոգւոյն ողբերգակից մաղթանքներուն ու աղօթական հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած

## ՂԴ. ԽՕՍՔ

Ո՛վ երկնաւոր արքայ․ բարձր Թագաւոր․ տէրը բոլորին և ամենակալութիւնը՝ ամէնուն․ ստեղծուածներուն ստեղծող․ իմանալիները (աներեւոյթ հոգեղէնները) հաստատող․ գոյացութիւններուն պատճառը․ գալիքներուն կազմակերպիչը․ տուողը՝ լոյսին, և առիթը ստուերին․ ջուրը պատրաստող և էջէջանք երեւցնող․ խաւարը գոյացնող․ բարիք հնարող առատատուր․ իմաստութեան վարպետ․ օրհնուած քաւարան․ մեղքերը հալեցնող․ ցաւերը

հալածող․ դառնութիւնները քակող․ հանգիստի պահպանարան․ Նիրհելը հնարող․ քունը յարմարցընող․ Ննջումը պարգեւող․ Չնչառութիւնք դադարեցնող․ զգայութիւնը անեւականացնող․ ցնորքը ցրուող․ երազները բարեշրջող․ տեսկումները լուափոխող․ տխրութիւնները այլայլող․ խիթերը խափանող․ կարծիքներն ընդարձակող․ ծփանքները հանդարտեցնող․ խարդախները ահաբեկող․ դեւերը հարուածող․ ախտերը փախցնող․ գայթակղութիւնները ընկղմող։

Բ․ Երկինքը ստեղծող ձեռքովդ պաշտպանէ՛․ Քու բարձրացած աջովդ զօրացո՛ւր․ ամէնքը բռնող Թեւովդ ամփոփէ․ Աստուածային խնամքովդ ծածկէ․ երկնայիններուդ վերակացութիւնովը ամրացուր․ անմահներու գումարտակներովդ պարապէ չորս կողմս․ հրեշտակներուդ կցորդութեամբը ամէն կողմէ պարփակէ․ արթուններուդ (հրեշտակ) զինուորութեամբը վռնտէ ինձ ընդդիմացողները (սատանայ)․ Աստուածածնիդ մաղթանքովը պատսպարէ զիս որ խախտած եմ, անդրանիկներու (արդար) բանակդ բարի պահապան կարգէ ինձ։ Դէմքիս աչքին հետ՝ մաքի աչքերս ալ բա՛ց․ հոգիններու հետ՝ ծանրաբեռնուած կիրքերուս դանդաղութիւնն ալ զգաստացուր․ զգացումներուս հետ շաղուած յիմարութիւնք վերցուր ո՛վ Տէր․ Թանձրամտութիւնս անցո՛ւր ո՛վ միակ

Բարեգործ։ Լոյսը ծագիլ սկսելուն հետ՝ ողորմութիւնդ ու թող ճառագայթէ․ արեւին ելլելուն հետ՝ արդարութեան արեգակդ թող մանէ սրտիս նեղութեանը մէջ․ Քու փառքիդ ճառագայթը թող փայլի մտքիս խորհրդարանին մէջ․ խաչիդ անեառնագրութիւնը թող տարածուի ամբողջ հոգիիս ու մարմնոյս վրայ․ ամէն օրուան համար Քեզ կը յանձնեմ Քեզ համար պատրաստուած այս տաղաւարը՝ (մարմինս) իր մէջ բնակող և զինք պահպանող հոգիիս հետ։ Որովհետեւ Դո՛ւն ես չքննուող Աստուածը․ ամէնուն բաւող և ամէնուն մէջ բովանդակուող․ յաւէտ օրհնուած․ ամէն։

---

Նոյն այն Հոգւոյն աղբրակից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։

Սրտի խորերէն խօսք առ Աստուած․

## ՁԵ. ԽՕՍՔ

Արդ՝ որովհետեւ մեր զուարթ արթնութիւնը (առանց հոգեւոր զգաստութեան) քնանալ սեպուած է Քեզ համար, իսկ ճշմարիտ հաւատացող ըլլալով Քեզ՝ խոր թմրութեամբ լռելը՝ անթարթ նայող բաց աչք․ ուրեմն մաղթանքներուս հեծեծանքի ձայնին փոխարէն՝ Քու Հոգիիդ իմաստութեամբը ուղղէ յաջողութիւնը ձեռքիս այս գործին։ Բարի ճգնաւորութեամբ արի վաստակ

(պանծեցողութիւն) չանուելիք հրապարակին վրայ զօրացո՛ւր Տէ՛ր. ակար պէտքերուս մասնակից եղի՛ր. աշխատութեանս այս օգզընաւորութիւնը թեթեւցո՛ւր. տաղտկացած ձեռագործս փութա-ցուր, մինչ կարող. դիւրութեամբ տանիլ տալ զայն որ ուսորսի կատարելապէս։ Գործին վեր-ջաւորութեանը հասցուր զիս ուրախութեամբ. ար-ժանի ըրէ զիս (այս ձեռնարկիս վրայ եղած) յոյ-սիս պսակուիլը տեսնելու. քալելիք ճամբուս մէջ ուղեկից եղիր ինձ. բարձրերէն թացնելով օգնա-կանին հասցուր շուտով. իմ ալ կողմս եղիր ծանր վտանգի ժամանակ. ձայնդ լսցո՛ւր երբ նեղու-թեան մէջ գտնուիմ. ձեռքովդ ազատէ՛ երբ կոր-սուելու ենթարկուիմ. մատովդ ալ դպչէ ինձ նեղութեան սահմանին մէջ. վերցուր խափանարար պատուարը ամենաչար. ինչպէս որ Ամբակումի ձեռքով Դանիէլին ըրիր) հոգեղէնը (հրեշտակ) ղրկելով հնարք հայթայթէ ինձ. խօսելու կարո-ղութիւն շնորհէ ինձ երբ Ատեանը նստիմ. իմաս-տութիւն անկէ մէջս, երբ քննութեան ենթար-կուիմ։ Կամքի ամպովդ հովանի եղիր ինձ՝ հրա-շալի կերպով. կեանքի փայտովդ հանդարտեցուր մրրիկը այս ծովուն, հրամանովդ սանձէ պա-կերը աշխարհային կենցաղին, որովհետեւ եթէ ողորմութիւնդ ուզէ հոս, ո՛վ Տէ՛ր, հեզուկ ալիք-ները վէմէ աւելի կարծր կ'ըլլան. եւ եթէ ցամա-

քին վրայ անտես ընեն, երկրի կարծրութիւնը՝ իբր անհաստատ՝ հոսելով կը խախտէ տակէ հիմերէն։

Բ. Արդ՝ ո՛վ Յիսուս, պաղատանքի այս ձեռնարկը հաճութեամբ ընդունէ՛ և ամէնէն մեծ գայթակղութիւնը մեծ վստահութեան փոխարկէ։ Ինչպէս որ ամենքը կործանող Ջրհեղեղին ատեն, երկրի հարթ տարածութեան վրայ անվախ անհոգ ապրողները՝ ողորմութենէդ ամայի մնալով կորսուեցան, իսկ միշտ տատանող հիմերու վրայ կառուցուած տախտակամած շէնքին (Նաւ) հովանիին ապաւինողները՝ Գթածիդ անուան կռթնելով ողջացան. անոնց հետ՝ իբր մարդասէր, փրկէ ապրեցուր նաեւ զիս աղաչաւորս՝ խաղաղութեան նաւահանգիստին մէջ, որ միշտ կ՚երերամ. որպէս զի Քու շնորհածներէդ՝ հոգեւոր շահերու վարձքեր բերելով ինձ հետ և առակիդ խօսքին համեմատ լքանելով վայրահակ սառուարութիւնը մեղքերուս, դէպ ի Քեզ ուղղուիմ, ո՛վ Տէր, յաւէտ անբաժանելի կերպով միանալով Քեզ, ո՛վ ամէն բանի մէջ Օրհնուած։ Եւ այս մաղթանքներուն թող մասնակցին ամենամաքուր հոգեղէնները հողեղէն սուրբերուն հետ — որոնք ջուրով ու կրակով փորձուեցան և իրենց աշխարհէ ելած ատեն իսկ մեզի համար ողորմութիւն խնդրեցին և մեզ՝ օգնութեան յիշատակ ձգեցին (իրենց վարքը) — ու ամէնքը մեզի հետ ձայնակցելով թող ըսեն «ա՛յնպէս թող ըլլայ, այնպէս թող ըլլայ»։

Նոյն այն Հաշտողէն ողերուայից մաղթանքներուն ու
ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած

## ԶԶ. ԽՕՍՔ

ԲԱԶՄԱՊՈՂՄԱՆԻ կերպով չարա-
դասուած արտմութեան հառաչանքի այս ողբերով՝
ամէն հոգիներուն ալ ողորմէ, ո՛վ գովուած և
համբերող (երկնաւոր) Թագաւոր. ուրիշ անոնց՝
(ողորմէ) որոնք այլ ևս ակնկալութիւնը չունին
իրենց կեանքին (հոգիին) փրկութեան և որոնք իւղի
պակասութենէն մարած լապտերներով՝ անպատ-
րաստաբար քնացան։ Ահա, ո՛վ գթած Տէրս, յիշէ՛
ու այս պատճառով ալ իրաւացի սեպէ զիս։
Որովհետև թէև Մեծութեանդ սքանչելիքներուն
ահաւոր փառքը ցուցնելու համար ներհակ տար-
րերէ կազմեցիր մարդուս բնութիւնը, մէկ մասը
ծանր, մէկ մասը թեթև, մէկ մասը զով, միւս
մասը կրակոտ. որպէս զի երկու հակառակ
տարրերու դիմադրութիւնը չափաւորելով իրար
մով, արդար հռչակուինք կատարեալ հաւատա-
րութիւն պահելու համար (հոգիին և մարմինին
միջև), և այս առաքինական դարմանով (հաւա-
տարութեամբ) բարձրացածին (հոգիին) վերաբե-
րուելով ու չմոռնալով նաև կաւին (մարմինին)
նայելու խոնարհութիւնը, ճգնաւորական պաս

ընդունինք։ Բայց ուխտի այս կանոնէն վրիպեցանք և անսասնաբար սահելով հողին յարեցանք ու երկրին փականք, մէկը ախտով, մէկը անգթութեամբ և միւս մասն ալ ամէն տեսակ կերակուրներու բաղձալու որկրամոլութեամբ՝ (մեղանչեց) չարունակ ուտող գաղանի նման, մինչ այս մարմինին կապուելով։ Իսկ այս չորսերէն (տարերք) մէկը՝ չբռնուելու աստիճան սլանալով ու անողոքաբար գլուխ քաշելով կ'ամբարտաւաննայ իբր վայրենի. Եթէ մեր մէջ գտնուած բոցի կարողը տաքնանք Քու սիրոյդ հրակով, անոր հետ կենակցող ցուրտը՝ դայն կասեցնելով կ'ընդմիջէ բարին. Եթէ հրեշտակային թեթեւլացութեամբ դէպի Քեզ յարինք, թանձր ծանրութիւնը մեր դոյացութեան առաջին նիւթին՝ այս հողին՝ դէպի վար քաշելով կ'արգիլէ։

Բ. Արդ՝ ամէն կողմէ պարտուած և յաւէտ լքուած, կծկուած, անկարողի մը պէս վտարուեցայ, կորսուեցայ, վռնտուեցայ և մեղքերու բազմութենէն ճնշուելով մահուամբ գրաւուեցայ. ատոր համար, պարզեւէ զրկուած՝ դէպի ողորմութեան կողմը կը նայիմ. և ես որ ամէն մեղքերուն տէրն եմ, պատկառոտ դէմքով կ'աղաչեմ ամբողջ մեռելներուն համար որոնք կենդանի են Քեզ. որովհետեւ ինծ հետ մեռնելով կորսուողներուն ալ կրնաս հնարք շնորհել յաւէտ. ամէն

բան կարելի է Քեզ համար, մանաւանդ որ կամենալը ախորժելի է Քեզ՝ որ կարող ես բացարձակապէս։

Գ. Արդ՝ այս երկու նորոգող բարգաւաճ շնորհները՝ կարողանալն ու կամենալը՝ իրարու քով գալով, թող վերցուած ըլլայ յուսահատութեան վհատութիւնը մեղաւոր անձանց. Եւ Քու հոգիներ բժշկող հրամանիդ աւետիսին լոյսը թող գայ հասնի ո՛վ ամէնուն Տէրը որ յաւէտ օրհնուած ես. ամէն։

Նոյն այն Հոլողէն աղերսալից մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## ՁԷ. ԽՕՍՔ

Արդ՝ որովհետեւ վերջաւորութեանը մօտեցաւ սակաւամասնեայ կտակը այս ողբերգութեան, շնորհ ըրէ Տէ՛ր որ այս մաղթանքի խօսքերուն հետ դադրին ու վերջ գտնեն նաեւ ինքզինքս նախատելով յանդիմանելս եւ անձնական չար սովորութիւններս՝ Դուն որ ինքնաբերաբար՝ ակնկալութեան աւետիս սահմանեցիր ինծի՝ դատապարտուածիս, ըսելով թէ «իմ Հայրս բնաւ չի կամիր որ այս փոքրիկներէ մէկը կորսուի» եւ գործ

եալ թէ «Հօրս կամքը այս է որ Ինձ յանձնա-րարուածներուն և ո՛չ մէկը կորսնցնեմ»։

Թ. Ահա գթութեամբդ օրհնուած, քաղցրու-թեամբդ միշտ բարեբանուած, համբերութեամբդ հռչակուած, այցելութեամբդ ճանչցուած, և իբր փրկող Տէր քարոզուած ես. Դուն՝ որ առատա-ձեռնութեամբդ ներբողուած, պաշտպանութեամբդ պատուուած, փրկութեամբդ փառաւորուած, ան-բաւ բարձրութեան մէջ երկրպագուած, անքննե-լիութեամբդ պաշտուած, իբր միակ յաղթող գովուած, մեծ զօրութեամբդ բարձրաձայն հռչակ-ուած, ողորմածութեամբդ խնկաւորուած, անճա-ռելի հեզութեամբդ համբուրուած և խոնարհու-թեամբդ ճաշակուած ես։ Քու հետ նաև (օրհնուած է) երկնաւոր Ծնողդ՝ Աստուածը ամէնքը մխիթա-րող, ինչպէս նաև բարութեան Սուրբ Հոգիդ։ Դուն որ Թշնամիին ինկած գրաստը (Ելից ԻԳ. 5) և անբանութեամբ գայթած մարդը առանց չընել սանձմանեցիր կանոնով։ Որով Հզօրիդ երախտիքը իմ վրայ և Մեծիդ առաքինութիւնը բարձրերուն մէջ կը տօնուի անդադար և անվերջ փառաբա-նողներէն (հրեշտակ), որոնցմով՝ ինչպէս նաև մարտիրոսներու պսակաւանքով, իբր հաճելի բու-րող անուշ հոտ՝ յարգելով ընդունէ այս ողբերգա-կան խօսքերը։ Եւ հաշտարար խօսքերու այս փրկանքովը՝ բժշկէ ո՛վ Ամենակարող Նախնական

(կամ Նախնեաց) մեղքերս և աներեւոյթ վէրքերս՝ միջիններումս (չափահասութեան մեղքեր) ու անձը և մարմինը մեռցնող վերջիններովը (ծերութեան մեղք)․ ինչպէս նաև ներքիններն ու արտաքինները․ ապաւորուածներն ու գծուածները (մեղքեր) և հարուածներուն խարանները։ Վերցուր ու մաքրէ ողորմութեանդ դեղովը՝ կէտկիտուած բազմատեսակ խածուածները որոնք փոխանակ ախորժելի ընելու, գարշելի կը ցուցնեն Քեզ էութիւնը բնաւորութեանս ։

Գ. Ու ես որ արժանի եմ մեռնելու, եթէ Քեզմով առաջնորդուելով ծերութեան տարիքիս հասնիմ, տկարութիւնս մ՚ի թո՛ղուր, ճերմակ մորուքս մի՛ անարգեր․ կործանածին մէջքը մի՛ծռեր, մարմնով կծկտածը մի՛ խոնարհցըներ, ծռածը գետին մի՛ փակցներ, հովի փչումին մի՛ մատներ մարելու մօտ եղածը, մի՛ ծանրաբեռներ դողդըղացողը, առանց վերարկուի մի՛ ձգեր սառածը․ անդարման թող չմնայ նեղն ինկածը։ Անխնամ թող չձգուի փլփլկած տունը (ծերութիւն), թող չանպատուուի հինցած պատկերը․ թող չանհամնայ պարարտութիւնը (կծուած եղի թող չնմանի ծերութիւնը), թող չանարգուի պատիւը շնորհին․ թող չքամահրուի հնութիւնը, թող չալեկոծի նաւը հոգւոյս․ թող չկտրուի երկարութիւնը յոյսին․ թող չխզուի (առաջնորդող) չուանը ճամբուն (հին

տանն բազրիքի տեղ չուան կ'անցընէին անդուն-ներուն (ուղղութեամբ). Թող չխանգարուի կարո-ղութիւնը մտքին, Թող չաւրուի կազմուածքը մարմնոյն: Թող չփտտուին բարձրանալիք թեւե-րը. Թող չտգեղնայ գուարթութիւնը գեղեցկու-թեան. Թող չքաղուի ճաճանչը նշոյլին (փչքը չտկարնայ). Թող չփտկուին պատուհանները աչքե-րուս, Թող չխափանուի լուսաւորութիւնը՝ անոր, Թող չիյնայ խօսօղ պատկերը։ Ահա կ'աղաչեմ Քեզ, ո՛վ բարութեամբ Գթացող, բոլոր սուրբերով կը պաղատիմ. կանխաւ մաքրէ ըրէ այս խընդ-րուածքներուս, որպէս զի վերջը (ծերութեանս) չմոռնաս. ինչպէս կ'ըսէ Սաղմոսը՝ Դուն ա-ռաջնորդեցիր ինծ ու ազատեցիր. ո՛վ Տէր, Երգա-ցին հետ փրկէ զիս կասկածներու տարակոյսէն որմէ կը վախնամ։ Իսկ ես արժանի չեմ, ոչ իսկ հասարակաց կերակուրին վարձքը առանելու Քեզմէ. բայց Դուն ամոքարար՝ գլացողներու ալ բարիք գործելու կարող ես։ Զարմանալի և խելքէ վեր բարիքները Դուն ես որ կը շնորհես, ո՛վ ա-մէն բանի համբերող միակ հրաշագործ, որ մինչեւ վերջը օրհնուած ես Հօր ու սուրբ Հոգիին հետ. Ամէն։



Նոյն այն Հոգւոյն աղերսանօք մաղթանքներուն ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

---

## ՁԸ. ԽՕՍՔ

ԱՐԴ՝ հոգիիս բեկումովը, մտքիս լքումովն ու սրտիս խորտակումովը կամքի ջուր և արցունքի կաթիլ թափելով առջևդ, Արամաթացի Սամուէլ մարգարէն կը յիշեցնեմ, ո՛վ ամէն բան Տեսնող, որ սկաւառակէն ջուր առնելով թափեց Քու առջևդ, հասկցնելու համար ժողովուրդին թէ պէտք է խոստովանութեամբ ու հնազանդութեամբ ձգեն իրենց անձը, Քու կեանք տուող գարշապարներուդ տակ։

Բ. Ուրեմն ընդունէ՛ աղիողորմ հեծեծանքներու այս բանաստեղծութիւնը. և անարիւն զոհի՝ խօսքի այս նուէրը հոտաւէտ՛, ո՛վ երկինքի Թագաւորդ. ու օրհնելով մաքրէ՛ գիրը՝ այս ողբերգութեան գիրքին. և Քեզ մատուցուած հաճելի ծառայութիւններուն հետ դրէ՛ ու դրոշմէ զայն իբր արձան յաւիտենական։ Մշտնջենապէս թող կենայ Քու առջևդ, (այս գիրքը) ու ականջներուդ մէջ թող յիշատակուի միշտ. ընտրեալներուդ շրթունքներովը թող կրկնուի և թող խօսուի Քու հրեշտակներուդ բերանովը. թող տարածուի Քու Ա-

թուխդ առջեւ, և որբութեան որանիդ մէջ թող ընծայուի. Թող խնկուի անուանդ տաճարին մէջ և թող բուրէ փառքի սեղանիդ վրայ. Թող պահուի Քու գանձարանիդ մէջ ու թող ամբարուի Քու ստացուածքներուդ հետ։ Թող պատմուի ազգերու ականջին ի վար և թող քարոզուի որ ժողովուրդները լսեն. Թող նկարուի մտքերու դռներուն վրայ ու թող տպաւորուի զգայութեանց սեմերուն (շրթունք) մէջ. խոստովանելով թող պատմէ անօրէնութիւններս, որպէս թէ ես ողջ եղած ըլլամ, և թէպէտ մեռնիմ իբր մահկանացու, այս աղօթագիրքին յարատեւութեամբը կենդանի թող սեպուիմ(*)։ Քու կամքովդ, ո՛վ Տէր, անեղծ թող մնայ ասիկայ, զիս պատժապարտս միշտ անդադար դատող, անաչառ կշտամբող, անվախ յանդիմանող, աննխնայ մեղադրող, անողոքաբար պարսաւող. կծու ծաղրող, մարդասիրութենէ զուրկ մատնիչ, անաղարտելի տանջող, անկաշառ գլխատող. անխնամաբար յայտնող, առանց աղաչանքի կարեւորութիւն տալու՝ հրապարակող, աշ-

(*) Սուրբ Գրիգոր Նարեկացիի այս իղձը պսակուած է. չէ եղած ո և է գիրք մը որ Նարեկին չափ յարգուած և ընդհանրացած ըլլայ ժողովուրդին մէջ. Նոյն իսկ գրութենէն հազար տարի ետքն ալ։ Ծ. Թ.

խարհի լեցնող բողոքարկու։ (Այս գիրքը) առանց լռելու, անդադար թող խոստովանի մեղքերս մեծ փողով հռչակելով զանոնք։

Գ. Այս գիրքը՝ իմ ձայնովս թող պոռայ իմ տեղ, (իբր թէ ես ողջ ըլլայի), ծածկուածները թող տարածէ՛. գաղտնիքները թող հռչակէ. վերջաւորութեանը վրայ թող ողբա՛յ, մոռցուածները թող հնչեցնէ, աներեւոյթները թող յայտնէ, թող խօսի չինծու բարութիւններու վրայ. թող ՝քարոզէ խորունկ անիրաւութիւնները, թող պատմէ մեղքերս, չտեսնուածները թող մերկացնէ, պահուըտածներուն կերպարանքը թող ցուցնէ։ Ասով որսերը թող չօշափուին, գայթակղութիւնները թող գտնուին, անճառելիները թող հրատարակուին, թող քամուին մնացորդները չարիքներուն։ Եւ ցամքած ոսկորներու պահուած գանձարանին մէջ՝ ո՛վ Քրիստոս, թող թագաւորէ Քու ողորմութեանդ շնորհներուն կեանքը. որով՝ զարմանամասուտի եղանակին նորէն լուսաւորուելու և վերակենդանանալու պայծառ օրուան մէջ, հոգիս առնի Քու այս անմահ փրկութեան ցօղովդ և հոգեւոր բարիքներու բարձր ճիւղեր արձակեմ, որանք ընտու չցամքին, և դարձեալ կանանչնամ ու կրկին ծաղկիմ, Քու շունչովդ գրուած՝ գրքին առած յայտին համեմատ։ Եւ Քեզ որ միակ Փրկող ես ու Հօրդ իսկակից Հոգիիդ միասնական Տէրութեանդ

ու անճառելի Երրորդութեանդ՝ խորհրդական գովեստով փառք ու երկրպագութիւն թող մատուցուի միշտ. Ամէն։

Նոյն այն Հոգւոյն ողջերանելւոյ ճաշակողներուն ու ողջախառն հեծեծողներուն նո՛ր յաւելուածը։
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

### ՂԹ. ԽՕՍՔ

Ո՜վ Աստուած ու Տէր, կեանք և Ստեղծող, ողորմած, գթած, լոյս, համբերող, քէն չպահող, մարդասէր, ամէնուն գթացող, պարգև տուող, փրկող, օրհնուած, գովուած, բարձրանուած։ Ամուր դարան ես, վստահելի պատսպարան, անխարդախ բարի, տուանց խաւարի ճառագայթ, մեղքերը քաւող, վէրքերը առողջացնող, անկարելիներուն հնարք ստեղծող, ընմատչելիներու մօտեցընող, և յուսահատներու ճամբայ ցուցնող. անունդ Աստուծոյ Որդի խոստովանուած է։ Քեզ հետ զօրաւոր ու անհաւոր Հօրդ ալ նաև ամէնքը բռնող Հօգիիդ Որ կ'երկրպագուի Քեզ հետ, փառք ու գոհաբանութեան պաշտօն թող մատուցուի մինչեւ վերջը. Ամէն։

Նոյն այն գրողէն աղերսալից մաղթանքներուն ու ողջախոհ հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։

Սրտի խորերէն խօսք առ Աստուած

## Գ. ԽՕՍՔ

Ո՛վ բարեբանուած երկնաւոր Աստուած, մինակ ստեղծող և ամէնուն իշխող Տէր, մեծութիւնդ անեղ է և գթութիւնդ օրհնաբանուելիք. ողորմութիւնդ (արժանի՛) խոստովանուելու և բարերարութիւնդ երկրպագուելու. խնամակալութիւնդ պաշտելի է, մարդասիրութիւնդ տօնելի և պահպանութիւնդ խնկելի. անքննելի կերպով բարձր ես, ու միշտ մեզի մօտ՝ մեր կամքերը կատարելու։ Անկասկածելի ապաւէն, սրտերու մխիթարութիւն, վիշտեր փարատող, ցաւեր ապաքինող, վհատութիւններ սպառող, պարտքեր վերցնող, պէտքեր հայթայթող, (հոգիին) կիրքերը կարգաւորող, խօսքեր յարմարցնող, լեզուն սանձարկող, չնչառութիւնը արգիլող, հոգածը կեցնող, խորհուրդներ ամփոփող, կամքը կրթող, յուզումներ արձանացնող, մրրիկներ հանդարտեցնող ու ծփանքներ խաղաղեցնող ես որ կը բռնես ամէն կողմ վազող թեւը մտքիս ու իմաստութեամբ նուաճելով Քեզ կը դարձնես զայն։

Բ. Միշտ գոհաբանուած երախտաւոր ես, որ հպարտութենէ հեռու՝ հեզութեամբ համբերելով,

անընչանքով կը հանգչիր սուրբերու անձին մէջ՝ անճառելի հրաշքով։ Բոլոր ստեղծուածներուն Թագաւորը՝ որ կատարելապէս գթած ճանչցուած ես. սիրոյ ընթացքը ստեղծողն ու անոր առաջին առաջնորդն ես. կեանքի ճամբայ ես որ քաղցրութեամբ կ'առաջնորդես զիս երկնային լոյսին, երբ Քեզ դիմեմ մեծ վստահութիւն ներշնչող ձեռնտու մ'ես և չես ձգեր որ գետին իյնամ սայթաքած. յայտնի պատկեր ես որ ճշմարիտ դրաւականով՝ յայտնապէս երեւցար Քեզ աղաչողներու մտաւորներուն (անձերուն). հանգստաւէտ ապաւինարան ես որ դատապարտութեան վտանգին չես մատներ բնաւ։ Շնորհով պարգեւուած (հոգեւոր) ազատութիւն ես՝ որ լիապէս կուտաս, առանց փրկանքի փոխատրութեան. աննախանձելի առատութիւն ես, որ Քու փառաւորութեամբդ կը ճոխացնես այս անարգ նիւթը հողեղէն (մարդ)։ Անստուեր պայծառութիւն ես, որ զիս՝ Թշուառս անհեղ բարձրութեան ճառագայթներովը պարածածկելով՝ կրկին կը բարգաւաճեցնես։ Մեղքերու շատութիւնը քաւող ես, որ (հոգեւոր) փրկութենէ արտաքսուածս՝ առջի պայծառութեամբ նորոգելով՝ կրկին կը վայելչացնես։ Ամէն ձեռնհասութենէ բարձր և խիստ առաջացած անհնարներուն դիւրաւ հասնող հնարաւորութիւնն ես։ Խոստացուած (հոգեւոր) վայելքներուն վստահելի ճամ-

բանես ու երանութիւնը ըղձալի, ուր կենդանի շունչս լքանել (հոգիս աւանդելը) ախորժելի է, որովհետեւ Քեզ պիտի դառնամ ո՛վ Կենդանի։ Կամքդ անփոփոխ է և ամենազօրավելի զօրաւոր՝ քաւութիւն շնորհելու համար ինծ՝ գերիիս. կեանքի անախտալեալի դեղ ես, որ բոլորովին եղծուած մեռելներուն ալ սքանչելիքներ կը գործես։ Անկասկածելի ստեղծողն ես ամէնուն, որ կրակով այրածը, հովով քշուածը ու գազաններու ակռաներուն տակ փճացածը իրենց նոյն բնական կազմուածքովը ակնթարթի մը մէջ կը յարուցանես՝ անպական կերպով, անհամեմատելի համարձակութիւն՝ ուր աստուածային պարծանքով պարծենալն է արդարացի։

Գ. Ամէն կողմէ (հոգիս) կործանող վտանգներ նեղած են զիս, զուարթ քաղցրութեամբ՝ երկինքէն նայէ՛ ով Տէ՛ր, և տագնապալից հեծեծանքներուս պահուն, անդորր ու դիւրատար հանգիստ շնորհէ ինծ։ Եւ (հոգիիս վրայ) յարձակող սատակիչ գումարտակները՝ եթէ խորամանկ դեւերու գժնեայ գունդերն են՝ զօրեղ պատերազմիկներու սուր զէնքերովը սպառազինուած, եթէ Քեզ ատելի եղած գարշելի մեղքերու զանազան տեսակներն են, եթէ հրեծող, կորսնցնող (հոգեւոր) ցաւերու և ախտերու նշմարներ են, մերժէ՛, հանէ՛, կարէ՛, խափանէ՛, հալածէ՛ և հե-

ռաւոր սահմաններու մէջ տարագրէ զանոնք յաւէտ, որպէս զի անդառնալի կերպով բաժնուելով դարձեալ կորսուին. և խաչիդ նշանը կեանքի նպատակ (կամ նշաւակ, աչք յառելի կէտ) ու հաստատ մահարձան կառուցանելով կանգնէ (հադիրս) փրկութեան համար որ քեզ ապաւինած եմ։ Եւ ահաւորիդ անպարտելի, անխաբելի և անզիմադրելի օրհնեալին այս մեծութեան առջեւ սատանայական գաղտնածածուկ որոգայթները թող քակուին. մեքենաները թող կապուին. գայթակղութիւնները թող անհետանան. լարուած թակարդները թող խայտառակուին. որսացողին երեւոյթները թող յայտնուին. նենգողին ծուղակները թող գտնուին. վարմին ծածկոցները թող վերնան. որոմի բոյսերը թող չորնան. բռնաւորին (սատանայ) չարախօսութիւններր թող նզովուին. մեռցնելու համար որսացողին (սադայէլ) խաբէական լարը թող կտրուի. խաբողին քսութիւնները թող քարոտուին. զրպարտողին զէնքերը թող պակսին. մահ բերողին (սատանայ) սուրերը թող իյնան. դաւաճանողին պատրաստութիւնները թող ընկղմին. տագնապեցնողին կապերը թող լուծուին։

Կեղծաւորին սուտ կերպարանքը թող յայտնուի, խիստ յարձակող խոյաները (մեղք) թող սատկին. ուտիճ ցեցերու կցորդութիւնը թող

ցրուի․ աւազակներու (մեղք) հաւաքոյթները թող բաժնուին․ բորբոքողներու (սատանայ) հոյլերը թող քայքայուին․ (Աստուծոյ դէմ) ապստամբողներու (սադայէլ) ամրոցները թող քանդուին․ յանդըգնողներու փոթորիկները թող արգիլուին․ փորձողին անձրեւները թող փարատին․ աղանդաւորին եղեամը թող ցամքի ու հալի։ Գոռոզին եղջիւրը թող խորտակուի․ (սատանային) դրօշին կերպարանքը բարձրացնող ձողը թող մանրուի․ հպարտացածներուն ամբարտաւանութիւններր թող փշրուին․ կռուըտողներուն (դեւ) յարձակումները ե՛տ թող մղուին․ Բելիարի թէ՛ անմարմին եւ թէ՛ մարմնաւոր զօրքերուն միաբանութիւնը թող քակտուի․ զիրար կոխկռտելով ցիր ու ցան թող փախչին միեւնոյն ճամբէն մեծ շփոթութեամբ․ իրենք թող իյնան այն գուբը զոր ինձ փորեցին։ Զանձրացնողին (սատանայ) ձմեռները՝ (ամառուան) թող փոխուին․ մինչա աշխատող աւազակին (սատանին ինձ հետ ունեցած) կցորդութեան կապը թող կտրուի․ մտքիս կեդրոնին (ճակատ) համար զըզուելի թող սեպուի՝ համբոյրը չողոքորթին․ ընդմիջուելով թող հեռացուին նեաձգութիւնները նեղողին․ թող մինչա երերայ՝ նաւը խարդախողին, իրենց արմատներէն թող հանուին խածնողին ակռաները։

Դ․ Օրհնուած Կենաց Փայտին համար՝ որուն

վրայ պրկուեցար, ո՛վ Աստուած որ ձեռքով չես բռնուիր. բևեռներուն յիշատակովը՝ որոնցմով մահուան գործիքին գամուեցար, ով երկինքն ու երկիրը ստեղծող. Տէրունական արիւնովդ՝ որով մեծ վիշապը (սատանան) կարթով որսացիր ու բռնեցիր. դառնութիւնովը լեղիին, զոր խմելով՝ կորանցնողին տուած դեղը (թոյնը) դուրս թափեցիր. ըղձալի ճառերուն պատմութիւնովը՝ Քու կրած սարսափելի չարչարանքներուդ՝ որով հակառակողին լրբութիւնը կարկեցնելով ամչցուցիր զայն. Քու անթարգմանելի և բոլորովին խելքէ մաքէ վեր անունովդ որմէ ամբողջ արարածները — թէ երեւցածներն ու թէ չերեւցածները — սաստիկ սոսկումով, սարսափելով կը դողան ու կը դատապարտուին, շնորհներու այս ամէն պարգևներովդ Թող պաշտպանուի, բժշկուի ու քաւութիւն ստանայ անձը խոստովանողիս. (Այս պարգևներուդ շնորհիւ) Թող սատկի դառնաթոյն օձը, նաև ան (սատանան) որ օձին միջոցով գործեց արեղերադաւ չարութիւնը. Նոյն ինքը (սատանան) անբժշկելի հարուածներու տանջանքին Թող մատնուի տոով, Թող կապուի և ձերբակալուի։ Ստեղծողիդ ողորմութիւնը ինծ հետ Թող ըլլայ և իմ հոգիիս շունչն ալ Քեզ հետ Թող կապուի միանայ անբաժանելի կապով։

Ե. Ու ո՛վ որ կարդաս աղօթքի, խնդրուած-

քի, մագթանքի, գոչումի այս աղերսալի ձայնը (աղօթագիրքը) ծե՛ր թէ աղայ, կո՛յս թէ երիտասարդ, և եթէ աղախիններէն մէկը Աստուածախրօրար պաղատի, ամէնքն ալ հաւասար անաչառութեամբ երանութեան մաս թող ստանան քեզմէ, (հոգեւոր) պարտքերէ թող ազատին, թող մաքրուին, նորոգուին ու անարատանալով, վերահաստատուին, անփոփոխ կերպով թո՛ղ նկարեն դարձեալ Քու կերպարանքդ իրենց վրայ։ Ահա ո՛վ հնարք գտնող, զօրեղ, անպատմելի, մաքէ ու հասկացողութենէ վեր (Աստուած), իբր Տէ՛ր նայէ հոս՝ ա,ս հեծեծանքներուս ու կողկողագին հառաչանքներուս որ ամէնուն բերնէն ընծայուելով կը մատուցուի Քեզ, Քու երկնաւոր ու բարերար հօրդ և փառակից ու կենդանութիւն տուող Սուրբ Հոգիիդ համար, Սուրբ Աստուածայնիդ բարեխօսութեամբը և ամէն սուրբերուն խնդրուածքներովը։ Որովհետեւ Դո՛ւն ստեղծեցիր ամէնքը ու ամէնքն ալ Քեզմէ եղան. և Դո՛ւն կը տիրես ամէնուն վրայ և ամէնէն փառք կը մատուցուի Քեզ որ Մէկդ ես անժամանակ Երրորդութեանդ խկութենէն, զուգակցապէս փառաւորուելով անբաւ կերպով և միջեւ վերջը. ամէն։



Նոյն այն Հոգւոյն ախորժալից ծաղկանքներուն
ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։
Սրտէ խորերէն խօսք ու Աստուած։

## ՂԱ. ԽՕՍՔ

Ո՛վ Տէր, գթութիւններու տէրն ու ողորմութիւններու Աստուածը, մեծութեան անուն, ահաւորութեան ձայն, սոսկալութեան կոչում, մեր հաստատութենէն վեր լոյս, դողացնող խօսք, հիացումի հնչում և քաղցրութեամբ ամէնուն ողորմող բարերարութեան յուսադրութիւնն ես։ Որմէ վախնալով կը դողան բոլոր արարածները. Քու (մեղաւորներուն ուղղած) սպառնալիքներուդ վախէն, սերովբէները սոսկալով կը սուսանին (իրենց թեւերը կը բանան). քերովբէները կը կծկըռին. լուսադէմներու (հրեշտակ) խումբերը կը սմքին. բոլոր երկնային պետութիւնները հիացումով կը վախնան։ Իսկ մէկ բերկրալից ապաշխարութեան մը (մեղաւորի մը դարձին) համար անոնք (երկնայինները) մեծապէս դողալով կ'ուրախանան. դեւերը կը զարհուրին. չարին (սատանայ) գունդը ետ կ'ընկրկի. խաւարասէր հոգիները կը պակսին. օդային հրեշտակները անդունդին կը մտնուին։ Խաչին նշանովը կը կապուին յարձակումները՝ դիմադրողին. սատանային

բանտի մը մէջ կը պահուին քինախնդիր Ամաղէկացիները (Ելից ԺԷ. 14). անխզելի հանգոյցով կը պաշարուին հակառակորդին (սատանայ) խումբերը. մահացու զէնքերով զինուած գունդերը (Բելիարին զօրքը) անազատելի զնդանին մէջ կ'արգիլուին. դեւերու գումարտակները ահեղ հրամանիդ մետաղովը կը պրկուին. ընդդիմախօսներու դասակարգը պապանձելով կը կարկի. կորուստի հիւծումով կը կապուին անդրեւոյթներու (սատանին) ժողովականները. անքակելի շղթաներով կը կաշկանդուին սուտ քրիստոսի առաքեալները։

Բ. Ահա գիշերուան այս ժամուն՝ ձեռքիս մատուըներով Քեզ կը կարկառեմ տեառնագրութիւնը նշանիդ (երեսըս կը խաչակնքեմ), ո՛վ կատարեալ տեսականութիւն որ տգիտութեան խաւարովը չես մթննար, այլ մանաւանդ անմատչելի լոյսի մէջ հանգչելով կը բնակիս։ Քու զօրաւոր թեւերուդ պահպանութեանը տակ ընդունէ զիս որ վտանգուած աղաչող և գոհաբանող մ'եմ Քեզ. փրկէ՛ զիս օտարոտի պղտորութիւններու ցնորքէն, մաքրէ՛ նկատումները սրտիս որ հայելին է զգայարանքներուս. կենաց Փայտովդ զօրացուր զիս տխուր երազներու դէմ. Քու արիւնդ սրսկէ՛ բնակարանիս շրջակաները. ելլելիք ու մտնելիք ճամբաս գծագրէ՛ կեանք տուող

կողէդ կաթած կաթիլովը. խաչիդ ձեւագրութիւնը պահապան թ'ող ըլլայ բնակարանիս տանիքին. երբ աչքս վեր վերցնեմ, Քու փրկական գործերուդ խորհուրդը թող դէմս գայ. տանս սեմին վրայ՝ Քու չարչարանքի գործիքդ թո'ղ հաստատուի. յոյսիս հաւատքը օրհնութեան ծառիդ վրայէն թող կախուի։ Աստուած արգիլէ' ո'վ Տէր հոգիները տառապեցնողը (սատանայ). լոյսին պաշտպանը անարգել թող մանէ. և ցաւերուս սաստիկ ծանրութեան հետ պարտքիս բեռերն ալ թեթեւցո'ւր. մաքիս ամփոփման այս լուսարանին՝ անկողինի մահիճիս մէջ յիշելով յուսահատութիւններու դառն պտուղները, չարաչար անօրէնութիւններուս անթիւ մանրամասնութիւնները կը խոստովանիմ Քեզ՝ որ ամէն բան գիտես։

Գ. Հանգչեցուր զիս որ յոգնած եմ (աշխարհային) խիստ ծփացող աշխատութիւններէ. վերցո'ւր տարակոյսի տագնապները որոնք հոգիս կը կորսնցնեն, դառնութիւնը՝ վիշտերուն. հեծեծանքը՝ պիտոյքին. նեղութիւնը՝ թշուառութիւններուն. հառաչումները խորտակումներուն. թուլութիւնները՝ ապշութիւններուն. թմրութիւնները՝ յանկարծական վախէ վեր ցատկելներուն. գինովութիւնները յիմարութիւններուն. կարճամտութիւնը՝ խելագարութիւններուն և սիրոյ պաղելը՝ ցանկական ախտին կրակոտ ջերմութեան

հետ։ Բարեգործ ոգիդ շնորհիւ՝ Նորոգող ձեռ-քովդ, կեանք բաշխող մատովդ, միշտ փայլող փառքովդ, յաւիտենական անեղծութեամբդ, զուարթ երեսներովդ, պաշտելի իսկութեամբը էիդ և երկրպագուելիք բարձրութեամբդ օժան-դակ եղիր բազմատխուր տարտամութեանը տկա-րութեանս։ Կարէ՛ չարաչար հեծեծանքը՝ կար-օրնեցնող խեղդումին, վերցո՛ւր նոր գիւտը չա-րին, հին խարդախութիւնը՝ քսուին, օտար աղ-դեցութիւնները՝ մահուան պատուհասողին (սատա-նայ)․ անյարմար երեւոյթները՝ ամէնօրեայ ե-ղեռնագործին․ աչքի պատրանքները՝ դժնդակ դեւին․ գրգռիչ մեղկ շունչը՝ իրեն քաշող կա-խարդին․ դադարումի այս հանգստարանին մէջ (անկողին), որ մեռնելու կը նմանի, պահէ՛ անե-րեւոյթ (պարապ) մտածումներէ, մտաւոր սխա-լութիւններէ, մեծագոյն գայթակղութիւններէ, փոքրագոյն սահումներէ, խաբեբայ չար ձանձրու-թիւններէ։ Այս յանցաւոր ծառայիդ զգացումնե-րէն հեռացո՛ւր, անդէպ մտածութիւնները, պար-տաւելի կիրքերը, նախատելի վարքերը, ամչնա-լիք դէպքերը, սխալական հետքերը, ծաղրելի պատրանքները, արհամարհելի խորհուրդները, քամահրելի աւելորդաբանութիւնները։ Այս Քեզ ապաւինողը՝ հոգւով անախտ ու մարմնով անա-ղարտ պահէ, (պաշտպանէ) սատանայաշունչ հո-

վերէն, հարուածներու բռնութենէն, փոթորիկներու բախումէն, մրրիկներու սաստումէն ու գազաններու յարձակումէն։ Երբ աչքս փակեմ, որպէս տեսարանը թող չմթննայ, այլ թող զուարթանայ, պայծառանայ, վայելչանայ ու չմարելիք լուսաւորութեամբ վառելով Քեզ հետ թող փայլի, ո՛վ Տէր Յիսուս Քրիստոս։ Քու խօսքովդ մաքրէ՛ պատըսպարանը հիւրիս, խորամանկութիւններէ, զբաղումներէ, Քեզ ատելի եղած յիշատակներէ, երկնայինին դէմ կռուող մտածումներէ, քրէական յիմարութիւններէ, տիրանենգ անշնորհութիւններէ, Աստուծոյ դէմ հերձուածելէ։

Վերակացու եղիր ինձ, երկնայիններուդ գունդովը՝ պետութիւններով ու իշխանութիւններով, սուրբ Աստուածութեանդ մաքուր մատակարարն եղող՝ անյաղթելի զօրավարներով. առաքեալները՝ (վերակացու թող ըլլան ինձ) Աւետիսի Աւետարանով, մարգարէները՝ կատարանով, երջանիկներու մաղթանքները, զոր իրենց կեանքին վերջաւորութեանը պահուն ընծայեցին։ Որոնցմով՝ եթէ վախով նիրհեմ ու Քու ուզածիդ պէս արրամիմ, (Բ. Կորնթ. Է. 9, 10), կրկնապատիկ ուրախութեամբ արթննամ Քու շնորհիւդ. եթէ վհատութեամբ քնանամ դարձեալ արթննամ հոգեւոր բերկրանքով. եթէ մեղքով ընկողմանիմ, դարձեալ ոտքի կանգնիմ անաղտ մաքրութեամբ ու խղճի խայթէ զերծ։

Դ. Սուրբ Աստուածածնիդ և բոլոր արդարնե-
րուն ու ընտրեալ (հին) նահապետներուն բարեխօ-
սութեամբը, խնդրուածքներուս սաստկահառաչ
ձայնին ու հեծեծանքները լսէ, ո՛վ միակ բազմա-
գութ: Եւ Քեզ ամէնէն փառք կը վերընծայուի
մինչեւ վերջը, իմ՝ և սուրբ ու անմահ զուար-
թուններու (հրեշտակ) դասերուն ձայնովը, գովե-
լու համար Քու Հայրդ որ մեր Աստուածն է և
սուրբ Հոգիդ որ ամէնքը ստեղծօղն ու նորոգօղն
է. Ամէն:

## ՂԲ. ԽՕՍՔ

Բարեբախտութեան երջանիկ ծայրէն՝ խորհրդաւոր —
կոչնակին վրայ բացատրութեան յետոյ գրուած աղօթք

ԿԸ ԳՈՉԱՆԱՄ Քեզմէ, ո՛վ Բարեգութ,
միակ մարդասէր, երկինքն ու երկիրը ստեղծող,
կենդանի Աստուծոյ որդին, Քու օրհնեալ յիշա-
տակին ըղձանքովը արթնցանք, երբ լսեցինք
հնչումը հրաւէրի փայտիդ: Որով (կոչնակով) զար-
կիր մեր լսողութեան գործարանին և սթափե-
ցանք, կանգնեցանք, ոտքի ելանք մեր մեռելա-
կերպ թմրութենէն. ուստի սփոփարար խօսքե-
րով հրաւէր ընդունողի պէս՝ քաշուեցանք եկանք՝
օրհնաբանութեան պաշտամունքի այս ժամուն՝

հաստատուցումի այս բեմին առջեւ՝ ուրախութեամբ դէմդ ելլելու համար։

Թ. Ահա փա՛ռք Քեզ, ո՛վ անսահմանելի անուն ու անբովանդակելի զօրութիւն, որ այսքան հնարքներով հոգ տարիր փրկութեանս. գոհաբանուած անեղծ էութիւն, որ այս աշխարհի վրայ հրաշքով կերպարանեցիր նմանութիւնը գալիք աշխարհին. փայտէ վայելուչ կահին հանդարտ գործիքովը սաստիկ գոռացիր մեր անկանգնելի խոր քունին մէջ։ Որպէս թէ՝ խրատիդ յանդիմանութիւնը խառնեցիր մեր դանդաղ ծուլութեան. ճայթումին ուժգնութիւնը՝ միացուցիր հայրական ձեզ սիրոյդ. երկու միջնորդներու (կոչնակը զարնող փայտէ երկու կռաններու) ընդոստ զարնուածքովը՝ մարդասիրապէս քաղցրութիւն տեղացուցիր. ո՛չ մեղմ խօսքերու անուշութեամբը (օրօր ըսելով) խոր քունի մէջ թաղեցիր ու ո՛չ ալ անխնամաբար ասկուծով (արթնցնելով) տառապած հոգիս զարհուրեցուցիր։ Ծնրադրական երկրպագութիւն (թող մատուցուի) բոլորը ստեղծողիդ, որ հիմակուընէ բացայայտօրէն, ցուցուցիր կատարեալ օրինակը ահեղ ձայնին՝ յարութեան մեծ օրուան. կենդանացուցիր զմեզ թմրութենէն որ դժոխական (գերեզմանային) լռութեան կը նմանի. փնտռելու ելլելով՝ զիս պակասամիտս՝ ուրախութեան դէնիիդ հրաւիրեցիր. անարատ

հարսը (եկեղեցին)՝ Փեսայիդ սիրոյն պատրաստող կարգեցիր ասիկայ (կօշնակը). անսանձ վիթխարին այս փոքր խթանովը վախցուցիր. սատամբակին ուսին վրայ՝ իբր նուաճումի ծանր լուծ՝ այս առարկան դրիր. չարախօսին կզակներուն իբր զսպող օղակ՝ ասիկայ անցուցիր։ Ցաւէտ փառաւորուած է անբաւ բարձրութիւնդ, ո՛վ մեծ Աստուած, որ փայտին (դրախտի արգիլեալ ծառին) մեղքը՝ կեանքի շնորհիդ ազատութեանը փոխարկեցիր. ցնդած յիմարներս կրկին իմաստնացուցիր հոգեւոր հանճարովդ. կըռ կըռ զարնելով՝ (կօշնակը) առանց մոռացութեան միշտ յիշեցուցիր անբժշկելիութիւնը օձին հարուածին. Երրորդութիւնդ նշանակելու համար, վերջաւորութեանը պահուն եւս երեք անգամ զարնելով կօշնակը՝ ցուցուցիր թէ՝ ինձ վնաս հասցնողը (սատանան) երեք կապերով կաշկանդուած է։

Գ. Խունկերու բուրումով ներբողական գովեստ վեր կը ղրկեմ Քեզ, ո՛վ ամէնքը խնամող, որ բազմաստուածութեան սուտ ու խաբեպատիր կուռքերէն աւելի յաճախ կիրարկուող գործիքով (կօշնակ) որոշեցիր մեղապարտ անձս՝ Քեզ երկրպագելու համար։ Այս նուիրական, խրոխտ ու անորկու փայտով՝ ճշմարտութիւնը քարոզեցիր. այս պատշաճ առիթով (կօշնակ) մեծացուցիր պատիւը նոր աւետարանիդ քարոզութեան։ Ասիկայ (կօշ-

նակը) նոյն ինքն գոչումի բարձր աղաղակն է Քաւ-
ապաւաղինութեանդ, ո՛վ երկրի պետութեանց
(հոգեւոր) Թագաւորը Տէր Աստուած. (ահիկայ)
կռուի հանդէսից աւարտելուն ուրախութեան
նշանն է, ո՛վ Յիսուս, որուն մէջ հոգեղէն ան-
նիւթ փառաւորը կապուելով բռնուեցաւ. այս
տաշուած փայտի կտորը՝ անհնօրուայ հարուած մ՚է
հպարտացած չարագործին գլխուն գագաթին։ Սիօ-
նի զաւկըները՝ առով (կոչնակ) կը գումարուին՝
խաւարային աշխարհակալին (սատանայ) դէմ պա-
տերազմելու. այս կոփուած ու իւղով օծուած
տախտակին հնչումը, Աստուծմէ աւանդուած ու
հեռաւոր ժամանակներէ ի վեր սովորութեան
կարգ անցած տօն մ'է որ ո՛չ կը հիննայ, ո՛չ ալ
կը խափանի. հեռուներէն ըրած ծանուցումովը՝
ապագայ հատուցումին ժամանակը կը նշանակէ.
ճիշդ նմանն ու տեսակակիցն է Աստուածային
դրախտին մէջ գտնուած Կենաց Փայտին, փութ-
կոտ ընթացքով ու օրհնութեան յարկը (եկեղեցի)
հաւաքուելու բարի կոչնակ մ'է. գիտութեան
ծառին տեսական պատկերն է բարիին ու չարին
ընտրութիւնը վճռող. խաչիդ նշանը՝ Սուրբ Հո-
գիովդ մեր երեսը տեառնագրել (խաչակնքելու)
մեծ յուշարար մ'է. աւետաբեր մ'է որ կանուխէն
կը զեկուցանէ (երկնաւոր) սուրբ Թագաւորիդ փա-
ռաց գալուստը՝ պահուած դշխոյին (եկեղեցի) քով.

քաջալերական յորդոր մ'է՝ մաքրակրօններու խրախճանութեան (պաշտամունք կատարելուն). չքեղաշուք քօղով ընծայուած և շատ (հոգեւոր) զաւակներ ծնող ու (Քրիստոսի) Թագուհի կոչուած կայսերուն՝ հոգեւոր համբոյրով Քրիստոսի միանալուն անմեղ օրրանն է (կոչնակը). ինչպէս նաև պատրաստողը անոնց ներքին արդուզարդին, որուն վայելչութիւնը հոգիին վրայ կը փայլի. նմանութիւնն է Սինա լերան պատգամին, որ Տէրունական տեղէն դուրս կը զրկուէր. անմեղ և անարատ զաւակներու մայր եղող միշտ պանծալի օրիորդը (եկեղեցին) առով կը զարդարուէր (կոչնակը զարնուելուն պէս ջահերը կը վառէր)։

Դ. Երիքովինէն աւելի գերազանց՝ եղջիւրէ փողն է այն ալ (կոչնակը) որով հարթեցի'ր տապալեցիր բռնութիւնը Բելիարի. այս փայտէ պարսատիկով (տաբան) քարեր նետեցիր Գողիաթի դէմ. նիզակը նորէն կանգնեցիր իբր անհարկու վկայ սատանային կործանման. (Յեսու Ը. 18) խորապէս բուսած մեղքերուս արմատը՝ այս մեքենայով դուրս հանեցիր. կատարել մոռցած պարտքերս այս երախտիքով (կոչնակ) ինձ հետ կապեցիր։ Զօր (կոչնակը) եթէ Աստուածային Բանին գալուստը հռչակելու համար՝ անոր առջեւէն եկած ուրիշ ձայն մը (Յովհաննէս Մկրտիչ) անուանեմ՝ չեմ սխալիր, մանաւանդ թէ չիտակն ըսած կ'ըլլամ.

հոգի կրող այս նիւթեղէն ամանով՝ (կոչնակ) Յիսուսի գործերուդ մեծութիւնը շատ աւելի կը պատմուի ու կը հռչակուի. այս անպատապար (վրան բաց) ապուխնարանին ձեռքով՝ Քեզմէ դրուած ու երկինքէն պարգեւուած բիւրաւոր զարմանալի օգնութիւններ ընձեռեցիր երկրային-ներուն։

Ե. Անքննելի անուանդ խոստովանուած է ու որքանութեան խորհրդովը օրհնուած աննկատելի պատկերն է լոյսի, ո՛վ բարի խնամք տանող մարդասէր. որ կրկին անգամ շնորհուած այս նշանով (խաչը առաջին շնորհն է, կոչնակը երկրորդ) դէպի հեռուները երկարող ու ձայն տուող նետեր արձակեցիր, որոնք օդին մէջ կը ճամբորդեն, վայելչօրէն կը թռչին և կենդանի հոգի կը կրեն իրենց վրայ, որոնցմով անսխալ նշանառութեամբ զարկիր նպատակակէտը խաւարային աղեղնաւոր գազանին (սատանին չար դիտումները) ու խապառ կործանելով հա ընկճեցիր զայն։ Բերդի վրայէն պատերազմողներու անառիկ պատնէշի մը պէս՝ չքանդուելու չափ ամուր կանգնեցիր (կոչնակը) որուն վրայ զարնուած փայտի հարուածները՝ հակառակ Թշնամիին (սատանային կամքին) իբր կամք կատարող հրեշտակ վեր գրկեցիր։ Մեծիդ հրամանին խօսքով՝ շնորհիդ օծութեան իւղը արիւնիդ խառնելով՝ իբր փրկանակը խաչիդ՝ յաւա-

նեցիր ու սրեցիր՝ մոլի գոռոզը խթանող այս եղ-
ջիւրը։ Երկնայիններուն ձայնէն աւելի՝ տօսր (կոչ-
նակին) ձայնին մեծ հնչումէն քանդուեցաւ, վեր-
ցուեցաւ տգեղ, խիստ վախկոտ և կարճամիտ
վատին կամքին պարիսպին դուռը՝ հրէական
սրտին հասկացողութեան և ստուերական տան
(հին օրէնքին) կործանումին հետ։

Զ. Փառաբանութիւն կը վերընծայեմ, Քեզ,
ո՛վ անմահ Թագաւոր. ինչ որ ըրիր ու հզօր ա-
ջովդ հաստատեցի՛ր, կ՚աղաչեմ Քեզ, կրկին
գործէ զայն։ Անոր շնորհով մեզմէ հեռացնելով
անցուցիր՝ քսուին դժնդակ խորամանկութեան
վտանգը. մեղքի տաժանելի ջերմը. խափողին
փչած դառն հովը. մահացու արկածներու երկիւ-
ղալի պատճառը, օդին ցնդումէն եկած տխրեցնող
հիւանները. թալկացնող՝ դիւային հեծեծանքները։
Նշանիդ Թեւերով (խաչ) օժանդակելով՝ Քեզմով
զինուած այս հեծանով կրկին ցրո՛ւէ կրակ տե-
ղացնող ամպերը. կարկուտ բերող որոտումները.
բազմոտանի վիշապին՝ կեղծաւորութեան մութ
կրակը արծարծելով գոյացուցած ցաւագին ցոլ-
քերը. սասկեցնող սուրը. դիմագրելիք պատե-
րազմը (մեղքերու դէմ). մեր վրայ յարձակող
վայրենի խորհուրդներն ու խաղցող դեւերը, ա-
րանք այս փոքրիկ առարկայէն (կոչնակ) սաստ-
կապէս դողալով կը զարհուրին, քաջավարժ ծա-

նօթութեամբ յայտնապէս գիտնալով թէ, այս տեսակ ձայնով դատաստանի կ'ելլէ Տէրը։ Եւ բոլոր աստուածարեալ կռուողները՝ (եկեղեցականները) խիստ քաջութեամբ խրախուսուելով՝ հոգիին սուրովը պինդ կերպով կը զինուին՝ այս յուշարարին (կոչնակին ազդարարած) կանոնին ձեւին համեմատ որ երջանկաբար նահատակուելու (սատանին դէմ կռուելու) օրինաւոր ասպարէզին (եկեղեցիին) մէջ, անկերպագրելի (ոչ-խօսք) գոչումով ընդհանուր (քրիստոնեայ) ազգերուն կը քարոզէ՝ կրակով փորձի ենթարկուելու ընտրութիւնը (վերջին դատաստանը)։

Է. Անոր զարնուեցաւ մեծ փողը. ասո՛վ աստուած օրհնութիւնով համբարձաւ. ասո՛վ պատմուեցաւ բոլոր աշխարհի. բաժնուած հեթանոսներուն ականջին հնչեց. Եսայիին խօսքին համեմատ «Մեծին պահապաններուն ձայնը զօրացաւ և առ հասարակ նոյն խօսքին վրայ խնդանք»։ Ասոր (կոչնակին) ձեռքով՝ ջուրի պէս ցնդեցան խաչին թշնամիները (սատանայ). անպատուեցաւ ճաշակը առաջին փայտին պտուղին (գիտութեան ծառին). այս խորհրդաւոր նիւթը մեծարուեցաւ նէանէի (փայտ) անուանուելով. անարգուեցաւ երկաթը որ (հոգեւոր) պատերազմի համար պէտք չէ այլեւս. (Զաքարիա ԺԴ. 20) Մեծին երիվարին սանձին վրայ՝ երբ ՏԻՐՈՋ ՍՐԲՈՒԹԻՒՆ այս կեանքի

ձայն տուող փայտը նշանագրել յարմար սեպուեցաւ, երկնային հովիւին այս օծեալ գաւազանով՝ մարդոց ձեռքի իշխանութեան սուրը տեղը գրուեցաւ (Դաւիթին հովուական գաւազանը յաղթեց Գողիաթի զէնքերը). տաճարին քարին վրայ գործածուորի մուրճ չխաղաց, իսկ Աստուծմէ չինուած խորաններուն վրայ՝ այս նուիրուած փայտը՝ խաչին թեւերուն հետ սլացած կ'իշխէ ու կը հնչէ։ Ո՛չ թէ ամսագլուխներուն, կամ եօթն անգամ եօթներորդ տարիներու (յիսուներորդ) յաբելեանին անկիւնի մը գլուխը սահմանափակուած կը փողէ, այլ տիեզերքի ծայրերը ու աշխարհի չորս կողմը, մեծ ծովերու ջուրին ծոցը ու անոնց կղզիներուն մէջ՝ յաճախ սաստկութեամբ ու համարձակ ճայթիւնով՝ Աստուածային ձայնի մը պէս հնչելով կ'աւետարանէ։ Երբ այս փայտը երեւցաւ՝ սատկեցնողին (սատանայ) սուրերը կոտրեցան և իրենց անօգտակար ձեռքերէն փոխուելով խոփերու ու մանգաղներու տեղ կը ծառայեն մեզ։

Ը. (Կոչնակին ձայնը) ո՛չ քարանձաւներու խորերը հնչեցուած ձայներու արձագանգին պէս սաստկութեամբ կը հանի, և ոչ ալ օտար իմաստակի մը (Հոմերոն) ըսածին պէս դժնդակ կերպով օդը կը վիրաւորէ. ո՛չ անախորժ սրութեամբ ականջ կը մտնէ, և ո՛չ ալ ուղեղին ամանը (գլուխ) գզուեցնելով գէշ կերպով կը թնդացնէ. ո՛չ ա-

կորները խրտչեցնելով մարմինը կը փշաքաղէ (կրճ կրճ ընելով), ո՛չ ալ մազերը չուարեցնելով այլայլութիւն կը պատճառէ. ո՛չ պղնձէ զանգակի պէս կ'երերացնէ, ո՛չ ալ ոալայատակի զարնուած քարի նման անախորժ զարնուածք ունի։ Մեր նոր սիոնին (եկեղեցիին) անխորտակելի պատսպարանն է (կոչնակը). ատիկայ արարիչէն աւանդուած կազմածներուն՝ գլխաւոր ապաններէն մէկն է. զոր քրիստոնեայ եկեղեցականները, Ղեւտացիներուն պէս՝ զգուշաւորապէս վերցնելով կը խնամենք. օրինակն է հրեշտակին ձայնին, զոր Առաքողին խօսքը հաւու ձայն ըսելով. այս նմանութեամբ զայն (կոչնակը) հասկցուց. Աւետարանը նուագելու՝ շնորհի նոր գործիքն է. սաղմոսարանի օրհնաբանութեան Եղիսէի վրայ ըրած ազդեցութենէն աւելի, Աստուծոյ Հոգին արթնցնողն է մեր մէջ. Քաղցրանուագ ողբերգութիւններու համար աղիքէ լարերով պատրաստուած ջութակներուն և բանաստեղծական խօսքերով ունկնդիրներուն բարքերը երգող բամբիռին և ուրիշ նուագարաններուն ամէնուն առջեւէն գացող պարագլուխն է (կոչնակը). Նոր օրէնք մը ուրիշ ձեւով՝ որ հինին տեղ ընդունուած է մեզմէ, և ո՛չ հեթանոսներու նուագարանին նման պարապ տեղը՝ (անխորհուրդ) և ո՛չ ալ հրէական թանձրամտութեան համեմատ կը հնչէ, զոր մարգարէն տիրոջ կողմէ արգիլեց.

«Հեռացո՛ւր ինձմէ»․ այլ տէրը մաքուր խնամք տանելով կրկին սիրեց ու պատուեց ասիկայ որ ան կը սփռէ դեւերուն վրայ ու կ'արգիլէ ամէն չար պատահարները։

Թ. Արդ՝ օրհնաբանութեամբ ու գովեստով յարգելով այս սուրբ պարգեւը՝ ընդունեցի (կամ ըստ ոմանց ընդունէ՛) զայն, զիս պահպանելու և Քեզ փառք տալու, իմ գոհութիւնս յայտնելու և քեզ պաշտօն մատուցանելու համար որ Արարչական փառաւորութեանդ բարձր արուեստին անխարդախ արտադրութիւնն է։ Աստուածմէ ստեղծուած այդ ձայնը թող մանէ մարմնոյս խաղերուն կապին մէջ՝ հոգիէս հանելու համար դեւերուն խարկանքները, ներս մտած անէծքներն ու մեղքերու ապականութիւնները։ Այս յատկանշական առարկան (կոչնակը) լուսաւոր քնար մը թող ըլլայ, անջնջելի նամակ մը՝ անխափան կերպով ջատագովելու համար Տէրունական անօրէնութիւններդ։ Ահա, ո՛վ Բարեգութ, տուող պարգեւէ՛, կ'աղաչե՛մ, ո՛վ զօրաւոր, կրկին պահպանութիւն շնորհէ մեզ երեւցող ու չերեւցող հակառակորդներէ (դեւեր)։ Ճահեկան անձրեւներ ու քաղցր օդեր ընձեռէ մեզ, ո՛վ կատարելապէս լեցուն ձեռք (ունեցող), որ կը բանաս ու պատրաստաբար կ'երկնցնես զայն՝ բազմատեսակ բարիքներ բաշխելով։ Քու այս հրամայական խօս-

քովդ. Թող պակսին՝ տապախառն հովը, ցաւ բերող քամին, չար աւազակներու (սատանայ) խարդախ յարձակումները. տուր Թող խափանին դժնդակ մատնիչին (սատանայ) գործերուն (մեր հոգիին դէմ մղած) բոլոր կռիւները. այս օծուած փայտին երջանիկ ձայնէն՝ Թող հալին, հատնին ու մեռնին որդն ու ցեցը և ատոնց բոլոր նմանները որ մեր մեղքերէն զօրանալով՝ մեզի հետ կը պատերազմին։ Ո՛վ ամէնուն ստեղծողն ու արարածներուն տէրը, տուր արմատացուր մեր մէջ՝ Քու մեծ պաշտպանութիւնդ ստանալու յոյսին երանութեան ծառը։ Այս Սաբեկայ ծառին ստերուն ծայրէն կախուած է Ներկայ (հոգիներու) փրըկութեան նոր ու սուրբ աւանդը, որ Քեզմով ծաղկած է, ո՛վ Քրիստոս, անմահական կեանքի պտուղը տալու համար։

Այս փառաւորուած փայտին արձակած բարեզեկոյց ձայնէն՝ խոր մթութեան հեռաւոր ծայրերը Թող փախչին այլ և այլ ձեռնածութեամբ խարդախող, խաբեբայ, սուրին ու հակառակող դեւերը։ Ասով Թող հեռանան մեր հերկուած պտղաբեր արտերուն սահմանէն ու Քու մշակած կենդանի երկիրէդ (մարդ)՝ փճացնող վէրքերն ու կոկծեցնողներու (կենդանիներու) խումբերը։ Զարին հնարքներովը մեր վրայ երևցած յաւելուածական կրկնապատիկ ազդեցութիւններն (սապառող, հրէշ

ւոյլն), ու անվայել պատահարները՝ առով Թող կորուսին: Անմիջապէս Թող վռնտուին առով՝ մեր երկու բնութեան (հոգիին ու մարմնին) մէջ վերերեւցած մոտաւոր դաւաճանողները զորս իրենք կ'ստեղծեն, մէկուն (հոգիին) մէջի օտարոտի ու ախտալ մտածումներն ու միւսին մէջի (մարմին) ապականող, անմաքուր ղեռուններն ու զզուելի արարածները: Փրկէ՛, ո՛վ Տէր Յիսուս, կ'աղաչեմ Քեզ, փրկէ՛, ո՛վ Բարերար, ամենագովելի ձեռքդ երկնցո՛ւր ինձ և առով օգնէ՛ ինձ, ազատէ զիս (հոգիս) բոլոր հակառակորդներէս (սատանայ):

Ժ. Թո՛ղ խառնուի, միանա՛յ առո՛ր՝ (կոչնակին) Քու հրամանդ, յիմարացած քար սրտերը՝ Քու խօսքդ արդիւնաւորելու ընդունակ դարձնելու համար. Քու սքանչելիքներուդ հրաշքի այս զաւազանը զա՛րկ, մխէ, Թուլցած սրտերու ու լքուած հոգիներու մէջ և հաստատելով ամուրցո՛ւր զանոնք, որ անդրդուելի կերպով շիտակ կանգնին. իսկ անղէն չշարժողները կակուղցո՛ւր որ արթննան ու հեղ հոգիով Քու աստուածութեանդ պատուէրդ իմանան՝ Պօղոսին ու Մատթէոսին պէս: Այս պատուուած փայտով՝ ո՛վ մարդասէր, խաչիդ երախտիքը յիշեցուր որով անճառելիներ գործեցիր. Նոր տապանակդ վերցընող պանծալի լծակներով՝ պարտքերուս վտանգը վերցո՛ւր ինձմէ, ո՛վ ապրեցնող: Յամառած սրտերու ականջները՝ այս կեանքի

ձայնը լսելու համար՝ Դու կամքովդ թող բաց-
ուին, ո՛վ Զօրաւոր։ Դու այս մեծ բարութեան
հրամանովդ՝ խուլերուն ականջները թող լսեն.
տուր ձեռքով թող բացուին՝ համր եղողներուն
լեզուները. առով թող լուսաւորուին աչքի տեսու-
թիւնները՝ մաքուր կերպով ու ակնապիշ Քեզ
նայելու համար՝ անայլայլաբար. յափրացողները
թող զղջան, դառնան ու կ՚ազդուրուին. ընձեռէ՛,
ո՛վ Տէ՛ր, արցունքի անձրեւ տուր ինձ՝ որ տաղ-
նապած եմ։ Քեզմով՝ աւիկայ (կոչնակը) մեզ
համար թող ըլլայ ցնծութեան լուր, ուրախու-
թեան ձայն, բերկրութեան խօսք, հանգստի
նուագ, երանութեան նիւթ, (հոգեւոր) փրկու-
թեան պատճառ, քաւութեան առիթ, վիշտերու
մերժում. խեղդումներու խզում. նեղութիւննե-
րու ընդարձակութիւն. խիթերու կրճատում.
հեծեծանքներու հալածում. հառաչանքներու թե-
թեւացում. պէտքերու ապահովութիւն. կիրքերու
չափաւորութիւն. վհատութիւններու սփոփանք.
ցաւերու բժշկութիւն. թուլութեանց առկունու-
թիւն և անտեսուածներուն՝ ուշադրութիւն։

ԺԱ. Այս ցանկալի անխօսօր ու շիտակ կա-
մուրջով՝ ու երկինքը ելնալու բարձրաբերձ ու
սրբահետ երկնաշաւիղ սանդուխով՝ Դու օրհնա-
բանուած և ահաւոր անուն ունեցող Հօրդ մատնե-
լով ներկայացուր զիս, ո՛վ բարերար, որպէս զի

Հոգիիդ առաջնորդութեամբը անբաժանելի կերպով միանամ Քեզ. որով միտք սուրբ և միակ ու միաօնական տէրութեանդ՝ և անեղծ արարչութեանդ՝ թէ՛ կենդանիներէն և թէ՛ անշունչ արարածներէն վայելուչ գոհութեամբ փառք և իշխանութիւն կը մատուցուի մինչև վերջն. ամէն։

*Նոյն այն Հոգւոյն ազդըրացէց մաղթանքներուն ուողջախառուն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։ Սրտի խորերէն խօսք առ Աստուած.*

## ԴԳ. ԽՕՍՔ

## Սուրբ լոյս տուող եղին՝ մեռօնին վրայ բացատրութիւն տալու ձեւով՝ աղօթք։



ՈՒՐԲ ահաւոր անուն. անպատմելի Բարձրեալ. անյագ անձկութիւնով ախորժելի փափա՛ք. որ սուրբ տեղը (երկինք) բնակելով՝ սուրբ սուրբ երգելով փառք տուողներէն միշտ կը սրբաբանուիս. լեցուն ու խիստ զեղուն ես բարութեամբ ու առատաձեռնութիւնդ անպակասելի է. բարի լոյս ես ու գովելի ծագում. երկրպագուած փառաւորութիւն անհեղ և անզննելի. ամէնքն ես ու

ամէնուն մէջ։ Յուսոյ դաշինքի այս խօսքով կ'ուխտեմ միանալ Քեզ հետ, ո՛վ զօրաւոր․ այո՛, ամէն ալէլուիա (այնպէս Թող ըլլայ) ո՛վ ընդհանուրին գովուած (երկնաւոր) Թագաւորը․ ամէնուն Աստուածը, արարածներուն ստեղծողն ու կամք կատարող Տէր․ բոլոր ստեղծուածներուն միակ պատճառը, փրկիչ և միշտ պաշտուելիք օծուած։

Բ. Ուրկէ (Յիսուսի օծուած Թարգմանուելէն) հասկցանք Թէ ասիկայ (օծումը) չծախուելիք գանձ է ու չփոխանցուելիք հարստութիւն, ո՛վ երկնաւոր Թագաւոր Յիսուս Քրիստոս․ որուն մեծապէս դողալով կ'սպասաւորեն լուսեղէն բերան և բոցեղէն շունչ ունեցող անհեղ անմահները՝ իրենց անխոտոր մտքին հաճութեամբը՝ յօժարակամ գոհունակութեան ծունկ չոքելով Քու առջիդ, ո՛վ տեսնուածներն ու չտեսնուածները ստեղծող։ Դուն որ միակ ամբողջն ու կատարելապէս անպակասելին էիր ու ես․ մեր ամբողջ մարմինն ալ իսկապէս՝ կատարեալ կերպով առիր, որպէս զի Քու ամբողջութենէդ (զայն ալ) լրացնես՝ ո՛վ օրհնուած և բարեբանուած՝ որ ահաւորիդ բարերարութեան անճառելի բարձրութեանը փառքին ու գովեստին համար՝ մեր (հոգիներուն) փրկութեան առթիւ (շնորհած) միշտ անքննելի ողորմութեամբդ ճանչցուած ես յաւէտ։ Օծումի այս շնորհին առաջին պարգևը՝ մեծախորհուրդ հրաշագործու-

թիւն է, որովհետեւ Քու լոյսդ տարով ճանչցուե-
ցաւ թէ, հաստղութենէ վեր ճառագայթ, ան-
տանհման ծագում, անաչառ կերպով սփռուող
արեգակ, երկու տարրերուն (ցորեկ և գիշեր)
կշիռը սահմանող աստղ (արեւ կամ արուսեակ).
ու ոսկի հասկերը լուսաւորող ճրագ է. ու որով
կը բացուին մեր մտքի աչքերն ու կը տեսնենք. և
այս ճառին համեմատ՝ հրեշտակային պարերգու-
թեամբ՝ յստակ մտքով կը տօնենք պարգեւներ
բաշխող առատատուութիւնը ամէն իմաստութիւն
ունեցողին՝ իբր փրկիչի վայելուչ կնդրուկ՝ անա-
րատ դաւանումի զուարթ իւղովը խնկելով զայն։

Որովհետեւ՝ ամէնէն առաջ՝ երբ իմ առաջին
անգամ ստեղծուող Նախահայրէս՝ փչումի բարձ-
րագոյն շնորհը զարմելի տխրականութեամբ ես
առնուեցաւ, անիկայ մեղքերու գերութեանը մէջ
յաւէտ հիննալով մահուան դատապարտուեցաւ.
և եղծումի ապականութեան անազատելի հան-
գոյցովը կապուելով՝ (գիտութեան) ծառին պատ-
ճառէն՝ անկանգնելի կերպով ինկաւ և կատարե-
լապէս կործանելով գլտորեցաւ, ու լոյսէն վռընտ-
ուելով՝ այս մութ տեղը իյնալու դատապարտուե-
ցաւ։ Իսկ Դուն, ո՛վ գթած ողորմած տէր՝ որով-
հետեւ իրմէ աւելի աղէկ ճանչցար զայն զոր ստեղ-
ծած էիր, և որ անկարելին յուսալով (Աստուած
ըլլալ) չկեցաւ ինչ վիճակի մէջ որ էր, որով կա-

բող չէր ըլլար խակապէս առնել գերազանցութիւնը Անհասանելիիդ անմատչելի լոյսին, զոր ոչ թէ անուական մշտափայլ վառումով՝ անաղօտ կերպով առածեցիր. այլ գիշերուան զարհուրեցընող մութին՝ ձեռք բռնուած ձէթին նման (հին ատենուան ճրագ) որուն պատրոյգ թաթխելով կը վառեն, — և որ օրինակ է Քու անտեսա միութեամբ մեզ հետ խառնուելուդ — մարդասիրապէս հիւսելով պատրաստեցիր. որպէս զի մենք որ կանուխէն կորանցնող ծառին մեղքովը մահուան մութին աքսորուեցանք, այս չորիքը դարմանելու համար՝ պտուղին ցեղակիցովը (ձիթապտուղ՝ որմէ կը պատրաստուի միւռոնը) հաւատքի ջահով լուսաւորուելով այն օրհնուած վիճակին վերադառնանք. ինչպէս նաև մահուան փայտովը՝ որուն փակչելովդ մեզ ալ՝ մեծ խորհուրդին օրինակովը՝ բերիր կեանքի փայտին փակցուցիր՝ միացնելով անոր հետ։

Գ. Արդ՝ ինչպէս որ առանց գիշերի կատարեալ չըլլար օրը, անանկ ալ առանց ձէթի պէտոյքը լրացնելու՝ կատարեալ չըլլար տան կարգադրութիւնը. որովհետեւ՝ ինչպէս որ ոչ-նուիրական հասարակ ձիթախիւղը մարմնաւոր աչքը կը լուսաւորէ, նոյնպէս ալ Քու շունչիդ շնորհիւ, և անիմանալի ընտրութեամբ մաքրուածը (ձէթը՝ մեռոնը) հրաշափառ կերպով կը պայծառացնէ մեր

աներեւոյթ հոգիները մեզ հետ միացնելով զՔեզ որ անտեսանելի ես։ Ինչպէս որ կը հաւատանք թէ, երբ մարմինը սուրբ աւազանի լուսարանն իջնայ ու անոր մէջ լուացուի՝ անձը կը մաքրուի, այսպէս ալ իւղին օծումովը՝ լոյսով լեցուելով, անկասկած կերպով կը հաւատանք թէ, ասոր շնորհիւ և անկէ՛ (մեռոն) կ'ստանանք Հոգիին զօրութիւնը։ Եւ ինչպէս որ տէրունական օրհնաբանուելիք հրամանովդ նախ մեղքերուն քաւութիւն կը վճռէիր ախտաւորներուն, իսկ անոր (մեղքերը քաւելու իշխանութեանդ) չհաւատացող անզեղջ թերահաւատներուն իբր հաստատուն վկայ հաւատարիմ՝ մարմնոյ աչքով՝ իսկոյն հրաշալի բժշկութիւնդ կը ցուցնէիր, այնպէս ալ լոյսով սրբագործուած այս փրկութեան եղը՝ մեր վրայ թափուելով նախ մեր արտաքին չէնքը (մարմին) կ'օծէ. իսկ ներքին աներեւոյթ մարդուն (հոգի) մէջ ծածկապէս մանելով՝ նորէ՛ն կը ծնի զայն ու կը վերակենդանացնէ։

Դ. Այս զանգուած նիւթը (մեռոն) պանծալի պատկերն է երկինքը ստեղծողիդ. անոր համար որ օգտակար իւղը կրողներ (իմաստուն կոյսերը) ողորմութեանդ շնորհին արժանի սեպուեցան, և Դուն Քեզ իբր գովեստ սա խօսքը սահմանեցիր թէ «Ես ողորմած Տէր եմ». որովհետեւ ինչպէս որ էր անուանին կցորդ ես, ո՛վ Աստուած, նոյն-

պէս մասամբ մը ասով (իւղ) կը զիջանիս ձեւակերպարելու, մեզ նկատմամբ տնտեսած խնամքներուդ նայելով։ Երկրի թանձր ու հողանիւթ մասէն գոյացած այս գերցնող ճարպը (եղը) յարմար նմանութիւնն է մեծ ու վեհագոյն խորհուրդին, որովհետեւ ինչպէս որ կենդանիին այս մասը չուտել՝ այլ բոլորովին զատել ու Արարչին նուիրել կը հրամայուէր հին օրէնքին մէջ (Ղեւտ. է. 23), այն նմանութեամբ՝ հիմա ալ երբ Տիրոջը մօտենալիք ոյժ՝ Աստուածութիւնդ հաճեցնելու համար վայելչապէս դրուելով կը նուիրուի այս աւանդը, որ երբ հոգիիս հարազատ ուղեկիցը՝ ուխտով կը պահուի ստեղծողիդ համար. որովհետեւ հոգիիս և կարողութեանս երբ օրինակ՝ ո՛չ արիւնի շունչը ո՛չ ալ զուարթութեան գոլորշին կ՚այրի մարմինիս անդամներուն թիւին տեղ, այլ անապատ կերպով մինչ պայծառ վառող այս ջահի նիւթը՝ որ երկնային արքայութեանդ տէրունական խնճոյքին նուիրուած կերակուրն է։

Ե. Արու անդրանիկը եթէ ծնումով նշանակուէր, չէր կրնար տան նախագահն և դատողն ու քննողը ըլլալ. ոչ ալ քահանան կրնար անկոխելի տեղը (սրբութիւն սրբոց) քահանայագործել, եթէ ասով կատարեալ չըլլար։ Վէմին (Քրիստոս) պատկերն եղող քարը որ ընտրութեան (Մովսէսի) խորանին հեռաւոր խորհուրդը կը նշանակէր՝ ծնու-

մով պատկերացուց Յակոբ. և անոր (քարին) յար-մարցուած սանդուխէն Տէր անճառելի բարձրու-թեանդ վար իջնալն և ուղեկցելով ինձ՝ զիս վեր տանելու խորհուրդդ տեսնելով, քարը իւղեց և նպատակակէտ կանգնեց զայն, իբր յիշատակ ապագային կատարուելիք ցոյցերուն։ Ահարօնեան քահանայութեան պայծառութիւնը՝ օծումով կը ճոխանար՝ Մեծիդ Աստուածային հրամանովը. ո-րով՝ սաղմոսողին բանին պէս՝ գերափառ եղը գլուխէն դէպ ի մօրուքը վազելով զանազան ձե-ւակերպութիւններով նախնական փառքին վերա-դարձն ու կեանքը որբացնող շնորհիդ մեզ հետ խառնուիլը կը նշանակէր։

Այն ատենուան (Իսրայէլի) Թագաւորութիւնը մինակ ստեղծողիդ պատկերովը պանծալի չէր ըլլար, եթէ օրհնութեան եղին եղջիւրովը չձեռ-նադրուէր ու պճնութեան պսակին թագը՝ Տէր անուանովդ գլուխը չդնէր, ո՛վ Յիսուս, (Ա. Թագ. ԺԶ. 13)։ Ինչպէս եղաւ որ վեհերու ամէ-նէն առաջինը՝ Մեծիդ ծառան՝ անպարագրելիիդ կերպարանքը մոռցայ. իբր ճշմարտիդ ահաւորու-թեան օրինակ՝ չէ՞ մի որ ահաւասիկ Մելքիսեդեկ՝ Զիթենեաց լերան վրայ՝ երկնային հրեշտակներէն օծուեցաւ, պտուղներովը նոյն տեղին (Զիթենեաց լեռան ձիթաիւղովը), ուր ետքը մարմնացած աս-տուածոյդ ոտքերը զետեղուելով կանգնեցան

(Յայտնութիւնք մարտ 25 օրուան) և (Մելքիսեդեկ) Քու կողմէդ պաշտպան կարգուելով սկզբնահօր (Ադամայ) շիրմին՝ եպիսկոպոսական արքայապատիւ ճոխութեամբ նստաւ հոն (Ձիթենեաց լեռը), մինչեւ որ իբր կատարեալ քահանայապետ յայտանուեցար՝ ստեղծած ադամային մարմնոյդ ամբողջ իսկութիւնովը։ (Հրէական աւանդութեան մը համեմատ՝ Նոյ իր հետն առած Ադամի ոսկորները՝ Գողգոթայի գլուխն ամփոփեր է զանոնք, որոնց պահապան կարգուեցաւ կ'ըսուի Մելքիսեդեկ)։

Զ. Արդ որովհետեւ շնորհները Դո՛ւն կը բաշխես և գոհաբանութիւնները Քե՛զ կը վայելեն, ո՛վ օրհնաբանուած Աստուծոյ որդին, բարենշմար ներշնչումով՝ Դուն ի՛նքդ յարմարցուր այս խղճաւոր խնկաւէտ ու զմուռսով լեցուն աղօթքը որ փառք պատճառէ Քեզ, իսկ ինձ մեղապարտիս՝ առիթ դառնայ բժշկութեան. ո՛վ Տէր Յիսուս աներեւոյթ վէրքերուս՝ այս լուսանիւթ ձէթը քսէ (Ղուկաս Ժ. 34) և այս մահացու վէրքին խարանին վրայ, սիրոյդ անապակ գինիին հետ՝ փրկաբար իւղիդ օրհնուած կաթիլը լեցուր, Քեզ հետ միացնող արարչական խնամքներուդ պատանքովը պատսպարելով զայն, որպէս զի մեկնողաբար գրուած մաղթանքներու այս յիշատակարանը՝ վայելուչ յարմարութեամբ՝ դասակարգուի Հոգիիդ թեւերովը։ Քու բարձրեալ Հոգիդ՝ այն օրէն խա-

ղաց Դաւիթին վրայ, երբ օծուելով Նուիրակա-
նութիւն ստացաւ: Սաւուղ՝ այն ատեն ուրիշ մարդ եղաւ և անմիջապէս մարգարէներէ ոմանց կարգը դասուեցաւ՝ երբ օծումը հասաւ անոր գագաթին: Աստուածանեայց (հին) Թագաւորութիւնը՝ օծումով գրաւուեցաւ ու Իսրայէլի տանը կցորդուելու մատուցուեցաւ: Խուժդուժ (հին) բարբարոս ազգերու նշանն որ վէհ ու երեւելի (բազմաստուածեան) կոյսերներէն ոմանք՝ այս կեանք սփռող իւղին անձրեւովը ցօղուելով՝ կարթով բռնուածի նման՝ Մեծ Աստուածոյդ ընտանենալով Անոր հպատակելու վարժուեցան: Կիւրոսը պատուաստելու համար՝ Երկնաւորին անոր տուած օծեալ տիտղոսը (Եսայի ԽԵ. 1) խիստ մեծ թուեցաւ (Կիւրոսի): Սաղմոսողին ձայնը՝ օծեալ անունը Ծարքարէ տիտղոսէն խիստ նախապատիւ սեպելով կանոնական խտիր դրաւ երկուքին միջեւ ու պատուէր աւանդեց (մարգարէին) «մի՛ մեղանչէք. (իսկ օծեալին) մի՛ մօտենաք», ըսելով: Քորեբ լեռան վրայ Եղիային տրուած Աստուածային հրամանը՝ կը պատուիրէր օծել Ցէուն (Իսրայէլի) ու Ազայէլը (Ասորւոց Թագաւոր) իբր նշան մը թէ, պիտի ազատէր ժողովուրդը Բահաղի ծառայելէ, Փեսայիդ անունին՝ մեր վրայ Թափուած եղ ըլլալը իմաստունին՝ հոգի կշտացնող խօսքերով վկայուելով՝ կանուխէն իսկ գրուեցաւ. որպէս զի մեր

Հոգին՝ որ Աստուծոյ պատկերն ու Նշանակիչն է յաւէտ, մեզ՝ փոքրերուս վրայ՝ Մեծիդ Նմանութիւնը քեզմով Նկարէ՝ ու Քու շնորհդ տանելով Քեզ հետ միանանք։

Է. Եւ ինչո՞ւ՝ երկար բարակ՝ մանուածապատ՝ հեռաւոր բացատրութիւններ ու տաղտուկ մաղթողական բանաստեղծութիւններ շարադրեմ Երկնաւոր Անհաւորիդ առջեւ, Դուն որ երկինքն ու երկիրը ստեղծող և կեանք շնորհող Տէր ես՝ օծուելէ ետք սկսար քարոզել արքայութեան Աւետարանը. այն ատենէն վկայուելով Յովհաննէսէն թէ «Աստուծոյ օծեալն ու գառն ես որ աշխարհի մեղքը կը վերցնես»։ Որովհետեւ օրհնութեան օծումիդ ատեն թէև Հոգին Քու մէջդ էր իսկական ամբողջութեամբ և կատարեալ Աստուածութիւնը խառնուած էր մարմնոյդ, սակայն (օծեալ) անունը կը պաշտուի՝ սուրբերուն վրայ հրաշափառապէս ազդած շնորհի խորհուրդին համար. որպէս զի Ադամային մարմինին ստրկութիւնը այս (օծումի) անունով յաւէտ մեծնալու պատրաստես։ Դուն ինքդ, ո՛վ մարդ եղած Աստուած, Եսայիի մարգարէութեան առակները բանալով կարդացիր, Քու ծառաներուդ խօսքը հաստատելու համար, ո՛վ Տէր. և երբ օծութեամբդ՝ խօսքի այն կարգին մէջ ճանչցուեցար թէ «Տիրոջը Հոգին իմ վրաս է, որով իսկ օծեց զիս», ետքը փակե-

ցիր գիրքը· երկու նմանակից (մարդոց և Քրիստոսի) օծումին՝ իրարմէ ունեցած տարբերութեան որքանութիւնը յայտնելով՝ անջրպետով սահմանեցիր զանոնք և մեծ ու ընդարձակ հեռաւորութեամբ կնքեցիր, մեր օծումը կաթիլով մը միայն շնորհաղարդելով, իսկ Քու օծումդ՝ ցուցնելով թէ բովանդակ Աստուածութեան լրումովն է և իսկակից ես Հօր ու Հոգիիդ հետ հաւասար։ Առաջին անգամ երբ մեր մարմնով ծանօթացար (Ծնունդէ գիշերը) պանծալի գովեստով մը՝ փառք տուող հրեշտակներէդ օծեալ հռչակուեցար ու (այս անունով) ճանչցուեցար երկրի արարածներէն։ Մարգարէն կանուխէն գուշակեց Ցորդանանի ու ընտրուած լերան՝ Թափօրի վրայ գալիք հայրական ձայնը թէ «Ան՝ մարդոց մէջ կը պատմէ իր օծեալը» (Ամովս Դ. 13)։ Հզօրիդ՝ ձեռնադրութենէ առած այս փառքի պատիւը՝ սաղմոսին ձայնը կանուխէն կը պատմէ ըսելով «ո՛վ Աստուած՝ Քու Աստուածդ ուրախութեան եղով քեզ օծեց»։

Ը. Ո՛վ մեր երեսներուն հոգին, Տէ՛ր Քրիստոս, քո՛ւն անունդ օծեալ է որով կենդանութեան լոյս փչելով մեր դէմքերուն՝ Քու բարերարութեամբդ ներգործեցիր զայն (լոյսը մեր հոգիներուն վրայ)· ո՛վ խոստովանուելիք մարդասէ՛ր, երջանիկներէ մէկը՝ (Սիրաք ԽԶ. 22) մէկու մը

համար (Սամուէլ) իմաստութեամբ՝ «Տիրոջը օծուածին (Սաւուղ) առջեւ վկայութիւն տուաւ որ, ամբողջ մեծղէններէն (մարդ) կօշիկ մը անգամ չառի» ըսելովը՝ Նոր Աւետարանը հաստատեց։ Հարսնացած սուրբ եկեղեցին դովելու համար՝ Երգ Երգոցը՝ իբր Աստուծով ճանչցուած (Քրիստոսի մարդեղութեան) խորհուրդը՝ իւղով եփուած գինին, և իբր առաքինութիւն՝ զմուռսը բոլոր անուշահոտ իւղով առաջ բերաւ, ինչպէս նաև իբր օրինակ մաքուր վարքի՝ զմուռսը կնդրուկը և բոլոր անուշահոտ փոշիները յիշեց առաջուընէ մինչեւ ետքը միշտ եղով խառնելով զանոնք։ Ո՛վ երկինքի Թագաւորը Քրիստոս, Դանիէլ՝ Քու կեանք տուող մահուանդ համար՝ օրինակով խօսելէ աւելի, ուղղակի այս անունը գրելով (օծեալ) վկայեց յայտնապէս թէ «վաթսունըի՝ը եօթնեակներէն ետք՝ օծուածը պիտի սպաննուի» (Դան. Թ. 26) և Քեզ՝ օծուած առաջնորդ անուանեց։ Բարեքի Թոռան՝ Ադդէի աղուն՝ Զաքարիայի ճրագ կրող աշտանակովը — որուն եղը լաւ բոլխուած ըլլալուն համար՝ առաջացած եօթը ճիւղերուն գաւնդներն ալ (կեդրոնի) ջահէն զօրութիւն առնելով ինքնաբերաբար կը վառէին, — Քու կատարելութենէդ մեր փրկութիւնը (հոգիներու) և գերազանցապէս օծութիւնը ծանուցիր կանխաւ։ Բաղարջէ պատրաստուած (անխմոր) բլիթները, բարակ

ալիւրէ շինուած ու իւղով օծուած լաւաշները, ու եզներու պարարտ (կամ.օծուած) ղուարակները և իրենց ցեղակիցներու (Թռչուններու) արիւնին մէջ թաթխուած Թռչունները՝ որոնք հին օրէնքի գուշակութեան համեմատ՝ քաջավարժ կրթութեամբ՝ ավօրաքար տիրական անուան ընծայուելով կը մատուցուէին տաճարին խորանին վրայ, այս (օծումի) խորհուրդին բացայայտ օրինակներն ու Քեզ՝ յարմար միակ նշանակիչներ էին, ո՛վ օրհնաբանուած Մեծ Աստուծոյ միածին որդին որ զարմանալի կերպով Նորէն օծուեցար՝ կատարեալ էութեամբդ ու ինքնութեամբդ և բնաւ բան մը չպակսեցաւ իսկութեանդ կատարեալ ամբողջութենէն ։

Թ. Եւ ի՞նչ ըսել է շատ մը օրինակներով ընդարձակօրէն գրել այս հասողութենէ վեր՝ մեծ խորհուրդին վրայ ու զՔեզ չճաշակել, ո՛վ քաղցրութիւն. (ի՞նչ օգուտ ունի) Քեզմով հասկնալ թէ ի՞նչ է եղը, եթէ անով (միւռոն) չբժշկես մեղքի ծառին առթած տխրութիւնն (Ադամային մեղքը) ու սաղմոսողին ըսածին պէս չզուարթացընես ։ Ի՞նչ պիտի ըլլայ գիրնալը, եթէ ասկէ (միւռոնով) կշտանալով, առով ջմոռնանք մահուան կերակուրը ։ Եւ ի՞նչ պիտի հասկնանք օծուելէն, եթէ մոխիրի (սուգ) Թշուառ կերպարանքը անվերջ ուրախութեան պայծառութեանը

չփոխարկենք առոր շնորհիւ, և անունովդ՝ զօրաւորապէս փրկուելով՝ հօր սեփականութիւնը չյանուանուինք։ Ի՞նչ կը հասկցուի արդեօք մարգարէին հոգեւոր բաղձանքներէն ու տենչացած իղձերէն, որուն ծերութիւնը՝ գիրցնող եղի կը նմանցուի. և կամ գլխուն գագաթը եղով օծելը (ի՞նչ կը նշանակէ), եթէ մահացու կերպով կործանող հին խարդախութեան ռուգին սատակութիւնը՝ կեանքի այս դեղով (միւռոն) չցրուես ու պատապարելով չօժանդակես մեզ որ կեանք առանանք։ Լուսատու արոտ ճրագէն ինչո՞ւ շնորհակալ ըլլանք, եթէ մեղքի յուսահատութեան և կռապաշտութեան միգապատ մութին մէջ՝ իմ կերպարանքովս ինձ հետ պիտի չմիանայ Աստուած։ Եւ կամ աստուածային մարգարէն իր օրհնութեան զուարթարար սփոփանքներուն մէջ՝ ինչո՞ւ յայտնի նշանակութեամբ վայելչապէս կ՚աւետէ ամենց թէ «մրուրը զատուած պայծառ իւղով պիտի օծուին». և կամ Իմաստունը ինչո՞ւ հարսին կողմէն կ՚ըսէ օրիորդներուն «եղով զօրացուցէ՛ք զիս և գեղեցկադարդ խնձորներով մեծարելով պատուեցէք» և (անուշահոտ) եղի ծառերու պարտէզին մէջ փափկութեամբ խնամք տարէք ինձ», եթէ Քու հոգիովդ լեցուած այս ընտիր նիւթով (միւռոն) այս լոյսին մէջ՝ մեր վրայ չտեսնենք՝ անիմանալի քաղցրութիւնը Գովուածիդ։

Արդ՝ ո՛վ խնամակալ, բարի պատճառը բոլոր արարածներուն, Քեզ միայն ձեռք կ'երկնցնեմ բազկատարած՝ երիկամունքներուս գործակցութեամբը, որուն հեծեծանքներուն և լեզուիս ու չրթունքներուս արձակած ձայնովը, ողորմութիւնով լսէ՛, ո՛վ Տէր. Քեզ ուղղած պաղատագին խնդրուածքներուս. շնորհած այս պարգևովդ (օծում) գոհաբանութիւն կը վերընծայեմ Քեզ. ո՛վ զօրաւոր, բարձրեալ ու չքննուող ահաւոր. անվերջ փափաքով, մշտատեւ համբոյրով «Սո՛ւրբ, սո՛ւրբ, սո՛ւրբ և միայն միշտ սուրբ, ամէն ատեն օրհնեալ ես յաւէտ» կ'երգեմ անդադար։ Աւելի բարերարութիւն ընձեռէ ինձ, որ սխալած եմ յաւէտ. քաղցրութեան յոյս տո՛ւր, չէ թէ անոր համար որ լուսոյ մէկ մասին միայն մօտենալու արժանացած եմ. այլ՝ ո՛վ Բարի, Քեզմով պարզելու համար նրբութիւնը այս ծածուկ խորհուրդին և փափկութիւնը աղերսներու խառնելով՝ Դաւիթի հետ ըսել կարողանալու համար, ընդունեցինք Քու ողորմութիւնդ՝ ո՛վ Աստուած որ աներևոյթ գաղտնիքներուդ ծածկութիւնը Քու իմաստութիւնովդ յայտնեցիր։

Ժ. Արդ մեծութիւն է Քեզ ով ամէնքն ունեցող, առատաձեռն, չպակսող, գթալու խիստ փութկոտ և բժշկելու միշտ յօժար, որ մեզ խիստ ծանօթ դիւրաւ գտնուող ու ընտանի այս նիւթին

(ձէթ) խառնեցի՛ր միացուցի՛ր տնաւօրութեանդ սքանչելիքներուն անճառելի հրաշքները։ Որովհետեւ Այն՝ զոր երկինք ամբողջ բարձրութեամբը, ու երկիրը լայնութեամբը ու ներքին խոր անդունդներովն ու ծովերու բազմութեամբը չի կրնար կրել՝ — այլ իբր աննշան առարկայ մը (երկինքն ու երկիրը) Մեծէն կը տարուի — այս փոքր Նիւթին մէջ (ձէթ) զօրութեամբ ցուցուցիր ու սահմանեցիր թէ ճշմարտապէս գոյութիւն ունի անիկայ (Ս. Հոգին) և ոչ թէ պատրանք մ՚է. որպէս զի (երբ միւռոնի օծումով հրաշք մը գործուի) նոր օրինակ բան մը երեւնալով ուրիշ ազդեցութենէ մը չկարծուի և աչքի տեսնուած հարեւանցի երեւակայութիւն մը չենթադրուի, ինչ որ չհասկցողներու մտքին կարծիքը բժշկելէ աւելի, թերահաւատութեամբ կը վիրաւորէ։ Որովհետեւ, ո՛վ օրհնաբանուած Աստուծոյ որդին, ինչպէս որ ցորենի արդիւնքէն (հաց), Քեզ՝ ճշմարիտ և իսկապէս մարմին և ո՛չ թէ օրինակ պատրաստեցիր միշտ արարչութեամբ, և խաղողի արիւնէն՝ (գինի) կողէդ հոսած կաթիլը (արիւն պատրաստեցիր) և առատութեամբ յորդող ջուրերէն՝ հոգւով ծնելու կեանքի արգանդ, նոյնպէս ալ Անմահիդ ներշնչած Հոգին՝ տասով ու տաք մէջ արդիւնաւորեցիր։ Ո՛վ Տէր, մեզ՝ երկրի մութին մէջ նստողներուս՝ Քու նմանութեամբդ կեանքի

երկունք (ծննդական ցաւ) ծագեցուցիր, որմէ ծնածին կերպարանքը ո՛չ իսկ հեթանոս (կռապաշտ) ըլլալով կը փոխուի, ինչպէս որ մէկ անգամ ծնուած խաչափայտը երկրորդ անգամ չօրհնուիր այլ եւս։ Որովհետեւ շնորհի այս կերպարանքով (միւռոն) Անհասանելիիդ անպակաս ամբողջութիւնը յայտնելով աշխարհի՝ լուսաւորեցիր զայն. Եւ որպէս զի ո՛չ տնանկը կարօտը քաշէ, ոչ ալ հարուստը հպարտանայ, օդին հաւասար բաշխումին եւ արեգակի լոյսին տարածումին եւ ջուրերու վտակներուն առատութեամբ հոսելուն պէս, մանանային նման հաւասարապէս բաշխեցիր երկրածին մարդոց եւ մեծամեծներէն աւելի՝ պզտիկներուն առատութեամբ տուիր։

ԺԲ. Իսկ այս նիւթը (միւռոնը) որ խորին խորհուրդը կը պատկերացնէ, իր բնական հանգամանքներով ա՛լ հրաշալի կերպով կը մեկնուի. անոր համար որ (ձէթը) ո՛չ երկմիտի մը նման անհաստատաբար տճապարելով տեղը կը փոխէ, ո՛չ ալ նենգութեամբ իր բնակարանը կը լքանէ, (ինկած տեղէն շուտով չելլեր), ո՛չ վերջնականապէս մաքրող օճառով կ'անհետանայ, ո՛չ ալ ուրիշ հակառակորդէ մը հարկադրուելով դուրս կ'ելլէ։ Որովհետեւ ինչպէս որ մարմինին գոյնը անփոփոխ է ու անհրաժեշտ եւ ցորչափ գոյնը գոյութիւն ունենայ մարմինն ալ կ'ապրի եւ երբ

գոյնը անհետի, մարմինը կ'ապականի. այսպէս յարմարութեամբ մը՝ ո՛վ տէր Յիսուս Քրիստոս, մեզի հետ իսկ անբաժանելի կերպով կցորդելով միացուցիր զօրութիւնը այս իւղին՝ որ իր բնական հանգամանքովը անգամ մը իւրացուցածը կը պահէ (եղած տեղէն չելլեր) ու ասով՝ արդէն (մեր վրայ) գոյութիւն ունեցող իւղին, լծակցեցիր նաև անոր օրինակն ալ. որովհետեւ այն որ աչքով չտեսնուիր ու մտքի հասողութենէն վեր է, չօշափելի կերպարանքով երեւցուցիր. երկրի պտուղները ճնշելով ու անոնցմէ մզեցնելով՝ զարմանալի հրաշագործութեամբ՝ մեր պէտքերուն մատակարարուելու համար պատրաստեցիր զայն (ձէթը)։ Մանաւանդ որ՝ հին ստուերական օրէնքին բաղմահոտութենէ այլայլած եղին նման (Ելից Լ. 22) զանազան ծաղիկներու մէկ տեղ հաւաքուած ստուար խառնուրդէն միայն պատրաստել չհրամայեցիր այս օծումի իւղը, այլ անիկայ (հին օրէնքին եղը) իբր օրինակ փոխակերպելով ասոր, (միւռոնին) Դու ինքդ խառնուեցար այս մաքուր ձէթին որ երկնային լոյս է։ Թէպէտ անճառելի են համեղութիւնները Քու անուշութեանդ որ մէկ օրինակով մը չի բաղդատուիր, այլ դաշտի ծաղիկի, հովիտներու շուշանի, ընտիր նարդոսի, հալուէի հետ խառնուած եղեգնախունկի, քրքումի անուշ հոտի, ծաղկած ողկուզի ու պատուական

դինիի կը նմանի, տակայն չէ թէ առանձին՝ այլ իւղի հետ միանալով պատշաճ կերպով օրինակուեցար ո՛վ փառաւորուած անքննելի անուն, որ ամէնքը կը լեցնես և ո՛չ մէկ բանի կարօտ ես երբեք: Ուստի (պարզ ու անխառն իւղով օրինակուելով ցոյց տուիր որ) չէ թէ իրարու հակառակ և խառնաշփոթ ու աննման իրերէ կ'ախորժիս — որ յայտնի օրինակ է բաժնուած կամքի ու անմիաբանութեան — այլ մեր համերաշխ սէրն է որ հաճելի կը թուի Աստուածութեանդ, որ մեզի համար՝ մեզ նման՝ մեր ամբողջ նմանութիւնը օրինակեցիր վայելուչ կերպով (մարդ եղար). Զէթի կաթիլներէ զանգուած այս նիւթը (միւռոն) մաքուր մաքրուն կ'երեւայ իբր բարի լոյս, տաքցընող կրակ և անգթաբար փչող ցրտասարսուռ հովերէ զերծ՝ ջերմ սէր, ինչ որ կը հաստատէ թէ ասով (միւռոն) ճշմարտապէս կարելի է միանալ Աստուծոյ: Աստուծմէ որդեգրուած ու օծուած Սողոմոնի հետ՝ անոր հօրային բերնովը՝ բարեբանական գոհաբանութիւն կ'երգեմ երկնաւոր փեսայիդ. մաքիս իղձերովը կը համբուրեմ Քու իւղերուդ հոտը, իբր գերազանցը ամէն կեանքի անուշահոտութիւններուն. ու յաւիտենական խօսքը ընդունողի նման, Իմաստունին (Առակ. Դ. 10) և Աստուածաբան Աւետարանիչին (Յովհ. Զ. 69) հոգելից խօսքին համեմատ, Քու իւղերուդ հո-

տովը քալենք Քեզի հետ, երեսս լուալով կեանքի Ջուրով (արցունք) որ երկինքի հաստատութենէն վեր է և գլուխս օծելով երկնային անախտ իւղովդ. Քու դէմդ ելլամ ղուարթերես ուրախութեամբ, չէ թէ տխուր դէմքով։

ԺԲ. Մեծարանքի, պաշտաման և գովութեան արժանի այս եղով միայն ուղեղիս սենեակը (գլուխ) կամ մազերուս գագաթը օծելը չկրնար օգտակար ըլլալ, եթէ կեանք տուող տէրունական խաչովդ չխաչակնքուի ան։ Լոյսի օրհնութեան այս զարմանալի հրաշք գործող եղը', Քրիստոսեան կ'ընէ Հրեան և կապաշտը. Հնդիկն ու բարբարոսը, Սկիւթացին ու Հելլենացին, ղժնդակ վայրենին ու արհաւրատեսիլ Եթխարի դէմքով չանագլուխը, աղտոտ տէրն ու ծառայ ծնած ստրուկը, և Քու անուանովդ կը կնքէ, Սուրբ Հոգիիդ կը նուիրէ և երկնաւոր Հօրդ հարազատ որդի կ'ընէ զանոնք հաստատուն կերպով։ Ասոր շնորհիւ կատարուած ներգործութիւնները բազմօրինակ են, նախ նիւթինը (կատարածը) ետքը հոգիինը։ Որովհետեւ ինչպէս որ փայտէ աման մը երբ եղով չօծուի դիւրաւ կը ճաթի և անօգուտ դառնալով կ'անպատուուի, այնպէս ալ ասով (մեռոն) չիւղուած մարդը շուտով կը փշրուի և Քեզմէ մեկուսացած ըլլալով չի լուսաւորուիր։ Ասիկա Քու մատդ է, ո՛վ Յիսուս, որով զարմանալի

հրաշքներ կը գործես, որովհետեւ (մեռոնը) իր անթափանցելի կազմուածքովը իբր կարծր պահպանակ՝ չորս կողմէն կատարելապէս շրջապատելով կը ծածկէ (մարդը) ու կը պաշտպանէ զայն օտարոտի և նսեմացնող վտանգներէ. այն աստիճան որ ասոր (մեռոն) թաթխուելով մաքրուողը՝ արիւնով չի ներկուիր (մարդասպան չըլլար). և ոչ ալ մութ գոյներով կ'այլայլի (մեղք չի գործեր). Ասիկա իր հոգեպէս թափանցող (ու տարածուող) հանգամանքովը մեր մարմնոյն թանձրութեանը մէջ մանելով կ'անցնի. և եթէ սաղմոսողին ձէթի առակով ըսած անէծքը չարին ամբողջ ոսկորներուն մէջ կը թաշխուի, ուրեմն Քու Հոգի՛դ որչափ աւելի պիտի ներգործէ այս լուսաւոր եղին շնորհիւ, մեր աներեւոյթ ներքինին (հոգի) վրայ ու պիտի առողջացնէ զայն, ազդելով չնչող հագագին խորերէն մինչեւ ոտքի մասներուն ծայրերը. պիտի մոռցնէ կատարելապէս յիշատակը՝ մարմինը մեռցնող արկածներուն. անոր համար որ, ո՛վ Տէր Յիսուս Քրիստոս, Քու կենդանի զօրութիւնդ որ միշտ ահաւոր է, ասոր խառնելով, ասոր հետ իսկ կը բնակի.

ԺԳ. Այս վայելչատեսիլ օծումը մերկ մարմնով մենամարտող և իրարու հետ մրցող ըմբիշներուն կողմէ իսկ օրինաւոր կերպով կը գործածուի սովորաբար, իբր զօրաւոր հնարք մը հակառակորդին

ձեռքէն խոյս տալու (ինչ որ մեզ համար ալ) ա-
հարկու և զօրաւոր է դեւերուն և մեղքերուն
անձնատուր չըլլալու համար. որովհետև Եզեկիէ-
լին վերացական Փարաւոնին (սատանայ) ուղղած
գեղեցկագործ խօսքը, որ հեգնական նմանու-
թեամբ իբր ողբ շարադրուած է, կ'ըսէ. «Երբ
եղար ու պատրաստուեցար օծուած քերովբէին
դէմ (կռուելու), այն ատեն հրեղէն արձանները
հաստատուելով կառուցուեցան (գլուխդ ջախջա-
խելու համար)։ Ո՛վ ամէն տեղ ձեռք բռնող օրհ-
նաբանուած ահաւոր, կարելի չէ միտք խօսքով
պատմութիւնդ ընել, որ անքննելի ես, որ իբր
Դաւիթի քաղաքին մէջ նոր ծնած օծեալ՝ միշտ
կեանքի աւետարանով կ'օրհնուիս։ Եւ քահանա-
յապետին հարցումովը թէ, «Դո՞ւն ես օրհնուա-
ծին տղան օծուածը» (կը յիշատակուիս), և Պետ-
րոսին երանելի խոստովանութեամբը թէ՝ «Կեն-
դանի Աստուծոյ միակ օծուած որդին ես» և ան-
հաւատ քննողներէն (կը խոստովանուիս) որոնք
կ'ըսեն «համարձակ խօսէ մեզ թէ դո՞ւն ես օծ-
եալը». ու Քու կանոնական հրամաններէդ կը հա-
ւատամք որ օծեալ ուսուցիչն ու Տէրն ես ամէ-
նուն։ Եւ Հերովդէս կանխեց ասոնք՝ յայտնա-
պէս օծեալ անունդ հարցնելով, և ինչպէս (Աւե-
տարանիչները) կը գրեն, դուն իսկ ըսիր թէ
«Դաւիթ ինչպէս օծուած Աստուածը իր տէրը

կ'անուանէ ու Աստուծոյ անսկիզբ Որդին իր ժամանակաւոր զաւակը»։ Մենք այս հարցումին սա յարմար մեկնութիւնը տուինք թէ, Օծուած անուանելու այն խորհրդաւոր կոչումը կը վերաբերի, մեզ՝ Քրիստոնեաներուս (հոգեկան) նախամեծար վիճակին, (բաղդատմամբ հին օրէնքի Հրեաներուն)։

ԺԴ. Օծութեան այս սոսկալի անունը՝ այնքան ահաւորութիւն, սրբութիւն և միեւնոյն ժամանակ ամենառատ օրհնութիւն ունի որ, ինչպէս որ երկրայիններէն ոչ մէկը չի համարձակիր Աստուած անուանուիլ, այլ աստուածային (Աստուծոյ յատուկ կ'անուանուի), այնպէս ալ (մարդկային) մարմինը Քրիստոնեայ անունով կը յորջորջուի, չկրնալով իր անձին յատուկ սեպել Քրիստոս անունդ ինչ որ չկրցաւ կրել նոյն իսկ Ջուրով Հոգին հրաւիրող Մկրտիչը՝ մեծերու առաջինը որ կ'ըսէ. «Ես Օծուածը չեմ, այլ Անոր առջեւէն ղրկուածն եմ»։ Ինչպէս Մարկոս Աւետարանիչին խօսքը կը վկայէ, անով (օծութեամբ) կը շրջէին զոյգերը առաքեալներուն և իբր հարազատ նմանը Աստուածային ձեռքիդ, անով (իւղով) կը գործէին, անոր համար որ իւղով կ'օծէին և առանց մարդկային արուեստի, Քու անունովդ կը բժշկէին։ Որովհետեւ ինչպէս որ մութը լոյսէն, ցաւը առողջութենէն, գիշերը ցորեկէն ու մահը

կեանքէն խոյս կուտայ, անանկ ալ Տիրոջմէ պարգեւուած այս իւղին երեսէն ա՛լն չար երեւոյթները կը վարուին, կը խափանուին և կատարելապէս կը քաշուին։ Եւ ինչպէս որ զզուելի ճանճերն ու սորդի փոքր և ականջ մտնող զեռունները՝ մահացու դեղէ ազդուածի նման՝ այս նիւթին այժմը կը ջնջուին ու կ՚սպառին, այսպէս ալ օրհնութեան շնորհով կատարելագործուած այս եղը (մեռոն) դեւերը կը հալածէ, չարիքներու մուրհակները կ՚ոչնչացնէ և (հոգեւոր) մահուան դատավճիռը կը պատռէ։ Առանց այս օծումին օժանդակութեան՝ սրբագործուած չի սեպուիր աւազանը։ Աւազակներէն մահացու կերպով վիրաւորուած առաջին մարդուն (Ադամ, Ղուկ. Ժ. 30) այս փրկարար դեղը տրուեցաւ, Յակոբի ու Իսրայէլի անբուժելի վէրքերուն համար ալ այս պատուական նիւթը յանձնարարուեցաւ. Դաւիթ՝ այս իւղին փափագելով՝ ձիթենիի պտղալից ծառի պէս Աստուծոյ տան մէջ տնկուիլ ու միշտ հոն մնալ կը յուսայ և այն տանէն լքելով (հրէական) Թլփատութիւնը, մկրտութեան շնորհը կը գուշակէ։

Եւ ի՞նչ է իմ ըրածս. միթէ ասոր (օծումին) վրայ այսչափ մը միայն ճառելով, բա՛ւ լմնցուցա՞ծ ըլլալ կը կարծեմ ամէնքն ալ, երբ երկնայինները իսկ չեն համարձակիր այս խորհուրդին

մէկ մասն իսկ բացատրելու ձեռնարկ մը ընել, ո՞ւր մնաց անոր իսկութիւնը հասկնալ։

ԺԵ. Այս հիմակուան երգած օրհնաբանութիւնովս մէջս փառք կը մատուցանեմ Քեզ այն ամէնուն առթիւ, զոր ըրիր ու կատարեցիր ինծի համար ո՛վ անմահ Թագաւոր, բարի խնամք տանող, գթած և համբերող, հարուստ և ամէն բանի յաղթող առատաձեռն. Դուն որ նախահայրերուն վրայէն իսկ գծագրելով օրինակը (այս օծումին), անոր իսկութիւնը ճշմարտապէս յայտնեցուցիր իմ վրայ։ Դուն որ լոյս իսկ ես բնութեամբ ու մշտապայծառ արեգակ, աշակերտներուդ դասն ալ լոյս անուանեցիր, որով աշխարհի ամբողջ տարածները՝ անոնց երջանիկ շնորհին ճառագայթներովը ողողեցիր։ Անուշահոտ իւղը, մէկէն՝ ոտքիդ վրայ ընդունեցիր երբ օրինակը՝ մաղթանքներուն Քու կողմէդ ընդունուելուն, և միւս պոռնիկէն՝ գլխուդ վրայ (ընդունեցիր) երբ նշանակը մեր նկատմամբ տածած գթութեանդ սիրոյն։ Դուն որ անսահմանելի ես՝ մշտափափաք բաղձանքով հոտուրտացիր ասիկա և (այնչափ հաճելի թուեցաւ Քեզ որ) մինչև իսկ անփոփոխելի ուխտով մշտնջենաւոր օրհնաբանուելիք օրէնք դրիր, և Քու կենդանատու հրամանովդ պատուիրեցիր բոլոր աշխարհի քարոզել քիչ մը իւղին մեծ պատիւը, ապագային լսողներուն հռչակի դար-

մանք պատճառելու և անոնց լոյս ներշնչելու համար։ Առաքեալներուն երջանիկը (Յովհաննէս)՝ «Դուք Սուրբին օծութիւնը ունիք» ըսաւ, բացատրելով մեզ առատաձեռնուած խորհուրդը որ շնորհուած է կենդանարարիդ անպակաս լրութեանը առաւելութենէն։ Երկնային բարերարութեանց օրհնութեան կաթիլն եղող այս իւղը, որ անհատանում կերպով մեր վրայ կը սրսկուի, յաւէտ մասնաւոր նմանութիւնը ունի լուսոյ և սուրբ Հոգիիդ, որուն՝ ճիշդ նմանն է և յարմարը, և լոյս կ'անուանուի, երբ արարածներու ամէնէն առաջ ստեղծուածը և պատկերակիցը արարչութեանց, որով մեղքի մթութեան խաւարը կը հալածեր. իսկ նշան (կ'ըսուի) անոր համար որ ամէն տեսակ արարածներուն բնական հաւատարութեամբ կը կցորդուի, յայտնի կամ գաղտնի, լռելեայն կամ բացէն, և եթէ հակառակ կողմէն չզարնուի, ինքնիրմէ բորբոքելով չուզեր բռնկիլ։ Դարձեալ օծումն ալ (կ'ըսուի այս իւղը), որպէսզի երբ երկնաւոր արքայ՝ (օծուածներ) որդեգրելով, Քեզի հետ Հօրդ ժառանգութեան մասնակից ընես զանոնք, և ողորմութեանց ցեղակից եղող օծումով, մեր մէջ անեղծ կերպով նկարելով աստուածային որդեգրութիւնը, յաւիտենական կեանքին մէջ փայլինք։ Դարձեալ հոգի ալ (կ'ըսուի), որ քու աստուածային ազդեցութեամբ մեր

մէջ մթերուած խաբէական արարքները կը մաքրէ, որպէս զի Նոր փոփոխութեան շնորհիւ, հոգւով ու ճշմարտութեամբ երկնաւոր Հօրդ երկրպագենք, յայտին հաւատքովը Քեզի հետ գամուելով, ո՛վ ամէն բան պարգեւող։

ԺԶ. Ահա, արդարեւ յաւէտ այս լուսով շաղախուած պատուական խուզին մէջ խոկալէս կը տեսնուի սէրը Վերնականիդ։ Ասոր համար, Պօղոս իսկ յարմար տեսեց իր գոհաբանութեան ճառին մէջ յայտնապէս ըսել. «Ան՝ որ Ձեզի հետ մէկտեղ զմեզ Յիսուս Քրիստոսով օծեց, Աստուած է, որ կնքեց զմեզ և հոգիին գրաւականը մեր սրտերուն մէջ դրաւ»։ Եւ դարձեալ կ՚ըսէ «Աստուծոյ սուրբ հոգին մի՛ տրտմեցնէք, որով կնքուեցաք փրկութեան օրը»։ Օծուած անուանուիլը՝ Նոր օրէնքին շատ ալ հին օրէնքին մէջ պատկառելի և զօրաւոր էր, ինչ որ Աստուածային անօրինութիւններուդ խորհուրդին սկզբնաւորութիւնը ճշմարտաբար սահմանող Դաւիթին Սաղմոսը սա խօսքն ալ կ՚ապացուցանէ. «Ժողովուրդներու իշխանները հաւաքուեցան, կուտակուեցան Տիրոջը և անոր օծեալին համար»։ «Ո՞վ է, որ իր ձեռքը Տիրոջը օծեալին երկնցնէ ու քաւութիւն առանայ» (Ա. Թագ. ԻԶ. Թ)։ Մեծ մարգարէութիւն մը որ կը ցուցնէ թէ՝ ո՛վ Տէր, քու վրայ յարձակիլ յանդգնող մոլեգնած չար հոր-

եաններուն խումբը դատապարտուած է անքաւելի արեանդ համար. որովհետեւ թէեւ իր ազգակիցէն սպաննուեցաւ Սաւուղ, սակայն անոր սպանութեանը համար, օտար ազգերէ նախատինք ու ամօթ չկրեց Հրեայ ազգը, մինչեւ որ Աստուածային արեանդ հանդէպ պարտական չգտնուեցաւ։ Աղօթքով նուիրուած աղաչանքը զոր Սաղմոսի միջոցաւ կը մատուցանենք թէ՝ «Քու սիրելիիդ Դաւիթին համար երեսդ մի՛ դարձուներ Քու օծեալէդ». և դարձեալ «Նայէ ու տես Քու օծեալիդ երեսը», թէ «Ողորմէ քու օծեալիդ», մեծ գրաւական ու յիշատակ մ'է մեր ապագայ ժառանգութեան։

ԺԷ. Այս լոյս պարունակող նիւթը, երկրպագուած ձեռքիդ շնորհած պարգեւն է ո՛վ Քրիստոս, որովհետեւ մարգարէն իր արքայական բարձրութեան ճոխութեանը մէջ ասկէ մեծ բան չի գտներ, երբ Քու կողմէդ կ'ըսէ թէ՝ ո՛վ Տէր, «Դաւիթ ծառաս գայ և իմ սուրբ իւղովս օծեցի զայն»։ Ուրկէ կատարեալ գիտակցութեամբ հաւքուրելով օծութիւնը լոյսիդ ո՛վ Տէր Յիսուս Քրիստոս, ճանչցանք թէ՝ մշանջենաւոր կերպով անփոփոխ ես. թէ՝ Դուն ամէնքը ու ամէնուն մէջ ես, միակ թագաւորը թագաւորներուն և ճշմարիտ օծեալը՝ իւղով դրօշմուածներուն, որ կը փառաբանուիս երկրպագութեամբ երէկ և այսօր։ Որով-

հետեւ ինչպէս որ ճարպի մէջ թաթխուած պատրոյգը, բնաւ լոյս չարտայայտեր, մինչեւ որ կրակով չբռնկի ու չը վառի, այնպէս ալ մեր վրայ թափուած այս լոյսի օծումը, յաւիտենական աշխարհին մէջ միայն կը վառի ու կը պայծառանայ։ Այս է (մեռոնին) մեծութեան պարզ բացատրութիւնը որ մեր նախնիքներէն սկսեալ մինչեւ այսօր եկած է, պատշաճ օրինակով ու նմանութեամբ և նկարուած է հրաշափառ գոյնով։

ԺԸ. Արդ, առեղծողիդ յատուկ և ընտանի այս ապրեցնող և գերահրաշ աստուածային գործերուն պատճառը (միւռոնն է) որ առանց անոր կարելի չէ Քրիստոնեան սկսուիլ կամ Նազովրեցի անուանուիլ. կամ Յուդայի զաւակներուն կարգը յիշատակուիլ և կամ Յակոբին Աստուծոյն անունովը քաջալերութիւն ստանալ. սուրբ երրորդութիւնդ խառնուելով կը միանայ օրհնուած ձէթի այս նիւթին որ շնորհի ճառագայթն է և գեղեցկութիւնը՝ մեր դէմքերուն, գծագրութիւնը՝ երեսներուն, բարեձեւութիւնը՝ կազմուածքին, լուսաւորութիւնը՝ աչքերուն, խաչակնքութիւնը՝ բիբերուն, վայելչութիւնը՝ այտերուն, զարդը՝ հեր գարանքին, պահպանակը՝ շրթունքներուն. պատրաստողը՝ կրօնքին, յարմարցնողը՝ վարքերուն, միութեան կապը՝ հաւատացեալներուն, ոյժը՝ անձերուն, զօրավիգը՝ (սատանին դէմ) դի-

մաղրութիւններուն, խափանիչը՝ կախարդական յաւռութններուն, քակողը՝ խաբեբայական հմայեկներուն (Նուախայ)։ Որ (միւռոնը) ձեռնածուները կը նահանջեցնէ (օգկապազները կ՚արգիլէ). կախարդները կը խայտառակէ, գաղանի աղանդաւորները կը գտնէ, դեւերու հետ կը կռուի, ցաւերը կը փարատէ, կնքուած ու մկրտուածները կը կատարելագործէ, Նորահաւատ երախաներուն տենչանքն է և անհաւատներուն անզննելի է։ Հեթանոսները կը հիանան անոր (միւռոնին) վրայ և անհաւատները կը նախանձին, որ գաղանիքները կը պարզէ, որ անարգները յարգելի կ՚ընէ. տարուկներուն փառքն է և կիներուն պճնումի զարդը, որ տղոց աճեցումն է և ծերերու հրճուանքը, Նուիրուածները (քահանայացու) կը ձեռնադրէ, ու սրբութիւնն է մաքուրներուն, պսակը՝ (քրիստոնեայ) թագաւորներուն, ճոխութիւնը՝ (քրիստոնեայ) արքայներուն. և գերազանց պատիւը (քրիստոնեայ) կայսրերուն։ Որովհետեւ, ինչպէս որ ամանի մը կնքուած ըլլալը, անոր պարունակութեանը թանկագին ըլլալու նշանն է, նոյնպէս ալ, ո՛վ տէր Յիսուս Քրիստոս Աստուած, երբ ասով (միւռոն) Քու անունովդ կնքուի մեր անձը, յայտնի նշան է թէ Քու բարձր շնորհդ պահուած է անոր մէջ։

Իսկ (միւռոնին) անունը՝ Եգիպտացիներէ

ակնեալ հոգիով լեցուած իմաստուն մարդիկնե-րու յորջորջումին ու անուանումին համեմատ կը նշանակէ կերպարանքը ու արդիւնութիւնը այն իրին՝ որ անհաւոր պատկերն է Ս. Խորհուրդին։

## Սուրբ լոյս տուող եղին՝ միւռոնին համար

ԺԹ. Օրհնաբանուած այս միւռոնը, զոր մար-գարէն կանուխէն, իբր աչքերու լոյս՝ Թախանձե-լով կը խնդրէր՝ քերականական կազմութեանը ու Հոմերոնի (Յունարէն) ստուգաբանութեանը հա-մեմատ Թարգմանուելով կը հասկցուի ինչ ըսել. այ-սինքն թէ՝ մեր բնութիւնը զօրաւոր կերպով իրեն քաշող, որ չքնաղ փոփոխութիւնով ջուրին հեղուկ բնաւորութիւնը հաստատուն պնդութեան կը փոխէ, երբ լուսաւորելու համար աւազանին մէջ Թափուի. որ (միւռոնը) մեր մէջ խառնուելով իբր կաթը մակրդող՝ իր հաստատութիւնովը կը փո-խարինէ իմ ցնդած վայրագութիւնս, ինչպէս նաև աղբիւրներու մշտահոս հեղեղը։ Իսկ ուրիշ տեսակ ստուգաբանութեան մը համեմատ, միւռոնը մութ ալ կը նշանակէ, որ մթին, ծածկուած և չտեսնուող ըսել է և այս տեսակ անուանակոչու-թիւն մը անյարմար չէ (միւռոնին), որովհետև ա-նունը իր նշանակած իրէն կ'առնուի և միւռոնին այս խորութիւնը անքննելի է յաւէտ. ամէն սըր-բութեանց սրբութենէն աւելի։ Որովհետև չէ թէ

Ջուրի նման կը լուանայ աղտը և կամ հացի համա-գամանքով սիրտը կը հաստատէ, այլ մարդը նո-րոգելով, անոր աղդող զգայարանքներուն վրայ տիրաբար կը խաչակնքուի, սակայն երկնային ան-հասանելիութեամբը անունը անքննելի է։ Եւ ինչ-պէս որ Աստուած իր ծայրագոյն պայծառութեանը համար իսկ և իսկ անմատչելի լոյս կ՚ըսուի, բայց անահման փառաւորութեամբը մեր մտքի հաս-կըցողութենէն վեր ըլլալով, անքննելի խաւարի մէջ ծածկուած կը հասկըցուի, այնպէս ալ լոյսի այս ծորումը ճարտար բանաստեղծներու ոմանց լեզուովը դրականապէս առնուելով մութ կ՚ըսուի անոր համար որ մարդկային բնութիւնը չի կրնար հասկնալ անոր (միւռոնին) իսկութիւնը։ Իսկ աստ-ուածային երկու հանգամանքներն ալ կատարե-լապէս ունի ասիկա (միւռոնը) իր մէջ, որովհետև բարձրեալին անուամբ յորջորջուելով կրկին կը մե-ծանայ, անուշահոտ ազնիւ կնդրուկով բաղադ-րուած այս նուիրական եղը. վասն զի Մովսէսի խօսքին համեմատ այրող կրակ է Տէր Աստուածը և դարձեալ Յովհաննու խօսքին համեմատ լոյս է. ուստի Եսայի ալ ճշմարտապէս ասիկայ կ՚ակ-նարկէ երբ կ՚ըսէ «Իսրայէլին լոյսը կրակ թող ըլլայ»։

Ի. Դարձեալ ուրիշ խօսքերով բացատրելով յայտնեմ պատկերը այն իրին. որովհետև չեմ

մոռնար կրկին գովեստով օրհնել գթութիւնը մեծիդ, ուրկէ անուշցաւ իմ նողկալի բնաւորութիւնս. Դուայ որ (եբրայեցերէն) լեզուութիւն ըսել է, յարմար կերպով կը նշանակէ չարչարանքը տաժանելի կեանքին. Դունն ալ մեր լեզուի ստուգաբանութեան համաձայն ազգակից կամ հովանիչ է Դաւեղաւննեան: Որովհետեւ այս հոգեւոր ծնումին շնորհիւ խղուելով կը կարուինք հակառակողին (սատանայ) անտարատէր, մահանման եւ տաղտկալի ուզազիր հեշտութիւններէն, որ խոնաւ օդի մեղկութեամբ կը թուլցնէ մեր ձայն տուող քնարները (ականջ) եւ անոր թմբուկին վրայ ծածկուած նուրբ մաշկը — որ ամէն հարուածի խրոխտ ձայն կը հանէ— վրան ջուր թափուածի խոնաւութիւնով կը թուլցնէ եւ ներդաշնակութիւնը եղծանելով՝ կորուստի կ'ենթարկէ մեր բնաւորութիւնը. եւ (այս ծնումին շնորհիւ) կրկնապատիկ յոյսով դարձեալ կը կապուինք Քու խաչիդ խելքէ վեր խորհուրդին հետ ո՛վ Քրիստոս. Կենդանիիդ մահուամբը մկրտուելով՝ անով անվերջ կեանքիդ կը մասնակցինք եւ կատարեալ համարձակութեամբ անբաժանելի կերպով Քեզ իսկ կը միանանք յաւէտ ո՛վ Աստուած:

ԻԱ. Այս եղը՝ Քու անունովդ օծած քառակուսին (խաչը) Բարձրեալիդ նշանին (խաչին) կը հաւասարցնէ, Քու ապրեցնող արիւնիդ նման, եւ

անոր փառքին հաւասար շնորհ կ'ընձեռէ (օծուած խաչին), զոր անբաժանելի փառքով կը պատկէ ու կը մեծցնէ։ Մարգարէին կանխասացութեան համեմատ օրհնութեան իւղի փոյթ կ'անուանուի, որ անտառի հասարակ բոյսերէն կազմուածը՝ չորին վտանգաւոր արկածներէն և մոլար կործիքներէն զօրաւոր կերպով մաքրելով՝ անեղծողիդ ծառայելու յատկացուած այն կեանքի նիւթին (խաչին) կը հաւասարցընէ։ Մեր մարմինին միշտ բաց եղող թափանցիկ պատուհաններուն մուտքն ալ՝ (զգայարանք) Ահաւորիդ մեծութեան զօրաւոր անունովը՝ երբ խոհական համեստութեամբ Քեզմով խաչակնքուի, Հոգիիդ ըղձալի բնակարանը կը դառնայ (մեր անձը) որ ո՛չ չարին խաբէութիւններէն և ո՛չ ալ խաբողին (սատանայ) մութ հովերէն կ'աղդուի։ Այս լուսով զտուելով կը հաւաքուինք իրիկուան պաշտամունքի գոհաբանութիւնը նուագելու երկնային լուսաւոր լամպարներուն հետ, իբր օրինակը Քու շնորհիդ մեր մէջ վառելուն։ (Հոգեւոր) Փրկութեան բարիքներուն յիշատակը ասով տնկուելով կը ծագի և ծաղկաւէտ ըլլալով կը պտղաբերի, Մեծիդ գալստեանը վերջի գիշերուան ընթրիքին պատրաստութեանը գործածուելու համար։ Ահա այս օրինակով է որ կը գործածենք ճրագին լոյսը։

ԻԲ. Դարձեալ գծուած գիրերու գումարու-

մէն՝ (այլ բէն գիրի) 24 (կամ քսան անգամ չորս) գիրերու շարադասութենէն սկսելով՝ երբ այբ գիրէն համրենք, 22երորդ գիրին (Ն) վրայ այս խորին խորհուրդը բացատրելով՝ ամենայարմար կերպով գեղեցիկ ճաշակ մը կրնանք պատրաստել հաղորդակից գտնուողներուն. որովհետեւ 80 նշանակող (Ձ) գիրը երբ 400ի փոխենք (Ն) ստոյգ բացատրութեամբ Ձէ-Նը (ձէթին ձիւթ ըսած է հոս) Նէ-Ն կ'ըլլայ, ինչ որ նմանութիւնն է խմորի արդիւնքին (մաեա) որ ամբողջ զանգուածը իրեն կը հաւասարցնէ զօրեղապէս եւ քիչը չէ որ շատէն կը գոյանայ, այլ Աւետարանի առակին համեմատ ամէնքն ալ նոյն իրին դարձնելով դէպի իրեն կը քաշէ ու շատցընէ։

ԻԳ. Հեղութեան այս եղը բարձրանալու եւ խոնարհելու օրինակ է միշտ. մէկուն՝ կակուղ պատառով կը տրուի ուղիղ եւ յարմարաւոր խօսքի նման, իսկ բոլոր լոյծ, հեղուկ եւ ջրային նիւթերէն վեր կանգնելով, անոնց երեսին վրայ կը պտըտի, իբր գերագոյն պատկերը հրաշափառ խորհուրդին. եւ երբ մորթէ տիկի մէջ ալ դրուի, ոչ թէ գինիի նման եւ կամ ջուրի թացութիւնով կը թուլցնէ ու կ'աւրէ զայն, այլ պատշաճ կակուղութեան սահմանին մէջ կը պահէ իր ամանը։ Այսպէս ընդունելով Քու բարիքներուդ անհաւասար առաւելութիւնը՝ այս արքա-

նուէր օծումը Քու արիւնովդ կը գրենք մեր դէմքերուն ճակատին վրայ, ո՛վ կենդանի Աստուծոյ որդին. և մեր բնութեան շունչին (հոգի) մէջ Քու Հոգիովդ կը տպաւորենք զայն, մեր մտքին խորհուրդովը հաստատելով թէ, Նորէ՛ն պիտի յայտնուի այն և պիտի փայլի շատ մը ստուերով ճիւղաւորուած՝ ընդարձակօրէն տարածելու՝ բազմատեսակ հրաշքներ գործող եղին ընծայած պտուղը, հանդերձեալ աշխարհի ապագայ փառքին մէջ լոյս տալու համար մեզ։ Հոգեւոր, երջանիկ և երկինքի մէջ վառող այս եղը՝ այն ատեն Քու նշանովդ թող վառի երեսներուս ու դէմքիս պատկերին վրայ։

ԻԴ. Այս մեծ զօրութիւնը՝ (մեռոն) իբր խելքէ մտքէ վեր ու անըմբռնելի՝ թեթեւ թեւերով՝ մտքի հասողութեան պայմաններէն վեր ելլանալով արագութեամբ, մարդկային հասողութենէն դեր ի վեր, անծայր ճամբով, աննետ փոխուստով, լայն անդրպետով յաւէտ զատուեցաւ ու հեռացաւ ինձմէ. ո՛չ իրեն հաւասար մէկը ունենալով (հին ու Նոր օրէնքին մէջ, անով) օրինակուեցաւ, ո՛չ զուգակից ու նմանակից ունեցաւ, ո՛չ ձեւակերպութեամբ սահմանուեցաւ, ոչ ալ աստիճանակից ընկերի մը չափովը կշռուեցաւ, այլ ահա Աստուածային խաչիդ նշանին և պարեցնող արիւնիդ հաւասարելով՝ հոգեւոր զօրութեամբ գերա-

զանց ըրուեցաւ անոնց հետ։ Արդ, ո՛վ Տէր, տուր և ատոր միջոցով օրհնէ զմեզ, որ ահաւոր, լուսաւոր, երկնաւոր և զարմանալի անունդ աւելի եւս օրհնուի բուրվառովը մաքրակրօններուն և գովաբանուի անճառելի փառքդ ո՛վ սուրբ որ մաքուր, անքննելի, անպատմելի, բարձրացած, ողորմած, կրկին երգուած ճշմարիտ. բարերար և սուրբ ես, տուր փրկէ մեր հոգիները, քաւութիւն տո՛ւր, բժշկութիւն պարգեւէ՛, շնորհ պատրաստէ և երջանկութիւն առատաձեռնէ՛։ Այս ձէթին երկինքէն անձրեւուած լոյսովը օծուելով անարատ թող դառնամ. ես որ այս իւղով եղոտած՝ կտաւի բանաւոր հէնք մ՚եմ, մեղքի ախտութիւնը թող չմտնէ մէջս. թող չգրաւէ զիս և թող չաղտոտէ ընաւ՝ կերպարանքը հոգիիս։ Անոնք որ այս եղով օծուիլ կը փութան՝ հոգիով երջանկապէս զարդարուելով՝ սուրբ վայելչութեամբ՝ գեղեցիկ կերպով թող պճնուին ու պարծենան՝ զարդարուած հարսի նման։ Այս լուսափառ և Աստուածմէ ձրի պարգեւուած կրակը՝ փորձուելու համար իրեն մօտեցողներուն՝ կրկնապատիկ եռացումով ջուր տրուած և փափաքուած ջերմութեան աստիճանին հասնելով՝ ուրիշ ձեւի փոխուած երկաթի (պողպատի) զօրութիւնը թող տայ, որով կատարեալ և ամենապատրաստ պնդութեամբ՝ կարծր ու անշարժ վէմիդ վրայ տեւական կերպով արձանանալով՝

*Քեզմով հաստատուիմ հոն՝ առանց երկմտելու։ Երկնային յաղթանակի այս պարգեւովը վարուող-ներուն նշանը այս ըլլայ որ, ջուրով չխեղդուին, կրակով չայրին, ցուրտէն չսառին, վնասակար հովէ չմարին, ո՛ և է պիղծ ուրուականէ չաղտո-տին, իրենց պահածները չարին չյանձնեն, երբ աշ-խարհէ ելլեն՝ յիմարաբար դուրս չհանեն իրենց մթերած կեանքի գանձերը․ ոչ անպատսպար մնան Քու թեւերուդ օգնութենէն և ո՛չ ալ մեզի կցուած օծութիւնը անմաքուր կերպով մերկանան։ Այլ Քու շնորհիւդ ատով այրուած ըլլանք, ատով գիր-նանք, ատով լուսաւորուինք, ատով արդարա-նանք (հոգւով) ազատինք, պսակուինք ու (յաւի-տենականութեան մէջ) թագաւորենք։ Եւ Քեզ՝ որ միակ օծուած մէկն ես, ամէնուն կողմէ օրհնու-թեան երգեր, լեզուներու ալէլուներ, ձայներու հնչումներ, գովաբանական յաղթանակներ, շըր-թունքներու բարեբաստութիւններ, սաղմոսներու սրբասացութիւններ թող մատուցուին յաւէտ Հօր և Սուրբ Հոգիին հետ. ամէն։*

Մաքուրին համար (կոչնակ) այն է իմ խոստովանութիւնս (զոր գրեցի ՂԲ. գլխուն մէջ), իսկ մաքուրներէ աւելի մաքուրին (մե-ռոն) համար այս է հաստատ դաւանութիւնս։

Նոյն այն Հոգւոյն ալէլուայից մաղթանքներուն ու
ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը:
Սրտի խորերէն խօսք առ Աստուած.

## ՂԴ. ԽՕՍՔ

Ո՛վ բարերար և ամէնքն ունեցող յաւիտենական Աստուած, լոյսն առեղծող ու գիշերը յօրինո՛ղ, մահուան մէջ կեանք և մութի մէջ լոյս, ակնկալողներուն յոյսն ու չուարածներու համբերութիւնն ես, որ Քու ամէն բան հնարաւորող իմաստութեամբդ մահուան ստուերները՝ արշալոյսի կը փոխես. ո՛վ անհատնում ճառագայթ և չխաւարող արեւ, գիշերուան մութը չկրնար ծածկել Քու տէրութեանդ փառքը, որուն կը ծնրադրեն բոլոր արարածները, երկնաւորներն ու երկրաւորները ու սանդարամետին խորը (գետնին տակ) ապրողները. որ կապուածներուն հեծեծանքը կը լսես և խոնարհներուն աղօթքը նկատողութեան կ'առնես ու անոնց խնդրուածները կ'ընդունիս ո՛վ Աստուածս ու (երկնաւոր) Թագաւորս, կեանքս ու ապաւէնս յոյսս ու վստահութիւնս Դուն, ո՛վ ամէնուն Աստուածը Յիսուս Քրիստոս, Դուն, ո՛վ սուրբ, որ սուրբերուն հոգիին մէջ կը հանգչիս, վշտերու մխիթարութիւն և մեղաւորներու քաւարան ես: Դուն, որ ամէն բան գիտես անոնց

կատարուելէն առաջ, աջիդ պահպանողական զօրութիւնը ղրկէ՛ ու փրկէ՛ զիս գիշերուան վախէն ու չար դեւէն։ Որպէս զի սոսկալի և սուրբ անուանդ յիշատակը՝ հոգիիս շրթունքներովս ու ջերմ իղձով համբուրելով՝ կատարեալ սրտով Քեզ կանչողներուն հետ պահպանուելով ապրիմ։

Բ. Ու Քու խաչիդ նշանին կնիքէն, զոր աստուածային արիւնովդ ներկելով նորոգեցիր և որով որդեգրութեան նոյն շնորհովը զմեզ մկրտեցիր, ու Քու փառաւոր պատկերիդ վրայ նկարելով յօրինեցիր, այս աստուածական պարգեւէդ թող ամենայն սատանան, մեքենաները թող քակուին, ծուղակները թող վերնան, կռուողները թող յաղթուին, որածայր զէնքերը թող պակուին, մէգը թող ցրուի, խաւարը թող փարատի, մառախուղը թող անհետի։ Բազուկդ հովանի թող ըլլայ ու աջդ թող կնքէ, որովհետեւ գթած ես և ողորմած ու անունդ ծառաներուդ վրայ (գթացող) կոչուած է։ Եւ Քեզ Հօրդ ու Սուրբ Հոգիովդ փառք և իշխանութիւն կը վայելէ յաւէտ. ամէն։



*Նոյն այն Հոգիին ողբերգական մրմունջներուն*
*ու ողբախառն հեծեծանքներուն նո՛ր յաւելուածը։*
*Սրտի խորերէն խօսք առ Աստուած։*

## ՂԵ. ԽՕՍՔ

Ո՜վ Արդար արեգակ, օրհնուած ճառագայթ, լոյսը կերպաւորող անձկալի փափագ, անքննելի բարձրեալ, անպատմելի զօրութիւն, բարեդէպ ուրախութիւն, լոյսի նշանակ, գովուած երկնաւոր, փառքի թագաւոր, ստեղծող Քրիստոս, խոստովանուած կեանք։ Ողբալիիս բազմասխալ ձայնին վրիպանքներն ու թերութիւնները՝ ամենակարող խօսքովդ ուղղելով ու լրացնելով՝ իբր հաճելի աղերս՝ Քու բարձրեալ հօրդ ներկայացուր զանոնք։ Որ ինծի համար անէծքի փորձութեանը ենթարկուեցար, ու իմ նմանութեամբս կերպաւորուեցար, որ կեանքի կատարեալ օրհնութիւն ես և բարի խնամք տանող տեսուչը՝ ամենուն, երկնայիններուն ու երկրայիններուն։ Որովհետեւ եթէ իմ տեղս մեռնիլ յանձն առիր, Դո՛ւն՝ ո՜վ Տէրն ու Աստուածը ամենուն, ո՜րչափ աւելի պիտի հաճիս նաեւ կարեկցիլ իմ վտանգաւոր տխարուս, ինծ՝ պարտաւորիս հետ՝ մեզմէ առած մարդկային մարմինովդ մինչ աղօթելով Քու հօրդ որ համապատիւ է Քեզ։

Թ. Եւ պատուական արիւնիդ շնորհիւ, որ միշտ կը մատուցուի Քեզ ղրկողին կամքը հաճեցնելու համար, դատապարտուած մեղաւորիս վտանգները թող վերնան, պարտքերը թող ներուին, ամօթը թող դարմանուի, պատկառանքը թող մոռցուի, դատակնիքները թող բարեփոխուին, որդները թող ատակին, լացը թող հեռանայ, ակռաներու կափկափումները թող հանդարտին, ողբերը թող հատանին, արցունքները թող կտրուին, սուգը թող անհետի, մուխը թող հալածուի, սատակիչ կրակը թող սպառի, բազմօրինակ տանջանարանները թող փճանան։

Դ. Ամէնուն կեանք պարգեւող ու կամեցողիդ գթութիւնները թող գան, լոյսդ թող ծագի, փրկութիւնդ թող փութայ, օգնութիւնդ թող հասնի, այցելութիւնդ թող ժամանէ, ողորմութեանդ ցօղը թող կանխէ, թող առաջանայ, թող ոռոգէ թշուառութեամբ մահուան վիհն ինկած ոսկորներուս չորցած արտերը, լոյսի օրուան (յարութենական կեանքին) համար պատրաստելով մարմինիս երկիրը՝ թող ծաղկեցնէ ու պտղաբերէ զայն, բաժակը Կենարարիդ երկնաւոր արիւնին, որ առանց հատնելու միշտ կը պատարագուի, ննջեցեալներու հոգիներուն փրկութեան կենարար յիշատակին համար։ Որպէս զի մարմինիս մեղքովը կատարելապէս մահացած հոգիս Քու շնորհիւդ զօ-

*րանայ ու Քեզ՛ով նորոգուիմ, ո՛վ Գթած, և արդարներուն յարութեան ատեն՝ անմահ կենդանութեամբ մեղքէ զատուելով Քու հօրմէդ օրհնուիմ։ Որուն հետ Քեզ փառք և վայելուչ գոհաբանութեամբ սուրբ հոգիիդ բարեբանութիւն թող մատուցուի հիմա, միշտ և մինչեւ վերջը․ ամէն։*

ՎԵՐՋԱՑԱՒ

---

ԳՐԱԲԱՐ ԲՆԱԳԻՐԷՆ ԹԱՐԳՄԱՆԵՑ

**ՄԻՍԱՔ Ա. Մ. ԳՕՋՈՒՆԵԱՆ**

**(ՔԱՍԻՄ)**

1903 *փետրուար* 10

*Կ. Պոլիս*

---

ՀՐԱՏԱՐԱԿԵՑ

«ՄԱՆԶՈՒՄԷԻ ԷՖՔԵԱՐ» ՀԱՅԱԹԵՐԹԻ

ՏԷՐՆ ՈՒ ՏՆՕՐԷՆԸ

ՅՈՎՀԱՆՆԷՍ Թ. ԳԱՅՍԷՐԵԱՆ

Պապը Ալի ճատտէսի, թիւ 38



# ՄՕ՛ՐՍ
## ՏԻԿԻՆ ՄԱՐԻԱՄ Մ. ԳՕՉՈՒՆԵԱՆԻՆ

Սիրելի մա՛յր,

Հիմա այս պահուս ուր Աշխարհաբար Նարեկը վերջացուցի, երեւակայութեանս առջեւ կը պատկերանայ մեր ամարանոցի այն չքեղ ննջասենեակը, որուն առջեւ կը տարածուէր ընդարձակ բուրաստան-պարտէզ մը, հարիւրաւոր ծառերու ակնապարար պէսպիսութիւնով եւ երփներանգ ծաղիկներու պսպղուն հոյլով, որոնք զմրուխտի նման կանանչ մարգագետիններու մէջ՝ հոս հոն ցանցնուած՝ հիանա՛լի տեսարան մը կը պարզէին, երբ մանաւանդ առուակին ջուրն ալ գիլ գիլ հոսէր մարգագետիններուն տակէն, յաւերժացնելու համար անոնց դալարութիւնը։

Գիշերները երբ զաւակներդ մայրական հովանիիդ տակ առած՝ առանձնանայիր նոյն այն ննջասենեակին մէջ, չէիր ուզեր լոյս վառել, անոր համար որ մեր սրտին լոյսը մարած էր արդէն, հայրիկս իր Թար·մ երիտասարդութեան մէջ մեռած էր, ա·անդ ձգելով քեզ իր երկու զաւակները՝ զիս որ հազիւ հինգ տարեկան կայի եւ եղբայրս որ վեց ամսու չէր դեռ. իսկ դուն՝ քսաներկու տարեկան ծաղիկ հասակիդ մէջ սեւեր հագած

տայրի մ՚էիր, անգամ մ՚ալ երկնային կեանքին մէջ հարս ըլլալու ուխտած անպար որբեւայրի մը։

Ի՞նչ միսթիք կեանք էր այն զոր կը վարէինք մութ սենեակին մէջ, ուր լուսնկան ծառերու տաւերախիտ տերեւներէն թափանցելով՝ պատուհաններէն ներս կը ցրուէր իր ակար ցոլքերը. վարէն՝ հարիւր կանգուն հեռուէն հոսող գետակը կը ճողբար իր անվերջ ու սարսռեցուցիչ ճողբիւնով և Սահակ Թուշունը կարծես աւելի զարկ մը տալու համար գիշերուան հանդիսաւոր լռութեան, աւանդական քրոջ սո՜, հոկ. սո՜, հոկ անվերջ աւաջներով կ՚ողբար կորանցուցած եղբայրը։

Այն ատեն քու անվերջ յուզումներուդ ու անդարմանելի կորուստիդ առջեւ փոխանակ ակարանալու, արցունքներ թափելու, որպէսզի կուլայիր, և այն հասակէս՝ ինծի չզգացնելու համար աշխարհի դառնութիւնները, քովդ կը նստեցնէիր զիս ու մէկտեղ կ՚երգէինք Նարեկացիի հոգեշունչ աղօթքները, «Ընկա՛լ քաղցրութեամբ Տէր Աստուած Հզօր, զդառնացողիս զաղաչանս». ո՜հ, տառապած հոգիի մը համար Նարեկացիին Աստուծոյ ուղղած խօսքերը կրկնելէ աւելի ի՞նչ մեծ մխիթարութիւն կրնայ ըլլալ։

Արդէն դո՛ւն, սիրելի մայր, քու ընտրութիւնդ ըրած էիր և շարունակ կը կարդայիր Յունկի Գիշերները, Քեմփացին և մանաւանդ Նարեկը. երեքն ալ հոգին ազնուացնող, բարքը վսեմացնող, բայց միսթիք գրուածներ, որոնց մթնոլորտին մէջ ապրելու այնչափ տենչ ունէիր։

Եունկն ու Քենովարէն լիուլի կը հասկնայիր, իսկ Նարեկն ալ հոգիդ կը հասկնար, ինչպէս ամէն Հայ-Քրիստոնեայի հոգին կ՚ըմբոշխնէ այն սրբազան ընթերցուածները՝ որոնք ժողովուրդին խօսածէն տարբեր, գրաբար ոսկեղէնիկ լեզուով կը կարդացուին Աստուծոյ տաճարներուն մէջ։

Տարիներ անցան, զիս դաստիարակեցիր, դպրոց ղրկեցիր, ո՛րչափ որ կրնայիր, և ես երիտասարդութեանս մէջ տեսնելով որ՝ Թախիծի ու սուգի օրերդ անցընելէ և զաւակներդ մեծցընելէ ետք՝ Եունկն ու Քենովարէն մոռցար, բայց Նարեկի համար ունեցած սէրդ աւելի կրկնապատկուեցաւ, քեզ և ա՛մբողջ Հայ-Քրիստոնեաներուն ծառայութիւն մը մատուցած ըլլալու դիտամով, որոշեցի հասկնալի լեզուով մը՝ աշխարհաբարի թարգմանել Նարեկը։ Այս մտադրութիւնս աւելի եւս որոշ գոյն մը առաւ, երբ՝ իր օժիտներուն հետ Նարեկ մը բերաւ ամուսինս, ինչ որ աւելի եւս գրգիռ մը եղաւ ինծի և անմիջապէս ձեռնարկեցի թարգմանութեան գործին։

Ձեռնհաս անձնաւորութիւններ գիտեն արդէն թէ, ի՛նչ դժուարութիւններով ու յուսահատեցնող խրթնութիւններով խճողուած է այս սրբազան մատեանը, որուն խրթնութիւններուն մեծագոյն մասին պատասխանատուն հին ժամանակուան տգէտ ընդօրինակողներն են եղած։ Այս երանե-

լիները բան մը չհասկնալով իրենց կարդացածէն, չեն կրցած ուշադրութիւն ընել գրաբարի նրբութիւններուն, որուն հետեւանքով շփոթութիւնը մտած է Նարեկներուն մէջ և այսօր կարեւոր կամ թեթեւ երկու հարիւրէ աւելի տարբերութիւններ կան Նարեկներու այս կամ այն տպագրութեան մէջ։

Այսչափ խրթին ու դժուար հասկցուող գործ մը, անսխալ թարգմանած ըլլալու յաւակնութիւնը չունիմ. քանի որ Նարեկի մեկնութիւնը գրող Ս. Հայրերն իսկ շատ տեղ տարակարծիք գտնուած են իրարու։ Եւ արդէն իմ նպատակս ալ Աշխարհաբար Նարեկը ձեռքս բռնած՝ աստուածաբանական կաճառի մը առջեւ մրցումի ելլել չէր. ես կը փափաքէի

Ս. Գրիգոր Նարեկացիի այնչափ հռչակուած Աղօթագիրքը, ժողովուրդին ամէն դասակարգին մատչելի լեզուով մը թարգմանել։

Եւ ուրախ եմ որ այս նպատակիս ալ հասայ, որուն բացորոշ ապացոյցն է ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ՆԱՐԵԿԻՆ՝ մեծայարգ հասարակութենէն գտած անօրինակ ընդունելութիւնը։

Սիրելի՛ մայր, դուն ականատես էիր արդէն այս ծանր աշխատութեան, զոր կը թեթեւ-

ցընէիր յաճախ քու քաջալերիչ ներշնչումներովդ։ Նարեկին գրաբար բնագիրը հասկնալ չէր բաւեր, պէտք էր նաեւ այնպիսի ձեւով մը աշխարհաբարի վերածել զայն, որ թէ՛ հասկնալի, ընթացիկ ու սահուն լիզուով ըլլար և թէ միեւնոյն ժամանակ բնագիրէն չհեռանար։ Ահաւասիկ այս պարագան էր որ ամէնէն աւելի յուսահատութիւն կը պատճառէր ինձ, շատ անգամ սկսած գործս լքանելու ստիպման սաստկութեամբ։

Նարեկացին գրական անյագութիւն մը ունի, կ'ուզէ միեւնոյն պարբերութեան մէջ քով քովի շարել բառի մը ամբողջ հոմանիշներն ու ածականները, շատ անգամ քսանը, երեսունը իրարու ետեւէ դասելով, ինչ որ գրաբարի մէջ թէեւ քաղցր կը հնչէ ականջի, բայց աշխարհաբարի մէջ այնչափ հոմանիշներ գտնե՛լ, ո՛հ ուղե՛ղը կը ցնցէ մարդուս։

Աւելի դժուարը կայ. Ս. Վարդապետը պարբերութիւն մը կը կ'սկսի, որ ծայրէ ծայր ակնարկութիւն է Ս. Գրքի ա՛ս կամ ա՛ն տողուածներուն ու դէպքերուն և այնչափ զգացումով ու յուզումով կը գրէ որ, ներշնչումին յորդառատութեան մէջ բառերն ու գաղափարները իրարմով կը խճողուին։ Հմուտ ընթերցողին հոգին՝ կը հասկընայ գրուածքին միտքը, բայց նոյն այն բառերով զայն գործածական մաքուր աշխարհաբարի վերածելը, կը տառապեցնէ թարգմանիչը։

Ասանկ պարագաներու մէջ շատ հեղ կ'ստիպուէր տասը անգամ գրել ու փոխել մէկ պարբերութիւնը, մինչեւ որ թէ՛ բնագիրին բառերուն համապատասխանէր և թէ աշխարհաբար ըլլար՝ թարգմանութիւնը։ Եւ հիմա որ ամէն դժուարութիւններ հարթուեցան ու գործը խնամուած, պատրաստուած՝ հրապարակ ելաւ, բնականաբար խիստ դիւրին է բառերու հետ խաղալ ու անոր նկատմամբ քծախնդրութիւններ ընել. բայց առանց մեր թարգմանութիւնը աչքի առջեւ ունենալու, բնագիրէն երկու գլուխ թարգմանել փորձողը՝ պիտի տեսնէ արդէն թէ, ի՛նչ ըսել է Նարեկը Աշխարհաբարի վերածել։

Մէկ երկու փոփոխութիւնով չէի գոհանար և միշտ բաղդատութիւն կ'ընէինք տպարանին մէջ, մինչեւ իսկ մամուլի յանձնուած պահուն կրկին կը բաղդատէինք մեր երիտասարդ պաշտօնակիցներուն ու բարեկամներուն հետ, որոնք ձանձրանալով Նարեկի այս անվերջ բաղդատութիւններէն ու սրբագրութիւններէն, վերջերս խոյս կուտային քովէս, քաղաքավարական պատրուակներով։

Հատուածներ կային, անլուծելի տողեր, որոնք ո՛վ գիտէ ո՛ր գրչագիրին մոռցած կամ չփոթած բառերուն հետեւանքով առեղծուած դարձած էին։ Ժամերով աշխատելէ, միտք յոգնեցնելէ ետք, մինչեւ որ վերջնական համոզում չը գոյացնէի, չէի թարգմաներ։

Սակայն հակառակ այսքան հոգածութեանս ու խնամքներուս, չեմ կարծեր որ սխալէ զերծ ըլլայ Աշխարհաբար Նարեկը, ուր անուշադրութեան հետեւանքով սպրդած մէկ քանի թեթեւ սխալները մատնանիշ ըրին արդէն մեզ բարեկամներէ ոմանք։ Հողջը որ ծուղակ ըսել է որջ կարդացած և այնպէս թարգմանած եմ տեղ մը, նոյնպէս ալ փփոսանքը որ ծծկուելով լալ ըսել է, փփոսանք կարդացած ու այնպէս ալ թարգմանած եմ։ Եւ դեռ այս կարգի ուրիշ վրիպակներ ալ կան դուցէ, որոնց մասին եթէ տեղեկութիւն տրուի մեզ, շնորհակալութեամբ կ'ընդունինք ու կ'օգտուինք եղած դիտողութիւններէն։ Աշխարհաբար Նարեկի թարգմանութեան դժուարութիւնները թուելէ ետք, պէտք է յիշել նաեւ «Մանզումէի Էֆքեար» Հայաթերթին Տէր և Տնօրէն Յովհաննէս Տ. Գայաէրեան էֆէնտիի անդուլ աշխատութիւններն ու ծանր զոհողութիւնները, զոր նուիրեց այս սուրբ մատեանին հրատարակութեան ու անոր՝ Հայ-Քրիստոնեայ ժողովուրդին մէջ ձրիաբար տարածուելուն համար, իբրեւ նուէրը «Մանզումէի Էֆքեար»ի։

Երանի, թէ, սիրելի մայր, Աշխարհաբար Նարեկը գրգիռ մը ըլլար Հայ Քրիստոնեաներուն, մանաւանդ տիկիններուն՝ աւելի եռանդով փարելու մեր կրօնքին ու Ս. Եկեղեցիին, որուն նուի-

ռական մթնոլորտին մէջ ապրիլը, բնականաբար ընտանեկան երջանկութիւն պիտի ապահովէր իրենց, քանի որ զարգացած կին մը, եթէ Աստուծոյ վախը կրէ ու հաւատքով ալ զօրանայ, կրնայ դրախտի վերածել ամէնէն համեստ տնակն ալ։

Ընդունէ՛, մայր, այս Ս. նուէրը, զոր որդիական համբոյրներով կը մատուցանէ քեզ

Զաւակդ

ՄԻՍԱՔ Ա. Մ. ԳՕՉՈՒՆԵԱՆ

(ՔԱՍԻՄ)

1903 Փետր. 12

Կ. Պոլիս.



# ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ



Ս. Գրիգոր Նարեկացի ծնած է Վանայ մօտ Նարեկ գիւղին մէջ, Քրիստոսի 945 թուականին։ Հայրը՝ Մեծն Խոսրով եպիսկոպոս Անձեւացի՝ հեղինակ Ժամագիրքին և Պատարագի խորհուրդին վրայ գրուած մեկնութեան և ուրիշ աստուածաբանական գրքերու՝ հմուտ և փայլուն գրագէտ մ'էր, իսկ մայրը եղբօր աղջիկն էր Նարեկայ վանքին վանահայր Անանիա վարդապետին, որ մեծ փիլիսոփայի, երեւելի վարդապետի ու անուանի գիտնականի համբաւը կը վայելէր։ Ս. Գրիգոր Նարեկացի դաստիարակուած է այս երկու աստուածաբան գրագէտներու հովանիին տակ և վարդապետ ձեռնադրուած է Նարեկայ վանքին մէջ զոր հիմնած է Խաչիկ Կաթողիկոս, Քրիստոսի 926 թուականին։ Ս. Գրիգոր, որ Նարեկայ միաբաններուն ուսուցիչ կարգուած էր, ունէր նաեւ եղբայր մը Յովհաննէս անունով, որուն վրայ դրուատիքով կը խօսի իր յիշատակներուն մէջ և նոյն իսկ այնպէս զգացնել կուտայ թէ, անոր աջակցութեամբ գրած է այս Աղօթագիրքը որ աւարտած է Քրիստոսի 1002 թուականին։

Ս. Գրիգոր Նարեկայ մէջ վախճանած ու թաղուած է 1003ին։ Աղօթագիրքէն զատ գրած է նաեւ բազմաթիւ ճառեր ու երկասիրութիւններ, որոնց մէջ կը ցոլայ մեծ մտքի մը նկարագիրը։

